# ՀԵՂԻՆԱԿԻՆ ԳՈՐԾԵՐԸ

1. **ՓՆՋԻԿ**, Պատկերազարդ նախնական Հաւաքածոյ, աշխա
լեզուաւ նոր և գեղեցիկ մանկական գրուածքներ, Արձակ
տանաւոր, հետեւողութեամբ ՄՕԱՅԻ *Արտասանութեան* գր
Թուղթ ազնիւ, տպագրութիւն ընտիր։ . . . Գին 3 դահեկ

2. **ՀԱՒԱՔԱԾՈՅ** Ընտիր գրուածոց, աշխարհիկ լեզուաւ, Ար
և Ոտանաւոր, Պատկերազարդ, Մասն Ա. Գ. տպագրութիւն
Ամենէն մեծանուն գրագէտէն սկսեալ մինչեւ նորանուն գ
սոյն հատորին մէջ կ'երեւին իրենց ընտիր գրուածներով,
գրական վերլուծումներն յաջողած է ընել Երկասիրողն։ Բ
ասոնցմէ գործը կը պարունակէ շարադրութեանց կատարեալ
*քացՀ* մը։ Թուղթ և տպագրութիւն յոյժ գերազանց։ Գին 5 դ

3. **ՀԱՒԱՔԱԾՈՅԻ** *Բ. Մասն*, լի նոյնպէս Արձակ և Ոտանա
սիրուն հատուածներով, կենսագրական, գրագիտական և
ծանօթութեամբք։ Բ. տիպ. . . . . . . Գին $7^1/_2$ դահեկ

4. **ԱՌՋԵՌՆ ՆԱՄԱԿԱՆԻ**, Գործ բոլորովին նոր, որ եր
տասնեակ գլուխներով՝ մօտ 200 նամակներու օրինակներ կ
ծայէ աշխարհիկ ոճով գրուած։ Գործոյն վերջին գլուխը կը
րունակէ զանազան գրագէտներու նամակներ, որոցմէ շա
իրաւամբ գրական գոհարներ են։ Թուղթ և տպագրութիւն ըն
Գին 7 դահեկ

5. **ՆՈՐ ԲԱՌԱԳԻՐՔ ՀԱՅԵՐԷՆ ԼԵԶՈՒԻ**, Բառք 30,
ոճք, նորաբանութիւնք, գաւառական բառեր, դիցաբանա
անուններ։ Սոյն գործն իր ամփոփ և դիւրատար ձեւով և ըստ
ւականին ճոխ պարունակութեամբ կը գոհացնէ շատեր։ Մա
ւորապէս ամէն դպրոցականի անհրաժեշտ։ Գին 15 դահեկ

Հեղինակին հասցէն՝

*Կ. Պոլիս, Հանօրուլօ խան, Թիւ 24*

ՏՊԱՐԱՆ, ՎԻՄԱԳՐԱՏՈՒՆ ԵՒ ԿԱԶՄԱՏՈՒՆ

**Ց. ՄԱՏԹԷՈՍԵԱՆ**

*Թիւ 27, Ֆինճանճըլար Եօգուշու, Կ. Պոլիս։*

---

معارف عموميه نظارت جليله‌سنك ٢١ شعبان ٣١٤ و ١٢ كانون ثانى
٣١٢ تاريخلى و ٥٢٧ نومرولى رخصتنامه‌سيله طبع اولنمشدر

(Բարձ. Դասընթացք Տարրական Նախակրթարանաց)



ՍԻՄՈՆ ԳԱԲԱՄԱՃԵԱՆ



# ՆՈՐ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

## ՀԱՅԵՐԷՆ ԳՐԱԲԱՐ ԼԵԶՈՒԻ

ՆԱԽԱ[illegible]ԱՒԻՂ. — Գաղափար. — Դատողութիւն. — Լեզու. — [illegible]անութիւն. — Գիր. — Վանկ. — Բառ. — Ձայնաւոր եւ բաղաձայն գրեր. — Երկբարբառ. — ՄԱՍՈՒՆՔ ԲԱՆԻ. — Կանոնք. — Ձօրտուղութիւնք. — Ծանօթութիւնք եւ դիտողութիւնք. — Նախադասութիւն. — Քերականական եւ տրամաբանական լուծումն. — ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ. — Կանոնք, ծանօթութիւնք եւլն. — ՔԵՐԱԿԱՆԱԿԱՆ ՁԵՒՔ. — Շրջումն. — Ջեղչումն. — [illegible]ադրութիւն. — Բակառութիւն. — Փոխադրութիւն. — ԿԵՏԱԴՐՈՒԹԻՒՆ. — ԱՐՄԱՏ, ԱՃԱՆՑ ԵՒ ԲԱՐԴ ԲԱՌԵՐ. — Աշխարհաբարէ ի գրաբար թարգմանելի հատուածք (Առակք Լէսինկի)։

---

260 Հրահանգք. — 64 Գրաբար հատուածք։



Կ. ՊՈԼԻՍ
ԳՐԱՏՈՒՆ Պ. ՊԱԼԵՆՑ

1897

# ԶՕՆ

ԱՌ

ՎԱՂԱՄԵՌԻԿ ՄՕՐԵՂԲՕՐԴՈՒՍՏՐՆ ԻՄ

## ՕՐ. ԵՐԱՆՈՒՀԻ Ս. ԳԱԶԱԶԵԱՆ

Հոգի՛ քաղցրիկ,

Թէեւ ոչ մտքի գեղեցիկ բղխում մը, բայց այնքան տաժանումներով և գուրգուրանքով պատրաստած այս գործս ինծ համար հաճոյագոյն նուէրն է ամբիծ յիշատակիդ, դպրոցական այս գիրքն՝ դու որ դպրոցականները կը սիրէիր, որոնց ներկայութիւնը տարւոյս Փետր. 21ին՝ շրջագիծ մը բոլորելով դագաղիդ՝ միեւնոյն ատեն կը խորհրդանշէր բարութիւնդ ու անմեղութիւնդ։

Ահա այս մտածումով կը դնեմ անունդ այս գործիս մէջ, արցունքով թրջուած իբրեւ գարնան վարդի թերթ մը, զոր մարդ տարիներով կը պահէ իր սիրած գրքին էջերուն մէջ։

Ս. Գ.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ



Կրթական պայծառ ըմբռնումներու առջեւ տակաւ տեղի կուտան հին դրութիւններ. հինէն դէպ ի նորը փոխանցման այս ժամանակին մէջ բարեփոխումն է որ կ'ողջունէ մեր դպրոցական յարկերն և ահա ախորժ տպաւորութեամբ մը կը տեսնենք հիմա հին բարի ժամանակներու մէջ ծաղկոցի ծալապատիկ նստող և գրասեղանին վրայ իր շողիքներու փրփուրին մէջ թմրած տղեկին քով մանկապարտէզի աշխոյժ, զուարթ, երգող և քիչ շատ բանգէտ մանկութիւնը, նախակրթարանի կաշկանդուած մտքով աշակերտին քով ամէն բանի հետաքրքիր և ուսման ծարաւի պատանեկութիւնը։ Ո՜հ, այդ հոգիներն ալ մեքենաներ չեն, այլ զգացող և դիտող արարածներ, որոց վրայ կրնայ պարծիլ արդի մանկավարժութիւնն՝ իբրեւ իր յաղթանակի պտուղներուն վրայ։

Եւ երբ յառաջդիմութեան այդ ոգին ընդհանուր կրթութեան ամէն ճիւղեր կը քննէ մի առ մի, դիւրուսոյց եղանակներով օժտելով զանոնք, կը համարձակիմ ես ալ այս հրատարակութեամբս տկար գործակից մ'ըլլալ մեր հին *դասական* լեզուին կնճիռները պարզելու նպատակով։

Հոս խնդիր մը զիս կը շփոթէ ըստ բաւականին թէ արդեօք մեր հին լեզուին՝ պիտի կրնանք այդ *դասական* ընդհանուր մակդիրը կցել. որովհետեւ ըստ Պռիւնըրդիէռի՝ «Դասական մատենագիր կը կոչուի այն՝ որ կը գրէ լեզուին կատարելութեան ժամանակին մէջ, հասունութեան այն շրջանին՝ երբ լեզուն ալ խակ և կանաչ պտուղ մը չէ։ Եւ դասականութեան համար հեղինակը կը դնէ երեք պայմաններ.

Ա. Լեզուի մը կատարելութեան ժամանակը, կ'ըսէ, կը չափուի օտար լեզուներէ ունեցած անկախ տեւողութեանը մէջ.

Բ. Պէտք է որ մատենագիրը տոհմային ոգւոյն թարգման կանգնի և այդ եղանակաւ ձեռք բերուի լեզուին կատարելութիւնը.

Գ. Պէտք է որ նաեւ այդ մատենագիրն իր ընտրած սեռին կատարելութեան ժամանակին մէջ ապրելու բախտն ունեցած ըլլայ։» (1)

Հմուտ գրաբարագէտներ շուտով կ'ըմբռնեն թէ վերոյիշեալ պայմանները լիով չեն յարգուած մեր հին լեզուին համար. որովհետեւ սկզբնատիպ հեղինակութիւններ կը պակսին, և աւելի թարգմանութեանց մատենագրութիւն մ'ունեցած ենք։ (Բացառութիւնք՝ Եղիշէն, Փարպեցին, Նարեկացին, Շնորհալին, եւայլն։)

Սակայն և այնպէս մեր հիացումը չենք կրնար զսպել մեր հին մատենագրութեան վրայ, որ նախաքրիստոնէական ժամանակներէն անցնելով դարէ դար մեր եկեղեցւոյն կը ծառայէ՝ նուիրական հաստատութեան մը, իր դարաւոր բարբառն հնչեցնելով բարեպաշտ հոգիներու մէջ կամ մենասէր վանականին մօտ, վանքերու անկիւնը, մագաղաթներու վրայ կը հանգչի խաղաղիկ և կամ պատմական երկերու մէջ կը հրապուրէ բանասէրն։ Այդ իրաւունքներով կրնայ նաեւ սիրելի զբաղումներ հայթայթել մեր մատաղ սերունդին՝ դասի պարտականութիւններուն մէջ։ Հ. Արսէն Այտընեան իրաւամբ կ'ըսէ. «Զէ թէ լոկ պարզ համարման մը վրայ յեցած հաստատ կը մնայ գրաբարի կարեւորութիւնը, չէ թէ լոկ տեսականապէս մտածելով՝ վաղեմի սրբազան վսեմութեան ներկայացուցիչ և անհնանալի հնութեանց մշտընջենաւոր աւանդապահն է՝ հասարակաց կեանքէն վեր, այլ նաեւ մեր օրըստօրէական գործնական կենաց մէջ ալ ինքն է առաջնորդ, քանի որ տոյգ կը մնայ՝ թէ հասարակաց կեանքն ազգային մատենագրութեան կամ գրականութեան հետ սերտիւ կապուած է....։ Պատմութիւնը բարձրաձայն կ'աղաղակէ թէ նոր աշխարհքս, նոր Եւրոպա չկրցաւ գիտութեանց և արուեստից անկածութենէն ելնել և յառաջդիմութեան ճամբան կոխել՝ մինչեւ որ չդարձաւ իրաց դարմանն իր հնութեանցը մէջ չփնտռեց։ Հոն գտաւ ակնաղբիւրը, հոն ճաշակաց ազնուութիւն, հոն գաղափարաց առատութիւն, հոն նոր կեանք և կենսական ոգի՝ որ իր ներկայ գործունէութեանը մէջ պիտի թափանցէր։» (2) †

---

(1) FERDINAND BRUNETIÈRE. — Études critiques sur l'histoire de la littérature française, III serie, 304—311.

(2) *Տես ՔՆՆԱԿԱՆ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ, Նախաշաւիղ, էջ 311։*

† *Մեռեալ համարուած լեզուներուն մէջ կան՝ որ կենդանութիւն մը պահած են իբրեւ գրական լեզու ըստ գիտնոց ոմանց։ Եւ այդչափ կենդանութիւն մը մեր հին գրաւորն ալ պահած է։ Ահա թէ ինչ կ'ըսէ գաղիացի գիտուն մը եբրայեցերէնի մասին. «Մեր թուականէն Զ. դար առաջ*

Հին լեզուներու մշակութիւնը ծառայեցնել նոր լեզուներու՝ լաւագոյն դրութիւնն է. Եւրոպան իսկ հակառակ այնքան վիճումներու չկրնար վտարել իր դպրոցներէն լատիներէնն և հին յունարէնը։ Դեռ անցեալ տարի ի Փարիզ մրցանակաց հանդէսի մը մէջ Գաղիոյ Պետական խորհրդական Պ. Հէրպէրթ կը պահանջէր յոյն և լատին լեզուները մշակել յօգուտ ֆրանսերէնի. «Որովհետեւ, կ՚ըսէր, սա կազմուած է յոյն ՝գաղափարներով և լատին բառերով։» Եւ դարձեալ ուրիշ մը, Համալսարանի անուանի ուսուցիչ, Պ. Ժիւլ Լըկռան, *արդի ուսուցման ճառին* մէջ՝ արդի ուսուցումը պաշտպանելով հանդերձ՝ դասական մշակութեան կարեւորութիւնը կը շեշտէր այսպէս. «Ո՛հ, քաւ լիցի որ դասական մշակութեան համար գէշ կը զրուցեմ. գիտեմ թէ ինչ պարտական եմ անոր և թէ ինչ ազնիւ վայելքներ կը պահէ ան իր հաւատարիմներուն։» (3)

Հնոյն մշակութիւնն եթէ անհրաժեշտ է գաղիացւոյն համար, նոյնքան ստիպողական է մեր գրաբարի ուսումն աշխարհաբարին համար, որուն հետ անմիջական աղերս ունի իբրեւ այս վերջնոյն զարգացման գլխաւոր տարր։

«Նոր լեզուն, կ՚ըսէ Ռընան, հնոյն բեկորներէն բաղադրուած ըլլալով՝ անկարելի է գիտնական եղանակաւ տիրանալ անոր, եթէ այդ բեկորները չպատշաճեցնես այն շէնքին՝ ուր իրենց նախկին արժէքն ունէին։ Փորձը ցոյց կուտայ թէ ո՛րչափ թերի է արդի գաւառաբարբառներու ծանօթութիւնն անոնց մէջ՝ որոնք չեն ուսումնասիրած այն լեզուն՝ ուրմէ դուրս եկած են անոնք։ Քերականական մեքենականութեանց, ստուգաբանութեանց և հետեւաբար ուղղագրութեան գաղտնիքը բովանդակ հին լեզուին մէջ ըլլալով՝ այդ մեքենականութեանց տրամաբանական պատճառն անըմբռնելի է անոնց համար, որ առանձնակի նկատի կ՚առնուն զանոնք, առանց անոնց ծագումն որոնելու։» (4)

---

*եբրայեցերէնն իբրեւ ժողովրդական լեզու սկսաւ կորսուիլ. Մակաբայեցւոց ժամանակէն շատ առաջ արամերէնը գերակշիռ եղած էր Պաղեստինու մէջ։ Բայց եբրայեցերէնը Թէեւ մեռեալ՝ իբրեւ խօսեալ բարբառ, շարունակուեցաւ ապրիլ իբրեւ գրական լեզու եւ իբրեւ սրբազան լեզու կրօնքի մը՝ որ անկործանելի մնացած է իր կրած բոլոր հալածանքներուն մէջ։»* François Lenormant, Histoire ancienne de l'Orient, 9 Edition, Tome 1r. 374.

(3) *Տես* REVUE ENCYCLOPÉDIE, 1893, *Օգոստոս* 15։

(4) *Տես* E. RENAN, Histoire des langues sémetiques, livre V, Chapitre I, 443.

Երկիւղը զոր պիտի ունենայի՝ մտածելով թէ գուցէ նոր լեզուա-պայքարի մը կը մղեմ մեր գրական ոյժերն, իբրեւ գժտութեան նոր խնձոր մը նետելով այս չնչին երկս գրական ասպարէզին վրայ, ահա ինքնին կը փարատի, երբ կը տեսնեմ որ համեմատական լեզուա-գիտութիւնը ծաղկելէն ի վեր մանաւանդ Եւրոպացի լեզուագէտներ, պատմաբաններ, հնագէտներ իրենց ուսումնասիրութեան առարկայ կ'ընեն հայ լեզու, հայ մատենագրութիւն, ի վեր հանելով լեզուական շատ գաղտնիքներ։ Հ. Գարեգին Զարբհանալեանի նոր գործը (5) Եւ-րոպացի հայագէտներու գործունէութիւնը կը ներկայացնէ մեր առջեւ, նոյնպէս մեր երկու մասնագիտական հանդէսներ, *Բազմավէպն* ու *Հանդէս Ամսօրեայն*, շատ անգամ անոնց հայագիտական գրուածք-ներով կը զարդարեն իրենց էջեր։ Ուստի կը խորհիմ թէ ինչ որ օտարը կ'ընէ (անշուշտ լոկ ի սէր ընդհանուր մատենագրութեան) մեր գրա-քարին համար, բնական հարկ մը չկայ մեր վրայ օտարէն աւելի յարգելու և սիրելու մեր սեփական այս լեզուն։

Գեղեցիկ ժառանգութիւն մ'է այն զոր թողած է մեզ հնութիւնը։ «Եթէ աշխարհաբարը, իր ընտանեկան բացատրութիւններով, իր ժո-ղովրդական նկարուն դարձուածքներով, իր թեթեւութեամբ, արագու-թեամբ և յստակութեամբ արդի գրական սեռերուն մեծ մասին աւելի յարմար լեզու մըն է, գրաբարը, իր ոճերու ու բառերու անհուն ճո-խութեամբը, իր շատ աւելի հարուստ և (անկարելի է ուրանալ) շատ աւելի գեղեցկագիտական քերականութեամբ, իր բառերու շարադա-սութեան մեծափառ լայնութեամբ ու երաժշտականութեամբ, հրաշալի լեզու մըն է քնարերգութեան, ողբերգութեան, դիւցազներգութեան, կրօնական գրուածներու համար, ամենավսեմ թարգման մը, մարդուն մեծ ու լայն զգացումներուն։» (6)

«Հայերէնն իբրեւ մատենագրական լեզու կը մօտենայ և կը հա-ւասարի իսկ հին յոյն և լատին և արդի եւրոպական լեզուաց։» (7)

∴

(5) *ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ԵՒ ՄԱՏԵՆԱԳՐՈՒ-ԹԵԱՆ ՅԱՌԵՒՄՈՒՏՍ (ի ԺԶ. – ԺԹ. դարս) Վենետիկ, Ս. Ղազար*, 1895։

(6) *Ա. ՉՕՊԱՆԵԱՆ, Հայրենիք*, 1894, *Թ.* 840։

(7) *Ա. Մ. ԳԱՐԱԳԱՇԵԱՆ, Քննական պատմութիւն, Մասն Դ. Գլխ. Ա.* էջ 71։

*Այստեղ կը դնենք Եւրոպացի մի քանի հայագէտներու վկայութիւն-ները մեր մատենագրութեան վրայ, քաղելով Հ. Զարբհանալեանի Ուսում-նասիրութիւնք գրքէն.*

Տեսանք արդէն թէ ոչ լեզուական գեղեցկութիւնն է միայն, այլ օգտակարութիւնն հարկ կը դնէ մեր վրայ մշակել զայն և նոյն իսկ այս հայրենի լեզուին ունեցած մեր յարումը պիտի ըլլայ մեր այժմեան ցրուած վիճակին մէջ ազգայնութեան պահպանութեան գլխաւոր նեցուկներէն մին։ (8)

Այս տեսութիւններով է որ համարձակեցայ սոյն երկասիրութեանս, վստահ թէ օգտակար գործոյ մը նուիրեցի ուսումնասիրութեան երկար միջոց մը։

Ժամանակն հասած չէ՞ արդեօք որ յախուռն կռիւներ հանդարտին միանգամ ընդ միշտ, լռեն ամէն պայքարներ, քանի որ առողջ տրամախոհութեամբ մեր հին և նոր լեզուներու սահմաններն որոշուած են, կը դատապարտուին երկու կողմէ ծայրայեղ պահանջումներ․ անա աշխարհաբարի ուսումն իր ընդարձակ բաժինն ունի մեր ուսումնական յայտագիրներու մէջ, և անկէ վերջ կուգայ գրաբարն իբրեւ աշխարհաբարի լրացուցիչը։

⁂

Գրաբարի համար զգացած երկիւղս փարատելէ վերջ՝ *Քերականութիւն* (9) բառը կը խրտեցնէր զիս․ գիտէի թէ այդ ծերունի վար-

---

— *«Հայ լեզուն շատ ճոխ լեզու մըն է, եւ առատապէս կը վարձատրէ ով որ զայն սորվելու աշխատանքէն չհրաժարիւ»* (ԼՈՐՏ ՊԱՅՐԸՆ ԱՌ Մ․ ՄԸՐՐԷՅ։)

— *«Հայկական լեզուն մայր ու հնութեան մէջ իր նախանձորդը չունեցող լեզու մը, կրնար յունական մատենագրութեան հաւասարապէս հռչակաւոր անձնաւորութիւնք ներկայացնել մեզ, եթէ զայն գործածող հեղինակաց ամէն երկասիրութիւնք հասած ըլլային ձեռուընիս»* (ԼԸ ՎԱՅԼԵԱՆ ՖԼՈՐԻՎԱԼ։)

— *«Հայոց մատենագրութեան մէկ պարծանքը պատմական յիշատակարանաց շատութիւնն ու պատուականութիւնն է։ Այն յիշատակները՝ Դ․ դարուն սկիզբէն մինչեւ մեր օրերն անընդհատ կերպով իրարու յաջորդելով՝ իրաւցընէ ոսկիէ շղթայ մը կը կազմեն որ հին ատենին աշխարհքը մերինին հետ կը կապէ։»* (ԵԴՈՒԱՐԴ ՏԻՒԼՈՐԻԷ։)

(8) *Տե՛ս այս մասին Ֆէլիքս Նէվի ընտիր յօդուածն՝ Հայոց գրական գործունէութեան վրայ, Հանդէս Ամսօրեայ*, 1888, *Օգոստոս*։

(9) *«Առանց տարակուսելու, կ'ըսէ Պ․ Մարսէլ, պէտք է գիտնալ՝ որ քերականութիւնը նախնական դաս մը չէ, այլ վերջնական կատարելագոր-*

պետը շատոնց իր յարգը կորուսած է և տեսակ մը կծու հեգնութեանց առիթ է յաճախ։ Այդ պարսաւներ սակայն իր հին դրութեան և ամուլ միօրինակութեան համար ուղղուած ըլլալուն՝ ուզեցի նորութիւններով օժտել գործս. կանոններով սորվեցնելու դրութիւնը պահելով հանդերձ՝ զանազան հրահանգներ, ընթերցումներ և ուրիշ բացատրութիւններ միացուցի այդ կանոններուն։ Եւ ահա միայն այս նպատակաւ թաքթափեցայ երկար ատեն մեր հին մատենագրութեան գանձերուն մէջ, գլխաւորաբար բուն ոսկեդարեան մատեաններ ստէպ վերծանելով, ինչպէս Աստուածաշունչն, Եզնիկն, Ոսկերերանի թարգմանութիւններ, Բիւզանդ Փաւստոս, Խորենացի, Ագաթանգեղոս, Բարսղի վեցօրէիցն, Պատմութիւն Աղեքսանդրի, Կիւրեղ Երուսաղէմացի, Կիւրեղ Աղեքսանդրացի, Սեբերիանոս, Եւսեբիոս, Փիլոն Եբրայեցի և ուրիշ բազմաթիւ մատեաններ։

Իսկ կանոններու լաբիւրինթոսէն ելնելու համար Արիադնէի թելը պէտք էր ինձ. այն ընդհանուր խառնուրդին մէջ զիս կ'առաջնորդէր այն գաղափարը թէ գուցէ բացառութիւններով խճողելով դասագիրքս՝ մանկանց մտքին անհպելի ընէի զայն. բայց արդէն նպատակ չունէի Բագրատունւոյ *Հարգացեղոցը* ներկայացնել եւ ես իմ կարգին։ Ուստի քաւ համարեցայ լեզուին պարզ եւ որոշ ձեւերն ընդունիլ և ի հարկին միայն ինչ ինչ բացառութիւններ նշանակել. որովհետեւ հարկ չկար դպրոցական դասագիրք մը յօրինելու ատեն՝ ամէն մանրամասն կանոններ, զարտուղութիւններ, եւայլն յիշել։ Ո՞վ գիտէ թէ այդ իբրեւ կանոն ներկայացուած ձեւերը՝ գրչագրաց աղաւաղումներ մերթ

---

*ծութեան միջոց մը։» Եւ Պ. Ուիս այս նիւթին վրայ սա դատաստանը կ'ընէ. «Քերականութիւնն ու Համաձայնութիւնն օրէնքի եւ կանոններու ժողովածոյ մըն են, եւ լեզուին գործնական կազմութենէն կը ծնին կանոններն, որ արդիւնք են բաղդատութեանց ու վերլուծական երկար դիտողութեանց։ Մէկ խօսքով՝ քերականութիւնը լեզուի մը գիտութիւնն ու փիլիսոփայութիւնն է։ Եթէ բնական ընթացքը դիտենք՝ կը տեսնենք որ նա երբեք անհատներն ու ազգերը գիտութեան չտանիր նախ։ Մարդիկ՝ երկար ատեն լեզու մը խօսելէ, անով բանաստեղծութիւններ ընելէ ետեւ՝ խելք ըրած են քերականութիւն յօրինել ու առոգանութեան կանոններ շինել։ Միթէ մարդիկ տրամախոհելու համար՝ սպասեցի՞ն որ Արիստոտէլ գայ եւ կառուցանէ իր տրամաբանական շէնքը։» (ՀԷՐԲԷՐԹ ՍԲԷՆՍԸՐ, Կենցաղ կամ Դաստիարակութիւն, Գլխ. Բ. 84—88։)*

տգէտ գրիչներու և մերթ վարպետներու կամայական խանգարումներ
և խեղաթիւրումներ չեն արդեօք, ինչպէս դիտել կուտան հմուտ հա-
յագէտներ։

Իմ նպատակս էր որ եւ է գրաբար գիրք մը ըստ բաւականին
հասկընալու առաջնորդ ընել իմ աշխատութիւնս և ոչ թէ յաւակնիլ
համեմատական բանասիրութեանց դուռ բանալու։

Ուստի և բնական հարկ մ'էր ինձ գործոյս պատրաստութեան ա-
տեն նոր քննութեան մը ենթարկել մեր քերականութիւններն, ինչպէս
Հ. Ա. Բագրատունւոյ **Զարգացելոցն** ու **Տարերքը**, Հ. Արսէն Այտընեանի
**Քննականն** ու իր սրբագրած **Զալըխեան Քերականութիւնը** (Վիէննա,
1885), Հ. Թադէոս Թովմաճանի **Նախադրունքը** (1892) և **Առաջին Քայլ
ի գրոց բարբառը** (Վենետիկ, 1894), Գարագաշեանի **Դպրութիւնն** ու
**Գործնականն**, Ստեփանոս Պալասանեանի **Գրաբար Քերականութիւնն** և
այսպիսիներու հետ ուրիշ բազում օտարալեզու քերականութիւններ,
որոնք լուսաւորեցին զիս ուրեք ուրեք իմ աշխատութեանս պահուն։
Պէտք է խոստովանիլ թէ այս ամենուն մէջէն Հ. Արսէն Այտընեանի
սրբագրած Զալըխեան քերականութիւնն իմ տեսութեանցս առջեւ
նախընտրելի եղաւ։

Ահա այս է ներկայ գործս իր ընդհանուր գծերուն մէջ, զոր խըղ-
ճամիտ աշխատութեամբ յօրինեցի՝ նուիրելու համար մեր մայր լեզ-
ուին։ Կը յայտնեմ թէ աշխատութիւնս և եռանդս հաւասար էին
անոր պատրաստութեան համար և ասոնք անշուշտ պիտի կրնան վե-
րապահել ինձ, եթէ ոչ փայլուն գնահատում մը երկասիրութեանս հա-
մար, գէթ չքմեղանք մը՝ ունեցած թերութիւններուս համար։

Ս. Գ.



ԶԳՈՅՇ. — Հայերէն լեզուի ուսուցիչներէ կը խնդրուի որ Քերականութիւնս գործածելէ առաջ հաճին իրենց աշակերտներուն նախապէս ուղղել տալ հետեւեալ վրիպակները.

| Էջ | Տող | Վրիպակ | Ուղիղ |
|---|---|---|---|
| 8 | 15 | կտակ, կտակ, | կնտակ, կնտակ |
| 11 | 8 | կրնար | կրնանք |
| 23 | 2 | ՑՈԳՆԱԿԻ | ԽՁԱԿԻ |
| 48 | 8 | միշտ | մեղր |
| 68 | 6 | Ա. | Բ. |
| 78 | 7 | Խանբաղակաթն | Խանդաղակաթն |
| 85 | 8 | վրայ | վրայ |
| 101 | 24 | Սիրեսցուք | Սիրեցարուք |
| 106 | 26 | պէտք է կորսուին | պէտք է կորսուի |
| 115 | 7 | Երկրորդ | Երրորդ |
| 265 | 20 | եզակին | եզակի |
| 345 | 27 | պարօղան | պարօղան |

# ՆՈՐ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

# ՀԱՅԵՐԷՆ ԳՐԱԲԱՐ ԼԵԶՈՒԻ

## ՆԱԽԱՇԱՒԻՂ

### ԳԱՂԱՓԱՐ

*Գաղափարը որեւէ բանի մը միտքին մէջ պատկերացումն է ։*

Երբ ըսեմ *մեղու*, իսկոյն մտքիս մէջ կը նկարուի միջատ մը, որ ծաղիկներէն հիւթ կը հաւաքէ եւ մեղր կը շինէ ։

Երբ ըսեմ *աշխատասէր*, կ'իմանամ որեւէ մէկն՝ որ եռանդով կ'աշխատի ։

### ԴԱՏՈՂՈՒԹԻՒՆ

*Դատողութիւն կը կոչուի այն գործողութիւնն, որով միտքը երկու գաղափարներ իրարու հետ բաղդատելով՝ հետեւութիւն մը կը հանէ ։*

Այս երկու գաղափարներն (*մեղու*, *աշխատասէր*) երբ այսպէս բացատրուին, առանձին կը մնան. բայց դիւրին է զանոնք իրարու մօտեցնել իրենց ունեցած առնչութեամբ ։

Առնենք վերի գաղափարներն եւ ըսենք. Ինչպէս է մեղուն. մեղուն աշխատասէր է. իսկոյն կը վճռենք թէ այս երկու գաղափարները իրարու կը պատշաճին ։

## ԶՈՒԳՈՐԴՈՒԹԻՒՆ ԳԱՂԱՓԱՐԱՑ

*Յաճախ անձի մը կամ իրի մը վրայ երբ մտածենք, մեր մտքին մէջ կը ներկայանան ուրիշ անձեր, ուրիշ իրեր, որոնք տեսակ մը յարաբերութիւն կամ առընչութիւն ունին առաջիններուն հետ։*

*Այսպէս մեղու բառը մտքին մէջ կ'արթընցնէ փեթակի, մեղրի, խայթոցի գաղափարներ։*

*Գաղափարաց զուգորդութիւն կը կոչուի այն գործողութիւնն՝ որով պատկեր մը մեր մտքին մէջ կը բերէ ուրիշ պատկերներ, որոնք առաջնոյն հետ քիչ կամ շատ յարաբերութիւն ունին։*

**Հարցարան**. — Ի՞նչ է *գաղափար*. — Ի՞նչ է *դատողութիւն*. — Ի՞նչ է *զուգորդութիւն գաղափարաց*։

**Հրահանգ 1. — Ըսէ՛ք թէ ի՞նչ գաղափարներ կուտան ձեզ հետեւեալ բառերն.** — *Ա. Ծով (եզր, ալիք, մրրիկ, նաւարկութիւն, նաւաբեկութիւն, ձուկն, աղ, եւլն.)։ քաղաք, ագարակ, ջաղացք, խաղող, գաւաթ։ — Բ. Սենեակ, պարտէզ, երաժշտութիւն, ծառ, ամառն, աշուն։ — Գ. Ձմեռն, գարուն, գիրք, մշակ, դէմք, ժայռ։ — Դ. Գոհար, եկեղեցի, թատրոն, ախոռ։ — Ե. Օդ, կրակ, ջուր, երկիր, քերականութիւն, պատմութիւն, թուաբանութիւն։*

## ԼԵԶՈՒ

*Մեր գաղափարները յայտնելու ամէն միջոց լեզու կ'ըսուի։*

*Գաղափարները կը յայտնուին։ Ա. Նշաններու միջոցաւ, այս է գործողութեան լեզու։ Բ. Խօսից միջոցաւ, այս է խօսեալ լեզու։ Գ. Գրի միջոցաւ, այս է գրեալ լեզու։*

Լեզու մը այն մասնաւոր կերպն է, որով ժողովուրդ մը կը յայտնէ իր գաղափարները խօսքի կամ գրի միջոցաւ։

Լեզուները կը ծնին, կ'ապրին եւ կը մեռնին անհատներու պէս. ուրեմն կան մեռեալ լեզուներ եւ կենդանի լեզուներ։

Մեռեալ լեզուներն անոնք են, որք հիմայ այլ եւս չեն խօսուիր, բայց կ'ուսումնասիրուին իբրեւ հիմ իրենցմէ ծագում առած նոր լեզուներու եւ իբրեւ գործիք ուսումնասիրութեան հին մատենագրութեանց. այսպէս են մեր գրաբար լեզուն, Լատիներէնն ու հին Յունարէնն։

Իսկ կենդանի լեզուներն անոնք են, որոնք թէ կը գրուին եւ թէ կը խօսուին. ինչպէս մեր արդի Հայերէնն, Գաղղիերէնն, Անգղիերէնն, եւայլն։

**Հարցարան**. — Ո՞րն կ'ըսուի լեզու. — Ի՞նչ զանազան միջոցներով մեր գաղափարները կրնանք յայտնել. — Որո՞նք կ'ըսուին *մեռեալ լեզու*. — Ո՞րոնք կ'ըսուին *կենդանի լեզու*։

## ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Քերականութիւնը լեզուի մ'օրինաց ուսումն է։ Բնականաբար լեզու մը լաւ հասկընալու եւ զայն ուղիղ գրելու ու խօսելու համար հարկաւոր է անոր քերականութեան ծանօթութիւնը։

Գրաբար լեզուի քերականութիւնն ուրեմն ուսումն է հին Հայերէնին օրինաց ու կանոններուն, եւ անոր գիտութիւնը պէտք է հասկընալու համար մեր հին եւ թէ նոր գրաբար գրուածներն եւ նոյն իսկ մեր աշխարհաբար լեզուն աւելի գիտակցօրէն գործածել կարենալու համար։

**Հարցարան**. — Ի՞նչ է *քերականութիւնն*. — Ի՞նչ կը սորվեցնէ *գրաբար լեզուի քերականութիւնն*։

## ԳԻՐ. — ՎԱՆԿ. — ԲԱՌ

*Գրերն հնչմանց եւ ձայներու նշաններ են։*

*Լեզուի մը ամբողջ գրերը կը կազմեն նոյն լեզուին այբուբենը։*

*Հայերէն լեզուն երեսուն եւ ութը գիր ունի եւ այս գրերն իրենց ձեւով են՝ գլխագիր, բոլորգիր եւ նօտրագիր։*

| ԳԼԽԱԳԻՐ | ԲՈԼՈՐԳԻՐ | ՆՕՏՐԱԳԻՐ |
|---|---|---|
| Ա Բ Գ Դ Ե Զ Է Ը Թ | ա բ գ դ ե զ է ը թ | ա բ գ դ ե զ է ը թ |
| Ժ Ի Լ Խ Ծ Կ Հ Ձ Ղ | ժ ի լ խ ծ կ հ ձ ղ | ժ ի լ խ ծ կ հ ձ ղ |
| Ճ Մ Յ Ն Շ Ո Չ Պ Ջ | ճ մ յ ն շ ո չ պ ջ | ճ մ յ ն շ ո չ պ ջ |
| Ռ Ս Վ Տ Ր Ց Ւ Փ Ք | ռ ս վ տ ր ց ւ փ ք | ռ ս վ տ ր ց ւ փ ք |
| Օ Ֆ | օ ֆ | օ ֆ |

**Ծանօթութիւն.** — *Օ եւ ֆ գրերն հինատեն մեր այբուբենին մէջ չկային, յետոյ ուրիշ ազգերէ առնուած են. մեր նախնիք օ գրին տեղ աւ կը գրէին եւ ֆ ին տեղ փ, առանց սակայն մեր այժմեան ֆ եւ օ ին պէս հնչելու։ Ինչպէս. Աւգոստոս, աւշարակ, փոխանակ ըսելու, Օգոստոս, օշարակ։*

**Հարցարան.** — Ի՞նչ են *գրերն*. — Այբուբենն ինչ կ'ըսուի. — Հայերէն լեզուն քանի՞ գրէ կը բաղկանայ. — Ըսէք այբուբենն. — Այս գրերը քանի՞ տեսակ են։

## ՁԱՅՆԱՒՈՐ ԳՐԵՐ

*Ձայնաւոր գիրն ինքնիրմէ ձայն կրնայ հանել եւ ութ հատ է. ա, ե, է, ը, ի, ո, ւ, օ։*

*Առանց ձայնաւոր գրի վանկ չկազմուիր, հետեւաբար բառ ալ։*

**Հարցարան.** — *Ձայնաւոր գիր* ո՞րու կ'ըսուի, եւ ո՞րոնք են ձայնաւոր գրերն. — Առանց ձայնաւոր գրի բառ կը կազմուի՞։

## ԲԱՂԱՁԱՅՆ ԳՐԵՐ

*Բաղաձայնը միննակ չի հնչուիր, այլ ձայնաւոր գիր մը կ'ուզէ։*

*Բաղաձայն գրերն ասոնք են, բ. գ. դ. զ. թ. ժ. լ. խ. ծ. կ. հ. ձ. ղ. ճ. մ. յ. ն. շ. չ. պ. ջ. ռ. ս. վ. տ. ր. ց. փ. ք. ֆ։*

*Բաղաձայն գրերն երեք կարգ են ըստ նախնեաց, նուրբ, միջակ եւ թաւ։*

*Նուրբ, պ, կ, տ, ծ, ճ։*

*Միջակ, բ, գ, դ, ձ, ջ։*

*Թաւ, փ, ք, թ, ց, չ։*

*Իսկ նայ կ'ըսուին՝ թուլաձայն գրերէն՝ ղ, լ, մ, ն, ր. կոկորդային են հ, խ. շչական են ժ, զ, ս, շ։*

*Զ գրէն առեւ միջակներն, իսկ ս էն առեւ թաւերն ու նուրբերը կը յաջորդեն. զբաղնում, զգամտ. — Սփոփել, սքանչելի, սքողել։*

**Հարցարան.** — Ի՞նչպէս կը հնչուի *բաղաձայնը*. — Որո՞նք են բաղաձայները. — Բաղաձայն գրերը քանի՞ կարգ են. — Ո՞րոնք են *նայ, կոկորդային* եւ *շչական* գրերն։

## ԵՐԿԲԱՐԲԱՌ. — ՎԱՆԿ. — ԲԱՌ

*Երբ երկու կամ աւելի ձայնաւորներ միեւնոյն վանկի մէջ կը միանան ձայնի մէկ արտաբերութեամբ հնչուելու համար, երկբարբառ կը կազմեն. այսպէս երկբարբառ են աւ, ու, իւ, էօ, եա կամ իա, իե, իէ, իօ, իու, ուի, ուա, աու, ուէ, էու, էի, եւլն։*

*Մէկ կամ աւելի գրեր՝ որ ձայնի մէկ արտաբերու- թեամբ մէկ անգամէն կը հնչուին, վանկ կը կազմեն։ Մէկ կամ աւելի քովէ քով եկած վանկեր եթէ նշանա- կութիւն մ'ունենան, կը ձեւացնեն բառ։*

*Մեր գաղափարները կը յայտնենք բառերով։*

*Բառերը կ'արտասանուին եւ կը գրուին. կ'արտա- սանուին* տառերով, *կը գրուին* գրերով։

**Ծանօթ.** — *Մէկ հնչմամբ արտասանուող բառը միա- վանկ կ'ըսուի, երկու հնչմամբ՝ երկավանկ, երեք հըն- չմամբ՝ եռավանկ, իսկ եթէ շատ վանկերով ըլլայ՝ բազ- մավանկ։* Ինչպէս հայր *միավանկ է,* եղբայր *երկա- վանկ,* ժողովուրդ *եռավանկ, իսկ* երաշխաւորութիւն *բազմավանկ է։*

**Հարցարան.** — Որն կ'ըսուի *երկբարբառ*. — Վանկ որն կ'ըսուի. — *Բառ* որն կ'ըսուի. — Մեր գաղափարները ինչով կը յայտ- նենք. — Բառերը ինչ կերպով կ'արտասանուին եւ կը գրուին։

# ՄԱՍՆ Ա.

## ՄԱՍՈՒՆՔ ԲԱՆԻ

*Խօսք մը կը կազմուի բառերով։ Ինչպէս, պատուեա՛ զհայր քո եւ զմայր, քու հայրդ ու մայրդ պատուէ՛։*

*Բառերը ինը տեսակ են. Անուն, ածական, դերանուն, բայ, դերբայ, նախադրութիւն, մակբայ, շաղկապ, ձայնարկութիւն։ Ասոնք մասունք բանի կ՚ըսուին։*

**Հարցարան.** — *Խօսք* ինչու կ՚ըսուի. — *Մասունք բանի* ինչոց կ՚ըսուի։

---

## ԳԼՈՒԽ Ա.

## ԱՆՈՒՆ կամ ԳՈՅԱԿԱՆ

*Ամէն բառ՝ որ մարդու, անասնոյ կամ իրի անուն է եւ յատկութիւն կամ գործողութիւն մը կը ցուցընէ՝ գոյական է, զոր օր. հաց. ջուր. անտառ. առիւծ. Սարգիս. մեծութիւն։*

**Հարցարան.** — *Գոյական* ինչու կ՚ըսուի։

**Հրահանգ Ա.** — Որոշել հետեւեալ բառերէն անձ, կենդանի, իր։ — *Դարբին, փիղ, ծեր, շուշան, ուղտափուշ, ուսուցիչ, ճակնդեղ, խոյ, սկիւռ, ժամացոյց, դպրոցական, ականջ, մանուկ, թիթեռնիկ, արեգակն, քարոզիչ, բանտապահ, կին, կեռաս, նաւապետ, ծառ, Եւրոպա, ուսանող, Դանուբ, Աստուած, ձի, վարդ,*

*Զմիւռնիա, որթ, օձ, երկաթ, ծով, քաղաք, Վարդուհի, Պետրոս, Յարութիւն, Աղեքսանդր, Հերանոյշ։*

**Հրահանգ 8. — Շեղագիր բառերէն ո՞րն անձ, կենդանի, իր է. —** *Կատարեցան (կատարուեցան) բանք մարգարէից. Յիսուս քարոզէր Հրէից զաւետարան Աստուծոյ (Աստուծոյ աւետարանը). — Ձայն եղեւ յամպոյն (ամպէն) եւ ասէ (կ'ըսէ). Դա՛ է որդի իմ ընտրեալ, դմա (ատոր) լուարուք (լսեցէք). Հերովդէս արկ ի բանս զՅովհաննէս։ Ես եմ Յիսուս։*

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ**

**I. ԵՂԻՍԷԷ ԵՒ ՄԱՆԿՏԻՆ ԱՆՁԳԱՄ**

Մինչդեռ ելանէր Եղիսէէ ընդ ճանապարհն, մանկտի մանրիկ ելին ի քաղաքէն, աղաղակէին ի նա և ասէին. Ել կնտակ, ել կնտակ։ Դարձաւ ի թիկունս իւր և ետես զնոսա և անէծ զնոսա յանուն Տեառն։ Եւ ելին երկու արջք յանտառէն և պատառեցին ի նոցանէ քառասուն և երկուս մանկունս։

**ԵՂԻՍԷԷ ԵՒ ԱՆՁԳԱՄ ՏՂԱՅՔԸ**

Երբ Եղիսէէ ճամբէն կ'ելնէր, պզտիկ տղայքներ քաղքէն ելան, կը պոռային անոր և կ'ըսէին. ել ճաղատ, ել ճաղատ։ Ետին դարձաւ և տեսաւ զանոնք և անիծեց զանոնք Տիրոջ անունով. Եւ ելան անտառէն երկու արջեր և կտոր կտոր ըրին անոնցմէ քառասուն երկու տղաքներ։

*( Որո՞նք են անձ, անասուն, իր ցուցընող բառեր։ )*

---

## *ԱՆՈՒԱՆՑ ՏԵՍԱԿՆԵՐ. — ՀԱՍԱՐԱԿ ԱՆՈՒՆ*

*Երկու տեսակ անուն կայ. հասարակ անուն, յատուկ անուն։*

*Հասարակ անուն կ'ըսուին այն բառերն, որոնք կը պատշաճին միեւնոյն տեսակէ ամէն իրերու, անձերու,*

*անասուններու ։ Զոր օր. տուն, քաղաք, եկեղեցի, մարդ՝ հասարակ անուններ են ։*

**Հարցարան.** — **Քանի՞ տեսակ անուն կայ. — Ո՞րն է** *հասարակ անունը ։*

**Հրահանգ 4.** — (*Բերանացի*). **Անուանեցէք երեք երեք հասարակ անուններ այս բառերէն.** — *տունկ, (կանեփուկ, չուչան, օշինար) գոյն, գոհար, ազգական, ծառ, ծաղիկ, պտուղ, զգայարան, վայրի անասուն, ընտանի անասուն, գործի, զգեստ ։*

**Հրահանգ 5.** (*Թռչուն, ձկուն*), — *Արծուի, լորամարգի, կաքաւ, կէտ, կուընկաձուկն, սագ, կարապ, խարակպաձուկն, անգղ, ագռաւ, օձաձուկն, փասիան, ծիծեռնակ, թութակ, շանաձուկն, ճնճղուկ, սոխակ, խայտիտ, կատուաձուկն, թինոս, ծածան, կռունկ, թառափ, կկու, վահանաձուկն, բու, լեզուաձուկն, ուրուր, խաղտուտիկ ([illegible]), արքայաձուկն ։*

## ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒՆ

*Յատուկ գոյական են մարդոց, տեղւոյ եւ այլն իրաց անուններ՝ որոնք իրենց տեսակին մէջ մէկ հատ են, զոր օր. Երուսաղէմ, Դանուբ, Գրիգոր ։*

*Յատուկ անունները գլխագրով մը կ'ըսկսին ։*

**Հարցարան.** — **Ո՞րնք են** *յատուկ գոյականները ։*

**Հրահանգ 6.** — (**Բերանացի**). **Աշակերտը երեքական յատուկ անուն թող դնէ հետեւեալներուն առջեւ ։** *Գաւառ (Պրուսա, Իզմիր, Էտիրնէ) քաղաք, ժողովուրդ, լեռան, ծով, կղզի, կին, այր, գետակ, գետ, կայսր ։*

**Հրահանգ 7.** — **Ընդգծեցէք յատուկ անունները.** — *Մարիամ կոչէր (կը կոչուէր) մայր Յիսուսի Քրիստոսի,*

*Բանաստեղծ էր Կիրակոս, բանահիւս էր Յարութիւն, Յակոբ անուն ումն տարաւ զԳրիգոր ի Ծափա, Ս. Անտոն էր հայր բարի իբրեւ զՅիսուս, Ռափայել մեռաւ ի Կեսարիա քաղաքն եւ թաղեցաւ յԱմասիա ։*

**Հրահանգ Ց. — Ինչի՞ անուններ են. —** *Ստեփան, Մանշ, Զմիւռնիա, Մալթա, Վեսուվ, Նաբոլի, Միսիսիբի, Մխիթար Գոշ, Արսէն, Սրբուհի, Մովսէս, Եփրեմ, Ահարոն, Դաւիթ, Մինաս, Ագապի, Յովսէփ, Մարգար, Գալուստ, Սեդրաք, Թովմաս ։*

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ**

## 2. ՎՐԹԱՆԷՍ ԵՒ ԱՐԻՍՏԱԿԷՍ

Վրթանէս և Արիստակէս որդիք էին մեծի քահանայապետին Գրիգորի, և էր Արիստակէս կուսան՝ սուրբ ի մանկութենէ. զի թէպէտ և կրտսեր որդի էր, կանխաւ եհաս յաթոռ հայրենի եպիսկոպոսութեան։ Իսկ Վրթանէս էր ամուսնացեալ և անորդի. և բազում ժամանակս խնդրէր նա յԱստուծոյ, զի մի զրկեսցի նա յօրհնութենէ զաւակի։ Եւ ի ծերութեան նորա լուաւ Տէր աղօթից նորա. և ծնան նմա երկու որդիք երկուորեակք և կոչեաց զանուն երիցուն յանուն հօր իւրոյ Գրիգորիս և երկրորդին՝ Յուսիկ։

## ՎՐԹԱՆԷՍ ԵՒ ԱՐԻՍՏԱԿԷՍ

Վրթանէս և Արիստակէս մեծ քահանայապետին Գրիգորի որդիներն էին, և Արիստակէս կոյս էր, մանկութենէ սուրբ. որովհետև թէպէտ և պզտիկ զաւակն էր, շուտով հայրենի եպիսկոպոսութեան աթոռը հասաւ։ Իսկ Վրթանէս ամուսնացած էր և անորդի. և շատ ժամանակներ Աստուծմէ կը խնդրէր զաւկի օրհնութենէ չզրկուիլ։ Եւ անոր ծերութեան ատեն Աստուած լսեց անոր աղօթքը և ծնան անոր երկու երկուորեակ որդիներ և մեծը կոչեց իւր հօր անունով Գրիգոր և երկրորդը՝ Յուսիկ։

*( Որոշեցէք յատուկ անուններն սոյն հատուածին ։ )*

---

## ՀԱՒԱՔԱԿԱՆ ԱՆՈՒՆ

*Հաւաքական անուն կը կոչուին այն բառերն՝ որոնք*

*հաւաքման գաղափարը կը յայտնեն, ինչպէս. բազմութիւն, ժողովուրդ, բանակ։*

*Գրաբարի մէջ գերի, գերութիւն, քահանայութիւն կը նշանակեն բոլոր գերիները, քահանաները, Ասոնք ալ հաւաքական բառեր են, զոր օր. Դարձուցանէր կայսրն Յունաց զգերութիւն արքային Պարսից։*

## ԹԱՆՁՐԱՑԵԱԼ ԵՒ ՎԵՐԱՑԵԱԼ ԲԱՌԵՐ

***Թանձրացեալ** կը կոչուին այն բառերն, որ կը նշանակեն անձ կամ իր, զորս մենք կրնար շօշափել, տեսնել, եւլն, զոր օր. վաճառական, ձի, ծառ։*

***Վերացեալ** կը կոչուին այն բառերը, զորս մտքով կ'ըմբռնենք, զոր օր. մեծութիւն, փառք, աւիւն։*

**Հարցարան**. — Ո՞ր բառերն *հաւաքական* են. — Ո՞րոնք են *վերացեալ* եւ *թանձրացեալ* բառերն։

**Հրահանգ 9**. — Հետեւեալ թանձրացեալ բառերը վերացեալի վերածեցէք. — *Մանուկ, տէր, հայր, մայր, եղբայր, մշակ, հայրապետ, մարդ, նկարիչ, բանաստեղծ, թշուառ, արձանագործ, ուսանող, կայսր, երաժիշտ, բարեկամ, ճարտարապետ, որսորդ, ագահ, հիւպատոս, տեսուչ, ոսոխ, բժիշկ, թշնամի, նախագահ, նաւարկու, ծոյլ, գերի, աւազակ, գող։*

**Հրահանգ 10**. — Հետեւեալ վերացեալ բառերը թանձրացեալ ըրէք. — *Անմեղութիւն, մեծութիւն, խաղաղութիւն, պատերազմ, սէր, ծերութիւն, գերութիւն, դպրութիւն, ծուլութիւն։*

**Հրահանգ 11**. — Աշակերտը թող որոշէ հետեւեալ վերացեալ եւ թանձրացեալ բառերն — *Քաղցրութիւն, ծխնելոյզ, տանիք, բարութիւն, զղջում, արագութիւն, դանդաղութիւն, դուռն, պատուհան, համեստութիւն,*

*հպարտութիւն , բարեկամութիւն , ծառ , անգթութիւն , վերարկու , նախանձ , ժուժկալութիւն , ծաղիկ , սալոր , հնազանդութիւն , ագահութիւն ։*

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ**

### 3. ՀՐԱՅՐԵԱՑ

Ժողովուրդն տրտնջէր չարաչար առաջի Տեառն. և լուաւ Տէր և բարկացաւ սրտմտութեամբ։ Եւ բորբոքեցաւ ի նոսա հուր ի Տեառնէ. և եկեր զմասն ինչ ժողովրդեանն։ Եւ աղաղակեաց ժողովուրդն առ Մովսէս և յաղօթս եկաց Մովսէս առ Տէր և դադարեաց հուրն։ Եւ կոչեցաւ անուն տեղւոյն այնորիկ Հրայրեաց. զի բորբոքեցաւ ի նոսա հուրն ի Տեառնէ։

### ՀՐԴԵՀ

Ժողովուրդը շատ կը գանգատէր Աստուծոյ առջև և լսեց Աստուած և շատ բարկացաւ։ Եւ Աստուծոյ կողմէն անոնց վրայ կրակ բորբոքեցաւ և այրեց ժողովրդին մէկ մասը։ Եւ ժողովուրդը Մովսէսի աղաղակեց և Մովսէս Աստուծոյ աղօթեց և կրակը դադրեցաւ։ Եւ այն տեղւոյն անունը Հրայրեաց կոչուեցաւ. որովհետև Աստուծոյ կողմէն անոնց վրայ կրակ բորբոքեցաւ։

*( Գտէք վերացեալ եւ թանձրացեալ բառեր ։ )*

---

## *ԱՆՈՒԱՆՑ ԹԻՒԸ*

*Անուններուն մէկ կամ մէկէ աւելի առարկաներ կամ անձեր ցուցընելը թիւ կ'ըսուի ։*

*Թիւը երկու է, եզակի եւ յոգնակի ։*

*Եզակին մէկ հատ կը ցուցընէ . յոգնակին մէկէ աւելի . ինչպէս , բան եզակի է , բանք յոգնակի ։*

*Գրաբարի մէջ եզակի բառ մը յոգնակի շինելու համար ընդհանրապէս բառին վերջ ք մը կը դրուի ։*

*Անեզական կ'ըսուին այն անուններն՝ որ եզակի չունին . անյոգնական կ'ըսուին անունք՝ որոնք յոգնակի*

*չունին: Ինչպէս, լոյս, սէր, խաւար, հարաւ, հիւսիս՝ անյոգնական են. իսկ աղօթք, փառք, ընթրիք, հարսանիք՝ անեզական են:*

**Հարցարան.** — *Թիւ* որու կ'ըսուի. — *Թիւը* քանի՞ է: — *Եզակին* ինչ կը ցուցնէ, *Յոգնակին* ինչ. — *Անեզական* որու կ'ըսուի, *Անյոգնական* որու:

**Հրահանգ 12.** — Յոգնակիի վերածեցէք քով. — *Մայրի, ծառ, կաղնի, եղեւին, խաղող, ծիրան, տախտակ, գործ, կաղին, շուշան, ճշմարտութիւն, վարժարան, դատ, մատեան, խորդենի, կնձնի; սերկեւիլ, ընկոյզ:*

**Հրահանգ 13.** — Հետեւեալ բառերէն ո՞րոնք անեզական եւ ո՞րոնք անյոգնական են. — *Կամք, աղօթք, սէր, երկինք, դժոխք, յոյս, հաւատք, կրօնք, անէծք, ինչք, կերպարանք, միտք, Նախանձ, աչք, զօր, լոյս, կեանք, երկիր, քաղց, ասր, մեղր, կաթն:*

## ՀՈԼՈՎ

*Գեղեցիկ է աշխարհ. ունայն են կեանք աշխարհի. մարդս գոհ չէ աշխարհէ: Այս օրինակներուն մէջ կը տեսնենք որ աշխարհ բառն այլ եւ այլ ձեւեր առած է:*

*Խօսելու եւ գրելու ատեն բառերուն ընդունած այս ձեւերը հոլով կ'ըսուին, զոր օր. գետ, գետոյ, գետով. ձեռք, ձեռաց, եղն:*

*Վեց տեսակ հոլով կայ. Ուղղական, սեռական, տրական, հայցական, բացառական, գործիական:*

*Ուղղականը բառի մը չփոփոխուած ձեւն է եւ ո՞վ կամ ի՞նչ հարցմամբ կը գտնուի, սեռականը ո՞րու կամ ի՞նչ բանի ըլլալը կը ցուցնէ, տրականը մէկու մը ուղղել, դիմել կամ տալ կը ցուցնէ, հայցականը զո՞վ կամ զի՞նչ*

*հարցման, բացառականը որմէ՞, ի՞նչ բանէ, գործիականը որո՞վ, ի՞նչ բանով։*

**Հարցարան**. — *Հոլով* ո՞րն է կրնայ. — Քանի՞ տեսակ հոլով կայ. — Որո՞նք են ուղղական, սեռական, տրական, բացառական, գործիական։

**Ծանօթ**. — *Սեռական եւ տրական շատ անգամ ձեւով նոյն են։*

**Հրահանգ 14**. — **Որոշել հետեւեալ բառերուն հոլովները**. — *Կարգաւ, զկառս, ի ձիոյ, լեզուաց, սերման, կամթին, նեղութեան, ի ցաւոց, զթիկունս, բանկոնի, լեառն, դրամբ, հացիւ, զբերինս, լուսոյ, խորհրդոյ, ի քաղաքէ, երկրի, սահմանօք, զբազուկս, յօրինաց, անուամբ, յարդարոյ, ձեռամբ, քարին, գլխով, գանձանակ, զկեանս, սրբութեան, Յիսուսի, զտախտակս, եզին։*

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ**

**4. ԶԱԿՔԷՈՍ**

Մտեալ (Յիսուսի) շրջէր ընդ Երիքով. և ահա այր մի անուն կոչեցեալ Զակքէոս, և նա էր մաքսապետ, և ինքն մեծատուն. և խնդրէր տեսանել թէ ո՛վ իցէ Յիսուս. և ոչ կարէր ի բազմութենէն, զի կարճ էր հասակաւ։ Եւ ընթացեալ յառաջս՝ ել ի ժանտաթզենին, զի տեսանիցէ զնա, քանզի ընդ այն իսկ անցանելոց էր։ Եւ իբրև եկն ի տեղին, հայեցաւ ի վեր Յիսուս և ասէ ցնա. Զակքէ, փութա էջ այտի, զի այսօր ի տան քում արժան է ինձ ագանել։

**ԶԱԿՔԷՈՍ**

Յիսուս մտնելով Երիքովի մէջ կը պտըտէր և ահա անուամբ Զակքէոս կոչուած մարդ մը. և նա մաքսապետ էր և ինքն հարուստ. և կ'ուզէր տեսնել թէ ո՛վ է Յիսուս և չէր կրնար բազմութենէն, վասն զի կարճահասակ էր։ Եւ առաջ վազելով՝ ժանտաթզենւոյն վրայ ելաւ, որպէս զի տեսնէ զանի, քանզի անկէ իսկ պիտի անցնէր։ Եւ երբ այն տեղը եկաւ, Յիսուս վեր նայեցաւ և կ'ըսէ անոր. Զակքէոս, ծն ատկէ իջիր, որովհետև այսօր քու տանդ մէջ պէտք է որ ես իջեւանիմ։

*(Որոշեցէք սոյն հատուածին հոլովները։)*

## ՀՈԼՈՎՄՈՒՆՔ

Ամէն բառ միեւնոյն կերպով չի հոլովիր. բառերն հոլովելու զանազան կերպին հոլովումն կ'ըսուին։

Հոլովմունք երկու մասի կը բաժնուին. 12 կանոնաւոր հոլովմունք եւ մի քանի անկանոն հոլովմունք։

## ԿԱՆՈՆԱՒՈՐ ՀՈԼՈՎՄՈՒՆՔ

### Ա. Հոլովում, Բան

| | ԵԶԱԿԻ | | ՅՈԳՆԱԿԻ | |
|---|---|---|---|---|
| Ուղղական | Բան | խօսք | Բանք | խօսքեր |
| Սեռական | Բանի | խօսքի | Բանից | խօսքերու |
| Տրական | Բանի | խօսքին | Բանից | խօսքերուն |
| Հայցական | զ Բան | խօսքը | զ Բանս | խօսքերը |
| Բացառական | ի Բանէ | խօսքէն | ի Բանից | խօսքերէն |
| Գործիական | Բանիւ | խօսքով | Բանիւք | խօսքերով |

Այսպէս կը հոլովին. բան, բանտ, տօն, արքայ, ախտ, արահետ, բազէ, հաց, գուրպայ, դշխոյ, ընծայ, թուղթ, խայծ, մայտ։

**Հարցարան**. — Հոլովումն ինչ կ'ըսուի. — Հոլովմունք քանի մասի կը բաժնուի. — Ա. հոլովումն ինչպէս կը հոլովի. — Անեզականներէն որոնք Ա. հոլովման տակ կը հոլովուին։

**Հրահանգ 15.** — Բանին պէս հոլովուածներ. (Որոշել հոլովները). — Ուխտիւ, Եղիայի, ի վարդէ, յօձէ, կողի, բառից, հալուէից, զնետս, ի մարգարէից, Նետիւք, ի կայանէ, մայրիւ, Փելիքսիւ, զխոյր, ըղձիւք, ի ծնծղայէ, զծերպս, փայտիւ, ընծայից, ի դշխոյէ։

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

## 5. ԱՐԵԳԱԿՆ

Մեծ է արեգակն և բիւրապատիկ և անբաւ մասամբք մեծ է քան զայն, որչափ երեւի ։ Տես որչափ բազմութիւն լուսաւորաց են յերկինս, և ոչ են բաւական լուսաւորել զխուր տրտմութիւն գիշերոյն, և արեգակն միայն միով անձամբ, յորժամ երեւի և տարածեսցէ ի վերայ օդոյ զլոյսն, զամենայն սահմանս աշխարհիս միանգամայն լուսաւորէ։

Նաև մինչչեւ երեւեալ և ընդ երկիր ծաւալեալ իցէ քաղցրահայեաց *ճառագայթիւքն*, ցրուէ մաշէ զխաւարն, և հետակորոյս առնէ զաղջամուղջն, բառնայ ըզտխուրն տրտմութիւն և զթանձրամած օդոյն զստուերն մերկանայ յերեսաց երկրի։

## ԱՐԵՒ

Մեծ է արեւը և իր երեւցածէն աւելի մեծ է բիւրիցս և անբաւ մասերով ։ Նայէ որչափ լուսաւորներ կան երկնքի մէջ, և բաւական չեն լուսաւորել գիշերուան տխուր տրտմութիւնը, և արեւը միմինակ, երբ կ'երեւի և տարածէ օդին վրայ լոյսը, աշխարհիս բոլոր սահմանները միանգամայն կը լուսաւորէ։

Նաև երբ տակաւին չէ երեւցած և քաղցրահայեաց ճառագայթներով չէ ծաւալած, կը ցրուէ կը մաշէ խաւարը և կ'անհետացնէ աղջամուղջը, կը վերցնէ տխուր տրտմութիւնը և թանձր օդին ստուերը երկնի երեսէն կը փարատէ։

*( Ճառագայթը հոլովեցէք Ա. հոլովման պէս ։ )*

---

### Բ. Հոլովում, Քաղաք

| ԵԶԱԿԻ | | | ՅՈԳՆԱԿԻ | |
|---|---|---|---|---|
| *Ո.* | *Քաղաք* | *քաղաք* | *Քաղաքք* | *քաղաքներ* |
| *Ս.* | *Քաղաքի* | *քաղքի* | *Քաղաքաց* | *քաղաքներու* |
| *Տ.* | *Քաղաքի* | *քաղքին* | *Քաղաքաց* | *քաղաքներու* |
| *Հ.* | *զ Քաղաք* | *քաղաքը* | *զ Քաղաքս* | *քաղաքները* |
| *Բ.* | *ի Քաղաքէ* | *քաղքէն* | *ի Քաղաքաց* | *քաղաքներէն* |
| *Գ.* | *Քաղաքաւ* | *քաղքով* | *Քաղաքօք* | *քաղաքներով* |

*Այսպէս կը հոլովին՝ ընկեր, դատաւոր, աւազան, փառաւոր, բանակ, ժամանակ, յատակ, զօրական, գերան, իրան, խաւար, մեծ, պարգեւ, իր, ծնող, ազգ, երկնաւոր, զինուոր, կշռորդ, խայթոց, լեզու, հզօր։*

*Նոյնպէս անեզականներն, ինչպէս. աչք, փառք, աղաչանք, զարմանք, հանգամանք, խելք, արտասուք. Ալանք, Գուգարք, Մարք, Միջագետք։*

**Դիտելիք.** — *Իրենց վերջին վանկին մէջ ա գիրն ունեցող բազմավանկ բառերէն շատը Բ. հոլովման պէս կը հոլովին։*

**Հարցարան.** — Ի՞նչպէս կը հոլովի *քաղաք*։

**Հրահանգ 16.** — **Որոշեցէք հետեւեալ հոլովները.** — *ժամանակի, ի սենեկէ, քաղաքաւ, իշխանաց, զապարանս, ի տանջանաց, կենօք, զփառս, գաւազանաւ, կամաց, կարգի, ի ջրհեղեղէ, սուսերաւ, զընկերս, փոխարինի, մրրկի, ի դահճաց, ձեռագրի, լեզուաւ, եղջերուի, յաղմկէ, մակուկաւ, որսորդաց։*

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

## 6. ՀԻՆ ԱԹԷՆՔ

Չիք *քաղաք* յԵլլադա, յորում իցեն այնչափ *արձանք յիշատակաց*՝ որչափ յԱթէնս։ Խիտ առ խիտ ամբառնան անդ շինուածք վաղեմիք և հոյակապք, և հրաշակերտք քանդակագործութեան մինչև ի *հրապարակս քաղաքին* յաճախեալ շքեղազարդ *զգաւիթս* և *զմեհեանս* յօրինեն։ Շունչ իմն և հոգի ամենայն ուրեք դարանեալ, և ա-

## ՀԻՆ ԱԹԷՆՔ

Ելլադայի քաղաքներուն մէջ միայն Աթէնքն է, որ այնքան յիշատակաց արձաններ ունի։ Հոն խիտ խիտ կը բարձրանան վաղեմի և հոյակապ շէնքեր և քանդակագործութեան հրաշակերտներ, որոնք քաղաքին հրապարակներուն մէջ շատ կան, գաւիթները ու մեհեանները աւելի կը շքեղացնեն։ Ամէն տեղ շունչ մը և հոգի

մենայն ինչ բարբառի ընդ *այս* մտադիր տեսողին։ *Ձեռակերտք եւ-եթ ազգիս յիշատակարանք զվէպս* քաջութեանց նորա, զշնորհընկալ *մեծարանացն* և զկրօնից յինքեանս բովանդակեն։

մը տարածած է և ամէն բան կը խօսի հոն ուշադիր տեսնողին աչքին։ Այս ազգին ձեռակերտ յիշատակարանները միայն անոր քաջութեանցը, երախտագէտ յարգանաց և կրօնից պատմութիւնները կը բովանդակեն իրենց մէջ։

*(Շեղագիր բառերը հոլովեցէք քաղաքին վրայ։)*

---

## *ՍԵՌԱԿԱՆ ՀՈԼՈՎ, ՅԱՏԿԱՑՈՒՑԻՉ*

*Հայերէնի մէջ սեռական հոլովին յատկացուցիչ կ'ըսուի, որ գոյականին որո՞ւն ըլլալը կը ցուցնէ։*

*Յատկացուցչին վերաբերած բառը յատկացեալ կ'ըսուի, զոր օր. Աւուրք մարդոյ իբրեւ զխոտ ցամաքին; մարդոյ բառն յատկացուցիչ է, աւուրք յատկացեալ։*

*Յատկացուցիչը գրաբարի մէջ ընդհանրապէս յատկացեալէն վերջ կը դրուի։*

**Հարցարան.** — *Յատկացուցիչ* ինչու կ'ըսուի. — *Յատկացեալ* ինչու կ'ըսուի. — Յատկացուցիչը ուր կը դրուի։

**Հատուած 17.** — Յատկացուցիչ եւ յատկացեալ. — *Որդի մարդոյ, հրեշտակք երկնից, լոյս արեւու, աստեղք երկնից, ճրագ մարմնոյ, որդիք Նոյայ, լերինք Լիբանանու, ծառք անտառի, տէր կենդանեաց եւ մեռելոց, առաջնորդ փրկութեան Իսրայէլի, աթոռ Աստուծոյ, լրումն օրինաց, արարիչ երկնի եւ երկրի, օրհնութիւն ժողովրդեան, մարմնոյ եւ հոգւոյ կառավար, ժանիք առիւծու, մայր բարեաց, աղբիւր լուսոյ։*

**Հատուած 18.** —*(Նոյն) Սուրբն Գրիգորիոս արդարութեան օրինակ, գեղեցիկ գործարան հոգւոյն Աստուծոյ, նկարագիր հովուապետաց, պարծանք մարտիրոսաց, ան-*

*չփչանելի լոյսն տիեզերաց, օրինակ առաքինութեան, ամրութիւն եկեղեցւոյ, բժիշկն հիւանդաց, արմատն համբերութեան։*

**Հրահանգ 19. — Կէտադրեալ տեղերն լրացուցիչ դրէք. —** *Հրացան (որսորդի), վրձին..., սրինգ..., խարազան..., ուռկան..., մանգաղ..., արօր..., ասեղ..., ձայն..., մունչիւն..., աղաղակ..., ծաղկունք..., պտուղք..., բողբոջք...։*

### Գ. Հոլովում, Զգեստ

| | ԵԶԱԿԻ | | ՅՈԳՆԱԿԻ | |
|---|---|---|---|---|
| Ո. | Զգեստ | հագուստ | Զգեստք | հագուստներ |
| Ս. | Զգեստու | հագուստին | Զգեստուց | հագուստներուն |
| Տ. | Զգեստու | հագուստին | Զգեստուց | հագուստներուն |
| Հ. | զ Զգեստ | հագուստը | զ Զգեստս | հագուստները |
| Բ. | ի Զգեստէ | հագուստէն | ի Զգեստուց | հագուստներէն |
| Գ. | Զգեստու | հագուստով | Զգեստուք | հագուստներով |

*Այսպէս կը հոլովին՝ Արեւ, առաւօտ, սանձ, զօր, ծով, աղուէս։*

**Անեզականներ. —** *Բարք, վարք, պարտք։*

**Յատուկ անուններ. —** *Թովմաս, Աբրահամ, Ղուկաս, Յորդանան։*

**Դիտելիք. —** *Այս հոլովման տակ գացող մէկ քանի բառերու բացառականը* **ուէ** *կ'ըլլայ. ինչպէս, զարդուէ, խրատուէ, նախանձուէ, եւլն։*

**Հարցարան. —** Հոլովեցէք *զգեստ*. — Ի՞նչ դիտելիք կայ այս հոլովման տակ գացող բառերուն վրայ։

## 7. ԾՈՎ

Բարի և գեղեցիկ է *ծով* ի խաղաղ ժամանակի, յորժամ հանդարտացեալ կայցէ յալեաց և ի մրրկաց ի պարզ և յստակ ժամանակի. յորժամ միտ եդեալ նայիցիս ընդ ծիծաղել ջուրց նորա, որ յազգի յազգի գոյնս ցուցանեն զերփն երփն նարօտուց, մերթ ծիրանւոյ, մերթ կապուտակի, մերթ սեւաներկ երանգաց . . . ։

Բարի և գեղեցիկ է դարձեալ ծով, որ ասպնջական է հիւրամեծար գետոց ՚բազմաց, որ յամենայն տեղեաց մտանեն ի նա։ Առնու ամփոփէ զամենեսին և ինքն կայ ի նոյն սակի և ի նոյն սահմանի առանց թերութեան, յաւելուածութեան։

Բարի և գեղեցիկ է դարձեալ ծով, զի է պատճառք բարի, քանզի նովաւ ընտրին և սահմանին աշխարհք ի միմեանց։ Եւ է դարձեալ ճանապարհ յատակեալ ի շահ վաճառականաց և ամենայն կերպարանօք լցուցիչ է կարօտութեան մարդկան։

## ԾՈՎ

Բարի և գեղեցիկ է ծովը խաղաղ ատեն, երբ հանդարտ է ալիքներէ և մրրիկներէ պարզ և յստակ ժամանակը. երբ ուշադիր նայիս անոր ջուրերուն ծիծաղելուն, որ տեսակ տեսակ գոյներով կը ցուցընեն նարօտներու գոյներ, մերթ ծիրանիի, մերթ կապուտակի, մերթ սև գոյներու։

Բարի և գեղեցիկ է դարձեալ ծովը, որ հիւրամեծար հիւրընկալ է շատ գետերու, որ ամէն տեղերէ անոր մէջ կը մտնեն։ Կ'առնու կ'ամփոփէ զամենքը և ինք նոյն չափու և սահմանի մէջ է առանց պակսելու, աւելնալու։

Բարի և գեղեցիկ է դարձեալ ծով, որովհետև բարի պատճառ է. քանզի անով կընտրուին և կը սահմանուին աշխարհներ մէկմէկէ։ Եւ է դարձեալ շտկուած ճամբայ մը վաճառականութեան համար և ամէն կերպով մարդոց կարօտութիւնը կը լեցրնէ։

( *Գ. Հոլովման պէս հոլովեցէք ծով* ։ )

### Դ. Հոլովում, Գետ

| | ԵԶԱԿԻ | | ՅՈԳՆԱԿԻ | |
|---|---|---|---|---|
| Ո. | Գետ | գետ | Գետք | գետեր |
| Ս. | Գետոյ | գետին | Գետոց | գետերուն |
| Տ. | Գետոյ | գետին | Գետոց | գետերուն |
| Հ. | զ Գետ | գետը | զ Գետս | գետերը |
| Բ. | ի Գետոյ | գետէն | ի Գետոց | գետերէն |
| Գ. | Գետով | գետով | Գետովք | գետերով |

*Այսպէս կը հոլովին՝ Աղիւս, ամբար, արարած, արդար, արծաթ, արմատ, արտ, բարբառ, բու, գոգ, երգ, երդ, երէ, թել, թեփ, թոք, ժանկ, խաղող, խմոր, խնամ, խոտ, խորգ, խոփ, ծառ, ծեր, ծոց, կարապ, կեղ, եւլն։*

**Անեզականք**. — *Պահք, տիք, դժոխք, կուռք, կոչունք։*

**Դիտելիք**. — *Այս հոլովման տակ գացող անուններուն սեռականը ու բացառականը, եւ ի կամ յ նախդրիւ տրականը առաջին հոլովման պէս ալ կ'ըլլայ, ինչպէս, թուղթ, ի թղթի, մարմին, ի մարմնի, եւլն։*

**Հարցարան**. — Ի՞նչպէս կը հոլովի *գետ*. — Ի՞նչ դիտելիք կայ այս հոլովման տակ գացող բառերու մասին։

**Հրահանգ 20**. — Որոշեցէք հետեւեալ խօսքերուն մէջ թէ շեղագիր բառերէն ո՞րն սեռական եւ ո՞րն տրական է։

*Որ ողորմի* աղքատին, *փոխ տայ* Աստուծոյ. — *Պարզ եւ մեկին բանք՝ են պատգամք* ճշմարտութեան. — *Գործք* Տեառն *ամենայն բարի են*. — *Ջուր* ծովու *աղի է*. — *Կարես տեսանել զանիւն* լուսնի *յորժամ պարզ եւ վճիտ եւ յստակ իցէ երկինք յամպոյ*. — Տեառն Աստու-

*ծոյ քում երկիրպագցես եւ զնա միայն պաշտեսցես. — Պատարագ Աստուծոյ՝ հոգի խոնարհ. — Սկիզբն իմաստութեան՝ երկիւղ Տեառն. — Ո՞ հաւատաց Տեառն եւ յամօթ եղեւ. — Պսակ ծերոց՝ որդիք որդւոց, պարծանք որդւոց՝ հարք իւրեանց. — Լո՛ւր (լսէ), որդեա՛կ, խրատու հօր քո. — Ունկնդիր լերուք վարժապետաց ձերոց եւ հպատակ կացէք նոցա. — Փառք ծերոց՝ ալիք (ճերմակ մազեր)։*

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

### 8. ՍՏԵՂԾՈՒՄՆ ԱՇԽԱՐՀԻ

Աստուած արարիչ աշխարհիս, ած ի չգոյէ ի գոյ իւրով անմոլարն գիտութեամբ։ Եւ անդէն ընդ խորհելն՝ թէ ո՛րպէս պարտ և պատշաճ իցէ առնել արարածս, կանգնեցաւ եկաց միանգամայն ամենայն աշխարհս գոյիւ իւրով...։ Զգեաց զերկինս ըստ պատշաճի իւրոյ բնութեանն, և հաստատեաց զերկիր ըստ պիտոյից մերոց և ըստ հաճութեան կամաց իւրոց սփռեաց տարածեաց ընդ ամենայն աշխարհս զկերպարանս *հրոյ* և *զջրոյ* և *զօդոյ*, և որպէս պահանջէր բնութիւնն առնուլ կերպարանս, նոյնպէս և գտաւ հրամանաւ արարչին։

### ԱՇԽԱՐՀԻ ՍՏԵՂԾՈՒՄԸ

Աստուած այս աշխարհի արարիչը, ոչնչէ ստեղծեց իր անսխալ գիտութեամբ։ Եւ մտածելուն պէս թէ ի՛նչպէս պէտք է և յարմար է ստեղծել արարածներ, կանգնեցաւ ելաւ բոլոր աշխարհս ամբողջովին...։ Տարածեց երկինքը իր բնութեան յարմար և երկիրը հաստատեց մեր պէտքերուն համաձայն և իր ուզածին պէս սփռեց տարածեց բոլոր աշխարհի վրայ հրոյ, ջրոյ և օդոյ կերպարանքը, և ինչ կերպարանք որ պիտի առնուր բնութիւնը, նոյնպէս ալ եղաւ արարչին հրամանաւ։

*(Շեղագիր բառերը հոլովեցէք Դ. հոլովման՝ վրայ. հուր բառը անյոգնական է։)*

### Ծ. եւ Ջ. Հոլովմունք

| | ԵԶԱԿԻ | | ՅՈԳՆԱԿԻ | |
|---|---|---|---|---|
| Ո. | Հռովմ | Հռոմ | Գայիանէ | Գայիանէ |
| Ս. | Հռովմայ | Հռոմին | Գայիանեայ | Գայիանէին |
| Տ. | Հռովմայ | Հռոմին | Գայիանեայ | Գայիանէին |
| Հ. | զ Հռովմ | Հռոմը | զ Գայիանէ | Գայիանէն |
| Բ. | ի Հռովմայ | Հռոմէն | ի Գայիանեայ | Գայիանէէն |
| Գ. | Հռովմաւ | Հռոմով | Գայիանեաւ | Գայիանէով |

*Այս երկու յատուկ անուանց պէս կը հոլովին շատ մը յատուկ անուններ . զոր օր. Յեսու , Եղեմ, Ադին , Անահիտ , Արտեմիս , Յակոբ , Եսայի , Անտիոք . Նանէ (դիցուհի) , Սաղիմ։*

**Հարցարան** . — Ի՞նչպէս կը հոլովին Ծ. եւ Ջ. հոլովումները ։

**Գիտելիք** . — *Եզակի յատուկ անունները յոգնակի չունին . բայց եթէ նոյն անունն ունեցողները կամ նմանները ըսել պէտք ըլլայ , յոգնակի կ'ըլլան քէ ով , սէ ով կամ եանք եւ անք վերջաւորութեամբ , ինչպէս , Քրիստոսք, Յուդայք, Ադամանք, Գրիգորեանք, Գրիգորները։*

*Յոգնակի ք, ս կը դրուի երբեմն բառին սեռականին, բացառականին ու նախդրիւ հոլովներուն վրայ ու կը նշանակէ անոնք որ անոնց են, անով են, անկէ են եւայլն. ինչպէս , Աստուծոյք, զաստուծոյսն . — Մարմնոյք, զմարմնոյսն . — Երկրիք, զերկրիսն, զմարմնովսն։*

**Հրահանգ 21.** — Որոշեցէք շեղագիր բառերուն մէջէն գործիականները եւ բացառականները . — *Աստուած ստեղծ զԱդամ ի հողոյ երկրի . — Ոչ միայն հացիւ կեցցէ մարդ . — Ուսարուք (սորվեցէք) յինէն , զի հեզ եմ եւ խոնարհ սրտիւ . — Փախիր ի մեղաց իբրեւ յերեսաց օձի . — Քրտամբք երեսաց քոց կերիցես զհաց քո . — Ոյք վարէին արտասուօք , ցնծութեամբ հնձեսցեն . — Փրկեա զմեզ ի չարէն . — Յիշատակ արդարոյ գովու-*

*թեամբ. — Խոհեմով գործեա զամենայն. — Արդեամբք եւ բանիւք պատուեա զհայր քո, զի եկեսցէ ի վերայ քո օրհնութիւն ի նմանէ ։*

---

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

#### 9. ՊԱՌՆԱՍ

*Պառնաս* ոչ միակ լեառն է, այլ գօտիք լերանց տարածեալ ընդ հիւսիս և ի հարաւակողմն յերկուս կատարս աւարտեալ, առ որովք *Դեղփիս* քաղաք կառուցեալ կայ, ոչինչ աւելի քան զվեշտասան ասպարէզս շրջաբերեալ։ Ոչ գոն նորա պարիսպք, այլ ի վախից շուրջանակի յերից կողմանց պատեալ ամրանայ։ Ընդ խնամակալութեամբ Ապողոնի հովանաւորեալ, ընդ նմին և այլոց ոմանց ի դից տանի պաշտօն՝ դաբանակալս աթոռոյ նորա զնոսա անուանեալ, որ են՝ *Լաօոնէ*, *Արտեմիս* և նախահայեացն *Աթենաս*։

#### ՊԱՌՆԱՍ

Պառնաս ոչ միակ լեռ մ'է, այլ լերանց գօտիներ դէպի հիւսիս տարածուած և հարաւի կողմը երկու կատարներով աւարտած, որոնց քով Դեղփիս քաղաքը շինուած է, տասնըվեց ասպարէզով շրջափակուած։ Չունի պարիսպներ, այլ երեք կողմէ գահավէժներով պատեալ կ'ամրանայ։ Ապողոնի խնամակալութեան տակ հովանաւորուած, անոր հետ ուրիշ մի քանի չ'աստուածներ կը պաշտէ, զանոնք անոր աթոռին դաբանակալներ անուանելով, որոնք են՝ Լատոնէ, Արտեմիս և նախահայեացն Աթենաս։

*( Հոլովեցէք շեղագիր յատուկ անունները ) ։*

---

### Է. Հոլովում

**Հրահանգ ԶԶ.** — *Եկեղեցի ոչ է շինուած մարդոյ. — Հաստատուն են դրունք եկեղեցւոյ. — Հաւատացելոյն պարտ է նուիրել զանձն եկեղեցւոյ. — Դու ես վէմ եւ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ. — Ցեկեղեցւոյ ուսանիմք զգնացս բարութեանց. — Եկեղեցեաւ*

*գտանեմք շնորհս. — Եկեղեցիք շնորհք են մեծին Աստուծոյ. — Բացան (բացուեցան) դրունք եկեղեցեաց. — Տալ եկեղեցեաց բաժին յընչից. — Նորոգեաց զեկեղեցիս. — Ամպարիշտք փախչին յեկեղեցեաց. — Պարծիմք եկեղեցեօք։*

*(Այս հրահանգը կարդալէ եւ թարգմանելէ յետոյ գրաւոր 'եւ բերանացի հոլովել եկեղեցի բառը, որ է օրինակ Ի. հոլովման։)*

*Այս հոլովման տակ կ'երթան շատ մը ի վերջաւորած բառեր. ինչպէս, ապակի, առաքինի, բարդի, բեւեկնի, գարի, գերանդի, գերի, գոլորշի, դափնի, դալարի, խեցի, կաշի։*

*Անեզականք. — Աւետիք, երախտիք, կարծիք, կեղծիք, ընթրիք, սպառնալիք, լալիք։*

**Դիտելիք.** — *Տեղի եւ տարի բառերուն բացառականը կ'ըլլայ ի տեղւոյէ, ի տարւոյէ։*

*Կան քանի մը բառեր՝ որոնց գործիականը կ'ըլլայ ւով, ւովք, ինչպէս, հոգի, որդի, հռովմայեցի, եւլն։*

**Հարցարան.** — Ի՞նչպէս կը հոլովի *եկեղեցի*. — Ի՞նչ դիտելիք կայ *տեղի* եւ *տարի* բառերուն բացառականին վրայ. — Ի՞նչպէս կ'ըլլայ մի քանի բառերու գործիականները։

**Հրահանգ 28.** — Եզակի սեռական եւ գործիական հոլովները յոգնակի ըրէք. — *Առանց* հաւատոյ *անհնար է հաճոյ լինել. — Ի վերայ* որդւոյ իմաստնոյ *ուրախ լինի սիրտ* հօր *(հարց). — Դաշտք լի են* ցորենով. — *Մի՛ ագցին (չմնան թող) վարձք* վարձկանի *առ քեզ մինչեւ ցառաւօտ. — Զարդ* երիտասարդի՝ *իմաստութիւն. — Ձեռք* ժրի *մեծացուցանեն. — Մի՛ արբենայք* գինեաւ. — *Երանի՛ այնոցիկ՝ որ սուրբ են* սրտիւ. —

*Որ իմաստուն է բանիւ՝ զանձն սիրելի ընծայէ. — Որդեա՛կ, մի՛ արհամարհեր զառակս ծերոյ. — Գործով բարւոյ հանդիպիմք ողորմութեան. — Մի բանիւ եւ լեզուաւ սիրեսցուք, այլ արդեամբ եւ ճշմարտութեամբ։*

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ**

### 10. ՈՐԴԻՔ ՆՈՅԻ

Սկսաւ Նոյ զերկիր գործել, տնկեաց *այգի*, և արբ *ի գինւոյն* և արբեցաւ, և մերկացաւ ի տան իւրում։ Եւ ետես Քամ հայր Քանանու, և ել պատմեաց երկուց արտաքոյ։ Առեալ Սեմայ և Յաբեթի հանդերձ, եդին ի վերայ թիկանց երկոցունց և գնացին յետս յետս և ծածկեցին զմերկութիւն հօրն իւրեանց և զերեսս իւրեանց յետս ընդդէմ ունէին։ Սթափեցաւ Նոյ *ի գինւոյ* անտի իւրմէ և գիտաց զինչ արար ընդ նա *որդին* իւր կրտսեր, և ասէ. Անիծեալ Քանան, և եղիցի ծառայ եղբարց իւրոց. ընդարձակեսցէ Աստուած Յաբեթի և բնակեսցէ ի տան Սեմայ և եղիցի Քանան ծառայ նոցա։

### ՆՈՅԻ ԶԱՒԱԿՆԵՐԸ

Սկսաւ Նոյ երկիր գործել, այգի տնկեց և խմեց գինիէն և գինովցաւ, և տանը մէջ մերկացաւ։ Եւ Քամ Քանանու հայրը տեսաւ և ելաւ պատմեց դուրսը իր երկու եղբայրներուն։ Սեմ և Յաբեթ զգեստ առնլով, երկու ուսերնուն վրայ դրին և ետ ետ գացին և իրենց հօր մերկութիւնը ծածկեցին և իրենց երեսը ետև դարձուցած էին։ Նոյ սթափեցաւ գինիէն և գիտցաւ թէ ինչ վարմունք ունեցաւ իր հետ պզտիկ որդին, և կ՚ըսէ. Անիծեալ ըլլայ Քանան և իր եղբայրներուն ծառայ. Աստուած Յաբեթը պիտի մեծցնէ և պիտի բնակի Սեմին տունը և Քանան անոնց ծառայ պիտի ըլլայ։

*(Շեղագիր բառերն հոլովեցէք ի հոլովման վրայ։)*

### Ը. Հոլովում, Փոքր

| | ԵԶԱԿԻ | | ՅՈԳՆԱԿԻ | |
|---|---|---|---|---|
| Ո. | Փոքր | պզտիկ | Փոքունք | պզտիկներ |
| Ս. | Փոքու | պզտիկին | Փոքունց | պզտիկներուն |
| Տ. | Փոքու | պզտիկին | Փոքունց | պզտիկներուն |
| Հ. | զ Փոքր | պզտիկը | զ Փոքունս | պզտիկները |
| Բ. | ի Փոքուէ, | պզտիկէն | ի Փոքունց | պզտիկներէն |
| Գ. | Փոքու, փոքումբ | պզտիկով | Փոքումբք | պզտիկներով |

*Այս հոլովման վրայ կ'երթան՝ Աւր, բարձր, թանձր, ծաղր, ծանր, կարծր, մանր, անդորր, յոգն, երէց ։ — Այս բառերէն ոմանք անյոգնական են ։*

*Թէեւ առնցմէ մի քանի հոլովները ուրիշ ձեւեր ալ ունին, բայց յաճախեալ չըլլալուն զանց կ'ընենք ։*

**Հարցարան**. — Ի՞նչպէս կը հոլովի *փոքր*։

#### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

#### 11. ՍՈԿՐԱՏ ԵՒ ՏՈՒՆ ԻՒՐ

Սոկրատ կառուցանէր իւր տուն *փոքր*. ոչ գիտեմ ո յամբոխէն, որպէս պատահէ յաճախ՝ ձայն եբարձ։ Աղէ դու այրդ այդպիսի՝ այդքան անձուկ կառուցանես քեզ տնակ։ Պատասխանի ետ Սոկրատ. Երանի թէ լցցի դա ճշմարիտ բարեկամօք։

*Ցոգունս* կոչին բարեկամք, բայց ճշմարիտք են սակաւք։

#### ՍՈԿՐԱՏ ԵՒ ԻՐ ՏՈՒՆԸ

Սոկրատ իրեն պզտիկ տուն մը կը շինէր. չեմ գիտեր թէ ժողովրդէն ո՛վ, ինչպէս ստէպ կը պատահի, պոռաց. Դո՛ւ այդպիսի մարդ մը ա՛յդչափ պզտիկ տո՞ւն կը շինես քեզի։ Պատասխանեց Սոկրատ. Երանի թէ այդ ճշմարիտ բարեկամներով լեցուի։

Շատ մարդիկ բարեկամ կը կոչուին, բայց քիչ են ճշմարիտները։

*( Հոլովեցէք շեղագիր բառերն ։ )*

### Թ. Հոլովում

**Հրահանգ 24.** — *Հիմն եւ արմատ ամենայն բարեգործութեանց խոնարհութիւնն է. — Շինեալ ի վերայ հիման առաքելոց եւ մարգարէից. — Հաստատութիւն տալ հիման. — Արկ նա զհիմն եկեղեցւոյ. — Դղրդեցաւ ի հիմանէ. — Տուն հիմամբ է տուն. — Արկան հիմունք տան տեառն. — Վէմ հիմանց. — Հիմանցն իսկ տային հարուած. — Հաստատեաց զհիմունս Սիոնի. — Տապալեցին զշինուածն ի հիմանց. — Երկիր հիմամբք սասանեցաւ եւ վարագոյր ընդմէջ հերձաւ (ճեղքուեցաւ)։*

*(Այս հրահանգը կարդալէ եւ թարգմանելէ յետոյ գրաւոր եւ բերանացի հոլովել հիմն, որ է օրինակ Թ. հոլովման ։)*

*Այս հոլովման վրայ կ'երթան՝ սերմն, արեգակն, աղեղն, եղեւն, ջերմն, հիւսն, կողմն, ոլոռն, որդն, որոմն, ուլն, ունկն, ամառն, ձմեռն, գեղարդն, անուն, ձեղուն, մահ, պաշտօն ։*

*Կողմն, սերմն, անուն բառերուն յոգնակիին կ'ըլլայ կողմանց, սերմանց, անուանց։*

*Անեզականք. — Աղամանք, արտեւանունք, իրաւունք, մկանունք, սրունք ։*

**Հարցարան.** — Ի՞նչպէս կը հոլովի հիմն։

#### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

#### 12. ՁԿՈՒՆՔ

Բազումք են ազգք *ձկանց*, և զատեալ մեկնեալ են ի միմեանց բնակութիւնք նոցա, ի նոսին զեռան և ի նոսին ճարակին, և ոչ

#### ՁԿՆԵՐ

Շատ են ձկանց տեսակները և անոնց բնակարանները մէկմէկէ զատուած են, անոնց մէջ կը վըխտան և անոնց մէջ կը ճարակին,

երբէք երբան յայլ սահմանս։ Բայց գոյ և ի ձկունս ազգ շրջող, որ իբրև միով խորհրդով գումարին ելանել յիւրեանց սահմանաց, ամենեքեան միագունդ միահամուռ խաղան, յամենայն կողմանց դդրդին անկեալ ի ջուս ըստ ընդաբոյս օրինաց։ Եւ արդ, ո՞վ իցէ որ զայնչափ բիւրազգի զվտառս ձկանց շարժեսցէ հանցէ չուել խաղալ միանգամայն և ո՞վ իցէ որ լինիցի նոցա առաջնորդ հեռաւոր և ընդերկար ճանապարհին։ Տեսանեմս զհրաման իմաստութեան արարչին, որ մինչև յայնպիսի փոքրկութիւն խոնարհի յիւրով ամենավարն առաջնորդութեամբ։

և երբէք չեն երթար ուրիշ սահման։ Բայց ձկանց մէջ կայ պտըտող տեսակ մը, որ կարծես մէկ խորհրդով կը գումարուին ելնելու իրենց սահմաններէն. ամենքն ալ միագունդ միահամուռ կ'երթան, ամէն կողմէ կը շարժին ճամբորդելու բնածին օրէնքին համեմատ։ Եւ արդ, ո՞վ է որ ձկանց այդչափ բիւրատեսակ խումբերը պիտի շարժէ հանէ չուելու երթալու ամբողջովին, և ո՞վ է որ անոնց հեռաւոր և երկար ճամբուն առաջնորդ պիտի ըլլայ։ Կը տեսնեմս արարչին իմաստութեան հրամանը, որ մինչև այնպիսի փոքրութեան կը խոնարհի իր ամէն բան վարող առաջնորդութեամբ։

*( Հոլովեցէք ձուկն ։ )*

**Հրահանգ 25. — Շեղագիր եզակի սեռական եւ տրական հոլովները յոգնակի բրէք.** — *Ցանկութիւն շահու. — Քաղցր են ջուրք գետոյ. — Առողջ է օդ անտառի. — Աշխատելոյն հրամայեաց զհանգիստն, եւ ոչ որդնապարար* **մարմնասիրի**. — *Քաղցր է մեղր, բայց ախտալից* **մարմնոյ** *վնաս առնէ. — Ամուր են դրունք տաճարի ։*

### Ժ. Հոլովում, Բարութիւն

**ԵԶԱԿԻ**

| | | |
|---|---|---|
| Ո. | Բարութիւն | բարութիւն |
| Ս. | Բարութեան | բարութեան |
| Տ. | Բարութեան | բարութեան |
| Հ. | զ Բարութիւն | բարութիւնը |
| Բ. | ի Բարութենէ | բարութենէ |
| Գ. | Բարութեամբ | բարութիւնով |

**ՅՈԳՆԱԿԻ**

| | | |
|---|---|---|
| Ո. | Բարութիւնք | բարութիւններ |
| Ս. | Բարութեանց | բարութիւններուն |
| Տ. | Բարութեանց | բարութիւններուն |
| Հ. | զ Բարութիւնս | բարութիւնները |
| Բ. | ի Բարութեանց | բարութիւններէ |
| Գ. | Բարութեամբք | բարութիւններով |

*Ժ. Հոլովման պէս կը հոլովին ութիւն վերջաւորած շատ բառեր ։*

*Նոյնպէս արիւն, սիւն, հանգիստ, տեսիլ, գալուստ, կորուստ, փախուստ, ժողովուրդ, խորհուրդ, ծնունդ ։*

*Փախուստ եւ թաքուստ բառերուն սեռականը եւ տրականը կ՚ըլլայ նաեւ փախստի, թաքստի ։*

**Հարցարան**. — Ի՞նչպէս կը հոլովի Ժ. հոլովումն ։

**Հրահանգ 26**. — Շեղագիր եզակի հայցական եւ գործիական հոլովները յոգնակի ըրէ. — *Կամեցաւ Աստուած զբարութիւն իւր ցուցանել. — Ծածկեցան երկինք ամպով. — Եւ արար տէր զասուն եւ զանասուն. —*

*Սիրեմ ես զորդի առնն.— Առաքինութեամբ պարտ է երեւելի լինել։*

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ**

**13 ՏԻՏՂՈՆ**

Հայեաց ընդ ծիծառն անջատ և միանձն, զիարդ գալակեցի տք-կեալ *զօրութեամբն* առնէ ղաղարս անձին։ Յորժամ զտառապանաց բունիկն կամի շինել, բերանացի քաղէ տանի շիւղս, և քանզի ոտ-իւքն ոչ կարէ կրել կաւ, զծայրս մագլացն ի ջուր թանայ և ելանէ ընդ մանր փոշի զնայ և այսպիսի հնարիւք առ սակաւ սակաւ շինէ զբունիկն։ Դնէ նախ զկաւն և ա-պա զշիւղն ի վերայ իբրև զպա-հանգս կապէ, և այնպէս կատա-րէ զշինուած բունոյն, զի հանէ և սնուցանէ ի նմա ձագս։ Եւ եթէ դէպ տացէ ցաւել աչաց միոյ ու-րուք ի ձագաց անտի, և կամ հարցի ընդ իմիք և վնասեսցի, հնարս *բժշկութեան* գտանէ։

**ՏԻՏՂԱՌԸ**

Նայէ՛ մինաւորիկ ծիծեռնա-կին, ինչպէս կ՚աշխատի, ակյար զօրութեամբ իրեն համար բոյն կը շինէ. Երբ ուզէ շինել իր խեղճ բունիկը, բերնովը կը քաղէ կը տանի շիւղեր եւ որովհետև ոտ-քով չկրնար կաւ տանիլ, մագիլ-ներուն ծայրերը ջուրին մէջ կը թրջէ և կ՚ելնէ փոշւոյ վրայ կը քալէ և այսպիսի միջոցաւ կամաց կամաց բունիկ կը շինէ. Նախ կաւը կը դնէ և ապա շիւղը վը-րան իբրեւ գերան կը կապէ եւ այնպէս կը լմրնցնէ բունին շինու-թիւնը, որպէս զի անոր մէջ ձա-գեր հանէ և սնուցանէ. Եւ եթէ պատահի որ ձագերէն միոյն աչքը ցաւի և կամ թանի մը զարնուի և վնասուի՛ բժշկելու միջոց կը գտնէ.

*(Տեղագիր բառերն Ժ. Հոլովման համեմատ հոլովել։)*

## ԺԱ. Հոլովումն

**Հրահանգ 27.** — Ահա գառն Աստուծոյ՝ որ բառնայ զմեղս աշխարհի. — Երանելիք կոչեցեալ են յընթրիս հարսանեաց գառինն. — Այնպէս առնիցես միում զուարակին, կամ միում խոյին կամ միում գառինն. — Մի՛ եփեսցես զգառն ի կաթն մօր իւրոյ. — Չէ ինձ սիրելի այլ կենդանի բաց ի գառանէ. — Գառամբ, խոյիւ եւ զուարակաւ մատուցանել պատարագ. — Գառինք եւ ողիք ճարակեսցին ի միասին. — Ուտէր զմիս գառանց. — Խնայէր գառանց. — Արածեա զգառինս իմ. — Ի գառանց եւ յուլոց լցէ ողջակէզն. — Հանդերձ երկու գառամբքն սրբեսցին տեառն։

(Սոյն հրահանգը կարդալէ եւ թարգմանելէ վերջ գրաւոր եւ բերանացի հոլովել գառն բառն, որ է օրինակ ԺԱ. հոլովման։)

**Հրահանգ 28.** — Շեղագիր եզակիները յոգնակի եւ յոգնակիները եզակի ըրէ՛. — Ցածուցից զերեսս նորա պատարագօք. — Եւ վերացաւ Աստուած ի տեղւոյն. — Մի՛ խափանէք զժողովուրդ ի գործոյ իւրեանց. — Էջ Մովսէս ի լերանց. — Եթէ ոք հարցէ զծառայ իւր կամ զաղախին իւր գաւազանաւ. — Զպանդուխտս մի՛ չարչարիցէք. — Ծածկեաց ամպն զլեառնն. — Պարգեւէ գիտութիւն ամենայն անգիտաց. — Հարկ է ողոքել ընդ նոսա զոհիւ եւ նուիրօք. — Մեք ոչ հրամայեմք զպաշտօն արարչին՝ արարածոց մատուցանել. — Եւ արասցես սեղան յանփուտ փայտից. — Յիշեմք զձուկնն զոր ուտէաք յԵգիպտոս. — Եւ չուեցին ի լեռնէ անտի երեքօրեայ ճանապարհ. — Մեղաւորք վասն մեղաց տանջին ի դիւաց։

*ԺԱ. հոլովման վրայ կ'երթան՝ Ազն, անձն, դաշն, սառն, խաշն, կաթն, եզն, եղն, դիւցազն, մատն։*

**Դիտելիք.** — *Այս հոլովման վրայ գացող բառերէն ոմանց եզակի բացառականը անէ ի տեղ նէ կը վերջաւորի, ինչպէս. անձն, յանձնէ, հարսն, ի հարսնէ. Նաեւ ոմանց յոգնակի ուղղականներն փոխանակ ինքի՝ ունք կ'առնուն, զոր օր. հարսունք, մատունք։*

**Հարցարան.** — Ի՞նչպէս կը հոլովի ԺԱ. հոլովման վրայ գացող *գառն* բառը։

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

## 14. ԿԱՅԻՆ ԵՒ ԱԲԷԼ

Եղև Աբէլ հովիւ *խաշանց*, և Կային գործէր զերկիր։ Եբեր Կային ի պտղոյ երկրի պատարագ Աստուծոյ. ած և Աբէլ յանդրանկաց *խաշանց* իւրոց և ի պարարտաց նոցա։ Հայեցաւ Աստուած յԱբէլ և ի պատարագս նորա և ի Կային և ի զոհս նորա ոչ հայեցաւ։ Եւ տրտմեցաւ Կային յոյժ, և ասէ ցԱբէլ եղբայր իւր. Ե՛կ երթիցուք ի դաշտ։ Եւ իբրև չոգան ի դաշտ անդր, յարեաւ Կային ի վերայ Աբէլի և սպան զնա։ Եւ ասէ տէր Աստուած ցԿային. Զի՞նչ գործեցեր զայդ, գոչումն արեան եղբօր քոյ բողոքէ առ իս յերկրէ։ Անիծեալ լիջիր դու ի վերայ երկրի, գործիցես զերկիր և ոչ յաւելցէ տալ քեզ զզօրութիւն իւր. երերեալ և տատանեալ եղիցիս ի վերայ երկրի։

## ԿԱՅԻՆ ՈՒ ԱԲԷԼ

Աբէլ ոչխարներու հովիւ եղաւ և Կային երկրագործ էր. Կային երկրի պտուղէն Աստուծոյ նուէր բերաւ. Աբէլ ալ բերաւ իր անդրանիկ ոչխարներէն և անոնց պարարտներէն։ Աստուած նայեցաւ Աբէլին և անոր նուէրներուն և Կայենին և անոր զոհերուն չնայեցաւ։ Եւ Կային շատ տրտմեցաւ, և կ'ըսէ իւր Աբէլ եղբօրը. Եկո՛ւր դաշտ երթանք։ Եւ երբ դաշտ գացին, Կային Աբէլի վրայ ելաւ և սպաննեց զանի։ Եւ Տէր Աստուած կ'ըսէ Կայենի. Ի՞նչ ըրիր այդ, քու եղբօրդ արեան ձայնը երկրէն ինձ կը բողոքէ։ Անիծեալ եղիր երկրի վրայ, երկիրը գործես և ան իր զօրութիւնը չտայ քեզ. թափառական և երերուն ըլլաս երկրի վրայ։

(Որոշեցէք շեղագիր բառերուն հոլովները եւ հոլովեցէք խաշնը ԺԱ. հոլովման համեմատ։)

---

### ԺԲ. Հոլովումն

**Հրահանգ 29.** — *Ոսկր նորա մի՛ փշրեսցի. — Ցօդ ոսկեր. — Եւ հարուած ուժգին ոսկեր աջոյ բազկին. — Եգիտ նա ի գերեզմանի զմի ոսկր սփռելոյն. — Յայտնի եղեւ արութիւն Սամփսոնի յոսկերէն՝ որով յաղթեաց թշնամւոյն. — Սամփսոն զյայտնի պատերազմն ոսկերբ վճարեաց. — Ոսկերք իմ որպէս խռիւ չորացան. — Ոչ է խաղաղութիւն ոսկերաց իմոց յերեսաց մեղաց իմոց. — Եղիցի բժշկութիւն մարմնոյ քում եւ դարման ոսկերաց քոց. — Թուեցին (համրեցին) զամենայն ոսկերս իմ. — Ոսկր յոսկերաց իմոց եւ մարմին ի մարմնոյ իմմէ. — Գերեզմանն լի էր ոսկերօք մարդկան։*

(Սոյն հրահանգը կարդալէ եւ թարգմանելէ վերջ գրաւոր եւ բերանացի հոլովել ոսկր բառն, որ է օրինակ ԺԲ. հոլովման։)

ԺԲ. հոլովման վրայ կերթան՝ կայսր, ազդր, վագր, տայգր, տարր, եզր, համր, ուստր, արկղ, աստղ, կոճղ։

**Հարցարան.** — Ի՞նչպէս կը հոլովի ոսկր բառը։

**Հրահանգ 30.** — Շեղագիր եզակիները յոգնակի եւ յոգնակիները եզակի ըրէք. — *Լոյս ծագեաց* արդարոց. — *Տանջին ոմանք ի* դիւէ. — *Սուրբ է* ձեռօք *եւ անբիծ* սրտիւ. — *Կորեան կուռք* յագարակէ. — *Դալարացան դաշտք* անապատի. — *Ծերք ձեր* երազով *երազեսցին*.

— Գողոց մոռեալ էր առ քեզ. — Դրունք խաղախաց բացան. — Որ բնակեալ է ի մէջ գետոց. — Ընդէ՞ր ցուցեր ինձ աշխատութիւնս եւ վաստակս. — Շինեցէք զտուն ձեր. — Զգեցուցին նմա հանդերձս. — Հիմն արկէք տան. — Խօսեցարուք զճշմարտութիւն ընկերի։

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

### 15. ԵՐԿՈՒ ԼՈՒՄԱՅՔ ԿՆՈՋՆ ԱՅՐԻՈՅ

Կայր Յիսուս ընդդէմ *գանձանակին*, տեսանէր թէ զիա՞րդ *ժողովուրդն* արկանէր պղինձ ի գանձանակն. և բազում *մեծատունք* արկին բազում ինչ։ Եկն *այրի* մի և արկ երկուս *շումայս*, որ է *նաքարակիտ* մի։

Եւ կոչեցեալ առ ինքն *զաշակերտսն* իւր ասէ ցնոսա. Ամէն ասեմ *ձեզ*, զի *այրին* այն տառապեալ շատ արկ քան *զամենեսեան* որ արկին ի գանձանակն։ Քանզի *ամենեքին յաւելորդաց իւրեանց* արկին. այլ *նա ի չքաւորութենէ* իւրմէ, *զամենայն ինչ* զոր ունէր, արկ գոյիւ չափ *զկեանս* իւր։

### ԱՅՐԻ ԿՆՈՋ ԵՐԿՈՒ ԼՈՒՄԱՅՔԸ

Յիսուս գանձանակին դէմ կեցած էր, կը տեսնէր թէ, ինչպէս ժողովուրդը ստակ կը ձգէր գանձանակին մէջ. և շատ հարուստներ շատ բան ձգեցին։ Եկաւ այրի կին մը և երկու լումայ ձգեց, որ նաքարակիտ մ'է։

Եւ իր աշակերտները իրեն կանչելով կ'ըսէ անոնց. Ճշմարիտ կ'ըսեմ ձեզ թէ այն խեղճ այրին բոլոր գանձանակը ձգողներէն շատ ձգեց։ Քանզի ամենքը իրենց աւելորդներէն ձգեցին. բայց նա իր չքաւորութենէն բոլոր ունեցածը որչափ որ կար ձգեց։

(Շեղագիր բառերուն հոլովները որոշեցէք։)

---

## ՀՈԼՈՎՄԱՆՑ ՎՐԱՅ ԳԻՏԵԼԻՔ

Անուան մը ո՛ր հոլովման վերաբերելուն որոշ կանոն կամ նշան չիկայ, միայն թէ ի վերջաւորեալ միավանկները Դ. հոլովման վրայ են, եւ բազմավանկներն Է. հոլովման վրայ։ Իսկ ըն վերջաւորածներն հիմն եւ

զանն օրինակաց վրայ կ'երթան ։ Ըr եւ րղ վերջաւորածներն Ժ Բ. հոլովման վրայ , իսկ վերջաւորածները քառորդին օրինակին վրայ ։

Շատ բառերուն եզակին եւ յոգնակին զատ զատ հոլովմանց տակ են , ինչպէս ․

Ձեռն , ձեռին , ձեռք , ձեռաց ․

Ոտն , ոտին , ոտք , ոտից ․

Մատն , մատին , մատունք ․

Քար , քարի , քարիւ , քարինք ․

Երէց , երիցու յոգն․ երիցունք

Պառաւ , ու » պառաւունք

Սարկաւագ » սարկաւագունք

Ծնունդ , ծննդեան » ծնունդք , ծննդոց

Սնունդ , սննդեան » սնունդք

Ժողովուրդ , դեան » ժողովուրդք

Ոմանք եզակիէն տարբեր յոգնակի ունին ։

Ունկն , կան , ականջք (ունկունք սափորոյ ։)

Ակն , կան , աչք , չաց ․ — (Ականք , գոհարներ ․ ակունք ջրոյ) ։

Ծունր (անհոլով) , ծունկք ։

Շատ անուններ երկու կամ երեք հոլովմանց պէս կը հոլովին , այսպէս ․

Բերդ , բերդից , բերդաց․ մոգաց եւ մոգուց ․ լուսնի եւ լուսնոյ , եւլն ։

Յատուկ անուանք մանաւանդ կերպ կերպ կը հոլովին ։

Միեւնոյն կերպով գրուող , բայց տարբեր նշանակութիւն ունեցող բառեր , որք հոմանուն կ'ըսուին , հոլովմամբ եւս կը տարբերին , զոր օր.

*Այր, ծաղաղա, այրի, այրիւ. այր, երիկ մարդ, առն, արամբ.*

*Մայր, չամ ծառ, մայրի, մայրիւ. մայր, մար, մօր, մարբ.*

*Գեղ, գեղ, գեղի, գեղիւ. գեղ, գեղեցկութիւն, գեղոյ, գեղով.*

*Փող, պօղաղ, փողի, փողիւ. փող, ասակ, փողոյ, փողով.*

*Օղ, ոսկից ական, օղի, օղից. օդ, օդ, օդոյ, օդոց.*

*Որթ, ասմա, որթոյ, որթով. որթ, հորթ, որթու, որթուց.*

*Գայլ, բերնի տանջանաց գործի, գայլի, գայլիւ. գայլ, գազան, գայլոյ, գայլով.*

*Սան, կաթսայ, սանի, սանիւ. սան, ձեռնասուն մանուկ, սանու, սանուց:*

**Հարցարան**. — Ի՞նչ նշան կայ անուան մը իր հոլովման վերաբերելուն. — Շատ բառերու եզակին եւ յոգնակին ինչպէս կ'ըլլայ. — Շատ անուններ ինչպէս կը հոլովին. — *Հոմանուն*ները ինչպէս կը հոլովին.

## ՁԱՅՆԱՒՈՐՆԵՐՈՒ ՓՈՓՈԽՈՒՄ ՀՈԼՈՎՄԱՆՑ ՄԷՋ

*Բառի մը վերջին վանկի մէջ եղած ձայնաւորները բացի ուղղականէ եւ հայցականէ միւս հոլովմանց մէջ երբեմն անհետ կ'ըլլան, երբեմն ուրիշ ձայնաւորի կը փոխուին:*

*Այդ հոլովմանց մէջ մէջ անհետ եղող ձայնաւորներն են. ի եւ ու, զոր օր. Սիրտ, սրտի, մարմին, մարմնոյ, միս, մսոյ, գլուխ, գլխոյ, օգուտ, օգտի, ծուխ, ծխոյ:*

**Զարտուղութիւն.** — *Ի եւ ու քանի մը միավանկ բառերու սկիզբն անձայն ըլլալու տեղ երբեմն ը ի կը փոխուին եւ երբեմն անփոփոխ կը մնան, զոր օր. Ինչք, ընչից, ունչք, ընչաց (ը փոխուած), իժ, իժի, ուխտ, ուխտի (անփոփոխ)։*

*Բառերու վերջի վանկերուն մէջ ուրիշ ձայնաւորի կը փոխուին է, եա, ոյ։*

*Է, ի ի կը փոխուի, զոր օր. սէր, սիրոյ, պարտէզ, պարտիզի։*

*Եա կ'ըլլայ ե կամ է, զոր օր. ատեան, ատենի, ահեակ, ահեկի։*

*Ոյ կ'ըլլայ ու, զոր օր. բոյս, բուսոյ, ողջոյն, ողջունի։*

**Տանօր.** — *Է, ոյ եւ ու երբ բառի մը վերջի գիրերն ըլլան, նոյն կը մնան, զոր օր. բազէ, բազէի, դշխոյ, դշխոյի, կատու, կատուի։*

*Իւ կ'ըլլայ ու, զոր օր. հովիւ, հովուի, պատիւ, պատուոյ։*

**Հարցարան.** — Ձայնաւորներու մասին ինչ գիտելիք կայ. — Ո՞ր ձայնաւորները կ'անհետանան. — Ո՞ր ձայնաւորները փոփոխութիւն կը կրեն. — *Է*ն ինչի կը փոխուի. — *Եա*՞ն. — *Ո*՞յն. — *Ի*՞ւը.

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

### 16. Ս. ԳԻՆԴ

Եւ էր Գինդս այս ի մեծ գաւառէ և լեալ սա աշակերտ մեծին Դանիելի, և յետ նորա էր գլուխ աբեղայից և վարդապետ և առաջնորդ մենակեցաց և վերակացու վաներայից և ուսուցիչ ամենայն անապատաւորաց և տեսուչ ամենեցուն՝ որք միանգամ վասն սիրոյն Աստուծոյ յաշխարհէ էլ[illegible] մեկնեալ։

### Ս. ԳԻՆԴ

Եւ այս Գինդն էր մեծ գաւառէ մը, և սա եղած էր Մեծին Դանիելի աշակերտ և անկէ վերջ աբեղայից գլուխ և վարդապետ և մենակեցաց առաջնորդ և վանաց վերակացու և ուսուցիչ ամէն անապատականներու և տեսուչ այն ամենուն, որոնք միանգամ Աստուծոյ սիրոյն համար ճգնաւոր եղած էին։

Եւ էր սուրբն Գիովդ լի հոգւովն Աստուծոյ և՛ոյք ։ընդ ։նմա (էին) ըստ նմին օրինակի առնէին սոքա նշանս մեծամեծս և զօրութիւնս բազումս և բժշկութիւնս հիւանդաց յանուն Տեառն Յիսուսի Քրիստոսի։

Եւ սուրբ Գիովդ Աստուծոյ հոգւով լի էր և իրեն հետ եղողները՝ իրեն նման ասոնք մեծ հրաշքներ կ՚ընէին և հիւանդաց բժշկութիւններ Տիրոջը Յիսուս Քրիստոսի անունով։

*(Ու, ի եւ է ի՞նչի կը փոխուին ։)*

---

## *ՅՈԳՆԱԿԱՆԱՑՈՒՑԻՉ ՄԱՍՆԻԿՆԵՐ*

*Կանոնաւոր հոլովման անուններ կան, որոնք երբեմն յոգնակիի քին տեղ այլ եւ այլ մասնիկներով յոգնակի կը շինուին, այսպէս.*

*Այք, եայք. — Աղախին, աղախնայք կամ աղախնեայք, դարբին, դարբնայք։*

*Անք. — Նու, նուանք։*

*Իք. — Դրուատ, դրուատիք. պարտ, պարտիք. տոկոս, տոկոսիք.*

*Ոյք. — Բաշխ, բաշխոյք. գահ, գահոյք։*

*Ունք. — Նուազ, նուազունք. ճրագ, ճրագունք. սան, սանունք. ցից, ցցունք։*

*Ան. — Խուժ, խուժան. ձի, ձիան. էշ, իշան։*

*Անի. — Աթոռ, աթոռանի. երէց, երիցանի. հանդերձ, հանդերձանի. նամակ, նամականի։*

*Եան. — Բերդ, բերդեան. գիրք, գրեան. թուղթ, թղթեան. խոզ, խոզեան։*

*Եար. — Էշ, իշեար. վարժ, վարժեար. վանք, վանեար։*

*Իկ. — Մարդ, մարդիկ։*

*Կան. — Զօր, զօրական. բազմական (նստողներ)։*

*Ներ. — Բարձիկ, բարձիկներ. Նաւիկ, նաւիկներ։*

*Որայ. — Արտ, արտորայ. դաշտ, դաշտորայ. կալ, կալորայ։*

*Տի, ոտի. — Ծակ, ծակտի. մանուկ, մանկտի. ոսկր, ոսկրոտի։*

**Հարցարան.** — Յոգնականացուցիչ ի՞նչ տեղ ի՞նչ մասնիկներ կան, որոնք յոգնակի կը շինեն։

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

## 17. ԱՍՏՈՒԱԾ

Սկիզբն ամենայնի Աստուած է, և ինքն և ոչ ի միոջէ սկզբանէ եղեալ։ Ոչ կարօտ սպասաւորօք, քանզի ոչ ի նորա պէտս ինչ են պաշտօնեայքն, այլ ամենեցուն օգնէ և ամենեցուն բաւական է. և զնա՝ ինչ ոչ տանի, քանզի ինքն անբաւ բնութիւն է, անփոփոխական հաստատութիւն, անայլայլական պատիւ, ոչ ի խոնարհ նուազեալ գտանի և ոչ ի վեր զարգացեալ և աճեցեալ։

Մի է՝ յիւրմէ ինքնակաց, և ոչ ինչ յումեքէ ընկալեալ։ Ոչ ընդ ծրով անկանի, կամ փակեալ և սահմանեալ. ոչ փոխ առեալ յումեքէ՝ թէ հատուցանէ. ոչ այլովք ի մի ինչ կատարեալ, և ոչ ի բազում իրաց ի մի ինչ բովանդակեալ, քանզի և ոչ ինչ յառաջ քան զնա։ Անմարմնական և պարզական, զատեալ և մեկնեալ յամենայն ի մարմնական յօղուածոց։

## ԱՍՏՈՒԱԾ

Ամենուն սկիզբը Աստուած է և ինք անսկիզբ է։ Ոչ սպասաւորներու կարօտ, քանզի անոր գործածութեան համար չկան պաշտօնեաներ, այլ ամենուն կ'օգնէ և ամենուն բաւական է. ինք անբովանդակելի է, քանզի ինք անբաւ բնութիւն է, անփոփոխ հաստատութիւն, անայլայլ պատիւ. ոչ կը նուազի և ոչ կը զարգանայ ու կ'աճի։

Մի է՝ իրմէ ինքնակաց և ոչ բան մը մէկէ ընդունած։ Սահմանի տակ չիյնար, կամ փակուած և չափու մէջ պահուած չէ. ոչ մէկէ մը փոխ կ'առնու՝ որ հատուցանէ. չէ թէ այլ և այլ բաներով ամբողջ մը ձեւացած և ոչ շատ բաներէ ամբողջ մը եղած։ Քանզի անկէ առաջ բան մը չիկայ։ Անմարմնական և պարզ, բաժնուած ամէն մարմնական բաղադրութիւններէ։

*(Որոշեցէք գոյականաց հոլովներն։)*

## ԱՆԿԱՆՈՆ ՀՈԼՈՎՄՈՒՆՔ

Մինչեւ ցայսվայր դրուած ԺԲ. կանոնաւոր հոլովումներէն զատ կան մի քանի զարտուղի հոլովներ, եւ ասոնք են այր (էրիկ մարդ), հայր, տէր, քոյր, կին, գիւղ, օր, տիւ (ցորեկ)։

Կին բառին պէս կը հոլովին տիկին եւ առնակին բառերն։

Այս անկանոն հոլովումներէն մի քանի հոլովմանց կերպը դիտեցէք հետեւեալ հրահանգներուն մէջ եւ անոնց հոլովումներուն համեմատ գրաւոր եւ բերանացի հոլովեցէք զանոնք։

**Հրահանգ 81**. — *Ի նանիր խօսեցաւ այր ընդ ընկերի իւրում. — Առաջի աչաց Աստուծոյ են ճանապարհք առն. — Հրամայեաց առն այնմիկ երթալ ի բաց. — Սիրեմ ես զայրն Աստուծոյ. — Զի յառնէ իւրմէ առաւ. — Եկն արամբ միով. — Արք խաղաղութեան եմք մեք. — Բազմութիւն արանց եւ կանանց՝ երկոտասան հազար. — Տուք (տուէք) վարձս արանցն այնոցիկ. — Եւ ա՛ռ նա զարսն ընդ իւր (իրեն հետ). — Ոչ հեռացայ ես յարանցն. — Եհաս բազում երեւելի արամբք։*

**Հրահանգ 82**. — *Բարւոք սնուցանէ հայր արդար. — Ամօթ հօր՝ որդի անմիտ. — Ոչ խնայէ ոչ եղբօր եւ ոչ հօր. — Պատուեա զհայր քո եւ զմայր. — Որդի իմաստուն ուրախ առնէ զհայր. — Իւրաքանչիւր ի հօրէ եւ ի մօրէ երկնչիցիք. — Փրկեցաւ ի հրոյ հարբն իւրով եւ որդւովք. — Պարծանք որդւոց՝ հարք իւրեանց. — Աստուած հարցն մերոց, դու պահես զարարածս. — Հրամայեաց հարցն մերոց. — Սիրէր Աստուած զհարս մեր. — Եւ սուրբն Եպիփան էր մին ի հարց եկեղեցւոյ. — Որդիք հանդերձ հարբքն կրեցին զնոյն դատապարտութիւն։*

| | ԵԶԱԿԻ | | ՅՈԳՆԱԿԻ | |
|---|---|---|---|---|
| Ո. | Տէր | տէր | Տեարք | տէրեր |
| Ս. | Տեառն | տիրոջ | Տերանց, տեարց | տէրերուն |
| Տ. | Տեառն | տիրոջ | Տերանց, տեարց | տէրերուն |
| Հ. | զ Տէր | տէրը | զ Տեարս | տէրերը |
| Բ. | ի Տեառնէ | տիրոջմէ | ի Տերանց, տեարց | տէրերէն |
| Գ. | Տերամբ | տիրոջմով | Տերամբք | տէրերով |

**Հրահանգ 33.** — Հիւանդ է քոյր իմ. — Եղեւ ի ձեռն քեռ իւրոյ. — Ոչ պատմեմ զայս քեռ իմում. — Ոչ կարեմք տալ զքոյր մեր տանն այնմիկ. — Լուաւ յերեկոյ քեռէ իւրմէ. — Փախեաւ անտի հանդերձ քերբն. — Քորք քո եւ եղբարք կան արտաքոյ. — (Դու ես) քոյր քերց քոց՝ որք մերժեցին զարդիս իւրեանց. — Պատմեցէք զայս քերց իմոց. — Արդարացուցեր զքորս քո. — Ոչ նմանայր նա ի քերց. — Դարձաւ նա ի գեղջէն եղբարբք եւ քերբք ի միասին:

**Հրահանգ 34.** — Կին ժրագլուխ պսակ է առն իւրոյ. — Զի այր է գլուխ կնոջ, որպէս եւ Քրիստոս գլուխ է եկեղեցւոյ. — Տանիցիմք խնամ կնոջն եւ որդւոց. — Երթ եւ ած զկին իմ. — Զիա՞րդ յինէն ըմպել խնդրես ի կնոջէ Սամարացւոյ. — Այր ոմն Անանիա անուն հանդերձ կնաւ իւրով Սափիրաւ վաճառեաց ագարակ. — Դատաստանի պատկառանօք կամէր (Յովսէփ) զնա ի հաւանութիւն ածել կնաւն. — Իմաստուն կանայք շինեցին տունս. — Զօրաբաբէլ խօսեցաւ վասն զօրութեան կանանց. — Հրամայէ կանանց մկրտութիւն տալ. — Արք, սիրեցէք զկանայս ձեր. — Փախերուք ի կանանց անզգամաց. — Եւ քուրմքն մտին գիշերի ըստ սովորութեան իւրեանց կանամբք եւ որդւովք իւրեանց:

| | ԵԶԱԿԻ | | ՅՈԳՆԱԿԻ | |
|---|---|---|---|---|
| Ո. | Գիւղ | գիւղ | Գիւղք | գիւղեր |
| Ս.Տ. | Գեղջ | գիւղին | Գիւղից, գեղից | գիւղերուն |
| Հ. | զ Գիւղ | գիւղը | զ Գիւղս | գիւղերը |
| Բ. | ի Գեղջէ | գիւղէն | ի Գիւղից | գիւղերէն |
| Գ. | Գիւղիւ | գիւղով | Գիւղիւք | գիւղերով |

| | ԵԶԱԿԻ | | ՅՈԳՆԱԿԻ | |
|---|---|---|---|---|
| Ո. | Օր | օր | Աւուրք | օրեր |
| Ս.Տ. | Աւուր | օրուան | Աւուրց | օրերուն |
| Հ. | զ Օր | օրը | զ Աւուրս | օրերը |
| Բ. | յ Օրէ | օրէ | յ Աւուրց | օրերէ |
| Գ. | Աւուրբ | օրով | Աւուրբք | օրերով |

**Հրահանգ 85.** — *Խաւարեցի տիւն. — Ետ զարեգակն ի լոյս տուընջեան. — Ժամք տուընջեան երկարատեւ թուին քան զժամս գիշերոյ. — Եւ պահեալ զքառասուն տիւ եւ զքառասուն գիշեր՝ ապա քաղցեաւ. — Զտիւն գիշերս գործէ արբեցութիւն. — Ի տուէ եւ ի գիշերի. — Ի տուընջենէ մինչեւ գիշեր. — Ցայսմ աւուր կենացս միայն լիցի աշխատել տուընջեամբս. — Տիւք եւ գիշերք. — Աղօթիւք անցուցանէ զամենայն տիւս։*

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

#### 18. ԳԱՐՈՒՆ

Ի գարնան արձակեն արմատք զբոյսս, և մարգք զուարճանան և ծաղիկք պայծառանան և տունկք ցցուին և ծառք արձակեն զբողբոջս իւրեանց և անասունք երկրի հանդերձ թռչնօք և ծովային և ջրածնունդ զեռունք, զան ամենեքեան հասանեն ի ծնունդ և ի սեր և ի սնունդ։

#### ԳԱՐՈՒՆ

Գարնան ատեն արմատները բոյսեր կ'արձակեն և մարգերը կը ծաղկին և ծաղիկները կը պայծառանան և տունկերը կը ցցուին և ծառերը իրենց բողբոջները կ'արձակեն և երկրի անասունները թռչուններով միասին և ծովային և ջրածին զեռունները, ամենքն ալ կը ծնին, կ'աճին և կը սնանին։

# ԳԼՈՒԽ Բ.

---

## ԱԾԱԿԱՆ

*Որդիք իմաստութեան եւ ոչ որդիք անմտութեան. իմաստունք են զգօնք գործել եւ ոչ գէշք. իմաստուն որդիներ եւ ոչ անմիտ որդիներ. իմաստուն են բարիք ընել եւ ոչ չար գործել ։*

*Այս խօսքերուն մէջ շեղագիր բառերը գոյականներուն ինչպէս ըլլալը կը ցուցնեն, զոր օր. ինչպէս որդի, անմիտ որդի, իմաստուն որդի, եւլն ։*

Ածական կ՚ըսուին այն բառերն՝ որ գոյականներուն ինչպէս ըլլալը կամ քանի՞ հատ ըլլալը կը ցուցընեն, զոր օր. բարի հրեշտակ, արեգակն պայծառ, օրք երեք. բառերուն մէջ բարի, պայծառ, երեք ածական են ։

**Ծանօթ.** — Եթէ բառի մը քով բան բառը յարմարի, ածական է այն բառը. եթէ չյարմարի, գոյական է, վասն զի կրնանք ըսել բարի բան, չար բան, եւլն, իսկ չենք կրնար ըսել մարդ բան, տուն բան, եւլն ։

**Հարցարան.** — Ածական ո՞րու կ՚ըսուի ։

**Հրահանգ 26.** — Որոշեցէք ածականները. — Լուսափայլ արեգակն. արագահաս միտք. արի հովիւ. անքուն պահապան. երկնաթռիչ արծուի. պայծառագոյն արուսեակ. անշիջանելի լոյս. անկապտելի գանձ. անգին մարգարիտ. ծառայ բարի եւ հաւատարիմ. երկնային առագաստ. արդար Աբէլ. անարատ պատարագ. այգի նորատունկ. վարդապետ բարի. գաւառ գեղե-

*ցիկ . աշխարհ արեւելեան . տղայք բարեբաստիկք . մարդ ընտիր . ժողովուրդ իմաստասէր . տունկ անենչա-կի . դրախտ աստուածատունկ . բուրաստան բերրի . սուրբ եւ պայծառ հոգի . շուշան վայրի . մարգք ծաղ-կազարդք . դաշտք կանաչագեղք . արտք բուսարձակք . բլուրք պրակագեղք . ծառք վարսաւորք . տունկք հո-վանաւորք ։*

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

## 18. ՄԵԾՆ ՆԵՐՍԷՍ

Մեծն Ներսէս էր այր բարձր և ցանկալի հասակաւ և վայելուչ գեղով. զի ոչ գտանէր ի Հայս նման նմա գեղեցկութեամբ։ Երկիւղած ի տեառնէ Աստուծոյ, յոյժ աւանդապահ պատուիրանաց նորա. մարդասէր, սուրբ, զգաստ, սաստիկ իմաստուն և առանց ակնառութեան. իրաւանց իրաւարար, ցածուն, քաղցր, խոնարհ, աղքատասէր, ի սրբութիւնս ամուսնութեանցն օրինաւոր և կատարեալ սիրովն Աստուծոյ։ Անձանձրոյթ էր և ունէր զնախանձն Աստուծոյ և եռայր սուրբ հոգւովն։ Եւ զաղքատս և զտառապեալս այսպէս սիրէր և ակն ածէր ի վերայ նոցա, զի զիւր հանդերձս և զկերակուր հասարակէր ընդ նոսա։ Եւ նեղելոց և տարակուսելոց օգնական և վերակացու և ջատագով ամենայն զրկելոց լինէր նա։

## ՆԵՐՍԷՍ ՄԵԾ

Մեծն Ներսէս բարձր և ցանկալի հասակով մարդ մ'էր և վայելուչ գեղեցկութեամբ, այնպէս որ Հայոց մէջ անոր նման գեղեցկութեամբ մէկը չէր գտնուեր։ Աստուածավախ էր, անոր պատուիրանաց շատ աւանդապահ. մարդասէր, սուրբ, պարկեշտ, շատ իմաստուն և անաչառ. արդարասէր, հեզ, քաղցր, խոնարհ, աղքատասէր, ամուսնութեանց սրբութիւններու մասին օրինաւոր և կատարեալ Աստուծոյ սիրով։ Չէր ձանձրանար և Աստուծոյ սէր ունէր և սուրբ հոգւով կ'եռար։ Եւ աղքատները և տառապեալները այսպէս կը սիրէր և կը հոգար զանոնք, այնպէս որ իր հանդերձներուն և կերակուրին կէսը անոնց կուտար։ Եւ նեղեալներուն ու տառապեալներուն օգնական և վերակացու և ամէն զրրկեալներուն պաշտպան կ'ըլլար։

*(Որոշեցէք ածականներն ։)*

## ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ ԱԾԱԿԱՆԱՑ

Ածականները գոյականէն թէ՛ առաջ եւ թէ ետք կրնան դրուիլ. առաջ դրուող ածականները նախադաս, ետքը դրուողները յետադաս կ'ըսուին ։ Պէտք է գիտնալ սակայն թէ սովորաբար գոյականէն ետքը կը դըրուին եւ մէկտեղ կը հոլովին, զոր օր. Այր իմաստուն.

(Գոյականը ածականէն առաջ)

ԵԶԱԿԻ

| | | | |
|---|---|---|---|
| Ո. | Այր | իմաստուն | խելացի մարդ. |
| Ս. | Առն | իմաստնոյ | |
| Տ. | Առն | իմաստնոյ | |
| Հ. | զԱյր | իմաստուն | |
| Բ. | յԱռնէ | իմաստնոյ | |
| Գ. | Արամբ | իմաստնով | |

ՅՈԳՆԱԿԻ

| | | | |
|---|---|---|---|
| Ո. | Արք | իմաստունք | խելացի մարդեր. |
| Ս. | Արանց | իմաստնոց | |
| Տ. | Արանց | իմաստնոց | |
| Հ. | զԱրս | իմաստունս | |
| Բ. | յԱրանց | իմաստնոց | |
| Գ. | Արամբք | իմաստնովք | |

Հարկ կ'ըլլայ շատ անգամ ածականը գոյականէն առաջ դնել. բայց այնատեն, երբ ածականը բազմավանկ է, անփոփոխ կը մնայ հոլովման ժամանակ, զոր օր. Հաւատարիմ բարեկամ ։

**(Ածականը գոյականէն առաջ)**

| | ԵԶԱԿԻ | ՅՈԳՆԱԿԻ |
|---|---|---|
| Ո. | Հաւատարիմ բարեկամ | Հաւատարիմ բարեկամք |
| Ս. | Հաւատարիմ բարեկամի | Հաւատարիմ բարեկամաց |
| Տ. | Հաւատարիմ բարեկամի | Հաւատարիմ բարեկամաց |
| Հ. | զ Հաւատարիմ բարեկամ | զ Հաւատարիմ բարեկամս |
| Բ. | ի Հաւատարիմ բարեկամէ | ի Հաւատարիմ բարեկամաց |
| Գ. | Հաւատարիմ բարեկամաւ | Հաւատարիմ բարեկամօք |

*Միավանկ ածականները գոյականէն թէ՛ առաջ եւ թէ ետքը դրուելով անոր հետ մէկտեղ կը հոլովուին, զոր օր. մեծ տուն, մեծի տան. նոր օրէնք. նորոց օրինաց. սուրբ քաղաք, սրբոյ քաղաքի, եւլն ։*

**Հարցարան**. — Ածականներ ո՞ւր կը դրուին. — Ածականը գոյականէն առաջ կրնայ դրուիլ. — Միավանկ ածականներ ո՞ւր կը դրուին ։

**Հրահանգ 87**. — Ի՞նչ հոլով է. — *Առն տանուտեառն. լուսաւոր ճառագայթիւք. վկայից անմեղաց. ի չարաց սատանայից. զքարոզ հոգեշահ. պէսպէս պարգեւս. ի ձեռաց կորովեաց աղեղնաւորաց. ոսկէօղ շիկափոկ պարանն. խնդութեամբ մեծաւ. մեծի լերին. գրեալ են (գրած են) գրչաւ երկաթեաւ. ի մարդոյ չարէ. աշխատութիւնք մեծամեծք ։*

**Հրահանգ 88**. — Գրաբարի վերածեցէք. — *Աշխարհաշէն իմաստուններէ. քաղցրաձայն քնարները. չար անասուններու. հիւանդ ծառաներ. լաւ նշաններէ. տկար համբակի. սուր գրիչով. մեծ բարկութեամբ. հաւատարիմ ծառայի. իմաստուն տղայ. գեղեցիկ տաճար. կարմիր վարդ ։*

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

### 19. ՄԵՂՈՒ

Արդարև մեղու իմաստուն և հանճարեղ է ի գործ։ Մեծաւ փու֊թով և պատրաստութեամբ առնէ անձամբ անձին ղաղարս, հնարագէտ իմաստութեամբ ի՛ շտեմարանս միշտ կազմէ և մեծաքանչ գործով զմոմն անօսրէ և անդէն խիտ առ խիտ դորակաձև գծակս գրոցն բոլորէ, և այսպէս բազում գուբք մոմակերտք մի զմիով յարեալ են ։ Դարձեալ անդէն ի նմին շինուածի գտանես յարկս զյարկօք շինեալս, որք մոմակերտ ծեփովք անջրպետեալ և զատեալ են ի միմեանց։ Այսպէս եթէ միտ եդեալ հայիցիս ընդ զարմանակերտ կազմութիւն շինուածոյ ճարտարութեան, զգիւտս երկրաչափ ճարտարութեան գըտանես։

### ՄԵՂՈՒ

Իրաւ մեղուն գործելու մասին խելացի է։ Մեծ փութով և պատրաստութեամբ ինք իրեն բնակարան կը շինէ. հնարագէտ իմաստութեամբ շտեմարաններու մէջ մեղր կը շինէ և մեծաքանչ գործով մոմը կը բարակցընէ և հոն խիտ խիտ բաժակի ձեւով բջիջներուն ծակերը կը կլորցընէ եւ այսպէս շատ մոմաշէն բջիջներ իրարու միացած են։ Դարձեալ և նոյն շէնքին մէջ կը գտնես յարկեր յարկերու վրայ շինուած, որոնք մոմակերտ ծերպերով զատուած են իրարմէ ։ Այսպէս եթէ ուշադիր նայիս՝ այն ճարտար շէնքին զարմանալի կազմութեանը՝ երկրաչափութեան գիւտը կը տեսնես։

*(Ցուցըցէք ածականաց համաձայնութիւնները ։)*

---

## *ԱԾԱԿԱՆԱՑ ՏԵՍԱԿՆԵՐԸ*

*Ածականք վեց տեսակ են. որակական, թուական, ստացական, ցուցական, անորոշ եւ հարցական ։*

*Գոյականին ի՛նչպէս ըլլալը ցուցնող ածականք՝ որակական կ'ըսուին, ինչպէս. մեծ, բարի, առատ ։*

*Գոյականին քանի՛ հատ ըլլալը ցուցնող ածականք՝ թուական կ'ըսուին, զոր օր. մի, երկու, երեք, եւլն ։*

Գոյականին որուն ըլլալը ցուցնող ածականներն՝ ստացական կ'ըսուին, որք են՝ իմ, քո, մեր, ձեր, իւր։

Գոյականն իբրեւ մատնանիշ ցոյց տուող ածականները **ցուցական** կ'ըսուին, որք են. այս, այդ, այն, սոյն, դոյն, նոյն։

Իսկ **անորոշ** եւ **հարցական** ածականներն են. ամենայն, այլ, իւրաքանչիւր, միւս, ոմն, ոք, իմն ինչ, ո՞վ, ո՞, զի՞նչ։

Թուական ածականք երեք տեսակ են. **բացարձակ**, **դասական** եւ **անձներական**։

Բացարձակներն են՝ մի, երկու մինչեւ հազար, բիւր։

Բացարձակները մեծ մասամբ կանոնաւոր հոլովմանց պէս կը հոլովին։

**Հարցարան**. — Ածականք քանի՞ տեսակ են. — Որո՞ւ կ'ըսուի *որակական*, *թուական*, *ստացական*, *ցուցական*, *անորոշ* եւ *հարցական*։ — Թուականները քանի՞ տեսակ են. — Ո՞րոնք են բացարձակները. — Բացարձակները ինչպէս կը հոլովին։

**Հրահանգ 39**. — Որոշեցէք թուական ածականները.
— Եօթն մոլորակք են գնայուն. — Յետ երկուց ամաց. — Եւ էին որդիք Յակոբայ երկոտասանք. — Երկուս տախտակս քարեղէնս. — Զատոյց Մովսէս երիս քաղաքս. — Երիւք գեղեցկացայ եւ յարեայ վայելուչ. — Ետուն նմա եօթանասուն արծաթոյ. — Ինքն Յիսուս էր ամաց իբրեւ երեսնից. — Եւ էր Յովնան ի փոր կիտին զերիս տիւս եւ զերիս գիշերս. — Էին արք իբրեւ հինգ հազար. — Անդ էին Թակոյկք կճեայք վեց. — Հինգն ի նոցանէ իմաստունք էին եւ հինգն յիմարք. — Ո՞չ Թողուցու զիննսուն եւ զինն յանապատի. — Ի չորից ծագաց երկրի. — Պատահեցան նմա տասն այր բորոտ։

**Հոլովմունք բացարձակ թուական ածականաց**

| | ԵԶ. | ՅՈԳ. | ՅՈԳ. | ՅՈԳ. |
|---|---|---|---|---|
| Ո. | Մի | Երկու | Երեք | Չորք |
| Ս. | Միոյ, միոջ | Երկուց | Երից | Չորից |
| Տ. | Միում | Երկուց | Երից | Չորից |
| Հ. | զ Մի | զ Երկուս | զ Երիս | զ Չորս |
| Բ. | ի Միոջէ | յ Երկուց | յ Երից | ի Չորից |
| Գ. | Միով | Երկուք | Երիւք | Չորիւք |

| | ԵԶ. | ՅՈԳ. | ԵԶ. | ՅՈԳ. |
|---|---|---|---|---|
| Ո. | Հինգ | Հինգք | Վեց | Վեցք |
| Ս. | Հնգի | Հնգից | Վեցի | Վեցից |
| Տ. | Հնգի | Հնգից | Վեցի | Վեցից |
| Հ. | զ Հինգ | զ Հինգս | զ Վեց | զ Վեցս |
| Բ. | ի Հնգէ | ի Հնգից | ի Վեցէ | ի Վեցից |
| Գ. | Հնգիւ | Հնգօք | Վեցիւ | Վեցիւք |

| | ԵԶ. | ՅՈԳ. | ԵԶ. | ՅՈԳ. |
|---|---|---|---|---|
| Ո. | Եօթն | Եօթանք | Ութ | Ութք |
| Ս. | Եօթան | Եօթանց | Ութի | Ութից |
| Տ. | Եօթան | Եօթանց | Ութի | Ութից |
| Հ. | զ Եօթն | զ Եօթանս | զ Ութ | զ Ութս |
| Բ. | յ Եօթանէ | յ Եօթանց | յ Ութէ | յ Ութից |
| Գ. | Եօթամբ | Եօթամբք | Ութիւ | Ութիւք |

| | ԵԶ. | ՅՈԳ. | ԵԶ. | ՅՈԳ. |
|---|---|---|---|---|
| Ո. | Ինն | Իննունք | Տասն | Տասունք |
| Ս. | Ըննի | Ըննից | Տասին | Տասանց |
| Տ. | Ըննի | Ըննից | Տասին | Տասանց |

| | | | | |
|---|---|---|---|---|
| Հ. | զ Ինն | զ Իննունս | զ Տասն | զ Տասունս |
| Բ. | յ Ըննէ | յ Ըննից | ի Տասնէ | ի Տասանց |
| Գ. | Ըննիւ | Ըննիւք | Տասամբ | Տասամբք |

| | ԵԶ. | ՅՈԳ. |
|---|---|---|
| Ո. | Մետասան | Մետասանք |
| Ս. | Մետասանի | Մետասանից |
| Տ. | Մետասանի | Մետասանից |
| Հ. | զ Մետասան | զ Մետասանս |
| Բ. | ի Մետասանէ | ի Մետասանից |
| Գ. | Մետասանիւ | Մետասանիւք |

*Այսպէս կը հոլովին՝ Երկոտասան, երեքտասան, չորեքտասան, հնգետասան, վեշտասան։*

**Հարցարան**. — Ի՞նչպէս կը հոլովին մի, երկու, երեք, չորք, հինգ, վեց, եօթն, ութ, ինն, տասն, մետասան, եւլն։

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ**

## 20. ՅԻՍՈՒՍ ՅԵՏ ՅԱՐՈՒԹԵԱՆ

Յետ երից աւուրց յաղթեաց Յիսուս մահու, ելեալ ի գերեզմանէն՝ զոր կնքեալ էին մատանեաւ քահանայապետքն և պահէին զօրականաւ՝ որ և քարոզք յարութեանն լինէին առաջի Հրէիցն։ Երեւեցաւ նա նախ մօրն առանձինն, և ապա յետ կանանցն՝ երեւեցաւ Պետրոսի յորժամ ընթացեալ էր նա ի գերեզման, և դառնայր յԵրուսաղէմ՝ զարմացեալ թէ զինչ եղեւ (յամի 34), և ապա երեւեցաւ եղբարց աւելի քան զ500։ Այնուհետև երբեք եր-

## ՅԻՍՈՒՍ ՅԱՐՈՒԹԵՆԷՆ ՎԵՐՋ

Երեք օրէն Յիսուս յաղթեց մահուան՝ գերեզմանէն ելնելով զոր քահանայապետները մատնիով կնքած էին և կը պահպանէին զինուորներով՝ որոնք ալ յարութեան հռչակողներ կ՚ըլլային Հրէից առջև։ Նա երեւեցաւ նախ մօրը առանձին և յետոյ կիներէն վերջ՝ Պետրոսի երեւցաւ, երբ գերեզման կ'երթար և Երուսաղէմ կը դառնար զարմանալով թէ ինչ եղաւ (34ին) և յետոյ 500է աւելի եղբայրներու երեւցաւ։ Անկէ վերջ երբեմն երբեմն Յիսուս ա-

բեք երեւէր նոցա Յիսուս՝ հաստատելով զհաւատս նոցա, մանաւանդ զԹովմայի՝ որ այնպէս պնդեալ էր չհաւատալ։ Կաց մընաց նա ընդ նոսա յաւուրս 40, արար բազում նշանս առաջի նոցա և ուսոյց նոցա զամենայն կարգս և խորհուրդս եկեղեցւոյ իւրոյ։

նոնց կ'երեւէր անոնց հաւատքը հաստատելով, մանաւանդ Թովմային՝ որ այնպէս կը պնդէր չըհաւատալու։ Կեցաւ նա անոնց հետ 40 օր, շատ հրաշքներ գործեց անոնց առջև և սորվեցուց անոնց իւր եկեղեցւոյ ամէն կարգերը և խորհուրդները։

*(Որոշեցէք Թուական ածականները ։)*

---

**( Շարունակութիւն )**

| | ԵԶ. | ՅՈԳ. |
|---|---|---|
| Ո. | *Եօթնեւտասն* | *Եօթնեւտասանք* |
| Ս. | *Եօթնեւտասին* | *Եօթնեւտասանց* |
| Տ. | *Եօթնեւտասին* | *Եօթնեւտասանց* |
| Հ. | *զ Եօթնեւտասն* | *զ Եօթնեւտասանս* |
| Բ. | *յ Եօթնեւտասնէ* | *յ Եօթնեւտասանց* |
| Գ. | *Եօթնեւտասամբ* | *Եօթնեւտասամբք* |

*Այսպէս կը հոլովին՝ Ութեւտասն , իննեւտասն ։*

| | ԵԶ. | ՅՈԳ. | ԵԶ. | ՅՈԳ. |
|---|---|---|---|---|
| Ո. | *Քսան* | *Քսանք* | *Հարիւր* | *Հարիւրք* |
| Ս. | *Քսանի* | *Քսանից* | *Հարիւրոյ* | *Հարիւրոց* |
| Տ. | *Քսանի* | *Քսանից* | *Հարիւրոյ* | *Հարիւրոց* |
| Հ. | *զ Քսան* | *զ Քսանս* | *զ Հարիւր* | *զ Հարիւրս* |
| Բ. | *ի Քսանէ* | *ի Քսանից* | *ի Հարիւրոյ* | *ի Հարիւրոց* |
| Գ. | *Քսանիւ* | *Քսանիւք* | *Հարիւրով* | *Հարիւրովք* |

*Քսանին պէս կը հոլովին՝ Երեսուն, քառասուն , յի-*

*սուն , վաթսուն , եօթանասուն , ութսուն , իննսուն , իրենց վերջի վանկին ու երկբարբառը կորսնցնելով հոլովման ատեն :*

*Իսկ հարիւրին պէս կը հոլովին երկերիւր , երեքհարիւր , չորեքհարիւր , հինգհարիւր , վեցհարիւր , եօթնհարիւր , ութհարիւր , իննհարիւր :*

| | ԵԶ. | ՅՈԳ. | ԵԶ. | ՅՈԳ. |
|---|---|---|---|---|
| Ո. | Հազար | Հազարք | Բիւր | Բիւրք |
| Ս. | Հազարի | Հազարաց | Բիւրու | Բիւրուց |
| Տ. | Հազարի | Հազարաց | Բիւրու | Բիւրուց |
| Հ. | զ Հազար | զ Հազարս | զ Բիւր | զ Բիւրս |
| Բ. | ի Հազարէ | ի Հազարաց | ի Բիւրէ | ի Բիւրուց |
| Գ. | Հազարաւ | Հազարօք | Բիւրու | Բիւրուք |

**Հարցարան** . — Ի՞նչպէս կը հոլովին եօթնեւտասն, քսան, հարիւր, հազար, բիւր :

## ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

### 21 ԵՐԱԶՆ ՓԱՐԱՒՈՆԻ

Եւ եղեւ յետ երկուց ամաց եւ տես Փարաւոն երազ․ թուէր թէ կայցէ յեզր գետոյ և ահա որպէս թէ ի գետոյ անտի ելանէին եօթն երինջք գեղեցիկ տեսանելով և ընտիրք մարմնով, և արածէին ի խաղի անդ․ Եւ այլ եւս եօթն երինջք ելանէին յետ նոցա ի գետոյ անտի գազիրք տեսանելով և վտիտք մարմնով, և արածէին առ այլ երնջովքն առ եզեր գետոյն․ Եւ ուտէին եօթն երինջքն գազիրք տեսլեամբ և վտիտք

### ՓԱՐԱՒՈՆԻ ԵՐԱԶԸ

Երկու տարիէն Փարաւոն երազ տեսաւ, իբր թէ գետին եզերքը կեցած է և ահա գետէն կ'ելնէին տեսքով գեղեցիկ և մարմնով ընտիր եօթը երինջներ և կ'արածուէին այն ծանծաղ տեղը․ Եւ ուրիշ եօթը երինջներ, տեսքով գարշելի և մարմնով նիհար, կ'ելնէին անոնցմէ վերջ այն գետէն և կ'արածուէին գետեզերքն ուրիշ երինջներու քով․ Եւ տեսքով գարշելի և մարմնով վտիտ եօթը կովերը կ'ուտէին գեղեցկատես և

մարմնով զեւթն երինջս գեղեցիկս տեսլեամբ և զընտիրս։ Զարթեաւ Փարաւոն և անդրէն ի քուն եմուտ և ետես երազ երկրորդ. և ահա եւթն հասկք ելանէին ի միում փնջի՝ ընտիրք և գեղեցիկք։ Եւ ահա եւթն այլ հասկք սինք և խորշակահարք ելանէին յետ նոցա և կլանէին եւթն հասկքն սինք և խորշակահարք զեւթն հասկսն զընտիրս և զատոքս։ Զարթեաւ Փարաւոն և էր երազ։

ընտիր եօթը կովերը։ Փարաւոն արթնցաւ և նորէն քնացաւ և երկրորդ երազ մը տեսաւ և ահա եօթն ընտիր և գեղեցիկ հասկ կ'ելնէին միևնոյն որային մէջ։ Եւ ահա ուրիշ պարապ և խորշակահար հասկեր անոնցմէ ետքը կ'ելնէին և այն եօթը պարապ և խորշակահար հասկերը կը կլնէին եօթն ընտիր և ատոք հասկերը։ Արթնցաւ Փարաւոն և երազ էր։

*(Որոշեցէք թուական ածականները։)*

---

## *ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ ԹՈՒԱԿԱՆ ԱԾԱԿԱՆԱՑ*

*Թուական ածականները սովորաբար գոյականէն ետքը գրուելով մէկտեղ կը հոլովին. բայց կրնան գոյականէն առաջ ալ գրուիլ, զոր օր.*

| | ԵԶ. | ՅՈԳ. | ՅՈԳ. |
|---|---|---|---|
| Ո. | *Այր մի* | *Արք երկու* | *Արք քան* |
| Ս. | *Առն միոջ* | *Արանց երկուց* | *Արանց քանից* |
| Տ. | *Առն միում* | *Արանց երկուց* | *Արանց քանից* |
| Հ. | *զ Այր մի* | *զ Արս երկուս* | *զ Արս քան* |
| Բ. | *յ Առնէ միոջէ* | *յ Արանց երկուց* | *յ Արանց քանից* |
| Գ. | *Արամբ միով* | *Արամբք երկուք* | *Արամբք քանիւք* |

*Մի, երկու, երեք, չորք թուականները՝ գոյականէն առաջ ալ դրուելով միշտ անոր հետ մէկտեղ կը հոլովին, զոր օր. Միոյ առն, միով ձեռամբ, երից որդւոց, եւլն։*

**Հարցարան**. — Թուականք ինչպէս կը համաձայնին իրենց գոյականներուն հետ. — Ի՞նչ գիտելիք կայ մի, երկու, երեք, չորք թուականաց վրայ։

**Հրահանգ 40**. — Որոշել բացարձակ թուականներու հոլովն ու թիւը. — *Եկեաց (ապրեցաւ) Ադամ ամս (տարի) երկերիւր եւ երեսուն. — Ո՞չ ապաքէն երկու ճընճղուկք դանկի միոջ վաճառին. — Նոյ էր ամաց վեցհարիւրոց. — Եղեւ անձրեւ ի վերայ երկրի զքառասուն տիւ եւ զքառասուն գիշեր. — Առն միոջ էին երկու որդիք. — Եհար (զարկեց) Սաւուղ զհազարս եւ Դաւիթ զբիւրս. — Հազարք հազարաց հրեշտակք պաշտէին զնա. — Նստաւ անդ տարի մի եւ ամիսս վեց. — Տանէին մի մի ի նոցանէ մարս երկուս կամ երիս (անոնցմէ ամէն մէկը երկերկու կամ երեք երեք մար կ'առնէր). — Վեց անկեամբք առ հասարակ ամենայն կողմանք մաղոց յօրինեալ են (Մեղուաց փեթակներուն բջիջները վեցանկիւն են). — Շինեա ինձ աստ եօթն բագին։*

**Հրահանգ 41**. — Գրաբարի վերածեցէք. — *Երկու օրէն. երեք որդւոց հայր. վեց աշակերտներով. չորս բարեկամներէ. չորս քաղաքաց. տասը կիներէն մին. երեք ընկերներով. Իսրայելի տասներկու ցեղերուն. Աստուծոյ տասն պատուիրանքներէն. հազար ոսկիով. տասներկու ձիթենիներէն. Յուդա տասներկու առաքեալներէն մէկը. երեք գիւղերէ. եօթն օրերով. երեսուն ձիով. եօթը բլուրներու. հարիւր մարդերէ. տասնեւհինգ քաղաքներու։*

---

## ԴԱՍԱԿԱՆ ԱԾԱԿԱՆՔ

*Դասական են այն ածականները՝ որոնք գոյականին կարգը կամ քանի՞երորդ ըլլալը կը ցուցնեն, զոր օր.*

| | ԵԶ. | ՅՈԳ. |
|---|---|---|
| Ո. | *Առաջին* | *Առաջինք* |
| Ս. | *Առաջնոյ (առջինին)* | *Առաջնոց* |
| Տ. | *Առաջնում* | *Առաջնոց* |
| Հ. | զ *Առաջին* | զ *Առաջինս* |
| Բ. | յ *Առաջնմէ, ջնոյ (առջինէն)* | յ *Առաջնոց* |
| Գ. | *Առաջնով* | *Առաջնովք* |

*Այսպէս կը հոլովի վերջին։*

| | ԵԶ. | ՅՈԳ. |
|---|---|---|
| Ո. | *Առաջներորդ* | *Առաջներորդք* |
| Ս. | *Առաջներորդի* | *Առաջներորդաց* |
| Տ. | *Առաջներորդի* | *Առաջներորդաց* |
| Հ. | զ *Առաջներորդ* | զ *Առաջներորդս* |
| Բ. | յ *Առաջներորդէ* | յ *Առաջներորդաց* |
| Գ. | *Առաջներորդաւ* | *Առաջներորդօք* |

*Այսպէս կը հոլովին բոլոր րորդ եւ երորդ վերջաւորած դասական թուականներն. ինչպէս՝ երկրորդ, երրորդ, չորրորդ, եւլն։*

*Դասական ածականները կը շինուին բացարձակներուն վրայ րորդ կամ երորդ մասնիկին աւելցնելով։*

*Դասականները գոյականէն առջը կամ առաջ դրուելով մէկտեղ կը հոլովին եւ միշտ եզակի գոյական կ'ուզեն։*

**Հարցարան. — Որոնք են դասական ածականները. — Ինչ-**

պէս կը հոլովին . — Դասականները ինչպէս կը շինուին . — Ի՞նչպէս կը հոլովին գոյականներու հետ ։

**Հրահանգ 42** . — Որոշեցէք դասական թուականները . *— Յամին (տարւոյն մէջ) երկրորդի . — Կատարեաց Աստուած յաւուրն վեցերորդի զամենայն գործս իւր եւ հանգեաւ յաւուրն եօթներորդի յամենայն գործոց իւրոց . — Եւ եղեւ երեկոյ եւ եղեւ վաղորդայն , որ հինգերորդ . — Ո՞ տայր զիս ըստ աւուրցն առաջնոց (երանի՜ թէ կեանքիս առաջին օրերն ըլլայի) . — Կոփեա՛ (շինէ՛) դու քեզ երկուս տախտակս քարեղէնս իբրեւ զառաջինսն . — Յառաջնում աւուր բաղարջակերաց . — Ոչ լուեալ է իմ ի հարցն առաջնոց . — Քանզի որ զամենայն ստեղծ , ոչ այսպէս հաստատէ , այլ աւուրս որոշէ եւ կարգս ի ստեղծուածս . քանզի են ոմանք առաջնոյ եւ ոմանք երկրորդի եւ ոմանք երրորդի եւ այլոց աւուրց ստեղծուածք ։*

**Հրահանգ 43** . — Գրաբարի վերածեցէք . *— Եւ երկրորդ գետն (էր) Դիկլաթ եւ չորրորդ գետը Եփրատէս . — Կը քննէի չորրորդ գազանին* համար *(վասն) . — Առաջին տողուն . — Չորրորդ* տարւոյն մէջ *(յամին) . — Իններորդ ամսուն . — Հինգերորդ աստիճանով . — Երկրորդ կարգէն . — Եօթներորդ նշանով . — Քսաներորդ տարին . — Իններորդ ժամուն . — Երկրորդ օրուան . — Տասնեւիններորդ դար . — Հինգերորդ ամսուն . — Աստուծոյ առաջին պատուիրանքը ։*

## 22. ՅԵՏ ՋՐՀԵՂԵՂԻՆ

Եւ ած Աստուած հողմ ի վերայ երկրի և դադարեաց ջուրն և խցան աղբիւրք անդնդոց և սահանք երկնից և արգելաւ անձրև յերկնից և նուազէր ջուրն յետ հարիւր և յիսուն աւուր։ Եւ նրստաւ տապանն յեօթներորդում ամսեանն ի լերինս Արարատայ և ջուրն երթայր և նուազէր մինչև ՚ի տասներորդ ամիսն, իսկ յամսեանն մետասաներորդի երեւեցան գլուխք լերանց։ Եւ եղեւ յետ քառասուն աւուր եբաց Նոյ զպատուհան տապանին և արձակեաց զագռաւն, և ել և անդրէն ոչ դարձաւ։ Եւ արձակեաց զաղաւնին զհետ նորա տեսանել թէ ցածուցեալ իցէ ջուրն յերեսաց երկրի և չգտեալ աղաւնւոյն հանգիստ ոտից իւրոց՝ դարձաւ անդրէն առ նա ի տապան անդր։ Եւ դադարեաց ևս աւուրս եօթն և արձակեաց զաղաւնին ի տապանէ անտի և դարձաւ առ նա աղաւնին ընդ երեկս և ունէր տերև ձիթենւոյ շիղ ի բերան իւրում և գիտաց Նոյ թէ ցածուցեալ են ջուրքն յերկրէ։

## ՋՐՀԵՂԵՂԷՆ ՎԵՐՋ

Եւ Աստուած հով բերաւ երկրի վրայ և դադրեցաւ ջուրը և գոցուեցան անդնդոց աղբիւրները և երկնից տեղացումները և անձրեւը կտրեցաւ երկնքէն և ջուրը կը քիչնար հարիւր յիսուն օրէն յետոյ։ Եւ տապանը նստեցաւ եօթներորդ ամսուն Արարատայ լեռները և ջուրը երթալով կը քիչնար մինչև տասներորդ ամիսը. իսկ տասնըմէկերորդ ամսուն լերանց գլուխները երեւցան։ Եւ քառսուն օրէն յետոյ Նոյ տապանին պատուհանը բացաւ և թող տուաւ ագռաւը, և ելաւ ու նորէն չդարձաւ։ Եւ անոր ետեւէն աղաւնին խրկեց տեսնելու թէ ջուրը երկրիս երեսէն իջա՞ծ է և աղաւնին ոտքին տեղ չգտնելով, նորէն անոր դարձաւ տապանը։ Եւ եօթն օր ալ դադրեցաւ և աղաւնին թող տուաւ այն տապանէն և աղաւնին անոր դարձաւ իրիկուան դէմ և ձիթենիի տերեւը իր բերանը ունէր և Նոյ գիտցաւ թէ ջուրերը երկրէն իջած են։

*(Ցուցըցէք բացարձակ եւ դասական ածականները այն հատուածին։)*

## ԱՆՁՆԵՐԱԿԱՆ ԱԾԱԿԱՆՔ

*Անձներական կ՚ըսուին այն թուականներն՝ որոնք իրենց նշանակած թիւը մէկտեղ համրելով կը ցուցընեն, ինչպէս .*

*Երկոքին կամ երկոքեան — երկուքն ալ*
*Երեքին կամ երեքեան — երեքն ալ*
*Չորեքին կամ չորեքեան — չորսն ալ*

*Անձներականք յոգնակի են եւ այսպէս կը հոլովին․*

| | ՅՈԳՆԱԿԻ | ՅՈԳՆԱԿԻ |
|---|---|---|
| Ո. | *Երկոքին , քեան* | *Երեքին , քեան* |
| Ս. | *Երկոցուն , ցունց* | *Երեցուն , ցունց* |
| Տ. | *Երկոցուն , ցունց* | *Երեցուն , ցունց* |
| Հ. | *զ Երկոսին , սեան* | *զ Երեսին , սեան* |
| Բ. | *յ Երկոցունց* | *յ Երեցունց* |
| Գ. | *Երկոքումբք* | *Երեքումբք* |

*Այսպէս կը հոլովին ամենեքեան , բոլորեքեան ։*

*Ասոնք երբ միակ գործածուին , գոյական են . ինչպէս . անցին երկոքեան . իսկ երբ ածական ըլլան , յոգնակի գոյական կ՚ուզեն եւ անոնց հետ մէկտեղ կը հոլովին . այսպէս , յերկոցունց ձեռաց աջողակն ։*

**Հարցարան**. — Անձներական ո՞րոնց կ՚ըսուի . — Ի՞նչպէս կը հոլովին . — Ե՞րբ գոյական են եւ երբ ածական ։

**Հրահանգ 44**. — Աշխարհաբարի վերածեցէք . — *Ի չորեցունց կողմանց . — Ամենեցուն ժամանակ է . — Ի մարմնի ամենեքեան էին , այլ ի գործս մարմնոյ եւ հոգ-ւոյ ոչ բոլորեքեան . — Զվեցեսին վիճաս . — Արարիչ ամենեցուն . — Հաւատք , յոյս , սէր , երեքին մի են . —*

*Երկուքին ի խորխորատ անկանին . — Եւ եղիցին երկուքեան ի մարմին մի . — Երկուքին կողմանքն պարտեցան . — Անկան երկուքեան ի միասին . — Ամենեքեան ծառք առնեն ։*

**Ծանօթ.** — *Բացի բացարձակ, դասական եւ անձնական Թուականներէ կան նաեւ կրկնական կոչուած Թուականներ՝ որոնք քանի մը քանի պատիկ ըլլալը կը ցուցնեն, ինչպէս. կրկին, երեքկին, չորեքկին, եւԹնպատիկ, տասնպատիկ։*

*Նոյնպէս կան զանազան ըսուած Թուականները՝ որ ակ կամ եակ կը վերջաւորին եւ ասոնք են. միակ, երկեակ, երրեակ, քառեակ, եօԹնեակ, տասնեակ։*

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ**

### 23. ՎԱՍՆ ԿԱՍԿԱԾՈՏՈՒԹԵԱՆ

Կասկածոտութիւն է կարծիք վնասու յամենեցուն բանից։ Եւ այն ոք է կասկածոտ, որոյ առաքեալ զմանուկն ի գնել զպէտս, դարձեալ այլ ծառայ զկնի արձակէ՝ լրտեսել թէ քանո՞յ առնուցու։ Ցուղի ուրեք ինքն բառնայ զարծաթն, և վտաւանէ ի վտաւան նստեալ համարի։

Ի մահիճսն հարցանէ զկին իւր, եթէ աղխեալ իցէ զարկղն, և նիզ դրաց գաւթին արկեալ իցէ. և թէպէտ նա այո ասիցէ, այլ տակաւին ինքն իսկ յարուցեալ յանկողնոյն մերկ և բոկ, ճրագ լուցեալ, շուրջ գայ տեսանել զայն ամենայն, և այնպէս հազիւ հազ ի քուն մտանէ։

### ԿԱՍԿԱԾՈՑՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

Կասկածոտութիւնն է ամենուն խօսքերէն վնասուելու կասկած։ Եւ կասկածոտն այն է, որ իր սպասաւորը խրկելով պէտքերը գնելու, դարձեալ ուրիշ սպասաւոր անոր ետեւէն կը խրկէ՝ լրտեսելու թէ քանիի կը գնէ։ Ճամբուն վրայ դրամը ինք կը կրէ և փարսախէ փարսախ նստելով կը համրէ։

Անկողնոյն մէջ կը հարցնէ իւր կնոջ, թէ արկղը կղպած է և գաւթին դուռներուն նիգը դրած է. և թէպէտ անիկա այո ըսէ, այլ տակաւին ինք ելնելով անկողնէն մերկ և բոպիկ, ճրագ վառելով, չորս կողմ կը պտըտի տեսնելու այն ամէնը և այնպէս հազիւ հազ կը քնանայ։

*(Այս հատուածին մէջ անձնական ածական կա՞յ արդեօք ։)*

## ՍՏԱՑԱԿԱՆ ԱԾԱԿԱՆՔ

| | ԵԶԱԿԻ | ՅՈԳՆԱԿԻ | ԵԶԱԿԻ | ՅՈԳՆԱԿԻ |
|---|---|---|---|---|
| Ո. | Իմ | իմք | Քո | քոյք |
| Ս. | Իմոյ | իմոց | Քոյ, քոյոյ | քոց, քոյոց |
| Տ. | Իմում | իմոց | Քում, քոյում | քոց, քոյոց |
| Հ. | զԻմ | զիմս | զՔո | զքոյս |
| Բ. | յԻմմէ | յիմոց | ի Քումմէ | ի քոց, քոյոց |
| Գ. | Իմով | իմովք | Քով, քոյով | քովք, քոյովք |

| | ԵԶ. | ՅՈԳ. | ԵԶ. | ՅՈԳ. | ԵԶ. | ՅՈԳ. |
|---|---|---|---|---|---|---|
| Ո. | Մեր | մերք | Ձեր | ձերք | Իւր | իւրք |
| Ս. | Մերոյ | մերոց | Ձերոյ | ձերոց | Իւրոյ | իւրոց |
| Տ. | Մերում | մերոց | Ձերում | ձերոց | Իւրում | իւրոց |
| Հ. | զՄեր | զմերս | զՁեր | զձերս | զԻւր | զիւրս |
| Բ. | ի Մերմէ | ի մերոց | ի Ձերմէ | ի ձերոց | յԻւրմէ | յիւրոց |
| Գ. | Մերով | մերովք | Ձերով | ձերովք | Իւրով | իւրովք |

**Հարցարան**. — Ո՞րոնք են ստացականները եւ ինչպէս կը հոլովին։

*Ստացական ածականք իրենց գոյականներուն հետ կը համաձայնին թուով եւ հոլովով, եւ թէ՛ առաջ եւ թէ ետքը կրնան դրուիլ։*

(**Առաջ դրուած**)

| | ԵԶԱԿԻ | ՅՈԳՆԱԿԻ |
|---|---|---|
| Ո. | Իմ տուն | Իմ տունք |
| Ս. | Իմոյ տան | Իմոց տանց |
| Տ. | Իմում տան | Իմոց տանց |
| Հ. | զԻմ տուն | զԻմ տունս |
| Բ. | յԻմմէ տանէ | յԻմոց տանց |
| Գ. | Իմով տամբ | Իմովք տամբք |

(Սեռք դրուած)

| ԵԶԱԿԻ | | ՅՈԳՆԱԿԻ |
|---|---|---|
| Ո. | Տուն իմ | Տունք իմ |
| Ս. | Տան իմոյ | Տանց իմոց |
| Տ. | Տան իմում | Տանց իմոց |
| Հ. | զ Տուն իմ | զ Տունս իմ |
| Բ. | ի Տանէ իմմէ | ի Տանց իմոց |
| Գ. | Տամբ իմով | Տամբք իմովք |

**Հարցարան.** — Ստացական ածականք ինչպէս կը համաձայնին իրենց գոյականներուն հետ։

**Հրահանգ 45.** — **Որոշել ստացական ածականները.** — *Զաւակի քում տաց (պիտի տամ) զերկիրս զայս. — Եւ դու յերկրէ քումմէ եւ ի տանէ հօր քոյ. — Մի լինիր վկայ սուտ ընկերի քում. — Որ փորէ խորխորատ ընկերի իւրում՝ ինքն յցցէ զնա. — Ո՞չ դա է՝ ցուպ ծերութեան իմոյ. — Ոչխարք իմ ձայնի իմում լսեն եւ ես ճանաչեմ զնոսա. — Մազ մի ի գլխոյ ձերմէ ոչ կորիցէ. — Անկաւ զօրութիւն ուժոյն իմոյ (տկարացայ). — Զառաջին արմտիս երկրի քոյ՝ տարցիս ի տուն տեառն Աստուծոյ քոյ. — Մովսէս արածէր զխաշինս աներոյ իւրոյ. — Աստուած հարցն ձերոց առաքեաց զիս առ ձեզ. — Քրտամբք երեսաց քոց կերիցես զհաց քո։*

**Հրահանգ 46.** — **Գրաբարի վերածել.** — *Քու եղբօրմէդ. ձեր ընկերներուն. իմ բարեկամներէս. իմ ձայնիս. իւր խելքով. իմ զօրութեամբս. մեր տուները. ձեր աղախիններէն. մեր ճամբաներուն. իւր զարշապարներուն. իւր եղբայրներով. իմ երկրէս. իւր ծա-*

*ռաները · իւր խօսքերուն · ձեր երկրէն · իւր երեսին քրտինքովը · քու ձեռամբդ · իւր հիմերէն · իւր բարկութեամբ · իմ կողմէս (յերեսաց) · մեր բարեկամներով · իմ բազկիս (տր.) իւր մարդերէն · իւր հաճութեամբ ։*

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ**

### 24. ԱՆՈԽԱԿԱԼՈՒԹԻՒՆ ՅՈՎՍԵՓԱՅ

Իբրև տեսին եղբարքն Յովսեփայ թէ մեռաւ հայրն նոցա, ասեն. Գուցէ ոխս ունիցի ընդ մեզ Յովսէփ և հատուցանիցէ մեզ հատուցումն զամենայն չարեացն՝ զոր անցուցաք ընդ նա։ Եւ եկեալ առ նա, անկան առաջի նորա և ասեն. Ահաւասիկ մեք ծառայք քո եմք։ Ասէ ցնոսա Յովսէփ. մի՝ երկնչիք, դուք խորհեցարուք զիՆէն ի չարութիւն և Աստուած խորհեցաւ վասն իմ ի բարութիւն, զի կերակրեցի ժողովուրդ բազում։ Մի երկնչիք. ես կերակրեցից զձեզ և զտունս ձեր։ Եւ մխիթարեաց զնոսա։

### ՅՈՎՍԵՓԻՆ ԱՆՈԽԱԿԱԼՈՒԹԻՒՆԸ

Երբ տեսան Յովսեփին եղբայրները թէ իրենց հայրը մեռաւ, կ'ըսեն. Զըլլայ թէ Յովսէփ մեզի ոխ պահէ և մեր ըրած չարութեանց փոխարէն ընէ մեզի։ Եւ գալով անոր, ինկան անոր առջև և կ'ըսեն. Ահա մենք քու ծառաներդ ենք։ Կ'ըսէ անոնց Յովսէփ. Մի վախնաք. դուք ինձ համար չարիք խորհեցաք և Աստուած ինձ համար բարիք մտածեց, որովհետև շատ ժողովուրդ կերակրեցի։ Մի վախնաք. ես պիտի կերակրեմ ձեզի և ձեր ընտանիքը։ Եւ մխիթարեց զանոնք։

*(Ցուցըցէք ստացականածականները ։)*

---

## *ՑՈՒՑԱԿԱՆ ԱԾԱԿԱՆՔ*

*Ցուցական ածականներն են այս , այդ , այն , սոյն , դոյն , նոյն եւ կը հոլովին այսպէս .*

| | ԵԶԱԿԻ | ՅՈԳՆԱԿԻ |
|---|---|---|
| Ո. | Այս | Այսք այսոքիկ |
| Ս. | Այսր այսորիկ | Այսց այսոցիկ |
| Տ. | Այսմ այսմիկ | Այսց այսոցիկ |
| Հ. | զ Այս | զ Այս զ այսոսիկ |
| Բ. | յ Այսմ յ այսմանէ | յ Այսց յ այսցանէ |
| Գ. | Այսու այսուիկ | Այսու այսոքիւք |

Այսպէս կը հոլովին՝ այդ, այն։

| | ԵԶ. | ՅՈԳ. |
|---|---|---|
| Ո. | Սոյն | Սոքին |
| Ս. | Սորին | Սոցին, ցունց |
| Տ. | Սմին | Սոցին, ցունց |
| Հ. | զ Սոյն | զ Սոսին |
| Բ. | ի Սմին | ի Սոցին |
| Գ. | Սովին | Սովիմբք, սոքիմբք |

Այսպէս կը հոլովին՝ դոյն, նոյն։

Այս, այդ, այն ցուցական ածականները իրենց գոյականներուն հետ կը համաձայնին թուով եւ հոլովով։ Եթէ առաջ դրուին, կարճ հոլովները, եթէ ետքը դրուին, երկայն հոլովները կը գործածուին. երկրորդ ձեւին մէջ իրենց գոյականները կ'ուզեն ս, դ, ն գրեր։

(**Առաջ դրուած**)

| | ԵԶ. | ՅՈԳ. |
|---|---|---|
| Ո. | Այս տուն | Այս տունք |
| Ս. | Այսր տան | Այսց տանց |
| Տ. | Այսմ տան | Այսց տանց |
| Հ. | զ Այս տուն | զ Այս տունս |
| Բ. | յ Այսմ տանէ | յ Այսց տանց |
| Գ. | Այսու տամբ | Այսու տամբք |

(Սեռը դրուած)

| | ԵԶ. | ՅՈԳ. |
|---|---|---|
| Ո. | *Տունս այս* | *Տունքս այսոքիկ* |
| Ս. | *Տանս այսորիկ* | *Տանցս այսոցիկ* |
| Տ. | *Տանս այսմիկ* | *Տանցս այսոցիկ* |
| Հ. | *զ Տունս զայս* | *զ Տունս զայսոսիկ* |
| Բ. | *ի Տանէս յայսմանէ* | *ի Տանցս յայսցանէ* |
| Գ. | *Տամբս այսուիկ* | *Տամբքս այսոքիւք* |

*Սոյն, դոյն, նոյն ածականները գրեթէ առհասարակ գոյականէն առաջ դրուելով կը հոլովին, զոր օր.*

| | ԵԶ. | ՅՈԳ. |
|---|---|---|
| Ո. | *Նոյն բան* | *Նոյն բանք* |
| Ս. | *Նորին բանի* | *Նոցին բանից* |
| Տ. | *Նմին բանի* | *Նոցին բանից* |
| Հ. | *զ Նոյն բան* | *զ Նոյն բանս* |
| Բ. | *ի Նմին բանէ* | *ի Նոցին բանից* |
| Գ. | *Նովին բանիւ* | *Նովին բանիւք* |

**Հարցարան.** — Ո՞րոնք են *ցուցական* ածականները եւ ինչպէս կը հոլովին. — Ցուցականք ինչպէս կը համաձայնին իրենց գոյականներուն հետ. — *Սոյն, դոյն, նոյն* ուր կը դրուին.

**Հրահանգ 47.** — Որոշեցէք ցուցականները. — *Եւ յետ բանիցս այսոցիկ հիւանդացաւ որդի տիկնոջն.* — *Ի նմին բերանոյ ելանեն օրհնութիւնք եւ աղօթք.* — *Այս բան է զոր պատուիրեաց տէր։*

**Հրահանգ 48.** — Գրաբարի վերածեցէք կամ առաջ եւ կամ ետքը դնելով. — *Այն օրերուն մէջ կուգայ (գայ) Յովհաննէս Մկրտիչ.* — *Նոյն արմատէն ելաւ (ել).* —

*Այն անտառէն. — Այդ ծառային լէ (լուր). — Այս գիւղին (սեռ.). — Այս ջրով. — Այն քաղաքավարութեամբ. — Այն մարդէն. — Այն պարտային (տրա.). — Այս աղուն գրիչն էր. — Այդ մանուկները. — Այն խօսքերէն շատերը (բազումք) գայթակղեցան. — Այն աշակերտներուն խմբէն էր։*

**Հրահանգ 49.** — Հետեւեալ ցուցականներն ի՞նչ հոլով են, ի՞նչ թիւ եւ ի՞նչ նշանակութիւն ունին. — *Այնու, յայնց. զայդ. այսուհիկ. այսմ. այսորիկ. այդմ. զայս. այնր. այսու. այնմ. այնորիկ. այսոքիկ. զայնոսիկ. այն. զայդ. այդր. յայսցանէ. այդոքիւք. այնու. յայնմ. այդու։*

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

### 25. ՓԱՐԻՍԵՑԻՆ ԵՒ ՄԱՔՍԱՒՈՐ

Արք երկու ելին ի տաճարն կալ յաղօթս, մին փարիսեցի և միւսն մաքսաւոր. փարիսեցին կայր մեկուսի և զայս առանձին աղօթս մատուցանէր. Աստուած իմ, գոհանամ զքէն, զի ոչ եմ իբրև զայլս ի մարդկանէ, զյափշտակողս, և զանիրաւս և զշունս, կամ իբրև զայս մաքսաւոր. այլ պահեմ երկիցս ի շաբաթու, և տամ տասանորդս յամենայն ստացուածոց իմոց։ Եւ մաքսաւորն կայր մեկուսի և ոչ կամէր և ոչ զաչսն ընդ երկինս ամբառնալ, այլ կոծէր զկուրծս իւր և ասէր. Աստուած իմ, քաւեա զիս զմեղաւորս։ Ասեմ ձեզ. էջ սա արդարացեալ ի տուն իւր քան զնա։

### ՓԱՐԻՍԵՑԻՆ ԵՒ ՄԱՔՍԱՒՈՐԸ

Երկու մարդ տաճարը գացին աղօթելու, մին փարիսեցի և միւսը մաքսաւոր. փարիսեցին մէկ կողմ կեցած էր և առանձին այս աղօթքը կ'ընէր. Աստուած իմ, շնորհակալ եմ քեզ, վասն զի ուրիշ մարդոց պէս չեմ, յափշտակողներու, անիրաւներու և շուներու պէս, կամ այս մաքսաւորին պէս, այլ շաբաթը երկու անգամ ծոմ կը պահեմ և ունեցածներէս տասանորդ կուտամ։ Եւ մաքսաւորը մէկդի կեցած էր և չէր ուզեր աչքը երկինք վերցընել, այլ իր կուրծքը կը ծեծէր և կ'ըսէր. Աստուած իմ, ներէ ինձ մեղաւորիս։ Կ'ըսեմ ձեզի. սա անկէ աւելի արդար իր տունը գնաց։

*(Ցուցական ածականներ կա՞ն սոյն հատուածին մէջ։)*

## ԱՆՈՐՈՇ ԵՒ ՀԱՐՑԱԿԱՆ ԱԾԱԿԱՆՔ

**Անորոշ եւ հարցական** ածականներն են հետեւեալները. Ամենայն, այլ, իւրաքանչիւր, միւս, ո՞ր, ոմն, ոք, իմն ինչ, զի՞նչ, ո՞վ, ո՞, միմեանց, իրերաց, որոնք այսպէս կը հոլովին.

| | Ե Զ. | Ե Զ. | Յ Ո Գ. |
|---|---|---|---|
| Ո. | Ամենայն (ամէն) | Այլ (ուրիշ) | Այլք |
| Ս. | Ամենայնի | Այլոյ | Այլոց |
| Տ. | Ամենայնի | Այլում | Այլոց |
| Հ. | զ Ամենայն | զ Այլ | զ Այլս |
| Բ. | յ Ամենայնէ | յ Այլմէ | յ Այլոց |
| Գ. | Ամենայնիւ | Այլով | Այլովք |

**Իւրաքանչիւր**, **միւս**՝ այլին պէս կը հոլովին: Ասոնց յոգնակին քիչ կը գործածուի:

Այլ գոյականի հետ եղած ատեն թէ՛ առաջ եւ թէ ետքը կրնայ դրուիլ եւ թուով եւ հոլովով անոր հետ կը համաձայնի:

**Միւս** գոյականէ առաջ կը դրուի հոլովով ու թուով համաձայն:

**Իւրաքանչիւր** գոյականէ թէ՛ առաջ եւ թէ վերջը կը դրուի:

| | Ե Զ. | Յ Ո Գ. |
|---|---|---|
| Ո. | Ո՞ր | Ո՞րք |
| Ս. | Որո՞յ | Որո՞ց |
| Տ. | Որո՞ւմ | Որո՞ց |
| Հ. | զ Ո՞ր | զ Ո՞րս |
| Բ. | յ Ո՞րմէ | յ Որո՞ց |
| Գ. | Որո՞վ | Որո՞վք |

| | Եզ. | | Յոգ. |
|---|---|---|---|
| Ո. | Ոմն | մէկը | Ոմանք մէկ քանիներ |
| Ս. | Ուրումն | մէկուն | Ոմանց |
| Տ. | Ումեմն | մէկուն | Ոմանց |
| Հ. | զ Ոմն | մէկը | զ Ոմանս |
| Ա. | յ Ումեմնէ | մէկէն | յ Ոմանց |
| Գ. | Ոմամբ | մէկով | Ոմամբք |

| | Եզ. | | Յոգ. |
|---|---|---|---|
| Ո. | Ոք | մէկը | Ոմանք |
| Ս. | Ուրուք | մէկուն | Ոմանց |
| Տ. | Ումեք | մէկուն | Ոմանց |
| Հ. | զ Ոք | մէկը | զ Ոմանս |
| Բ. | յ Ումեքէ | մէկէն | յ Ոմանց |
| Գ. | Ոմամբ | մէկով | Ոմամբք |

Ոմն, ոք իրենց գոյականներէն առաջ դրուելով՝ թուով եւ հոլովով կը համաձայնին ։

Իմն կամ ինչ եւ զի՞նչ միայն եզակի կը հոլովին հետեւեալ կերպով .

| | Եզ. | | Եզ. | |
|---|---|---|---|---|
| Ո. | Իմն կամ ինչ | բան մը | Զի՞նչ | ի՞նչ բան |
| Ս. | Իրիք | բանի մը | Է՞ր | ի՞նչ բանի |
| Տ. | Իմիք | բանի մը | Ի՞մ կամ հի՞մ | ի՞նչ բանի |
| Հ. | զ Իմն կամ ինչ | բան մը | Զի՞նչ | ի՞նչ բան |
| Բ. | յ Իմեքէ, յիմեմնէ | բանէ մը | Առ իմէ՞ | ի՞նչ բանէ |
| Գ. | Իւիք | բանով մը | Ի՞ւ | ի՞նչ բանով |

Իմն կամ ինչ առանձին բնաւ չեն գործածուիր, այլ միշտ կամ ածականի եւ կամ գոյականի մը յետադաս ըլլալով՝ եզակիին մէջ հոլովով անոր հետ կը համաձայնին . իսկ յոգնակի սովորաբար ամէն հոլովի տեղ

իմն կամ ինչ կը գործածուի առանց համաձայնելու, զոր օր. Գործ ինչ, գործոյ իրիք, եւլն։

| | ԵԶ. | | ՅՈԳ. | |
|---|---|---|---|---|
| Ո. | Ո՞վ, ո՞ | ո՞ր | Ո՞յք | ո՞րոնք |
| Ս. | Ո՞յր | ո՞րոյ | Ո՞յց | ո՞րոնց |
| Տ. | Ո՞ւմ | ո՞րում | Ո՞յց | ո՞րոնց |
| Հ. | զ Ո՞վ, զ ո՞ | | զ Ո՞յս | զո՞րոնք |
| Բ. | յ Ո՞ւմմէ | ո՞րմէ | յ Ո՞յց | ո՞րոնցմէ |
| Գ. | Որո՞վ | | Ո՞րովք | ո՞րոնցմով |

Միմեանց, իրերաց սեռական են, ուղղական չունին եւ կը հոլովին այսպէս. Միմեանց, միմեանիւք. իրերաց, իրերօք, եւլն։

Ո՞վ կամ ո՞ իբրեւ հարցական բառ՝ գոյականաբար կը գործածուի անձանց համար. իսկ ո՞ր բառին հետ իբրեւ ածական կը հոլովի. ինչպէս, Ո՞վ ոք ո՞ ոք, ո՞յր ուրուք, ո՞ւմ ումեք, յումմէ՞ ումեքէ։

**Ծանօթ.** — Անորոշ ածականները յաճախ առանձին կը գործածուին եւ այն ատեն կը համարուին գոյական կամ դերանուն։

**Հարցարան.** — Ո՞րոնք են անորոշ ածականները. — Ի՞նչպէս կը հոլովին. — Ի՞նչ գիտելիք կայ անոնց մասին։

**Հրահանգ 50.** — Որոշել անորոշ ածականները. — Ումեմն ետ հինգ քանքար, ումեմն երկուս եւ ումեմն մի, իւրաքանչիւր ըստ իւրում կարի եւ գնաց. — Որո՞վ իշխանութեամբ առնես զայդ. — Զայլս ապրեցոյց, զանձն ո՞չ կարէ ապրեցուցանել. — Զայդ ամենայն պահեցի ի մանկութենէ իմմէ, արդ ի՞ւ ի՞ւիք պակաս իցեմ. — Նախանձ ոչ իմիք ժուժկալէ. — Ո՞յք ոմանք են սոքա. — Յետ աւուրց ինչ եկն Փիլիքս։

**Հրահանգ 51.** — **Գրաբարի վերածեցէք.** — *Ո՞րուն (ո ոք) տղան է այդ մանուկը. — Ո՞ր մարդոց համար է այդ. — Ի՞նչ բանէ կը վախնայ (երկնչել) աղջիկդ. — Հարուստ մարդու մը արտերը (անդ.ք) շատ բերք (տոհմականս) տուին (ետուն). — Ուրիշ աշխարհէ եկաւ (եկն). — Ամէն մարդ իր մահուան կ'սպասէ. — Մէկմէկու կը հարցնեն աշակերտք. Ի՞նչ է այս բանը. — Ո՞ր ազգէն, ո՞ր տոհմէն եկաւ Տէրն մեր Յիսուս Քրիստոս. — Ի՞նչու կը տրտնջաս. — Ո՞րոնք են աղոնք. — Ուրիշ կողմէ հեռացաւ կինը։*

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ**

**26. ՋՈՒՐ**

Ջուր կարեւոր պիտոյ է ի պէտս աշխարհի, ոչ միայն ի պէտս *բազում* ճարտարութեանցն որովք լնուն պէտք կենաց *մարդոց*, զի հուր է պատճառ.ք գործոցն նոցա, դարբնութեան և հիւսնութեան և մշակութեան և ոստայնանկութեան, հանդերձ *այլ* ևս *բազում* արուեստիւ.ք, այլ և ոչ ծաղիկ.ք ծառոց, և ոչ բոյս.ք սերմանցն և ոչ ծնունդ.ք խոտոց և ոչ հասանել եփել պտղոց, և ոչ անասուն.ք և գազան.ք և սողուն.ք երկրի և ոչ զեռուն.ք ջուրց, և ոչ կայտառ.ք ծովուց և ոչ կերակուր.ք *ամենայն* կարեն լինել թէ պատճառ.ք ջերմութեանն չէին խառնեալ ընդ նոսա։

**ԿՐԱԿ**

Կրակը շատ կարեւոր է աշխարհի պէտքերուն համար, ոչ միայն շատ մը ճարտարութեանց պէտքին համար, որոնցմով մեր կեանքի պէտքերը կը կատարուին, վասն զի կրակն է անոնց գործերուն պատճառ., դարբնութեան և հիւսնութեան և մշակութեան և ոստայնանկութեան, և ուրիշ շատ արուեստներու, այլ և ոչ ծառոց ծաղիկները, և ոչ սերմանց բոյսերը և ոչ խոտոց ծընունդները և ոչ պտղոց հասնիլ եփիլը և ոչ անասուններ և գազաններ և երկրի սողուններ և ոչ ջուրց ճճիներ և ոչ ծովուց ձկներ և ոչ ամէն կերակուրներ կրնան ըլլալ, եթէ ջերմութեան պատճառներ անոնց հետ խառնուած չըլլային։

*(Ի՞նչ ածական են չեղադիր բառերը։)*

# ԳԼՈՒԽ Գ.

## ԴԵՐԱՆՈՒՆ

*Իսրայէլ սիրէր զՅովսէփ առաւել քան զամենայն որդիս իւր (Իսրայէլի)․ քանզի որդի ծերութեան նորա (Իսրայէլի) էր․ եւ արար նմա (Յովսեփայ) պատմուճան ծաղկեայ։ Իբրեւ տեսին եղբարքն նորա (Յովսեփայ) թէ սիրէ զնա (զՅովսէփ) հայրն քան զամենայն որդիս իւր, ատեցին զնա (զՅովսէփ)։*

Այս հատուածին մէջ փակագծերով աւելցուած անունները կը ցուցընեն թէ խօսքը ո՛րոնց վրայ է, որոնց տեղը ուրիշ բառեր դրուած են, միեւնոյն անունները անդադար չկրկնելու համար։

**Դերանուն**(*) կ'ըսուին այն բառերն՝ որ անուան մը տեղ կը դրուին՝ շատ անգամ արդէն յիշուած բառը չի կրկնելու համար, զոր օր. *Յակոբ աշխատասէր է․ նա պիտի վարձատրուի*։

Դերանունները դէմք կը ցուցընեն եւ դէմքը երեք է. առաջին, երկրորդ, երրորդ։ Առաջին դէմքն այն է որ կը խօսի (ԵՍ)․ Երկրորդն է այն՝ առ որ կը խօսուի (ԴՈՒ)․ իսկ երրորդն է այն, որուն վրայով կը խօսուի (ՍԱ, ԴԱ, ՆԱ, ԻՆՔՆ, ԻՒՐ) (**)։

---

(*) Դերանուն բառին կազմութիւնն է Դեր=անուն։ Դեր կը նշանակէ տեղ, իսկ անուն, անուն։ Երկուքն ի միասին անուան տեղ դրուած բառի իմաստը կուտան։ Հնոց մէջ Դերանունի տեղ ըսուած է փոխանակ անուան․ այս երկու բառերն ալ անուան տեղ գործածուած բառ կը նշանակեն։ (Տե՛ս Կիւրեղ Աղեքս․ Մեկնութիւն Ս․ Գրոց)։

(**) Դէմք ցուցընելու համար կը գործածուին նաեւ Ս, Դ, Ն գրերն,

Դերանունները չորս տեսակ են. էական կամ անձնական, ցուցական, ստացական եւ յարաբերական :

Հարցարան · — Դերանուն ինչ կ'ըսուի. — Դերանուններ ինչ կը ցուցնեն. — Դերանուններ քանի տեսակ են :

## ԷԱԿԱՆ ԴԵՐԱՆՈՒԱՆՔ

Էական դերանուններն են. Ես, դու, սա, դա, նա, ինքն, իւր, որ հետեւեալ կերպով կը հոլովին.

| Ե Զ. | | Յ Ո Գ. | |
|---|---|---|---|
| Ո. Ես | ես | Մեք | մենք |
| Ս. Իմ | իմ | Մեր | մեր |
| Տ. Ինձ | ինծի | Մեզ | մեզի |
| Հ. զ Իս | իս | զ Մեզ | մեզ |
| Բ. յ Ինէն | ինծմէ | ի Մէնջ | մենէ |
| Գ. Ինեւ | ինծմով | Մեօք | մեզմով |

| Ե Զ. | | Յ Ո Գ. | |
|---|---|---|---|
| Ո. Դու | դուն | Դուք | դուք |
| Ս. Քո | քուկին | Ձեր | ձեր |
| Տ. Քեզ | քեզի | Ձեզ | ձեզի |
| Հ. զ Քեզ | քեզ | զ Ձեզ | ձեզ |
| Բ. ի Քէն | քեզմէ | ի Ձէնջ | ձենէ |
| Գ. Քեւ | քեզմով | Ձեօք | ձեզմով |

Ծանօթ. — Նախնեաց գրուածոց մէջ գործածուած են մեւք, ձեւք' փոխանակ մեօք, ձեօքի. բայց միեւնոյն կերպով կը կարդացուին :

---

որոնք դիմորոշ յօդ կ'ըսուին, եւ բառերու ծայրը դրուելով' անոնց դէմքն ու նշանակութիւնը կ'որոշեն, զոր օր.

Տեսս ըսել է ես տեղ, իմ տեղ, այս տեղ.
Տեսդ » դուն տեղ, քու տեղ, այդ տեղ.
Տեսն » ինքն տեղ, իր տեղ, այն տեղ.

| | ԵԶ. | | ՅՈԳ. | |
|---|---|---|---|---|
| Ո. | Նա | անիկա | Նոքա | անոնք |
| Ս. | Նորա | | Նոցա | |
| Տ. | Նմա | | Նոցա | |
| Հ. | զ Նա | | զ Նոսա | |
| Բ. | ի Նմանէ | | ի Նոցանէ | |
| Գ. | Նովաւ | | Նոքօք | |

*Այսպէս կը հոլովին՝ Սա եւ դա ։*

| | ԵԶ. | | ՅՈԳ. | |
|---|---|---|---|---|
| Ո. | Ինքն | | Ինքեանք | իրենք |
| Ս. | Ինքեան | իրեն | Ինքեանց | իրենց |
| Տ. | Ինքեան | իրեն | Ինքեանց | իրենց |
| Հ. | զ Ինքն | | զ Ինքեանս | զիրենք |
| Բ. | յ Ինքենէ | ինքիրմէ | յ Ինքեանց | իրենցմէ |
| Գ. | Ինքեամբ | ինքիրմով | Ինքեամբք | իրենցմով |

| | ԵԶ. | ՅՈԳ. | |
|---|---|---|---|
| Ո. | — | Իւրեանք | իրենք |
| Ս. | Իւր, իւրեան իրեն | Իւրեանց | իրենց |
| Տ. | Իւր, իւրեան իրեն | Իւրեանց | իրենց |
| Հ. | — | զ Իւրեանս | զիրենք |
| Բ. | յ Իւրմէ իրմէ | յ Իւրեանց | իրենցմէ |
| Գ. | Իւրեւ, իւրեաւ, իւրեամբ իրմով | Իւրեամբք | իրենցմով |

*Իսկ ցուցական (այս, այդ, այն, սոյն, դոյն, նոյն), ստացական (իմ, քո, մեր, ձեր, իւր), յարաբերական (որ ո) դերանուանց հոլովմունք տե՛ս* 61, 64, 67 *էջերում։*

**Հրահանգ 54.** — Որոշել հետեւեալ դերանուններուն դէմքը, թիւը եւ հոլովը. — *Ինքեան, զիս, զքեզ, ի*

մէնջ, ինեւ, քո, զմեզ, ձեր, ինքեամբ, մեօք, քեւ, զինքեանս, յինքենէ, ի քէն, քեզ, ինձ, ձեզ, յինէն, մեզ, ի նմանէ, նովաւ, նոցա, զնոսա ։

**Հրահանգ 52.** — (Նոյն). — Ծառայ իմ ես դու. — Ուսուցիչ եմ քեզ. — Աշակերտք եմք մեք. — Դու ես որդի իմ. — Մեծ են բարութիւնք նոցա. — Դու ես առաջնորդ նոցա. — Մեք եմք աշակերտք Մեծին Մովսէսի. — Մաքուր են ձեռք իւրեանց. — Եղիցի քեզ եւ նոցա կերակուր. — Դուռն բաց էր ինձ. — Եղերուք դուք բարերարք. — Որ լուիցէ ինձ՝ ոչ ամաչեսցէ, եւ որք գործեցին ինեւ, ոչ մեղիցեն ։

**Հրահանգ 53.** — Հետեւեալ շեղագիր դերանուններն իրենց նշանակուած հոլովներուն վերածեցէք.

Որ ինչ ես (եզ. սեռ.) է, դու (եզ. սեռ.) է ։
Ես (եզ. բցռ.) մերկեցան, դու (եզ. բցռ.) կեան ։
Մեք (յոգ. բցռ.) ելին, թշնամիք մեք (յոգ. սեռ.) են ։
Բանք նորա դուք են (յոգ. տրա.) եւ ոչ մեք (յոգ. տրական) ։
Ամենայն ինչ նա (եզ. գործիա.) եղեւ ։
Կէսք նոքա (յոգ. բացա.) աստ առ մեզ են ։
Օգտակար է դու (եզ. տրա.) ։

**Հրահանգ 54.** — Գրաբարի վերածեցէք. — Իմիններս կ'ուտեմ. — Իրենք զիրենք զրկեցին. — Ասոնք գրեցէք ձեր մտքին մէջ (ի միտս ձեր). — Իմիններս կը սիրեմ եւ իմիններէս կը սիրուիմ. — Քուկինդ քեզի ըլլայ (լիցի). — Անկարելի է ատոր լինելը. — Իրենները զանի չընդունեցին (ոչ ընկալան). — Ամենքն ալ տխմար են մերիններէն զատ (բացի). — Ասիկա լաւ հասկըցէք (ի միտ առէք). — Ձերինները խրկեցի ։

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

## 27. ՄԵՍՐՈՎՊ

Մեսրովպ էր շինական, սնեալ և ուսեալ առ. մեծին Ներսիսի, և յետ ելից նորա յաշխարհէ՝ սա սիրեաց զմենակեցութեան վարս, որպէս ասաց ոմն. Ի նաւահանգիստ փութայ նաւ խռովեալ և անձն ժուժկալ խնդրէ զանապատ, նոյնպէս և նորա փախուցեալ յաշխարհական զբաղմանց, զհետ ընթանայր երկնաւորին։

Եւ յորժամ վարդապետէր Մեսրոպ՝ ոչ փոքր կրէր վտանգս, քանզի ինքն էր ընթերցող և թարգմանիչ. և եթէ այլ ոք ընթեռնոյր, ուր նա ոչ հանդիպէր, զանխուլ ի ժողովրդոցն լինէր՝ յաղագս ոչ լինելոյ թարգմանիչ։ Վասն որոյ եդ ի մտի հնարել գրտանել նշանագիրս Հայոց և արկեալ զանձն ի ջանս, պէսպէս փորձիւք տաժանէր։

## ՄԵՍՐՈՊ

Մեսրոպ գիւղացի էր, սնած և ուսած մեծին Ներսիսի քով, և անոր մահէն ետքը՝ սա սիրեց մենակեցութիւն, ինչպէս ըսաւ մէկը. Ալեկոծեալ նաւը նաւահանգիստ կ'երթայ և ժուժկալ անձը անապատ կուզէ. նոյնպէս նա ալ աշխարհական զբաղումներէ հեռանալով, երկնաւորին կը հետեւէր։

Եւ երբ Մեսրոպ կը վարդապետէր, շատ նեղութիւն կը կրէր, քանզի ինքն էր կարդացող և մեկնող. և եթէ ուրիշ մէկը կարդար, ուր ինք չէր գտնուեր, մեկնող չըլլալուն համար ժողովուրդը չէր հասկընար։ Որուն համար միտքը դրաւ Հայոց լեզուի նշանագիրները ջանալ գտնել և աշխատելով՝ պէսպէս փորձերով կը յոգնէր։

*(Ցուցըցէք նոյն հատուածին դերանունները։)*

**Դիտող.** — *Անկէ անդին եղած թարգմանութեանց աշխարհաբարները զանց առած ենք։*

# ԳԼՈՒԽ Գ.

## ԲԱՅ

*Ծերունի ոմն հասեալ փայտ յանտառէ եւ բարձեալ ի յուս բերէր զայն ի տուն, այլ յընդերկար ընթացիցն պարտասեալ հարկեցաւ դնել յերկիր զբեռն, եւ սկսաւ յօգնութիւն կարդալ զմահ։ Եւ ահա եկն, եւ, երեւեցաւ նմա մահ եւ եհարց թէ առ ի՞նչ կոչէր զինքն. Յայնժամ ծերունւոյն զահի հարեալ ասէ. Զի տացես յուս զբեռն իմ։*

Այս խօսքին մէջ նախ *հատանել* (կտրել) ծերունւոյն ըրած գործողութիւնը կը ցուցնէ, յետոյ դարձեալ ծերը վերցնելով (*բարձեալ*) կտրածը տուն կը բերէ. Թէ կը յոգնի եւ կը ստիպուի բեռը գետին դնել եւ կըսկսի մահը օգնութեան կանչել, եւլն։ Վերի հատուածին մէջ եղած բոլոր շեղագիր բառերը գործողութիւն կը ցուցնեն։

Կամ թէ երբ ըսենք. երկինք . . . կապոյտ , արեգակն . . . զաշխարհ. այս կերպով միայն իրեր կ'անուանենք առանց զանոնք հաստատելու, առանց անոնց վրայ բան մը ըսելու։

Բայց, ընդհակառակն, եթէ ըսենք *երկինք կապոյտ է*, *արեգակն* ԼՈՒՍԱԻՈՐԷ *զաշխարհ*, իմաստ մը կը ձեւանայ։

Բան մը հաստատելու, ըսելու անհրաժեշտ եղող բառը բայ կը կոչուի։ Առանց անոր՝ բառերը լոկ կը ներկայացնեն իրարու անհաղորդ, անկապ, անջատ գաղափարներ։

Այն բառն՝ որ գործողութիւն մը , այսինքն ընել , ըլլալ կամ կրել կը ցուցնէ , բայ կ'ըսուի , զոր օր. Մշակն յառնէ (կ'ելնէ) , յառնէ մշակին ըրած գործողութիւնը կը ցուցընէ ։ Ես գրեցի , գրեցի իմ ի՛նչ ընելս կը ցուցնէ ․ Հետեւաբար յառնէ , գրեցի , բայ են ։

Բայերը խօսքին մէջ այլ եւ այլ ձեւեր կ'առնուն ,

*որոնց կ'ըսուի խոնարհում ։ Ինչպէս . Ես գացի . Նա սիրէ . դու լսեցիր . Նա եկաւ ։*

*Բայց ամէն բայ միեւնոյն կանոնով չի խոնարհիր, այլ զատ զատ կերպերով. այս տարբերութենէն չորս կերպ լծորդութիւն յառաջ կուգան ։ Այս լծորդութիւնները են . Եմ, իմ, ամ, ում ։*

*Ինչպէս . Ա. — Սիրեմ, լսեմ, մեղանչեմ, եւլն։*
*Բ. — Խօսիմ, անկանիմ, մեռանիմ, եւլն ։*
*Գ. — Աղամ, կարդամ, հաստատամ, եւլն ։*
*Դ. — Թողում, ընթեռնում, հեղում, եւլն։*

**Հարցարան**. — Ի՞նչ է *բայը*. — Ի՞նչ է *խոնարհումը*. — Ի՞նչ է *լծորդութիւն*. — Քանի՞ են *լծորդութիւնք*.

**Հրահանգ 55**. — Ի՞նչ կ'ընեն կամ ի՞նչ կ'ըլլան. — *Գրչաւ (գրեն). — Ասղամբ. կշռով. սանդղով. ունելեաւ. հացիւ. ջրով. գաւազանաւ. կաթամբ. ուրախութեամբ. երգօք. խաղալեօք ։*

**Հրահանգ 56**. — Ի՞նչ կ'ընէ. — *Հողմ (շնչէ). — Փոթորիկ —. Լուսին —. Ծով —. Ծառ —. Ծաղիկ —. Ճրագ —. Աշակերտ —. Ուսուցիչ —. Ծառայ —. Մշակ —. Վաճառական —. Դերձակ —. Նկարիչ —. Թռչուն —. Թութակ —. Ոչխար —. Ցուլ —. Ձիւն —. Վարդապետ —. Քահանայ —. Խորանակարն —. Տապարն ։*

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

## 28. ՔՍԵՆՈԿՐԱՏ

Ի միում աւուրց պատմեցաւ Քսենոկրատայ զի աշակերտ իւր չարախօսէր զնմանէ, և նա ասէ . «Չհաւատամ» ։ Եւ ի հաստատել պատմողաց զբանսն, նա տակաւին յամառեալ ասէր թէ՝ «Չհաւա-

տամ» ։ Իսկ ի ցուցանել նոցա հաւաստեօք զբանսն, ասէ. «Անհնար է թէ չսիրիցէ զիս, յոր ես խանդաղակաթն գորովիմ» ։

*(Որոշեցէք բայերն ։)*

*Զնմանէ*, անոր վրայով .
*Ի հաստատել պատմողաց*, երբ պատմողները հաստատեցին .
*Հաւաստի*, ապացոյցներ.
*Խանդաղակաթն գորովիմ*, գորովանօք կը սիրեմ ։

---

## *ԲԱՅԵՐՈՒ ՏԵՍԱԿՆ*

*Բայերն իրենց նշանակութեան համեմատ չորս տեսակ են. Էական, ներգործական, կրաւորական եւ չէզոք ։*

*Էական բայն է Եմ բայն ։*

*Ներգործական բայն անձի կամ իրի վրայ ուղղակի ներգործել կը նշանակէ. Օրինակ. Սիրեմ, կարդամ, լսեմ, ներգործական են ։*

*Եթէ բայն ուրիշէն կրել նշանակէ, կրաւորական է. Պատժիմ (կը պատժուիմ) յԱստուծոյ ։*

*Չէզոք կ'ըսուին այն բայերն, որ բան մը ընել կամ կրել կը նշանակեն առանց ուրիշին վրայ ազդելու, զոր օր. Հիւանդանամ, մեռանիմ, եւլն ։*

**Հարցարան.** — Բայերը քանի տեսակ են. — Ո՞րոնք են *էական, ներգործական, կրաւորական, չէզոք* բայերն ։

**Հրահանգ 57.** — Որոշել հետեւեալ բայերու տեսակն. — *Ուտեմ (ներգործական). Լսեմ. Անկանիմ (իյնամ). Կեամ (ապրիմ). Ընկենում. Մերժիմ (մերժուիմ). Բարկանամ. Մերկանամ. Գործեմ. Մնամ. Ընթեռնում. Բանամ. Ցենում (կոխնիմ). Ճանաչեմ. Մեռանիմ. Երթամ. Մեղմանամ. Ելանեմ. Տեսանեմ. Հարկանեմ*

(զարնուիլ) · սիրիլ (սիրուիլ) · Թողում · Լամ · Զբօսնում · Զգենում (հագնիլ) ։

# ՏԷՐ ԲԱՅԻ

Տէր բայի կ'ըսուի այն ուղղական հոլովին՝ որ գործողութիւնն ընող անձը կամ իրը կը ցուցնէ, զոր օր. Քրիստոս ծնաւ. Գարուն հասաւ ։

Բայը թուով եւ դէմքով կը համաձայնի տէր բայիին հետ ։

Անեզական տէր բայիներու բայը յոգնակի կը դրուի։

Տէր բային ո՞վ կամ ի՞նչ հարցմամբ կը գտնուի, զոր օր. վերի խօսքին մէջ. ո՞վ ծնաւ, Քրիստոս, ի՞նչ հասաւ գարուն. ուրեմն Քրիստոս, գարուն բառերը տէր բայի են ։

**Ծանօթ**. — Դերանուն տէր բայիները շատ անգամ լռելեայն կ'իմացուին ։

**Հարցարան**. — Տէր բայի որու կ'ըսուի. — Տէր բային ինչպէս կը համաձայնի իր բային հետ. — Տէր բային ինչ հարցմամբ կը գտնուի ։

**Հրահանգ 58**. — Յարմար տէր բայի մը դրէք գծին տեղ. — (Ծիծառն) գնաց յաշնան. — — լուսաւորէ զերկիր. — մեղմէ զվիշտս. — Թանայ (Թրջէ) զՍ․ Փեթրպուրկ. — ած տասն պատիժս ի վերայ Եգիպտոսի. — սնուցանէ կաթամբք իւրովք. — որսայ. — կրթէ զաշակերտս. — իմաստուն է. — գթած է —. — փրկեաց զԻսրայէլ ։

**Հրահանգ 59**. — Յարմար տէրբայի մը դրէք գծերուն տեղ. — Ձայնք անասնոց. — — հաչէ. — զռնչէր. —

*խրխնջէր. — խանջէ. — ոռնայ. — մայեն. — պո-ռոչեն. — գռգռայ. — կարկաջէ. — ղօղանջէ. — մլաւէ. — մռնչէ. — սուլէ. — երգէ. — խօսի։*

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

## 29. ԱՐՄԱՒԵՆԻ

Ցարմաւենիս արուս և էգս անուանին, զի որ էգ արմաւենին անուանի, խոնարհեցուցանէ կորացուցանէ զոստս իւր ի կողմն արու արմաւենոյն, և ի մերձենալ ոստոցն առ միմեանս՝ իբրև սէր իմն և գութ և ամուսնութիւն կատարի։ Իսկ մշակքն՝ որ տնկոցն տեղեակք են և գիտեն զչափս իրացն, առնուն յոստոց արուին իմն և տանին յարեն յէգ արմաւենին։ Իսկ և իսկ վաղվաղակի իբրև ընդունի յարմաւենոյն զսակաւ ինչ նշանակն, ուղղին անդէն ի վեր ոստքն, և հաստատի ակնդիր կայ կանգուն ծառն ի լոյծ մեղկութենէ անտի, իբրև թէ ընկալաւ այնուհետև հանգիստ ինչ և կատարեցան կամք իւր։

*(Ցուցըրէք սոյն հատուածին տէրբայինները ։)*

*Կորացուցանել*, ծռել.
*Իսկ եւ իսկ*, անմիջապէս.

---

## ԵՂԱՆԱԿ, ԺԱՄԱՆԱԿ

*Որեւէ բանի վրայ խօսելու ատեն մենք կրնանք անոր գործողութեան ըրկ անունը տալ, կամ բան մը պատմել անոր վրայ կամ հրամայել, ցանկալ որ գործողութիւնը կատարուի եւ կամ բերքեան տակ ձգել նորա գործողութիւնը։ Ասոնցմէ յառաջ կուգան բայի այս չորս եղանակները. Սահմանական, Հրամայական, Ստորադասական եւ Աներեւոյթ։*

Սահմանական եղանակը որոշ կը պատմէ թէ գործողութիւնը ի՞նչպէս կը կատարուի, կատարուեր է կամ պիտի կատարուի, զոր օր.

Գամ ես; երթայիր դու, եկեսցէ նա։

Այս եղանակն ունի երեք ժամանակ. ներկայ, անցեալ եւ ապառնի։

Ներկայ ժամանակը կը ցուցնէ թէ գործողութիւնը հիմա կը կատարուի. զոր օր. հասանէ գարուն, ծաղկին ծառք պարտիզին։ Գարունը հիմա կը հասնի. պարտէզին ծառերը հիմա՛ կը ծաղկին։

Անցեալը կը ցուցնէ թէ գործողութիւնը երբեմն կատարուած է. եւ եթէ բոլորովին լրացած չէ, կ'ըսուի անկատար. իսկ եթէ վերջացած է՝ կատարեալ, զոր օր.

Յորժամ գնացի յանտառ, երգէր սոխակ։ Այսինքն երբ ես անտառ գացի (կատարեալ), սոխակը կ'երգէր, այսինքն դեռ կը շարունակէր երգել (անկատար)։

Ապառնի ժամանակը կը ցուցնէ թէ գործողութիւնը դեռ չէ կատարուած, այլ նոր պէտք է կատարուի։ Զոր օր. Եկից եւ տեսից զքեզ, այսինքն պիտի գամ եւ պիտի տեսնեմ (ապռ.)։

Հրամայական եղանակը կը յայտնէ խօսողի հրամանը կամ խնդիրքը կամ ցանկութիւնը. գործողութիւնը կամ կը կատարուի ու չկատարուիր. եւ այս պատճառաւ երկուքի կը բաժնուի ստորադասական, որ գործողութեան կատարուելուն հաւանութիւն կը ցուցընէ եւ բացասական, որ նորա կատարման արգելք կ'ըլլայ։ Զոր օր. Արի՛, ա՛ռ զմահիճս քո եւ ե՛րթ ի տուն քո. Մի՛ արկանէք զմարգարիտս ձեր առաջի խոզաց։

Ստորադասական եղանակը խօսքը պայմանի տակ կը ձգէ յայտնելով թէ գործողութիւնը կրնայ պատահիլ

*ու չպատահիլ, կամ կարող էր կատարուիլ, բայց չէ կատարուեր ։ Զոր օր. Միտք մարդոյ զբարին գովիցէ եւ զչար խոտիցէ ։ Ստորադասականը ըստ ինքեան ոչ մէկ ժամանակ ունի եւ կը յարմարի բոլոր ժամանակներու հետ ։*

*Աներեւոյթը բայի սկզբնական ձեւն է, ինչպէս ուղղական հոլովը անուններու մէջ ։ Այս եղանակը չորոշեր թէ գործողութիւնը ե՞րբ կը կատարուի կամ ո՞վ կը կատարէ ։ Այս պատճառաւ կ՚ըսուի նաեւ անորոշ, զոր օր. տեսանել. սիրել. երթալ ։*

*Սահմանականը, հրամայականը եւ ստորադասականը դէմք ունին եւ դիմաւոր կ՚ըսուին. իսկ աներեւոյթը դէմք չունի եւ անդէմ կ՚ըսուի ։*

**Հարցարան**. — Ի՞նչ է եղանակը եւ քանի՞ է. — Ի՞նչ է սահմանականը. — Անոր բաժանումները. — Ի՞նչ է հրամայականը, ստորադասականն եւ աներեւոյթը ։

**Հրահանգ 60**. — Որոշել հետեւեալ բայերու ժամանակներն ու եղանակները. — *Սիրեա՛. Ծանի՛ր (ճանչցի՛ր). Սիրեցէք. Ծնանէի. Ընթացայ. Կորուսի. Մնաց. Լուացաւ. Գործէ. Նայեցան. Բնակեսջի՛ք. Դարձի՛ր. Փութա՛. Աղաչեցի. Կանգնէի. Մի՛ լսեր. Տեղաց. Խաղաց. Առից. Արասցուք (ընենք). Ծածկեսցի (պիտի ծածկուի). Կամեցայ (ուզեցի). Երկեան (վախցան). Ասեն (կ՚ըսեն). Իջին (իջան). Ասաց (ըսաւ). Զոքաւ (գնաց). Մի՛ նախանձիր. Անմտացայ. Ունիս. Նաւեցին. Անկաւ. Մի՛ դարձուցաներ ։*

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ**

---

## 30. ՀԱՅՐՆ ՄԱԿԱՐ

Գնացեալ երբեմն հայրն Մակար ի կողմանս Եգիպտոսի ընդ եղբարս ոմանս՝ լուաւ զձայն մանկան ուրուք ինչ որ կոչէր զմայր իւր և

ասէր. Մայր, մեծատուն ոք սիրէ զիս, և ես ատեամ զնա. և աղքատ ոք ատեայ զիս և ես սիրեմ զնա։ Իբրև լուաւ զայս հայրն Մակար, զարմացաւ յոյժ։ Եւ ասեն ցնա. Ընդէ՞ր զարմանայցես ընդ այս, հայր։ Ասէ ցնոսա ծերն. Առակ են բանք մանկանդ, և մեք մանուկ եմք մըտօք. իսկ մեծատունն զորմէ ասէ մանուկն՝ է ճշմարիտ Աստուածն մեր, զի սիրէ զմեզ և ոչ պահեմք զբանս նորա և ատեամք զնա. և աղքատ է թշնամին մեր դեւն, և ատեայ զմեզ, և մեք սիրեմք զաղտեղութիւն նորա։

*(Որոշեցէք բայերուն ժամանակներն ու եղանակներն։)*

---

## ԴԷՄՔ ԵՒ ԹԻՒ

*Առ հասարակ ամէն խօսքի համար երեք բան հարկաւոր է. նախ պէտք է որ մէկը խօսի, երկրորդ հարկ է որ մէկ ուրիշն ալ անոր մտիկ ընէ, վերջապէս երրորդ մ'ալ հարկաւոր է, որուն վրայ կարելի է բան մը ըսել։ Ասոնցմէ յառաջ կուգան բայի երեք դէմքերը։ Ասոնք իրենց վերջաւորութիւններով կ'որոշուին մէկմէկէ։*

*Առաջին դէմքով կը յայտնուի խօսող անձը եւ իր ըրած գործողութիւնը. Սիրեմ (ես) զԱստուած իմ. Ատեմք (մեք) զսատանայ։*

*Երկրորդ դէմքով կը դրուի այն, որու հետ առաջինը կը խօսի. Ողորմեաց (դու). Դուք էք մեր ուրախութիւն։*

*Երրորդ դէմքով կը դրուին այն բոլոր առարկաները եւ նոցա գործողութիւններն՝ որոնց վրայ կը խօսուի։ Մշակն կամ նա գործէ. Աշակերտք կամ նոքա ուսանին։*

*Բայերն անուններու նման երկու թիւ ունին. եզակի եւ յոգնակի։*

*Եզակին կը ցուցնէ մէկու ըրած կամ կրած գործողութիւնը, զոր օր. Երթամ ի տուն. Չարն ոչ տեսցէ զլոյս։*

*Յոգնակին կը ցուցնէ շատերու գործողութիւնը. զոր օր. Ճարակին խաշինք. Կործանեցան պատնէշք։*

**Հարցարան.** — Խօսքի համար ինչ բան հարկաւոր է. — Ի՞նչ կը յայտնուի առաջին, երկրորդ, երրորդ դէմքերով. — Բայերն ինչ ունին. — Ո՞րոց կ'ըսուի *եզակի* եւ *յոգնակի*.

**Հրահանգ 61.** — Որոշել հետեւեալ բայերուն դէմքն ու թիւն. — *Կատարէիր. խօսէին. սիրեաց. եկեսցէ (պիտի գայ). ժողովեմ. ընթեռնուցուն. անկայ. սիրեա՛ (սիրէ՛). մտանեմ. ելանէի. փախի՛ր. մի՛ գար. բժշկեսցիս (պիտի բժշկուիս). մտածեմ, ուրեմն կամ. բարի ես դու. ապաշնորհք մոռանան զերախտիս. ընտրեա՛ զբարեկամս քո. սիրեսցեն (պիտի սիրեն). ըմբռնեցայ (բռնուեցայ). ա՛ռ. հայէի (նայէի). լուայ (լսեցի). ժողովեցի. կարգամ. թաղեցին. լսէիր. ամաչեցի. հոգացաւ. տառապէիր. բժշկեցաւ. սիրե՞ս զիս։*

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

## 31. ՃԱՅՔ

Չիք ոք ի մարդկան, որ այնչափ խոնարհագոյն քան զթռչունս գտանիցի։ Իբրեւ տեսանեն ճայք թուլացեալ զթեւս հօր իւրեանց ի ծերութենէն, աստի և անտի մտանեն և բառնան զնա ի վերայ թեւոց իւրեանց և առնուն խաղան և մեղմով ըստ նմա գան, և ջամբեն կերակուր ինչ զոր և գտանեն, և որպէս ախորժէ երթալ նա, այնպէս ըստ նմին երթան հանդարտիկ, շուրջ պատեալ զնովաւ յաջմէ և յահեկէ. և այսմ՝ զոր ասացաքս, բազումք վկայեն՝ թէ այս այսպէս է։ Եւ մարդք բարեգործք՝ որ առնեն բարիս ընկերաց, այսպէս անուանեալ կոչին. ճայից պէս պատուադիրք։

*( Որոշեցէք բայերու դէմքն ու թիւն ։ )*

**Ճայ**, ջրային թռչուն մը, երկայն կտուցով եւ բարձր սրունքով, (ալա գարգա)։
**Զամբել**, կերակրել ։
**Պատուադիր**, պատիւ ընող ։

---

## ԲԱՑԻՑ ԽՆԴԻՐԸ

*Տէր բայիով մը եւ բայով մը կատարուած գործողութիւնը ի հարկէ անձի մը; անասնոյ մը կամ իրի մը վրայ կ'իյնայ։ Եթէ ըսենք . Ուսումն կրթէ . . . կը հասկընանք թէ այս նախադասութիւնը պակաս է. որովհետեւ կրթելու գործողութիւնը մէկու մը հետ առընչութիւն ունի։*

*Խնդիր կ'ըսուի այն հոլովուած բառն՝ որ բային իմաստը կ'ամբողջացնէ որոշելով այն անձը , անասունը եւ իրն՝ որուն վրայ կը դառնայ բայով ցուցուած գործողութիւնն ։ Ինչպէս . Պատուեա զհայր քո . Լերինք Լիբանանու . այս խօսքերուն մէջ զհայր քո եւ Լիբանանու բառերը խնդիր են ։*

*Բայերու խնդիրը երկու տեսակ է . Խնդիր սեռի եւ խնդիր բնութեան ։*

### ԽՆԴԻՐ ՍԵՌԻ

*Խնդիր սեռի կ'ըսուի այն հայցական հոլովն՝ որուն վրայ գործողութիւնն ուղղակի կը կատարուի , զոր օր. Աստուած արար զաշխարհ ։*

*Խնդիր սեռի կ'առնուն ներգործական եւ կրաւորական բայերն . Ներգործական բայերուն սեռի խնդիրը հայցական հոլով է , որ զո՞վ կամ ի՞նչ բանը հարցման պատասխան է , զոր օր. Վերի խօսքին մէջ զի՞նչ ստեղծեց զաշխարհ . զաշխարհ , սեռի խնդիր է ։*

*Երբ հայցականն անորոշ է, հայցականին վրայ զ նախդիր չդրուիր եւ այն ատեն կ'ըսուի անորոշ հայցական ։ Զոր օր. Տուր ինձ հաց . հաց՝ անորոշ հայցական սեռի խնդիր է ։*

**Հարցարան**. — *Խնդիր* ինչու կ'ըսուի . — Խնդիրը քանի տեսակ է . — *Սեռի խնդիր* ինչու կ'ըսուի. — *Անորոշ հայցական* ինչու կ'ըսուի ։

**Հրահանգ 62**. — **Սեռի խնդիրը գտէք** . — *Ի բերանոյ մեղուին եհան զմեղրն . — Պատուեա զհայր քո եւ զմայր. — Հռովմայեցիք կործանեցին զպարիսպս Սապինայ . — Ամենայն ծառ բարի՝ պտուղ բարի առնէ, եւ ծառ չար՝ պտուղ չար առնէ . — Որ ոք գիտիցէ զբարին եւ ոչ առնիցէ, մեղք են նմա . — Որդի՝ որ անարգէ զհայր եւ մերժէ զմայր, ամօթ կրէ եւ նախատ լիցի . — Որդի իմաստուն ուրախ առնէ զհայր, որդի անմիտ արհամարհէ զմայր իւր . — Երանի՛ ողորմածաց, զի նոքա ողորմութիւն գտցեն . — Սիրեցէք ,զպանդուխտն . — Յովսէփ արածէր խաշինս . — Հարից ես զփող եղջերեայ ։*

**Հրահանգ 63**. — (*Նոյն*) . — *Երկինք պատմեն զփառս Աստուծոյ . — Օրհնութիւն հօր հաստատէ զտունս որդւոց եւ անէծք մօր խլեն զհիմունս . — Զայր զուարթ սիրէ Աստուած . — Զի եթէ թողուցուք մարդկան զյանցանս նոցա, թողցէ եւ ձեզ հայրն ձեր երկնաւոր . — Անզգամն անգոսնէ զխրատ հօր . — Եթէ ոք սիրէ զիս, զբանն իմ պահեսցէ . — Եբաց Նոյ զպատուհան տապանին . — Օրհնեցից զքեզ եւ մեծացուցից զանուն քո . — Որ պահէ զօրէնս՝ երանելի է . — Որ արբուսցէ բաժակ մի ջուր ցուրտ, ոչ կորուսցէ զվարձս իւր . — Զհուր բորբոքեալ շիջուցանէ ջուր ; եւ ողորմածութիւն քաւէ զմեղս ։*

**Հրահանգ 64.** — **Հետեւեալ գծերուն տեղ յարմար սեռի խնդիր մը դրէք.** — *Արեգակն լուսաւորէ (զերկիր). Մայր խնամէ —. Արօր պատառէ —. Քրիստափոր Կոլոմպոս եգիտ —. Նաւուղիղն վարէ —. Հայրն ետես —. Հռովմայեցիք պաշարեցին —. Որսորդն որսայ —. Ձկնորսն կալաւ (բռնեց) —։*

**Հրահանգ 65.** — **Գրաբարի վերածեցէք.** — *Քաղաքը շինեց. — Հայրերնիդ սիրեցէք. — Նա զքեզ կը սնուցանէ. — Ոչխարը կ'ուտէ դալար խոտը. — Ես կը պաշտպանեմ տղադ. — Հին բարեկամը մի՛ թողուր, վասնզի նորն անոր հաւասար չէ. — Մի՛ դարձըներ (մի՛ դարձուցաներ) քու երեսդ ամէն աղքատէ եւ Տէր Աստուած իր երեսը քենէ չպիտի դարձընէ. — Ով որ ոխ կը պահէ՝ անօրէն է. — Եթէ քու թշնամիդ անօթի է՝ կերակրէ զանի, եւ եթէ ծարաւ է, ջուր տուր անոր (տուր նմա ըմպել)։ — Մանչեր եւ աղջիկներ (ուստր եւ դուստր) ծնաւ անիկա. — Անոր արտերը շատ ցորեն տուին (ետուն)։*

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ**

---

## 32. ԱՂԿԻՈՎՆ

Աղկիովն թռչուն է, որ առ ծովեզերբ բնակէ, և անդրէն առ ծովեզերբն դնէ բոյն յաւազոյն վերայ, և արկանէ զձուս, և ի մէջ ձմեռայնոյն նստի ի ձուս թխել, յորժամ բռնութիւնք հողմոյն և դառնաշունչ սառնամանիքն ամբոխեալ զծովն՝ ալեկոծս առնիցեն զեզերսն. Եւ յայնպիսի մրրկեալ ժամանակի կակղանան բռնութիւնք հողմոցն, և ցածնուն ալիքն ամբոխեալք, և դադարէ ծովն ի խռովութենէ, մինչև տկար թռչունն աղկիովն թխէ զձուս զեւթն օր, և ի կատարել եւթն աւուրն հանէ զձագս ի մեռեալ ձուոցն ի կենդանութիւն. և յորժամ հանիցէ զձագսն, զեւթն օր ջանայ սնուցանել և զարգացուցանել. Այս

ամենայն պարզեւք առ. տկար թռչունն յամենատեսն Աստուծոյ տեսչութենէն՝ որ ամենայնի առաջնորդէ. և զայս ամենայն տեսչութիւնն՝ որ ի վերայ տկար թռչնոյն լինի, ամենայն նաւորդք իմանան, և զաւուրսն զայնոսիկ յանուն աղկիովն թռչնոյ անուանեն, և այսպէս կոչեն Աղկիովնի տեսակ աւուրք.

( *Որոշեցէք սեռի խնդիրները* ։ )

*Աղկիովն*, ծովային թռչուն, կապոյտ փետրովի, ([illegible]) ․

*Ջու*, հաւկիթ .

*Թխել*. (գօլըզլը) հանել.

*Ամբոխել*, յուզել.

---

## *ՍԵՌԻ ԽՆԴԻՐ ԿՐԱՒՈՐԱԿԱՆ ԲԱՑԵՐՈՒ*

*Կրաւորական բայերու սեռի խնդիրը բացառական է եւ ո՞րմէ հարցման պատասխան կուտայ , զոր օր. Ցիսուս մկրտեցաւ ի Յովհաննէ . ի Յովհաննէ բցռ. սեռի խնդիր է մկրտեցաւին ։ Եթէ ներգործական բայ մը կրաւորականի փոխուի , ներգործականին տէրբային կրաւորականին սեռի խնդիրը կ'ըլլայ եւ հայց. սեռի խնդիրը կրաւորականի տէրբային ։*

*Զոր օր. Ցիսուս մատնեցաւ ի Յուդայէ . եթէ մատնեցաւն ներգործականի փոխենք , այն ատեն խօսքը կ'ըլլայ . Յուդա մատնեաց զՑիսուս ։*

**Հարցարան** . — կրաւորական բայերու սեռի խնդիրն ինչ հոլով կ'ըլլայ . — Ներգործական բայ մը եթէ կրաւորականի փոխուի , սեռի խնդիրը ինչի կը փոխուի .

**Հրահանգ 66** . — Կրաւորական բայ . — *Ողորմութեամբ եւ հաւատով սրբին մեղք . — Բերան իմաստնոյ գովի ի մարդկանէ . — Սիրեսցի ի հօրէ իմմէ . — Պատուիմք ի բարեկամաց . — Որդի իմաստուն օրհնեսցի ի ծնողաց . — Ժողովուրդն ի[ ]դիւական պատուհասից բժշ-*

*կեցաւ. — Աչք կուրաց բացցին եւ ականջք խլից լուիցեն. — Եւ ի նոցանէ բղխեցին շնորհք պատուիրանացն Աստուծոյ եւ խաղաղութիւն բազում եւ շինութիւն եւ հաստատութիւն բազում եկեղեցեաց ի տեառնէ նոցա՝ տացի եւ բազում մոլորեալք դարձցին ի ճանապարհս ճշմարտութեան, որով եւ Քրիստոս փառաւորեսցի ։*

**Հրահանգ 67.** — **Կրաւորական եւ չէզոք բայ.** — *Վերացաւ սիւն ամպոյն յերեսաց նոցա. — Մի՛ մերձենար այսր. — Ի գետոյ ելին եօթն երինջք. — Ոչ հնացան ձորձք ձեր եւ ոչ մաշեցան կօշիկք յոտից ձերոց. — Լոյս յայտնեցաւ հեթանոսաց. — Հնազանդեա սիրով, աղօթեա յուսով, աշխատեա հաւատով եւ պայծառասցիս յերկնային հարսանիսն. — Ցիսուս վարեցաւ յանապատ ի հոգւոյն՝ փորձել ի սատանայէ. — Իջին անձրեւք, խաղացին գետք, շնչեցին հողմք. — Մատուցաւ դիւահար մի կոյր եւ համր. — Տէր լուաւ աղօթից իմոց ։*

**Հրահանգ 68.** — **Գրաբարի վերածեցէք.** — *Մտիկ ըրէք (ունկնդիր լինել) ձեր ծնողքին, հպատակ եղէք (կացէք) անոնց. — Ողորմութիւն եւ հաւատք թող քենէ չպակսին (մի՛ պակասեսցին). — Ցոփնաթանու ոգին Դաւթի ոգւոյն հետ (ընդ ոգւոյն) կապուեցաւ. — Դուն նոյն ես եւ քու տարիներդ չեն անցնիր (ոչ անցանեն). — Նա ըսաւ (ասաց) եւ եղաւ, հրամայեց եւ հաստատուեցան ։*

ԲՆՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐ

*Բայերն իրենց տէրբայիէն եւ սեռի խնդրէն զատ հոլոված բառեր կ'ունենան, որոնք խօսքին ուրիշ պարագաները կը յայտնեն ։*

**Հարցարան.** — *Բնութեան խնդիր* ինչու կ'ըսուի։

**Հրահանգ 69. — Բնութեան խնդիր. — Շեղագիր բառերը գրաբարի վերածեցէք.** — *Հրեշտակ տեառն երեւեցաւ (անոր).* — *Հնազանդ լերուք ձեր ծնողքներուն.* — *Հա՛յր, տուր ինձ բաժին որ անկանի քու ինչքերէդ.* — *Բայց Սաւղոս եկեղեցւոյն վնասակար է, կ'ըսէին.* — *Թշնամանելը, բարկութենէ (ցասումէ) չէ, այլ կարճամտութենէ.* — *Եղիազարոս, այր երեւելի քահանայից գնդէն.* — *Որոց ոգիքն թուլացեալ են երկնաւոր առաքինութենէ.* — *Հոտ մահու բղխեաց անկէ.* — *Զայս ահա լսէք դիտեմք.* — *Եմուտ ի ներքս ուրախութեամբ։*

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

## 33. ԵՔԻՆՈՍ

Եքինոս անուն զեռուն մի փոքրիկ անարգիկ է ի կղզին ի մէջ ծովուն, և բազում անգամ վարդապետ լինի ցածութեան և ամբոխելոյ ծովուն նաւավարաց որ միշտ շրջին ի նոսա, և զայս գործելով իբրու թէ գուշակ իմն կանխաւ խռովութեան ծովուն և խստաշունչ հողմոցն, երբայ եքինոս խթի ընդ քարիւն և մածնու կայ ի նմա իբրև զանկիրոս, և զծանրութիւն քարին թիկունս և ապաստան առնէ իւրոյ անզօր թեթեւութեան, զի մի առնուցուն ալիքն և այսր անդր կոծեալ կոշկոճիցեն, և իբրեւ տեսանիցեն զնա այսպէս նաւավարքն, անդէն իմանան՝ եթէ հողմայոյզք լինելոց է։

( *Որոշեցէք բայից տեսակները* ։ )

*Եքինոս*, ծովու ճճի ([illegible])
*Ցածութիւն*, հանդարտութիւն.
*Ամբոխել*, յուզուիլ.
*Խթի ընդ քարիւ*, քարին տակ կը մտնէ.
*Մածնու*, փակի.
*Անկիրոս*, խարիսխ.

Կոշկոճել, չարչրկել.
Թիկունք եւ ապաստան, կռնակ եւ ապաւէն.
Հողմայոյզ, հովի փորձիկ.

---

## ԷԱԿԱՆ ԲԱՅ

*Ըսինք թէ էական բայն է եմ. սա հետեւեալ կերպով կը խոնարհուի.*

### Սահմանական եղանակ, ներկայ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Եմ | ես եմ | Եմք | մենք ենք |
| Ես | դուն ես | Էք | դուք էք |
| Է | ան է | Են | անոնք են |

### Անկատար

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Էի | ես էի | Էաք | մենք էինք |
| Էիր | դուն էիր | Էիք | դուք էիք |
| Էր | ան էր | Էին | անոնք էին |

### Կատարեալ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Եղէ | եղայ | Եղաք | եղանք |
| Եղեր | եղար | Եղէք | եղաք |
| Եղեւ | եղաւ | Եղեն | եղան |

### Ապառնի

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Եղէց | պիտի ըլլամ | Եղիցուք | պիտի ըլլանք |
| Եղիցիս | պիտի ըլլաս | Եղիջիք | պիտի ըլլաք |
| Եղիցի | պիտի ըլլայ | Եղիցին | պիտի ըլլան |

**Հրամայական եղանակ**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Եղիր* | *Եղէր* | *Եղերուք* | *Եղէք* |
| *Մի՛ լինիր* | *Մի՛ ըլլար* | *Մի՛ լինիք* | *Մի՛ ըլլաք* |

**Ստորադասական եղանակ**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Իցեմ* | *որ ըլլամ* | *Իցեմք* | *որ ըլլանք* |
| *Իցես* | *որ ըլլաս* | *Իցէք* | *որ ըլլաք* |
| *Իցէ* | *որ ըլլայ* | *Իցեն* | *որ ըլլան* |

**Անորոշ դերբայ**

*Լինել* — *ըլլալ*

**Անցեալ դերբայ**

*Եղեալ* — *եղած*

**Ապառնի դերբայ**

*Լինելոց* — *ըլլալու*

**Հարցարան**. — Ի՞նչպէս կը խոնարհուի *էական* բայն ։

**Հրահանգ 70**. — Հետեւեալներուն թիւն ու ժամանակն որոշել. — *Եղեւ. էաք. իցես. եղեալ. ես. եմ. էք. իցեմք. լերուք. էիր. էր. եղեն. եղէց. էի. իցէ. մի՛ լինիր. եղեր ։*

**Հրահանգ 71**. — Հետեւեալ խօսքերուն մէջ փակագծով դրուած էական բայերը գրաբարի դարձուցէք. — *Մանկո՛ւնք, հնազանդ (եղէք). — Ես (պիտի ըլլամ) ուսուցիչ. — Դուն անոր բարեկամն (էիր). — Մենք (ենք) աշակերտաց առաջնորդ. — Տէր Յիսուս Քրիստոս (եղաւ) իմ փրկութիւն. — Որդեա՛կ, երախտագէտ (եղիր). — Ծառեր (եղան) ինձ օգնական. — Ծոյլ տղոց վախճանը*

*գէշ (պիտի ըլլայ). — Մենք աշակերտ (ենք). — Անոնց ոտքերը արագ (են). — Ո՛վ Աբրահամ, շատ ազգերու հայր (պիտի ըլլաս). — Դուք բարերար (եղէք). — Ես քու տէր Աստուածդ (եմ). — Անոր ճամբաները ուղիղ (են). — Քու կիներդ երանելի (են)։*

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

## 34. ԹԶԵՆԻՆ ԱՆՊՏՈՒՂ

Եւ ասէ Յիսուս զառակս զայս. Թզենի մի էր ուրումն տնկեալ յայգւոջ իւրում և եկն խնդրել պտուղ ի նմանէ և ոչ եգիտ։ Ասէ ցայգեգործն. Ահա երեք ամք են՝ յորմհետէ գամ խնդրել պտուղ ի թզենւոջդ և ոչ գտանեմ. արդ՝ կտրեա զդա, ընդէ՞ր և զերկիրդ խափանէ։ Նա պատասխանի ետ և ասէ. Տէր, թող զդա այս ամ ևս, մինչև շուրջ զդովաւ բրեցից և արկից աղբ, թերևս արասցէ պտուղ, ապա թէ ոչ՝ յամէ ևս հատցես զդա։

*Էր ուրումն տնկեալ*, մէկը տնկած էր.
*Յայգւոջ իւրում*, իր այգիին մէջ.
*Եկն*, եկաւ.
*Ոչ եգիտ*, չգտաւ.
*Այգեգործ*, մշակ.
*Ընդէ՞ր*, ինչու.
*Խափանէ*, արգելք կ՚ըլլայ.
*Ամ*, տարի.
*Բրեմ*, փորեմ.
*Յամէ ևս հասցես*, տարիէ մը կտրէ։

## ՍՏՈՐՈԳԵԼԻ

*Ստորոգելի կ'ըսուի այն ուղղական հոլովն՝ որ էական բային տէր բայիին ի՛նչ կամ ի՛նչպիսի ըլլալը կը ցուցնէ, զոր օր. Անմեղ է Աբէլ։*

*Ստորոգելին ի՛նչ կամ ի՛նչպիսի հարցումով կը գտնուի։*

*Թէ գոյական անուն մը եւ թէ ածական մը ստորոգելի կրնան ըլլալ։ Եթէ տէրբային յոգնակի է, գոյական ստորոգելին յոգնակի կը դրուի, իսկ ածական ստորոգելին՝ եզակի, զոր օր. Ամենեքին միոյ հօր որդիք եմք (գոյ. ստորոգելի՝ յոգնակի). Երանելի են կանայքդ (ած. ստոր. եզակի)։*

**Հարցարան.** — *Ստորոգելի* ինչ կ'ըսուի. — Ի՞նչ հարցմամբ կը գտնուի. — Ո՞ր տեսակ բառերը ստորոգելի կրնան ըլլալ. — Ո՞ր պարագային ստորոգելին եզակի կը դրուի եւ երբ յոգնակի։

**Հրահանգ 72. — Որոշեցէք ստորոգելիները.** — *Մարմինն է գործարան հոգւոյ. — Բարի են աղօթք. — Սուրբ է եկեղեցի. — Իմաստուն էր Սողոմոն. — Արդար է Աստուած. — Երջանիկ եղեւ հայրն. — Անթիւ են աստեղք. — Լոյծ է ջուր. — Սիրելի է արդարութիւն. — Նորաշէն է տունն. — Ժրաջան էր աշակերտն. — Երկիր էր աներեւոյթ եւ անպատրաստ. — Կենսատու է օդ. — Կիզիչ է արեգակն. — Բարձր են լերինք. — Հզօր է առիւծ. — Գիշատիչ է գայլ. — Լայնատարր է երկիր. — Շքեղ է բնութիւն. — Խոր են անդունդք. — Լինէր սուրբն Եպիփան լոյս երկրին Ծոփաց. — Նա մշակ էր եւ սա՝ հովիւ. — Համեղ են ձկունք. — Մեծ ես դու, Տէ՛ր, եւ սքանչելի են գործք քո. — Քարոզ ճըշ-*

*մարտութեան հաւատոցն լինէր Գրիգոր · — Գործաւէր է մեղու · — Յառաջատես է մրջիւն · — Գթած է արագիլ · — Մեծասիրտ է առիւծ ։*

**Հրահանգ 73. — Յարմար ստորոգելի մը դրէք գծերուն տեղ.** — *(Խորամանկ) է աղուէս · — է ծով · — են ուռենիք · — են լերինք · — են աստեղք · — են կատու եւ կապիկ · — են կաթն եւ ձիւն · — են տերեւք ծառոյն · — են ոսկի եւ ծծումբ · — է դաշտ · — ես դու · — է նա ։*

**Հրահանգ 74. — Հետեւեալ խօսքերը գրաբարի վերածեցէք.** — *Երկիրս կլոր (բոլորակ) է · — Ջուրը թափանցիկ է · — Անտառը նսեմաստուեր է · — Արեգակն այրող (կիզիչ) է · — Միլտոն կոյր էր · — Երիտասարդութիւնը յանձնապաստան է · — Զանգակատունը բարձր է · — Կարապը շնորհալի է · — Թիթեռնիկը թեթեւ է. — Անձրեւները զովարար են · — Բախտը անհաստատ (յեղյեղուկ) է · — Արջը զօրաւոր է (հզօր) · — Ոդիսեւս խորամանկ էր · — Գիտութիւնը քաղցր է · — Ադամանդը թանկագին է · — Կիկերոն ճարտասան էր · — Մանանայն սպիտակ էր · — Ես աշակերտ եմ · — Դաշտերը ծաղկաւէտ են ։*

## ԼՈՒԾՈՒՄ · ՆԱԽԱԴԱՍՈՒԹԻՒՆ

*Խօսք մը քերականօրէն լուծել կը նշանակէ խօսք մը իր մասերուն բաժնել ։*

*Լուծումը կը կատարուի* 1. **Բառազննութեամբ**, 2. **Վերլուծութեամբ** ։

**Բառազննութեամբ** *կը ճանչնանք բառերուն բնութիւնը, այսինքն թէ բառերը խօսքին մէջ գոյակա՞ն թէ*

*ածական են, դերանո՞ւն թէ բայ եւլն. կամ թէ անոնց թիւը, հոլովը, դէմքը, եղանակը, ժամանակը, եւլն.*

*Վերլուծութեամբ իւրաքանչիւր նախադասութիւն իր մասերուն կը լուծենք։ Վերլուծութիւնը երկու է. 1. Քերականական, 2. Տրամաբանական։*

**Հարցարան.** — Ի՞նչ է լուծելը. — Ի՞նչպէս կը կատարուի լուծումը. — Ի՞նչ կրնենք *բառազննութեամբ* եւ *վերլուծութեամբ*։

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

## 35. ԱԶԳՔ ԹՌՉՆՈՑ

Բազում ազգք են թռչնոց, որ ունին զպէսպէս կերպարանս, և եթէ միտ եդեալ նայեսցի ոք ընդ իւրաքանչիւր կարգս նոցա, ըստ նմանութեան ձկանցն օրինակի գտանէ զնոսա իւիք իւիք։ Եւ թէպէտ ամենեքին մի թռչուն անուանին, սակայն բազում կերպարանս ունին, այլազգ մեծութեամբ և կերպարանօք և գունովք և բարոյիւք և խաղալեօք և գործովք. և անցանեն ըստ մարդկեղէն բանից՝ անբաւ յօրինուածովք և կերպարանօք իւրեանց։ Իսկ ոմանք այսպէս հնարեցան, զի ըստ կերպարանացն և զանուանս ազգաց նոցա եդին։ Եւ զի զկէսն հերձաթեւս անուանեցին, այսինքն զարծուիս, և զկէսն մաշկաթեւս, այսինքն զջղջիկանս գիշերոյ. և զկէսն սրաթեւս, այսինքն զմեղուս, և զկէսն պատենաթեւս, այսինքն խաղողեփեացս և բզէզս և որ սոցին նման են, որ իբրու ի պատեանս ունիցին զթեւսն, և յորժամ բանան պատեւանքն, յայնժամ առնի նոցա դիւրին լինել ի թռչելն։

(*Բառազննեցէք սոյն հատուածէն մաս մը*)։

*Ազգ*, տեսակ.
*Իւիք իւիք*, բանի մը բանով.
*Այլազգ*, տարբեր.
*Ջղջիկ.* ([illegible])
*Անցանել ըստ մարդկեղէն բանից*, խօսքով չեն բացատրուիր։
*Խաղողեփեաց*, պատենաձեւ միջատներու տեսակ մը. ([illegible])։

---

## ՆԱԽԱԴԱՍՈՒԹԻՒՆ

Երբ անձի մը, կենդանւոյ մը կամ իրի մը վրայ մեր դատողութիւնն ընենք, նախադասութիւն մը կը կազմենք։

Ուրեմն նախադասութիւնն է խօսքով կամ գրով յայտնուած դատողութիւն մը։

Ամեն նախադասութիւն կը բաղկանայ գլխաւորաբար եական բայէ, ենթակայէ եւ ստորոգելիէ, զոր օր. Արդար է Աստուած. *է* բայ, **Աստուած** ենթակայ, **արդար**՝ ստորոգելի։

Խօսքի մը մէջ որչափ դիմաւոր բայ կայ, այնչափ նախադասութիւն կայ, զոր օր. Աճեցէք եւ բազմացարուք եւ լցէք զերկիր եւ տիրեցէք դմա։ Այս խօսքին մէջ չորս նախադասութիւն կայ, որովհետեւ չորս դիմաւոր բայ կայ։

Խօսք մը քերականօրէն վերլուծելու համար պէտք է որ խօսքին մէջ գտնուած նախադասութիւնները զատենք։

**Հարցարան.** — Նախադասութիւն որն կ'ըսուի. — Նախադասութիւն մը ի՞նչ բաներէ կը բաղկանայ. — Ի՞նչպէս կը ճանչնանք թէ քանի նախադասութիւն կայ խօսքին մէջ. — Ի՞նչ պէտք է ընենք խօսք մը քերականօրէն լուծելու համար։

**Հրահանգ 75.** — Վերլուծեցէք հետեւեալ նախադասութիւնները. — Ես եմ հովիւ քաջ. — Դու ես որդի իմ. — Նա է ուսուցիչ մեր. — Երջանիկ եմք մեք. — Դուք էք տանուտէրք. — Արդար են նոքա. — Ես էի վաճառական. — Դու էիր սպասաւոր նորա. — Նա էր բարերար ամենեցուն. — Մեք էաք վարժապետք նոցա. — Վարդապետք էիք առաքելական քարոզութեան. — Ապաւէն

*ձեր լին նոքա . — Ես Մովսէս եղէ առաջնորդ երկրին Աւետեաց . — Դու եղեր պատճառ շինութեան եկեղեցւոյս . — Նա եղեւ գլուխ անկեան . — Մեք եղաք բարեկամք նորա . — Դուք եղէք սիրողք ճշմարտութեան . — Նոքա եղեն տեարք աշխարհի . — Ես եղէց ձեզ ի հայր . — Դու եղիցիս բարեգործ . — Նա եղիցի քարոզ բանին Աստուծոյ . — Եղիցուք մեք ողիք սուրբք . — Դուք եղիջիք մեզ պահապան . — Նոքա եղիցին մեզ վարդապետք . — Լեր դու խրատախոհ . — Մի՛ լինիր ամբարտաւան . — Զգաստ լերուք . — Մի՛ լինիք զառուցեալք . — Մանո՞ւկ իցեմ ես . — Դո՞ւ իցես այն . — Եթէ անմեղ ոք իցէ նա . — Մի թէ եւ մեք կո՞յրք իցեմք . — Եթէ դուք իցէք զոր խնդրեմքս . — Նոքա իցեն ձեզ սպասաւորք :*

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

## 36. ԵՂԻՇԷ ՎԱՐԴԱՊԵՏ

Երանելին Եղիշէ վարդապետ էր ի Հայս, հաւատարիմ յամենայն իրս աստուածայինս և մարդկային, կեցեալ և վարժեալ բարեպաշտութեամբ և ուսումնասիրութեամբ : . . .

Սա վարս կրօնաւորութեան յանձն առնոյր և զխստամբերութիւն ճգնութեան, և պահօք և աղօթիւք հանդիսանայր և որպէս յալեաց ծովու ի նաւահանգիստ փութացեալ հասանէր յանապատ, ի բաց լքանելով զերկրաւորս՝ զհետ երթեալ հոգեւորացն, զմտաւ ածելով զվարս առաջին հարցն և նոցա լեալ նմանող և նախանձաւոր նոցին վարուցն, ջանայր մտանել ընդ նեղ դուռնն՝ որ տանի ի կեանս յաւիտենից . . . :

Զայսպիսի վարս ստացեալ՝ հանդիսանայր ընդդէմ սատանայի փորձութեանց աստուածային զօրութեամբն, և յամենայնի զօրաւոր և յաղթող եղեալ էր Երանելին Եղիշէ . . . :

*( Վերլուծեցէք քերականօրէն սոյն գրուածքը ) :*

*Խստամբերութիւն*, չարքաշութիւն.
*Զմտաւ ածել*, միտք բերել.

## ԲԱՅԻՑ ԲԱԺԱՆՈՒՄՆ

*Բայերն երկու մասի կը բաժնուին . կանոնաւոր եւ անկանոն ։*

*Բայերուն մեծ մասը կանոնաւոր է , ոմանք ալ անկանոն են ։*

Հարցարան . — Բայերը քանի մասի կը բաժնուին ։

---

**Չորս լծորդութեանց բայերուն խոնարհման կանոնաւոր ձեւը**

### Ա. ԼԾՈՐԴՈՒԹԻՒՆ

*Բայերուն առաջին լծորդութիւնն երեք ձեւ ունի . ոմանք պարզ եմ կը վերջաւորին , ինչպէս սիրեմ . — Ոմանք անեմ , ինչպէս հասանեմ . — Ոմանք ուցանեմ , ինչպէս անցուցանեմ ։*

### ԵՄ ( Ա . Ձեւ )

**Սահմանական եղանակ, Ներկայ**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Սիրեմ | կը սիրեմ | Սիրեմք | կը սիրենք |
| Սիրես | կը սիրես | Սիրէք | կը սիրէք |
| Սիրէ | կը սիրէ | Սիրեն | կը սիրեն |

**Անկատար**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Սիրէի | կը սիրէի | Սիրէաք | կը սիրէինք |
| Սիրէիր | կը սիրէիր | Սիրէիք | կը սիրէիք |
| Սիրէր | կը սիրէր | Սիրէին | կը սիրէին |

**Կատարեալ**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Սիրեցի* | [illegible] | *Սիրեցաք* | [illegible] |
| *Սիրեցեր* | [illegible] | *Սիրեցէք* | [illegible] |
| *Սիրեաց* | [illegible] | *Սիրեցին* | [illegible] |

**Ապառնի**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Սիրեցից* | [illegible] | *Սիրեսցուք* | [illegible] |
| *Սիրեսցես* | [illegible] | *Սիրեսջիք* | [illegible] |
| *Սիրեսցէ* | [illegible] | *Սիրեսցեն* | [illegible] |

**Հրամայական եղանակ**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Սիրեա, սիրեսջիր* | [illegible] | *Սիրեցէք* / *Սիրեսջիք* | [illegible] |
| *Մի՛ սիրեր* | [illegible] | *Մի՛ սիրէք* | [illegible] |

**Ստորադասական եղանակ**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Սիրիցեմ* | [illegible] | *Սիրիցեմք* | [illegible] |
| *Սիրիցես* | [illegible] | *Սիրիցէք* | [illegible] |
| *Սիրիցէ* | [illegible] | *Սիրիցեն* | [illegible] |

**Աներեւոյթ** *կամ* **Անորոշ դերբայ**

*Սիրել* [illegible]

**Անցեալ դերբայ**

*Սիրեալ* [illegible]

**Ապառնի դերբայ**

*Սիրելոց* [illegible]

## Կրաւորական, ԻՄ

### Սահմանական եղանակ, Ներկայ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Սիրիմ | կը սիրուիմ | Սիրիմք | կը սիրուինք |
| Սիրիս | կը սիրուիս | Սիրիք | կը սիրուիք |
| Սիրի | կը սիրուի | Սիրին | կը սիրուին |

### Անկատար

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Սիրէի | կը սիրուէի | Սիրէաք | կը սիրուէինք |
| Սիրէիր | կը սիրուէիր | Սիրէիք | կը սիրուէիք |
| Սիրէր | կը սիրուէր | Սիրէին | կը սիրուէին |

### Կատարեալ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Սիրեցայ | սիրուեցայ | Սիրեցաք | սիրուեցանք |
| Սիրեցար | սիրուեցար | Սիրեցայք | սիրուեցաք |
| Սիրեցաւ | սիրուեցաւ | Սիրեցան | սիրուեցան |

### Ապառնի

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Սիրեցայց | պիտի սիրուիմ | Սիրեսցուք | պիտի սիրուինք |
| Սիրեսցիս | պիտի սիրուիս | Սիրեսջիք | պիտի սիրուիք |
| Սիրեսցի | պիտի սիրուի | Սիրեսցին | պիտի սիրուին |

### Հրամայական եղանակ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Սիրեաց, սիրեսջիր | սիրուէ՛ | Սիրեսցուք, Սիրեսջիք | սիրուեցէք |
| Մի՛ սիրիր | մի՛ սիրուիր | Մի՛ սիրիք | մի՛ սիրուիք |

**Ստորադասական եղանակ**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Սիրիցեմ | -էր—էմ | Սիրիցեմք | -էր—էմք |
| Սիրիցես | -էր—էս | Սիրիցէք | -էր—էք |
| Սիրիցէ | -էր—է | Սիրիցեն | -էր—էն |

**Աներեւոյթ կամ Անորոշ դերբայ**

Սիրել կամ սիրիլ -էր—էլ

**Անցեալ դերբայ**

Սիրեալ -էր—ած

**Ապառնի դերբայ**

Սիրելի -էր—ելի

Բ. լծորդութեան իմ վերջաւորած բայերը Սիրիմին պէս կը խոնարհուին :

Սիրեմին պէս կը խոնարհուին եմ վերջաւորած կանոնաւոր բայեր . ինչպէս . Արձակեմ, բժշկեմ, զարդարեմ, ընտրեմ, կոչեմ, կատարեմ, խնդրեմ, համբուրեմ, մատնեմ, աղաչեմ, փրկեմ, քննեմ, դարմանեմ, սերմանեմ :

Ասոնց կրաւորականները սիրիմին պէս կը խոնարհուին :

Եմ վերջաւորած չէզոք բայերը սիրեմին պէս կը խոնարհուին . ինչպէս . Աղաղակեմ, ամաչեմ, յամեմ (ուշանալ), աճեմ, նուեմ, վաստակեմ (աշխատիլ), վազեմ (ցատքել) :

Իսկ իմ վերջաւորած չէզոք բայերը Սիրիմին պէս կը խոնարհուին . ինչպէս . աշխատիմ, յածիմ (պտըտիլ), ողորմիմ, երեւիմ, վիճիմ, ճեմիմ (պտըտկիլ), եւլն :

**Հարցարան**. — Առաջին լծորդութիւնը քանի՞ ձեւ ունի. — Ի՞նչպէս կը խոնարհուի *Սիրել*. — Ի՞նչպէս կը խոնարհուի *Սիրիլ*. — Որ բայերը *Սիրել*ին պէս կը խոնարհուին. — Անոնց կրաւորականներն ինչպէս կը խոնարհուին. — *Ել* եւ *իլ* վերջաւորած չէզոք բայերն ինչպէս կը խոնարհուին։

**Հրահանգ 76**. — Որոշել հետեւեալ բայերու ժամանակն, եղանակն ու յայտնել անոնց նշանակութիւնը. — *Գործեա. աղաղակեցին. ամաչեցուք. յամեաց. անձեցին. նաւեաց. վաստակէին. սիրեցաւ. վաղեաց. խափանեա. յանդիմանեցից. ամաչեցէք. կոչեցաք. այրեցեմ. գրեցուք. հնչէր. վարժեցի. շինեսջիր. կարացի. գոչեա. վանեցից. սրբեա. աղաչէի. հրամայեցի. յայտնեա. դարմանեցէք. սիրեսջիք։*

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

## 37. ՆՇԱՆՔ ԲՆՈՒԹԵԱՆ

Յորժամ ընդ ծագել արեգականն մրագոյն ելանիցէ, և արեւն և կայծական նշանակ ունիցի ճառագայթիւք ըստ փոփոխմանց խստաշունչ օդոյն, և եթէ ի նմին կերպարանս կացցէ, օդն պղտորեալ և յուզեալ ոչ յստակեսցի, և գոյնն մթագոյն ոչ լրթասցի, և հողմք խստաշունչք եւս յաւելցին, և ամպն եւս քան զեւս բազմասցի, զերկար խոնաւայուզից և զսաստիկ անձրեւաց յայտ առնեն յորժամ այս ամենայն կերպարանքս միաժողով երեւեսցին։ Եւ յորժամ շուրջ բակ ունիցի լուսինն ամպոց, և ունիցի մռայլ զարեգակն ամպոց, ջուրք բազումք յօդոց յերկիր առաքին, զդառնաշունչ բքոց ամբոխելոց յայտ առնեն։ Եւ դարձեալ յորժամ յամպոյ ամպ մտանիցէ և ելանիցէ արեգակն՝ զջերմակիծ շող յերկիր առաքելով, զխոնաւութիւն օդոցն յայտ առնէ։ Եւ դարձեալ յորժամ աղեղն յամպս երեւեսցի երփն երփն գունովք, զսաստիկ անձրեւաց և զդողացուցիչ յորդութեանց յայտ առնէ։

( *Որոշեցէք բայից տեսակները* )։

*Լրթանալ*, կապուտակիլ։

*Խոնաւայոյզ*, խոնաւութեան եւելնալը·
*Բակ ունել*, պատել·
*Ամբոխել*, յուզուիլ.
*Ջերմակիծ*, կծող տաք.
*Աղեղն*, ծիածանի գօտի.
*Երփն երփն*, գոյնզգոյն·

## ՀԱՍԱՐԱԿ ԲԱՅ

*Հասարակ բայ կը կոչուին այն բայերն՝ որ թէ՛ ներգործական եւ թէ կրաւորական են, ինչպէս. շահիմ, խորհիմ, դատիմ, որոնք Սիրիմին պէս կը խոնարհուին կրաւորականներու, նոյնպէս քանի մը ներգործակերպ եւ կրաւորակերպ չէզոք բայերու անցեալ դերբայները եցեալ կը վերջաւորուին, ինչպէս. այրեցեալ, կոչեցեալ, խօսեցեալ, ամաչեցեալ, եւլն:*

**Ծանօթ.** — *Այն չէզոք բայերն՝ որոնք ներգործական ձեւով կը խոնարհուին, կ'ըսուին ներգործակերպ չէզոք, եւ անոնք որ կրաւորականներուն պէս կը խոնարհուին՝ կրաւորակերպ չէզոք կը կոչուին:*

*Կամիմ բայը կրաւորականի ձեւ ու խոնարհում ունի:*

**Հարցարան.** — Հասարակ բայ որո՞ւ կ'ըսուի. — Ո՞ր բայերնեն որ *եցեալ* կը վերջաւորուին. — Ի՞նչպէս կը խոնարհուի *Կամիմ* բայը·

## Ա. Լծորդութիւն, Բ. Ձեւ. Անեմ ներգործական

**Սահմանական եղանակ, ներկայ**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Հատանեմ* | *կը կտրեմ* | *Հատանեմք* | *կը կտրենք* |
| *Հատանես* | *կը կտրես* | *Հատանէք* | *կը կտրէք* |
| *Հատանէ* | *կը կտրէ* | *Հատանեն* | *կը կտրեն* |

### Անկատար

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Հատանէի | կը կորէէ | Հատանէաք | կը կորէէն+ |
| Հատանէիր | կը կորէէր | Հատանէիք | կը կորէէ+ |
| Հատանէր | կը կորէր | Հատանէին | կը կորէէն |

### Կատարեալ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Հատի | կորէցէ | Հատաք | կորէցէն+ |
| Հատեր | կորէցէր | Հատէք | կորէցէ+ |
| Հատ, եհատ | կորէց | Հատին | կորէցէն |

### Ապառնի

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Հատից | ղէրէ կորէմ | Հատցուք | ղէրէ կորէն+ |
| Հատցես | ղէրէ կորէս | Հատջիք | ղէրէ կորէ+ |
| Հատցէ | ղէրէ կորէ | Հատցեն | ղէրէ կորէն |

### Հրամայական եղանակ

Եզակի

| | |
|---|---|
| Հատ, հատջիր, հատանիջիր | կորէ՛ |
| Մի՛ հատաներ | Մ՛ կորէր |

Յոգնակի

| | |
|---|---|
| Հատէ՛ք, հատջիք, հատանիջիք | կորէցէ՛+ |
| Մի՛ հատանէք | Մ՛ կորէ+ |

### Ստորադասական եղանակ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Հատանիցեմ | կորէմ (Նէ) | Հատանիցեմք | կորէն+ |
| Հատանիցես | կորէս | Հատանիցէք | կորէ+ |
| Հատանիցէ | կորէ | Հատանիցեն | կորէն |

**Աներեւոյթ** *կամ* **Աներոս դերբայ**

| | |
|---|---|
| *Հաստանել* | *կորել* |

**Անցեալ դերբայ**

| | |
|---|---|
| *Հաստեալ* | *կորած* |

**Ապառնի դերբայ**

| | |
|---|---|
| *Հաստանելոց* | *կորելու* |

---

## *Կրաւորական*, *ԱՆԻՄ*

**Սահմանական եղանակ, Ներկայ**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Հաստանիմ* | *կը կորսնեմ* | *Հաստանիմք* | *կը կորսնենք* |
| *Հաստանիս* | *կը կորսնես* | *Հաստանիք* | *կը կորսնէք* |
| *Հաստանի* | *կը կորսնէ* | *Հաստանին* | *կը կորսնեն* |

**Անկատար**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Հաստանէի* | *կը կորսնէի* | *Հաստանէաք* | *կը կորսնէինք* |
| *Հաստանէիր* | *կը կորսնէիր* | *Հաստանէիք* | *կը կորսնէիք* |
| *Հաստանէր* | *կը կորսնէր* | *Հաստանէին* | *կը կորսնէին* |

**Կատարեալ**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Հաստայ* | *կորսնցայ* | *Հաստաք* | *կորսնցանք* |
| *Հաստար* | *կորսնցար* | *Հաստայք* | *կորսնցաք* |
| *Հաստաւ* | *կորսնցաւ* | *Հաստան* | *կորսնցան* |

**Ապառնի**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Հաստայց* | *պէտք կորսնեմ* | *Հաստցուք* | *պէտք կորսնենք* |
| *Հաստցիս* | *պէտք կորսնես* | *Հաստջիք* | *պէտք կորսնեն* |
| *Հաստցի* | *պէտք կորսնէ* | *Հաստցին* | *պէտք կորսնեն* |

### Հրամայական եղանակ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Հատիր, հատջիր* | *կտրէ՛* | *Հատարուք* | *կտրեցէ՛ք* |
| *Մի՛ հատանիր* | *մի կտրեր* | *Մի՛ հատանիք* | *մի՛ կտրէք* |

### Ստորադասական եղանակ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Հատանիցիմ* | *կտրեմ (նէ)* | *Հատանիցիմք* | *կտրենք* |
| *Հատանիցիս* | *կտրես* | *Հատանիցիք* | *կտրէք* |
| *Հատանիցի* | *կտրէ* | *Հատանիցին* | *կտրեն* |

### Աներեւոյթ *կամ* Անորոշ դերբայ

*Հատանել կամ հատանիլ* *կտրել*

### Անցեալ դերբայ

*Հատեալ* *կտրած*

### Ապառնի դերբայ

*Հատանելոց կամ հատանելի* *կտրելու*

*Հատանեմին պէս խոնարհել հետեւեալ բայերը. Տեսանել, բեկանել, արկանել, սպանանել, գտանել, լուծանել, ցուցանել, անցանել, ելանել, իջանել, մտանել, հարցանել:*

*Այսպէս կը խոնարհուին նաեւ Ածեմ, բերեմ, հանեմ:*

*Իսկ կրաւորական, կրաւորակերպ եւ հասարակ բայերը Հատանիմին պէս կը խոնարհուին. ինչպէս, անկանիմ, բուսանիմ, զիջանիմ, շիջանիմ (մարիլ), մեռանիմ, ծնանիմ, ագանիմ (հագնիլ), ուսանիմ (սորվիլ), սկսանիմ, տանիմ:*

*Ծանօթ. — Երբ անել վերջաւորուած բայերու վրայէն այդ վերջաւորութիւնը վերցնենք, մնացածը նոյն բայերու արմատը կ'ըլլայ, որ թէ՛ հրամայական է եւ թէ կատարեալ եղանակի Գ. դէմք. ինչպէս, տեսանել, տես, իջանել, էջ։*

**Հարցարան.** — Ի՞նչպէս կը խոնարհին *հասանել* եւ *հասանիլ* բայերը. — Գիտե՞ս *հասանելովին* պէս խոնարհուող բայեր. — Ուրիշ ի՞նչ բայեր կը խոնարհին *հասանիլովին* պէս. — Ո՞ր բայերն են որ *հասանելովին* պէս կը խոնարհին։

**Զարտուղութիւն.** — *Հարկանել բային կատարեալը, ապառնին ու հրամայականը կ'ըլլայ հարի, հարից, հար։*

**ԿԻՐԱՌՈՒԹԵԱՆ ԴԱՍԵՐ**

---

## 38. ՅՈՀԱՆ ԵՊԻՍԿՈՊՈՍ

Յոհան եպիսկոպոս *անցանէր* առ այգեօք ուրումն, և էր ժամանակ զայգիսն յատելոյ։ Աղաղակէր առ նա այր մի յայգւոյն և ասէր. Օրհնեա՛, տէր եպիսկոպոս, զմեզ և զայգիսս։ Ասէ Յոհան. փուշ և տատասկ *բուսցի*։ Ասէ այրն. ի մարմնոջ քո բուսցի փուշ և տատասկ, փոխանակ զի տարապարտուց *անիծանես* զմեզ։ Եւ եղեն նշանք յԱստուծոյ, զի իբրեւ չոգաւ եպիսկոպոսն ի վանս իւր, *հասին* հարուածք ի վերայ նորա. սկսաւ ընդ ամենայն անդամս մարմնոյ նորա որպէս զփուշ *հարկանել*։ Եւ մեծապէս շտապեալ անկեալ ի տանջանս չարաչարս՝ ի մեծ տագնապի կայր աւուրս բազումս։ Ապա *յղեաց կոչեաց* առ ինքն զայգորդն. աղաչեաց զնա առնել ի վերայ նորա աղօթս, զի փրկեսցի նա ի ցաւոցն։ Այգորդն ասէր. իսկ ես ո՞վ եմ զի կարեմ զոք օրհնել կամ անիծանել, թող թէ զայր եպիսկոպոս։ Իսկ նա բռնադատէր զնա, մինչեւ յառնէր այգորդն կայր յաղօթս. և անդէն *բժշկեցաւ* եպիսկոպոսն, և սկսաւ յամենայն մարմնոյն փուշն ի բաց թափել։

*(Ի՞նչպէս կը խոնարհուին շեղագիր բայերն։)*

*Անցանէր առ այգեօք ուրումն*, մէկուն այգիներուն քովէն կ'անց-
*Յատելոյ*, աւելորդ ճիւղերը կտրել. [նէր.

*Փոխանակ զի*, որովհետեւ.

*Նշան*, հրաշք.

*Ցղեաց կոչեաց առ ինքն զայգորդն*, մարդ ղրկեց իրեն կանչեց այգեգործը.

*Այգորդ*, այգեպան.

---

## *ԱՆՑՈՂԱԿԱՆ ԲԱՑԵՐ*

*Ուցանեմ վերջաւորող բայերն անցողական կը կոչուին, որոնք թան մը ընել տալ կը նշանակեն եւ այսպէս կը խոնարհուին.*

### *Ներգործական*

**Սահմանական եղանակ, ներկայ**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Ջեռուցանեմ* | կը տաքցնեմ | *Ջեռուցանեմք* | կը տաքցնենք |
| *Ջեռուցանես* | կը տաքցնես | *Ջեռուցանէք* | կը տաքցնէք |
| *Ջեռուցանէ* | կը տաքցնէ | *Ջեռուցանեն* | կը տաքցնեն |

**Անկատար**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Ջեռուցանէի* | կը տաքցնէի | *Ջեռուցանէաք* | կը տաքցնէինք |
| *Ջեռուցանէիր* | կը տաքցնէիր | *Ջեռուցանէիք* | կը տաքցնէիք |
| *Ջեռուցանէր* | կը տաքցնէր | *Ջեռուցանէին* | կը տաքցնէին |

**Կատարեալ**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Ջեռուցի* | տաքցուցի | *Ջեռուցաք* | տաքցուցինք |
| *Ջեռուցեր* | տաքցուցիր | *Ջեռուցէք* | տաքցուցիք |
| *Ջեռոյց* | տաքցուց | *Ջեռուցին* | տաքցուցին |

*Կրաւորական*

## Սահմանական եղանակ, Ներկայ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Ջեռուցանիմ* | կը տաքցուիմ | *Ջեռուցանիմք* | կը տաքցուինք |
| *Ջեռուցանիս* | կը տաքցուիս | *Ջեռուցանիք* | կը տաքցուիք |
| *Ջեռուցանի* | կը տաքցուի | *Ջեռուցանին* | կը տաքցուին |

## Անկատար

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Ջեռուցանէի* | կը տաքցուէի | *Ջեռուցանէաք* | կը տաքցուէինք |
| *Ջեռուցանէիր* | կը տաքցուէիր | *Ջեռուցանէիք* | կը տաքցուէիք |
| *Ջեռուցանէր* | կը տաքցուէր | *Ջեռուցանէին* | կը տաքցուէին |

## Կատարեալ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Ջեռուցայ* | տաքցուեցայ | *Ջեռուցաք* | տաքցուեցանք |
| *Ջեռուցար* | տաքցուեցար | *Ջեռուցայք* | տաքցուեցաք |
| *Ջեռուցաւ* | տաքցուեցաւ | *Ջեռուցան* | տաքցուեցան |

## Ապառնի

Եզակի

| | |
|---|---|
| *Ջեռուցայց* | պիտի տաքցուիմ |
| *Ջեռուսցիս* | պիտի տաքցուիս |
| *Ջեռուսցի* | պիտի տաքցուի |

Յոգնակի

| | |
|---|---|
| *Ջեռուսցուք* | պիտի տաքցուինք |
| *Ջեռուսջիք* | պիտի տաքցուիք |
| *Ջեռուսցին* | պիտի տաքցուին |

## Հրամայական եղանակ

Եզակի

| | |
|---|---|
| *Ջեռուցիր* | տաքցուէ |
| *Մի՛ ջեռուցանիր* | մի՛ տաքցուիր |

Յոգնակի

| | |
|---|---|
| *Ջեռուցարուք* | պա+ցու–էցէ+ |
| *Մի՛ ջեռուցանիք* | մի՛ պա+ցու–է+ |

**Ստորադասական եղանակ**

Եզակի

| | |
|---|---|
| *Ջեռուցանիցիմ* | պա+ցու–էմ (Նէ) |
| *Ջեռուցանիցիս* | պա+ցու–էս |
| *Ջեռուցանիցի* | պա+ցու–է |

Յոգնակի

| | |
|---|---|
| *Ջեռուցանիցիմք* | պա+ցու–էն+ |
| *Ջեռուցանիցիք* | պա+ցու–է+ |
| *Ջեռուցանիցին* | պա+ցու–էն |

**Աներեւոյթ** *կամ* **աներոց դերբայ**

| | |
|---|---|
| *Ջեռուցանիլ* | պա+ցու–էլ |

**Անցեալ դերբայ**

| | |
|---|---|
| *Ջեռուցեալ* | պա+ցու–ած |

**Ապառնի դերբայ**

| | |
|---|---|
| *Ջեռուցանելի* | պա+ցու–ելու |

*Անցողական բայերը կը շինուին ոյց եւ ան մասնիկներով, որոնք չէզոք բայերէն շատերուն եւ քանի մը ներգործական բայերու արմատին վրայ կ՚աւելցուին, զոր օր. Նusիմին նիus արմատին վրայ ոյց եւ ան մասնիկներն աւելնալով յառաջ կուգայ Նստուցանել։*

*Կան բայեր՝ որ ուցանեմի տեղ ուսանեմ կամ ուզանեմով անցողական կ՚ըլլան, ինչպէս. կորնչիմ, կորուսանեմ, փլանիմ, փլուզանեմ։*

*Պէտք է գիտնալ թէ ամէն բայ անցողականի չը փոխուիր։*

**Հարցարան.** — Ո՞ր բայերն են՝ որ *անցողական* կը կոչուին. — Ի՞նչպէս կը խոնարհուին *ջեռուցանել*, *ջեռուցանիլ*. — Ի՞նչպէս կը ճանչուին *անցողական* բայերը. — Ամէն անցողական բայեր *ուցանե՞լ* կը վերջաւորուին. — Ամէն բայ անցողական կ՚ըլլա՞յ։

**Հրահանգ 77.** — **Վերլուծեցէք հետեւեալները.** — *Մատուցին առ նա զամենայն հիւանդս. — Իջոյց զասփորն. — Շիջուցին զհուրն. — Ապրեցո՛ զիս, Տէ՛ր. — Զօրացո՛ զիս այս անգամ եւս. — Նստոյց զնա առ ջրհորոյ ջուրցն. — Յիշեա՛ զբան ծառայի քո յոր եւ յուսացուցեր զիս. — Աստուած ապրեցուցանէ զյուսացեալս իւր. — Արբո՛ ինձ սակաւ մի ջուր. — Ջուրն Լետայ մոռացուցանէ զամենայն. — Ջուր շիջուցանէ զհուր. — Ուրախ եղերուք ընդ իս զի գտի զդրամն իմ զոր կորուսի. — Շրջեցուցանէին զնա ընդ հրապարակ քաղաքին. — Եւ փութացան իջուցին զբեռն իւրաքանչիւր ի գետին. — Հա՛րք, մի՛ զայրացուցանէք զորդիս ձեր, այլ սնուցանիջիք զնոսա խրատու եւ ուսմամբ Տեառն. — Եւ զօրացուցանէ զհիւանդս մեծազօր զօրութեամբ. — Բարձրացուցէք զՏէր Աստուած մեր. — Մի՛ տրտմեցուցաներ զոք եւ մի՛ տրտմիր յումեքէ. — Զքաղաքս արամբք եւ ընչիւք, իսկ զանձինս՝ ուսմամբ եւ խրատու պարտ է պայծառացուցանել. — Աճեաց մանուկն եւ հաստուցաւ ի ստենէ։*

**Հրահանգ 78.** — **Գրաբարի վերածեցէք.** — *Ով որ ինձ գաւաթ մը պաղ (ցուրտ) ջուր կը խմցընէ (արբուցանել). — Իմացուցի (զգացուցանել) անոր այն ցաւը. — Իշխանը ամայացուց այն քաղաքն. — Անոր հագցուցին այն պատմուճանը. — Զանի բեռը հանելով նստեցուց. — Սորվեցո՛ւր ինձ այդ ուսումը. — Աւանդը իր տիրոջը դարձո՛ւր. — Նա այն թռչունները փախցուց. — Փարիսեցիները զանի մեռուցին. — Եկէք ինծի (եկայք առ իս) ամէն*

*յաղնածներ (աշխատեալք) եւ ես ձեզի սիրտի հանգչեցընեմ. — Զիս այս վտանգէն ազատէ՛ (ապրեցուցանել). — Մի՛ տրտմեցներ զանի. — Հրեշտակը վախցուց (զարհուրեցուցանել) դերեզմանին պահապանները. — Ցիտուս գլուխը ծռելով (խոնարհեցուցանել) հոգին աւանդեց ։*

**Հրահանգ 79. — Հետեւեալ բայերն անցողականի վերածեցէք. —** *Անցանել. ըմպել. բուսանիլ. դառնալ. զգենուլ. ընդելանիլ. լնուլ. ծնանիլ. կեալ. հանգչիլ. հասանել. հեծանիլ. մատչիլ. մեղանչել. մեռանիլ. յառնել. նստիլ. ուսանիլ. սնանիլ. փախչիլ. կորնչիլ. փլանիլ. ամրանալ. գնալ. դառնանալ. զօրանալ. իմանալ. այրիլ. բնակիլ. ննջել. լսել. հասանել. խաղալ. մերձենալ. ամաչել. գոչել. իջանել. զարթնուլ. ջեռնուլ ։*

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ**

---

## 39. ՍԱՄԱՐԱՑԻՆ

Այր մի ելանէր յԵրուսաղեմէ յԵրիքով և անկաւ ի ձեռս աւազակաց. որք *մերկացուցին* զնա և վէրս ի վերայ եդին, թողին կիսամահ և գնացին։ Դէպ եղեւ քահանայի միոջ ելանել ընդ նոյն ճանապարհ և տեսեալ զնա զանց արար։ Նոյնպէս և Ղեւտացի ոմն եկեալ ընդ նոյն տեղի ետես և զանց արար։ Սամարացի ոմն ճանապարհորդեալ եկն ընդ նոյն առ նովաւ, և տեսեալ զնա գթացաւ։ Եւ մատուցեալ պատեաց զվէրս նորա, արկեալ ի վերայ ձէթ և գինի, և եդեալ ի վերայ գրաստու իւրոյ՝ ած զնա ի պանդոկի մի և դարմանեաց զնա։ Եւ ի վաղիւ անդր իբրեւ ելանէր անտի, հանեալ ետ ցպանդոկապետն երկուս դահեկանս և ասէ. Դարման տար դմա, և զոր ինչ ծախեսցես ի դա՝ ի միւսանգամ գալստեան իմում *հատուցից* քեզ։

*(Խոնարհեցէք շեղագիր անցողական բայերը ։)*

*Վէրս ի վէրայ եդին*, վիրաւորեցին.
*Կիսամահ*, կէս մեռած.
*Զանց արար*, թողուց գնաց.
*Պանդոկի*, պանդոկ.
*Գրաստ*, ձի.
*Ի վաղիւ անդր*, երկրորդ օրն.

---

## *Երկրորդ լծորդութիւն, ԱՄ (Ա. Ձեւ)*

### *Ներգործական*

**Սահմանական եղանակ, ներկայ**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Աղամ (ալիւր)* | *կ'աղամ* | *Աղամք* | *կ'աղանք* |
| *Աղաս* | *կ'աղաս* | *Աղայք* | *կ'աղաք* |
| *Աղայ* | *կ'աղայ* | *Աղան* | *կ'աղան* |

**Անկատար**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Աղայի* | *կ'աղայի* | *Աղայաք* | *կ'աղայինք* |
| *Աղայիր* | *կ'աղայիր* | *Աղայիք* | *կ'աղայիք* |
| *Աղայր* | *կ'աղար* | *Աղային* | *կ'աղային* |

**Կատարեալ**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Աղացի* | *աղացի* | *Աղացաք* | *աղացինք* |
| *Աղացեր* | *աղացիր* | *Աղացէք* | *աղացիք* |
| *Աղաց* | *աղաց* | *Աղացին* | *աղացին* |

**Ապառնի**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Աղացից* | *պիտի աղամ* | *Աղասցուք* | *պիտի աղանք* |
| *Աղասցես* | *պիտի աղաս* | *Աղասջիք* | *պիտի աղաք* |
| *Աղասցէ* | *պիտի աղայ* | *Աղասցեն* | *պիտի աղան* |

### Հրամայական եղանակ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Աղա, աղասջիր | աղա՛ | Աղացէք | աղացէ՛ք |
| Մի՛ աղար | մ՛ աղար | Մի՛ աղայք | մ՛ աղաք |

### Ստորադասական եղանակ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Աղայցեմ | աղամ (նէ) | Աղայցեմք | աղանք |
| Աղայցես | աղաս | Աղայցէք | աղաք |
| Աղայցէ | աղայ | Աղայցեն | աղան |

### Աներեւոյթ *կամ* Անորոշ դերբայ

| | |
|---|---|
| Աղալ | աղալ |

### Անցեալ դերբայ

| | |
|---|---|
| Աղացեալ | աղացած |

### Ապառնի դերբայ

| | |
|---|---|
| Աղալոց | աղալու |

---

## *Կրաւորական*

### Սահմանական եղանակ, Ներկայ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Աղամ | կ՛աղացուիմ | Աղամք | կ՛աղացուինք |
| Աղաս | կ՛աղացուիս | Աղայք | կ՛աղացուիք |
| Աղայ | կ՛աղացուի | Աղան | կ՛աղացուին |

### Անկատար

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Աղայի | կ՛աղացուէի | Աղայաք | կ՛աղացուէինք |
| Աղայիր | կ՛աղացուէիր | Աղայիք | կ՛աղացուէիք |
| Աղայր | կ՛աղացուէր | Աղային | կ՛աղացուէին |

### Կատարեալ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Աղացայ* | աղացուեցայ | *Աղացաք* | աղացուեցանք |
| *Աղացար* | աղացուեցար | *Աղացայք* | աղացուեցաք |
| *Աղացաւ* | աղացուեցաւ | *Աղացան* | աղացուեցան |

### Ապառնի

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Աղացայց* | պիտի աղացուիմ | *Աղասցուք* | պիտի աղացուինք |
| *Աղասցիս* | պիտի աղացուիս | *Աղասջիք* | պիտի աղացուիք |
| *Աղասցի* | պիտի աղացուի | *Աղասցին* | պիտի աղացուին |

### Հրամայական եղանակ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Աղացիր* / *Աղասջիր* | աղացուէ՛ | *Աղացարուք* / *Աղասջիք* | աղացուեցէք |
| *Մի՛ աղար* | մի՛ աղացուիր | *Մի՛ աղայք* | մի՛ աղացուիք |

### Ստորադասական եղանակ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Աղայցիմ* | աղացուիմ (նէ) | *Աղայցիմք* | աղացուինք |
| *Աղայցիս* | աղացուիս | *Աղայցիք* | աղացուիք |
| *Աղայցի* | աղացուի | *Աղայցին* | աղացուին |

### Աներեւոյթ կամ Անորոշ դերբայ

*Աղալ* — աղացուիլ

### Անցեալ դերբայ

*Աղացեալ* — աղացուած

### Ապառնի դերբայ

*Աղալի կամ աղալոց* — աղացուելու

**Խոնարհել հետեւեալ բայերը** . — *Ներգործական* . — *Զգամ . կարդամ . մուրամ . տեղամ . բանամ . թանամ . բառնամ .* — *Ներգործակերպ չէզոք* . — *Խնդամ . սոկամ . գոռամ (կռուիլ) . անսամ . մնամ . գնամ . լամ . կամ .* — *Կրաւորակերպ չէզոք* . — *Զանամ, ացայ . յուսամ . ցնծամ . անձկամ (փափաքիլ) . դողամ . գթամ .* — *Հասարակ , երկու ձեւով . Որսամ, ացի եւ ացայ . Ողբամ . հոգամ . խոկամ . իմանամ ։*

*Բանամ եւ թանամ բայերուն կատարեալն , ապառնին , հրամայականն եւ անցեալ ընդունելութիւնը կ'ըլլայ՝ բացի , թացի . բացից , թացից . բաց , թաց . բացեալ , թացեալ ։*

*Լամ եւ կամ բայերու կատարեալը կ'ըլլայ՝ լացի , կացի . ելաց , եկաց եւ հրամայականը՝ լա՛ց , կա՛ց ։*

*Իսկ բառնամ եւ դառնամ բայերու կատարեալն , ապառնին , հրամայականն եւ անցեալ ընդունելութիւնը կ'ըլլան .*

| Կատարեալ | Ապառնի | Հրամայական | Անց. Ընդ. |
|---|---|---|---|
| *Բարձի* | *Բարձից* | *Բարձ* | *Բարձեալ* |
| *Դարձայ* | *Դարձայց* | *Դարձ* | *Դարձեալ* |

**Հարցարան** . — Ի՞նչպէս կը խոնարհուին *աղամ* ներգործական եւ կրաւորական . — Խոնարհեցէք ասոր վրայ գացող մի քանի բայեր . — Ի՞նչ գիտելիք կայ բանամ եւ թանամ, լամ եւ կամ, բառնամ եւ դառնամ բայերու վրայ ։

**Հրահանգ 80** . — Խոնարհել հետեւեալ բայերն . — *Հոս կը դնենք Սահմանական եղանակ ներկայն միայն* . — *Ես հաստատամ յԱստուած* . — *Դու կարդաս զմատեան* . — *Նա աղայ զցորեան* . — *Մեք խաղամք ընկերօք* . — *Դուք դողայք ի թշնամեաց* . — *Նոքա խնդան ընդ ծնունդ մանկան ։*

*(Շարունակութիւնը մինչեւ աներեւոյթ կը թողունք աշակերտին։)*

**Հրահանգ 81.** — Որոշել շեղագիր բայերու ժամանակներն ու եղանակները. — *Դէմք մարդոյ հայելի են մտաց եւ աչք* մերկանան *զգաղտնիս սրտից. — Մինչեւ հաւու խօսել, երիցս* ուրացցիս *զիս. — Եւ* դարձան *անդրէն պատգամաւորքն ի տուն. — Բացից առաւօտ զբերան իմ. — Ես ի Տէր* յուսացայ, ցնծացայց *եւ ուրախ եղէց. — Եւ լիներ եւ՝ տեսեալ ժողովուրդ բազում, գթացաւ ի նոսա եւ բժշկեաց զհիւանդս նոցա. — Հանոյ թուեցաւ Հերովդի, ուստի եւ երդմամբ* խոստացաւ *տալ նմա զինչ եւ խնդրեսցէ. — Զմոխիր որպէս զհաց կերի եւ արտասուօք խմովք զանկողինս իմ* թացի. *— Եւ մի՛* կուրացցին *բիբք տեսանելեաց մերոց ի զուարթարար ճառագայթից ճշմարտութեան քոյ. — Կուսխանացիք* լան *զծնեալսն եւ երանեն զվախճանեալսն։*

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

## 40. ՀԱՒՆ ԱՐՄԱՒ

Գիտէր Աստուած զմարդկան թերահաւատութիւն, և նմին իրի արար հաւ մի արմաւ անուն։ Զայսմանէ որպէս ցուցանեն բազումք, մի է, միածին է, յերկրին Եգիպտացւոց է։ Ի հինգհարիւր ամի դառնայ ի բոյն իւր և ցուցանէ զյարութիւն։ Եւ ոչ եթէ յանապատ ուրեք վայրի է, զի մի՛ յերկուասցի խորհուրդն, այլ յերեւելի քաղաքի է, զի յայտնապէս երեւեսցի մարդկան։ Զի բոյն շինէ իւր ի լիբան փայտէ և ի զմուռս փայտէ և յամենայն խնկոց։ Եւ ի կատարել ժամանակացն գայ մտանէ ի բոյնն, և անդէն մեռանի և նեխի, և ապա ի մեռեալ և ի նեխեալ մարմնոյ մեռելոյն որդն ծնանի և որդն աճեցեալ թռչուն կերպարանի։ Ապա թեւակից եղեալ արմաւն վերանայ յերկինս, որպէս եկն մեռաւ։ Եւ դու մի՛ թերահաւատիր ի բանից այտի. քանզի և աստէն առաջի ա-

չաց տեսանես զազգս մեղուաց՝ զհամրդ յորդանէ թռչուն կերպարանի. և ի գիճագործ ձուոց տեսանես թռչուն՝ որոյ թեւք և ոսկերք և ջիղք եղեալ են։

*(Որոշեցէք սոյն հատուածին մէջ Բ. եւ Գ. լծորդութեան բայեր։)*

*Արմաւ հաւ*, առասպելական փիւնիկ թռչուն՝ որ կը կարծուէր թէ իւր բուն իսկ մոխիրներէն նորէն կեանք կ'առնէր.

*Միածին*, մէկ հատիկ.

*Զմուռս*, անուշահոտ իւղ եւ խունկ.

*Վայր*, տեղ.

*Ցերկուանալ*, տարակուսելի ըլլալ.

*Նեխիլ*, փտիլ, հոտիլ.

*Կերպարանիլ*, ձեւանալ.

*Թեւակից լինիլ*, թեւաւորուիլ.

*Լիբան*, ազնիւ խունկ մը.

*Գիճագործ*, բաց։

---

## *Երրորդ Ձեւ (Ներգործական)*

### Սահմանական եղանակ, Ներկայ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Լուանամ* | կը լուամ | *Լուանամք* | կը լուանք |
| *Լուանաս* | կը լուաս | *Լուանայք* | կը լուաք |
| *Լուանայ* | կը լուայ | *Լուանան* | կը լուան |

### Անկատար

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Լուանայի* | կը լուայի | *Լուանայաք* | կը լուայինք |
| *Լուանայիր* | կը լուայիր | *Լուանայիք* | կը լուայիք |
| *Լուանայր* | կը լուար | *Լուանային* | կը լուային |

### Կատարեալ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Լուացի* | լ——ցի | *Լուացաք* | լ——ցինք |
| *Լուացեր* | լ——ցիր | *Լուացէք* | լ——ցիք |
| *Լուաց* | լ——ց | *Լուացին* | լ——ցին |

### Ապառնի

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Լուացից* | պիտի լ——ամ | *Լուասցուք* | պիտի լ——անք |
| *Լուասցես* | պիտի լ——աս | *Լուասջիք* | պիտի լ——աք |
| *Լուասցէ* | պիտի լ——այ | *Լուասցեն* | պիտի լ——ան |

### Հրամայական եղանակ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Լուա՛, լուասջիր* | լ——ա՛ | *Լուացէ՛ք* | լ——ցէ՛ք |
| *Մի՛ լուանար* | մի՛ լ——ար | *Մի՛ լուանայք* | մի՛ լ——աք |

### Ստորադասական եղանակ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Լուանայցեմ* | լ——ամ (նէ) | *Լուանայցեմք* | լ——անք |
| *Լուանայցես* | լ——աս | *Լուանայցէք* | լ——աք |
| *Լուանայցէ* | լ——այ | *Լուանայցեն* | լ——ան |

### Աներեւոյթ *կամ* Անորոշ դերբայ

*Լուանալ* — լ——ալ

### Անցեալ դերբայ

*Լուացեալ* — լ——ցած

### Ապառնի դերբայ

*Լուանալոց* — լ——լու

## Կրաւորական

### Սահմանական եղանակ, ներկայ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Լուանամ* | կը լուացուիմ | *Լուանամք* | կը լուացուինք |
| *Լուանաս* | կը լուացուիս | *Լուանայք* | կը լուացուիք |
| *Լուանայ* | կը լուացուի | *Լուանան* | կը լուացուին |

### Անկատար

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Լուանայի* | կը լուացուէի | *Լուանայաք* | կը լուացուէինք |
| *Լուանայիր* | կը լուացուէիր | *Լուանայիք* | կը լուացուէիք |
| *Լուանայր* | կը լուացուէր | *Լուանային* | կը լուացուէին |

### Կատարեալ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Լուացայ* | լուացուեցայ | *Լուացաք* | լուացուեցանք |
| *Լուացար* | լուացուեցար | *Լուացայք* | լուացուեցաք |
| *Լուացաւ* | լուացուեցաւ | *Լուացան* | լուացուեցան |

### Ապառնի

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Լուացայց* | պիտի լուացուիմ | *Լուասցուք* | պիտի լուացուինք |
| *Լուասցիս* | պիտի լուացուիս | *Լուասջիք* | պիտի լուացուիք |
| *Լուասցի* | պիտի լուացուի | *Լուասցին* | պիտի լուացուին |

### Հրամայական եղանակ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Լուացիր* / *Լուասջիր* | լուացուէ՛ | *Լուացարուք* | լուացուեցէ՛ք |
| *Մի՛ լուանար* | մի՛ լուացուիր | *Մի՛ լուանայք* | մի՛ լուացուիք |

**Ստորադասական եղանակ**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Լուանայցիմ* | *լ—ց—էմ (ևէ)* | *Լուանայցիմք* | *լ—ց—էնք* |
| *Լուանայցիս* | *լ—ց—էս* | *Լուանայցիք* | *լ—ց—էք* |
| *Լուանայցի* | *լ—ց—է* | *Լուանայցին* | *լ—ց—էն* |

**Աներեւոյթ** *կամ* **Անորոշ դերբայ**

*Լուանալ* *լ—ց—էլ*

**Անցեալ դերբայ**

*Լուացեալ* *լ—ց—ած*

**Ապառնի դերբայ**

*Լուանալոց կամ լուանալի* *լ—ց—ելու*

Խոնարհել հետեւեալ բայերը. — *Մերկանամ.* — *Կրաւորակերպ չէզոք.* — *Զարմանամ. սքանչանամ. հիանամ. զղջանամ. սարջանամ. ընթանամ. յուլանամ. գոհանամ. բարկանամ. արբենամ. յամենամ (ուշանալ). մերձենամ (մօտենալ).* — *Հասարակ.* — *Գողանամ. խմանամ. ստանամ. զլանամ. մոռանամ. ուրանամ. անգիտանամ. մուրանամ. խոստանամ։*

*Մերձենամ բային հրամայականը կ'ըլլայ՝ մերձեաց. Յամենամ բային կատարեալը կ'ըլլայ՝ յամեցի։*

*Ընթանամ, իմանամ, մոռանամ բայերուն հրամայականը կ'ըլլայ՝ եզ. ընթա՛, իմա՛, մոռա՛. յոգ. ընթացարուք, իմացարուք, մոռացարուք, դարձարուք։*

**Հարցարան**. — Ի՞նչպէս կը խոնարհուին լուանամ ներգործական եւ կրաւորական. — Ըսէ՛ք ասոր հետեւող մի քանի բայերը. — Ի՞նչպէս կը խոնարհուին մերձենամ, ընթանամ, իմանամ, մոռանամ բայերուն հրամայականներ, յամենամ բային կատարեալը ինչպէս կ'ըլլայ։

**Հրահանգ 82.** — Լուծեցէք սոյն հրահանգին ընդագիր բայերը. — *Իմանալ զբարի եւ քաղցր խօսել՝ ի մեր հանճարի են. — Արիստոտէլ ասէր իւրոց աշակերտացն. Ինչս այնպիսի ստանալ որ ի նաւաբեկութեան եւ յընկղման ժամանակի լուղայ զհետ ի ծով. — Սոկրատէս ասէ. Որպէս զմեղուն տեսանեմք ի վերայ ամենայն ծաղկանց նստեալ, սակայն զպիտանին առնու, նոյնպէս ամենայն իրաց պարտ է հմտանալ, սակայն զօգտակարն առնուլ. — Օտարանալ յեղբարց եւ ի քերց՝ է մեռանել. — Զգուշանալ միշտ ի կենակցութենէ արանց չարաբարոյց. — Հրեայք ոչ ուտէին հաց՝ չեւ նախ լուացեալ զձեռս. — Մի՛ բարկանար աշակերտի մեղուցելոյ, զի հիւանդն ոչ թէ յիւր կամաց հիւանդանայ. — Զայն խնդրեսցուք, զոր Քրիստոս խոստացաւ տալ՝ թէ ուր եսն եմ, անդ եւ պաշտօնեայն իմ եղիցի։*

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

## 41. ԺԽԱՆԴՈՒԹԻՒՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ

Էր գետ մի՝ որոյ ջուրն էր մաքուր և յստակ, վճիտ և ականակիտ և ցանկացաւ Աղեքսանդրոս *լողանալ* ի նա և ի բաց *մերկացեալ* զհանդերձն, *լուացաւ* ի գետն և ի դուրս ելեալ դարմանեցաւ։ Բայց ոչ եղեւ նմա լողանալն փրկութեան պատճառ. քանզի *հովացեալ*, ցաւեաց գլուխն։ Իսկ Մակեդոնացի զօրքն յանկանել դնելն Աղեքսանդրի հիւանդութեամբ, և նոքա յոգիս իւրեանց հիւանդացեալք լինէին և երկրնչէին թէ մի՛ գուցէ *իմացեալ* Դարեհի զհիւանդութիւնն Աղեքսանդրի, ի վերայ եկեսցէ զօրօք. այսպէս մի անձն Աղեքսանդրի զայնքան ոգի քաջալերեալ յորդորէր։ Եւ անդ ոմն Փիլիպպոս անուն, սիրելի և բարեկամ Աղեքսանդրի, բժիշկ քաջ, *խոստացաւ* տալ Աղեքսանդրի ըմպելիս, և ի բաց թափել ի նմանէ զհիւանդութիւնն։ Եւ Աղեքսանդրոս յօժարէր առնուլ։ Եւ իսկոյն մատուցաւ թուղթ Աղեքսանդրի առաքեալ ի Պարմենիոնայ զօրագլխէ, զի գրեալ էր թէ «Դարեհ հաւանեցոյց

զՓիլիպպոս բժիշկ, զի յորժամ գտցէ դիպօղ ժամանակ, դեղովք սպանցէ զԱղեքսանդրոս և խոստացեալ է տալ նմա զքոյր իւր ի կնութիւն և խոստացեալ է Փիլիպպոսի զայս առնել Դարեհի. ուստի զգոյշ լեր:» Եւ Աղեքսանդրոս առեալ ընթերցաւ զթուղթն, ոչինչ խռովեցաւ զայնմանէ. քանզի գիտէր զբարսն Փիլիպպոսի, թէ որպիսի գութ գորովոյ ունէր առ նա: Եւ եդ զթուղթն ընդ գլխովն ի սնարս իւր: Եւ եկեալ Փիլիպպոսի բժշկի՝ մատոյց նմա զբաժակ դեղոյն ասելով. Ա՛րբ, Աղեքսանդրէ, և ի բաց թափեա ի հիւանդութենէդ: Եւ առեալ Աղեքսանդրի զբաժակն ի ձեռին իւրում և կալաւ աջու ձեռամբն, պշուցեալ հայէր ընդ Փիլիպպոս ի բազում ժամս և ասէ. Ըմպեմ, Փիլիպպէ, քեզ զանձն իմ հաւատացեալ: Եւ ասէ Փիլիպպոս. Ա՛րբ, մի երկնչիր, զի անսզգտանելի է դեղդ: Եւ Աղեքսանդրոս ասաց. Ահա ըմպեմ, և արբեալ զդեղն, անդէն ի բաց թօթափեաց զհիւանդութիւնն: Եւ յետ ըմպելոյն տայ ի ձեռս նորա զթուղթն զամբաստանութեան իւրոյ: Եւ ընթերցեալ Փիլիպպոսի զանձնէ իւրմէ զամբաստանութիւնն, ասէ. Ոչ գտցես զիս նման զրելոցս վասն իմ, Աղեքսանդրէ: Եւ ապրեալ Աղեքսանդր ի հիւանդութենէն և գիրկս արկեալ փարէր զՓիլիպպոսիւ և ասէր. Տես, որպիսի բարս ունիմ առ քեզ բարեկամութեան. քանզի յառաջագոյն ընկալեալ իմ զթուղթ դեղոյն և յորժամ արբի զդեղն՝ յայնժամ ապա ետու ի ձեռն քո զթուղթն, *հաւաստացեալ* զիս մտերմութեանդ քում, քանզի գիտէի թէ Փիլիպպոս զԱղեքսանդրէ դժուարին ինչ ոչ խորհիցի:

(*Շեղագիր բայերը խոնարհեցէք:*)

*Լոգանալ*, լուացուիլ.
*Հովացեալ*, պաղելով.
*Դիպող*, յարմար.
*Դեղ*, թոյն.
*Անսզգտանելի*, անթերի:

## Չորրորդ լծորդութիւն, ՈՒՄ, Ա. Ձեւ

### Ներգործական

#### Սահմանական եղանակ, Ներկայ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Թողում | կը թողում | Թողումք | կը թողունք |
| Թողուս | կը թողուս | Թողուք | կը թողուք |
| Թողու | կը թողու | Թողուն | կը թողուն |

#### Անկատար

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Թողուի | կը թողուի | Թողուաք | կը թողուինք |
| Թողուիր | կը թողուիր | Թողուիք | կը թողուիք |
| Թողոյր | կը թողուր | Թողուին | կը թողուին |

#### Կատարեալ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Թողի | թողուցի | Թողաք | թողուցինք |
| Թողեր | թողուցիր | Թողէք | թողուցիք |
| Թող, եթող | թողուց | Թողին | թողուցին |

#### Ապառնի

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Թողից | պիտի թողում | Թողցուք | պիտի թողունք |
| Թողցես | պիտի թողուս | Թողջիք | պիտի թողուք |
| Թողցէ | պիտի թողու | Թողցեն | պիտի թողուն |

#### Հրամայական եղանակ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Թող, Թողջիր | թո՛ղ | Թողէք, Թողջիք | թողէ՛ք |
| Մի՛ Թողուր | մի՛ թողուր | Մի՛ Թողուք | մի՛ թողուք |

### Ստորադասական եղանակ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Թողուցում | թողում (նէ) | Թողուցումք | թողունք |
| Թողուցուս | թողուս | Թողուցուք | թողուք |
| Թողուցու | թողու | Թողուցուն | թողուն |

### Աներեւոյթ կամ անորոշ դերբայ

| | |
|---|---|
| Թողուլ | թողուլ |

### Անցեալ դերբայ

| | |
|---|---|
| Թողեալ | թողած |

### Ապառնի դերբայ

| | |
|---|---|
| Թողլոց | թողէլու |

---

## Կրաւորական

### Սահմանական եղանակ, ներկայ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Թողում | կը թողուէմ | Թողումք | կը թողուէնք |
| Թողուս | կը թողուէս | Թողուք | կը թողուէք |
| Թողու | կը թողուէ | Թողուն | կը թողուէն |

### Անկատար

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Թողուի | կը թողուէի | Թողուաք | կը թողուէինք |
| Թողուիր | կը թողուէիր | Թողուիք | կը թողուէիք |
| Թողոյր | կը թողուէր | Թողուին | կը թողուէին |

**Կատարեալ**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Թողայ* | *Թողուեցայ* | *Թողաք* | *Թողուեցանք* |
| *Թողար* | *Թողուեցար* | *Թողայք* | *Թողուեցաք* |
| *Թողաւ* | *Թողուեցաւ* | *Թողան* | *Թողուեցան* |

**Ապառնի**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Թողայց* | *պիտի Թողուիմ* | *Թողցուք* | *պիտի Թողուինք* |
| *Թողցիս* | *պիտի Թողուիս* | *Թողջիք* | *պիտի Թողուիք* |
| *Թողցի* | *պիտի Թողուի* | *Թողցին* | *պիտի Թողուին* |

**Հրամայական եղանակ**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Թողիր* | *Թողուէ՛* | *Թողարուք* | *Թողուեցէք* |
| *Մի՛ Թողուր* | *մի՛ Թողուիր* | *Մի՛ Թողուք* | *մի՛ Թողուիք* |

**Ստորադասական եղանակ**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Թողուցում* | *Թողուիմ (նէ)* | *Թողուցումք* | *Թողուինք* |
| *Թողուցուս* | *Թողուիս* | *Թողուցուք* | *Թողուիք* |
| *Թողուցու* | *Թողուի* | *Թողուցուն* | *Թողուին* |

**Աներեւոյթ** *կամ* **Անորոշ դերբայ**

*Թողուլ* — *Թողուիլ*

**Անցեալ դերբայ**

*Թողեալ* — *Թողուած*

**Ապառնի դերբայ**

*Թողլոց, լի* — *Թողուելու*

Խոնարհել հետեւեալ բայերը. — *Զենում (մորթեմ)*.

*հեղում (թափել)․ յեռում (շարել)․ գեղում․ գերծում (ածիլել)․ ցելում (ճեղքել)․ գելում (ոլորել)․ արգելում․ յաւելում․ առաւելում․ կիզում (այրել)։*

**Հարցարան.** — Ի՞նչպէս կը խոնարհուի *բաղում* ներգործական եւ կրաւորական. — Ըսէք ասոր հետեւող մի քանի բայեր.

---

## *Երրորդ Ձեւ*

### Սահմանական եղանակ, Ներկայ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Զգենում* | *կը հագնիմ* | *Զգենումք* | *կը հագնինք* |
| *Զգենուս* | *կը հագնիս* | *Զգենուք* | *կը հագնիք* |
| *Զգենու* | *կը հագնի* | *Զգենուն* | *կը հագնին* |

### Անկատար

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Զգենուի* | *կը հագնէի* | *Զգենուաք* | *կը հագնէինք* |
| *Զգենուիր* | *կը հագնէիր* | *Զգենուիք* | *կը հագնէիք* |
| *Զգենոյր* | *կը հագնէր* | *Զգենուին* | *կը հագնէին* |

### Կատարեալ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Զգեցայ* | *հագայ* | *Զգեցաք* | *հագանք* |
| *Զգեցար* | *հագար* | *Զգեցայք* | *հագաք* |
| *Զգեցաւ* | *հագաւ* | *Զգեցան* | *հագան* |

### Ապառնի

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Զգեցայց* | *պիտի հագնիմ* | *Զգեցցուք* | *պիտի հագնինք* |
| *Զգեցցիս* | *պիտի հագնիս* | *Զգեցջիք* | *պիտի հագնիք* |
| *Զգեցցի* | *պիտի հագնի* | *Զգեցցին* | *պիտի հագնին* |

### Հրամայական եղանակ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Զգեցի՛ր* / *Զգեցջի՛ր* | *հագէ՛ր* | *Զգեցարուք* / *Զգեցջի՛ք* | *հագէ՛ք* |
| *Մի՛ զգենուր* | *մի՛ հագնէր* | *Մի՛ զգենուք* | *մի՛ հագնէք* |

### Ստորադասական եղանակ

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Զգենուցում* | *հագնեմ (նէ)* | *Զգենուցումք* | *հագնենք* |
| *Զգենուցուս* | *հագնես* | *Զգենուցուք* | *հագնէք* |
| *Զգենուցու* | *հագնէ* | *Զգենուցուն* | *հագնեն* |

### Աներեւոյթ *կամ* անորոշ դերբայ

*Զգենուլ* — *հագնել*

### Անցեալ դերբայ

*Զգեցեալ* — *հագած, հագնելով*

### Ապառնի դերբայ

*Զգենլոց* — *հագնելու*

*Զգենումին պէս կը խոնարհուին յենում (կռթընիմ)․ ընթեռնում (կարդամ)․ սակայն ընթեռնումին կատարեալը կ'ըլլայ ընթերցայ, ապ․ ընթերցայց եւ հրամ․ ընթերցի՛ր․ անց․ դեր․ ընթերցեալ։*

*Կան նում վերջաւորած բայեր, որ հետեւեալ կերպով կը խոնարհուին.*

| | Կատարեալ | Ապառնի | Հրմյկն. | Անց. Ընդ. |
|---|---|---|---|---|
| *Լնում* | *Լցի* | *Լցից* | *Լի՛ց* | *Լցեալ* |
| *Խնում* | *Խցի* | *Խցից* | *Խի՛ց* | *Խցեալ* |
| *Ընկենում* | *Ընկեցի* | *Ընկեցից* | *Ընկե՛ա* | *Ընկեցեալ* |

*Իսկ զբօսնում, առնում, թքնում բայերն հետեւեալ կերպով կը խոնարհուին.*

| | Կատարեալ | Ապառնի | Հրմյկն. | Անց. Ընդ. |
|---|---|---|---|---|
| *Զբօսնում* | *Զբօսայ* | *Զբօսայց* | *Զբօսի՛ր* | *Զբօսեալ* |
| *Առնում* | *Առի* | *Առից* | *Ա՛ռ* | *Առեալ* |
| *Թքնում* | *Թքի* | *Թքից* | *Թո՛ւք* | *Թքեալ* |

**Հարցարան**. — Ի՞նչպէս կը խոնարհուի *Զգենում*. — Ըսէք այս բային հետեւող մի քանի բայեր. — Ի՞նչ գիտելիք կայ *նում* վերջաւորող բայերու մասին. — *Զբօսնում, առնում, թքնում* բայերու խոնարհումն ինչպէս է։

**Հրահանգ 83**. — Որոշեցէք շեղագիր բայերուն ժամանակներն ու եղանակներն. — *Հեղու արիւն՝ որ զլանայ զվարձս վարձկանի. — Մի՛ արգելուր զդոսա, զի այդպիսեաց է արքայութիւն երկնից. — Ոչ թողից զձեզ որբս. — Զայս իբրեւ ասաց, եթուք ի գետին եւ արար կաւ ի թքոյն. — Ետ պատասխանի թագաւորն եւ ասէ. իմ իսկ առաջի ընթերցան զգիրսն մոլորութեան ձերոյ. — Հերձ զծովն եւ անցոյց զնոսա. — Արգելի զոտս իմ ի չար ճանապարհաց. — Ամենայն ուղխք ի ծով գնան եւ ծով ոչ լնու. — Լցէք զթակոյկսդ ջրով եւ նոքա լցին. — Մի՛ ընկեսնուր զիս, Տէ՛ր, յերեսաց քոց եւ զհոգի քո սուրբ մի՛ հաներ յինէն։*

**Հրահանգ 84**. — Գրաբարի վերածեցէք. — *Աճեցէք եւ բազմացէք (բազմացարուք) եւ լեցուցէք երկիրը. — Աղեքսանդրոս տեսնելով Դիոգինէսը՝ որ կը նստէր կարասին մէջ (ի կարասի)՝ կ'ըսէ. Ո՛վ կարաս լի իմաստութեամբ։ Եւ նա արթննալով կ'ըսէ. Կաթիլ մը բախտ (կաթ մի բախտի) ինծ լաւ է եւ ոչ թէ կարասով (մի) խելք.— Դիոգինէս շատ մատուռակելուն (ի յոյժ մատըռ-*

*ուակելն) գլխին կը թափէր եւ մեղադրուելու ատեն (ի մեղադրելն) կ՚լայ. Եթէ խմեմ (ըմպեմ) թէ զինքը եւ թէ զիս կը կորսնցնէ. լաւ է որ սա միայն կորսուի (սմա միայն կորնչել). — Երբ Ստեփաննոսի արիւնը կը թափուէր, Պաւղոս էր որ հանդերձները կը պահէր ։*

**Հրահանգ 85. — Հետեւեալ բայերուն ներգործականները կրաւորականի եւ կրաւորականները ներգործականի փոխեցէք.** — *Գրեցի. սիրեցաւ. յայտնեցայց. մերկեսցիս. մերկիցիմ. շարժեաց. զարմանեսցին. վանեսցին. գործեցաւ. ասացայ. կոչեցար. գրեցին. սիրեցարուք. հաստայց. տեսցես. ընկցին. ընկանիցեն. սիրելի. սիրեցայց. թողի. զենայ. յաւելայց. ստեղծեր. գելաւ. լցին. պերծար. խցան. առեր. լցցիս. զերծ. ընկեցայք. թողէք. յաւելար. ստեղծի. խցայ ։*

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

## 42. ՄԱՀ Ս. ՍԱՀԱԿԱՅ

Յետ այնորիկ դէպ լինէր նովին ճշմարտութեամբ՝ երանելւոյն Սահակայ *լցեալ* աւուրբք երկայն ժամանակօք, և վայելչացեալ աստուածաբեր պտղոցն բարութեամբք, ի կատարել ամսեանն Նաւասարդի, որպէս և զօր ծննդեանն երանելւոյն յիշէին, յերկրորդ ժամու աւուրն, ի պաշտաման անուշահոտ խնկոյն. հանդերձ աստուածահաճոյ աղօթիւք՝ ծերունւոյն ի Քրիստոս աւանդեալ, հայեցեալ ի մարգարէին, որ ասէր. «Ի ձեռս քո յանձն առնեմ զհոգի իմ». և Ստեփաննոսի երանելւոյ, որ ասէր. «Տէր Յիսուս, ընկալ զհոգի իմ»։

(*Խոնարհեցէք լնուլ բայն ։*)

*Դէպ լինէր*, կը պատահէր ։

## Չորս կանոնաւոր բայերու վրայ վարժութիւնք

### Ա. Լծորդութիւն (Ներգ. եւ Կրաւ.)

**Հրահանգ 86.** — Տեղագիր բայերը գրաբարի վերածեցէք. — *Յուդա մատնեց զՅիսուս. — Յիսուս մատնուեցաւ ի Յուդայէ. — Յիսուս սրբեց զաշխարհ յապականութենէ մեղաց. — Պարսիկք կործանեցին եւ այրեցին զբազում տեղիս. — Մի՛ յանդիմաներ զայլս, զի մի՛ եւ դու յանդիմանուիս յայլոց. — Մի՛ անիծեր զընկեր քո, զի մի՛ եւ դու անիծուիս ի նմանէ. — Ամենայն ծառ որ ոչ բերէ (առնել) զպտուղ բարի, կը կտրուի եւ ի հուր կը ձգուի (արկանել). — Նա ազատեց զանձն իւր. — Սորվեցուց ինձ առնել զկամս. — Երկիր կը բուսցնէ զամենայն բանջար. — Վաղվաղակի հանեց զպատմուճանն առաջին եւ հագցուց անոր. — Որ երկիւղածը կը սիրէ, սիրոյ արժան կը կանգնէ Աստուծոյ (առ հյց.ով) եւ անհաշտ թշնամութիւն սատանայի (առ հյց.ով):*

### Բ. Լծորդութիւն

**Հրահանգ 87.** — *Իբրեւ խօսեցաւ զայս ամենայն, ելաւ ի լեռան. — Պղինձարքս ասէ. Կ՚ապականի աշխարհս հրով եւ ջրով, եւ տունք արբեցողաց գինւով. — Որ կը սորվի զհամար իւր, պիտի սիրուի. — Լուսին ոչ պիտի երեւի, երկիր պիտի շարժի. — Երկիր կը պատի յօդոյ. — Գողն եւ սպանող կը տանջուին ի խղճէ. — Տերեւք թափեցան (թօթափիլ). — Ոսկի հրով կը փորձուի, եւ զբարեկամն վիշտք եւ նեղութիւնք փորձեն. — Յորժամ կը նստիս ի սեղանն, խոնարհեցո՛ զգլուխդ, մի այլ ինչ տեսաներ, բայց միայն զքեզ եւ ճաշակեա*

զոհութեամբ . — Որչափ կը զրկուիս եւ կ'աշխատիս եւ կը նեղուիս եւ կը համբերես , անապական գանձ պատրաստես քեզ յերկինս , ապա թէ տրտնջես եւ նեղասրտիս , ի զուր կ'աշխատիս եւ անվարձ ելանես ։

## Գ. Լծորդութիւն

**Հրահանգ 88.** — Բացաւ զդուռն եւ տեսաւ զի ամենեքեան որ ի տանն էին , սաստիկ կուլային .— Մտիկ ըրէ' (անսալ) բանից իմոց եւ յամենայն առաւօտու լուա զձեռս եւ զերեսս քո . — Եթէ յայտնեմ (մերկանամ) քեզ զխորհուրդս իմ , երկնչիմ զի ոչ մտիկ ընես բանից իմոց . — Հանեցէք (մերկանալ) զպատմուճանս ձեր եւ նստեցէք աստ առ իս . — Տուք զցորեանն մշակաց , զի աղան . — Ոչ կը մոռնամ երբեք զխոստումն զոր քեզ խոստացայ . — Զգեստք իմ թրջուեցան (թանալ) յանձրեւոյ . — Ես կարդացի զհրովարտակն . — Դրունք տաճարին բացուեցան . — Պիտի լուամ զձեռս իմ. — Մանկունք կը կարդային ի սրահի անդ ։ — Երուսաղէմ ողբաց զաղէտս իւր . — Կը հաւատամ ես ի Յիսուս Քրիստոս . — Փոքրիկ մանուկն կը մուրար եւ ոչ ոք կը զթար նմա ։

## Դ. Լծորդութիւն

**Հրահանգ 89.** — Մորթեց զոչխարն եւ զգլուխն կըտրեց . — Գոցուեցան (խնուլ) լսելիք նորա . — Գոցեցին զաչս իւրեանց . — Եթէ նետեմ (թողուլ) նմա , գուցէ միւսանգամ մեղս ինչ գործէ . — Թողուցէք զնոսա անդ եւ դուք եկայք հագէք (զգենուլ) զզգեստս ձեր . — Թափէ' յիս զգթութիւն քո . — Կարդա' (ընթեռնուլ)

*զգիրս պատմութեան եւ պատմէ՛ ինձ զգործս նախնեաց· —Ներուիճ (թողեալ լինել) ձեզ մեղք ձեր. —Զմիմեամբ կը ձգէիճ (ընկենուլ) զյանցանս իւրեանց. — Թողուցէք զիս. —Իմաստուն ոք զբժիշկ ումն գովէր ասելով. Յոյժ գիտեմ զհմտութիւն քո եւ գովեմ, զի ոչ կը թողուս զհիւանդս յերկարել ի ցաւս, այլ վաղվաղակի փոխադրես ի կենաց. —Արգիլելով զլսելիս ի սուրբ ընթերցուածոց, եւ ունկնդիր եմք բառաչման խաշանց մերոց ։*

## ՉՈՐՍ ԼԾՈՐԴՈՒԹԵԱՆՑ ԱՆԿԱՆՈՆ ԲԱՅԵՐ

*Անկանոն կ'ըսուին այն բայերն՝ որոց արմատական ժամանակները միւս ժամանակներէն կը տարբերին ։*

*Առաջին լծորդութեան անկանոն բայերն հետեւեալներն են. Առնեմ, ընել. — Ասեմ, ըսել. — Գիտեմ, գիտնալ. —Դնեմ. —Ըմպեմ, խմել. —Լսեմ. —Կարեմ, կրնալ. — Ծանաչեմ, ճանչնալ. — Մեղանչեմ, մեղք գործել. —Յառնեմ, ելնել (պառկած կամ նստած տեղէն). — Ուտեմ. — Յանցանեմ, յանցանք գործել ։*

### *Խոնարհումն սոյն բայից*

**Ներգործական** | **Կրաւորական**

**Սահմանական եղանակ, Ներկայ**

| Եզ. | Յզ. | Եզ. | Յզ. |
|---|---|---|---|
| Առնեմ | Առնեմք | Առնիմ | Առնիմք |

**Անկատար**

| Եզ. | Յզ. | Եզ. | Յզ. |
|---|---|---|---|
| Առնէի (*) | Առնէաք | Առնէի | Առնէաք |

(*) Համառօտութեան համար միւս դէմքերը զանց առնուած են։

**Անցեալ կատարեալ**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| Արարի | Արարաք | Արարայ | Արարաք |
| Արարեր | Արարէք | Արարար | Արարայք |
| Արար | Արարին | Արարաւ | Արարան |

**Ապառնի**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| Արարից | Արասցուք | Արարայց | Արասցուք |
| Արասցես | Արասջիք | Արասցիս | Արասջիք |
| Արասցէ | Արասցեն | Արասցի | Արասցին |

**Հրամայական եղանակ**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| Արա, արասջիր | Արարէք | Արասջիր, առնիջիր | Արասջիք, առնիջիք |
| Մի՛ առներ | Մի՛ առնէք | Մի՛ առնիր | Մի՛ առնիք |

**Ստորադասական եղանակ**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| Առնիցեմ | Առնիցեմք | Առնիցիմ | Առնիցիմք |
| Առնիցես | Առնիցէք | Առնիցիս | Առնիցիք |
| Առնիցէ | Առնիցեն | Առնիցի | Առնիցին |

**Աներեւոյթ** *կամ* **Անորոշ դերբայ**

Առնել • Առնել (իլ)

**Անցեալ դերբայ**

Արարեալ  Արարեալ

**Ապառնի դերբայ**

Առնելոց  Առնելի

| Ներգործական | | Կրաւորական | |
|---|---|---|---|

**Սահմանական եղանակ, Ներկայ**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| Ասեմ | Ասեմք | Ասիմ | Ասիմք |

**Անցեալ Անկատար**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| Ասէի | Ասէաք | Ասէի | Ասէաք |

**Անցեալ Կատարեալ**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| Ասացի | Ասացաք | Ասացայ | Ասացաք |
| Ասացեր | Ասացէք | Ասացար | Ասացայք |
| Ասաց | Ասացին | Ասացաւ | Ասացան |

**Ապառնի**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| Ասացից | Ասասցուք | Ասացայց | Ասասցուք |
| Ասասցես | Ասասջիք | Ասասցիս | Ասասջիք |
| Ասասցէ | Ասասցեն | Ասասցի | Ասասցին |

**Հրամայական եղանակ**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| Ասա՛ | Ասացէք | Ասացիր, ասիջիր | Ասացարուք, ասիջիք |
| Մի՛ ասեր | Մի՛ ասէք | Մի՛ ասիր | Մի՛ ասիք |

**Ստորադասական եղանակ**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| Ասիցեմ | Ասիցեմք | Ասիցիմ | Ասիցիմք |
| Ասիցես | Ասիցէք | Ասիցիս | Ասիցիք |
| Ասիցէ | Ասիցեն | Ասիցի | Ասիցին |

**Աներեւոյթ** *կամ* **Անորոշ դերբայ**

| | |
|---|---|
| *Ասել* | *Ասել (իլ)* |

**Անցեալ դերբայ**

| | |
|---|---|
| *Ասացեալ* | *Ասացեալ* |

**Ապառնի դերբայ**

| | |
|---|---|
| *Ասելոց* | *Ասելի* |

---

| *Ներգործական* | *Կրաւորական* |
|---|---|

**Սահմանական եղանակ, ներկայ**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| *Գիտեմ* | *Գիտեմք* | *Գիտիմ* | *Գիտիմք* |

**Անցեալ Անկատար**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| *Գիտէի* | *Գիտէաք* | *Գիտէի* | *Գիտէաք* |

**Անցեալ Կատարեալ**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| *Գիտացի* | *Գիտացաք* | *Գիտացայ* | *Գիտացաք* |
| *Գիտացեր* | *Գիտացէք* | *Գիտացար* | *Գիտացայք* |
| *Գիտաց* | *Գիտացին* | *Գիտացաւ* | *Գիտացան* |

**Ապառնի**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| *Գիտացից* | *Գիտասցուք* | *Գիտացայց* | *Գիտասցուք* |
| *Գիտասցես* | *Գիտասջիք* | *Գիտասցիս* | *Գիտասջիք* |
| *Գիտասցէ* | *Գիտասցեն* | *Գիտասցի* | *Գիտասցին* |

**Հրամայական եղանակ**

| Եզ. | Յզ. | Եզ. | Յզ. |
|---|---|---|---|
| Գիտա | Գիտացէք | Գիտացիր, գիտասջիր | Գիտացարուք |
| Մի՛ գիտեր | Մի՛ գիտէք | Մի՛ գիտիր | Մի՛ գիտիք |

**Ստորադասական եղանակ**

| Եզ. | Յզ. | Եզ. | Յզ. |
|---|---|---|---|
| Գիտիցեմ | Գիտիցեմք | Գիտիցիմ | Գիտիցիմք |
| Գիտիցես | Գիտիցէք | Գիտիցիս | Գիտիցիք |
| Գիտիցէ | Գիտիցեն | Գիտիցի | Գիտիցին |

**Աներեւոյթ** *կամ* **Անորոշ դերբայ**

| | |
|---|---|
| Գիտել | Գիտել (իլ) |

**Անցեալ դերբայ**

| | |
|---|---|
| Գիտացեալ | Գիտացեալ |

**Ապառնի դերբայ**

| | |
|---|---|
| Գիտելոց | Գիտելի |

---

| Ներգործական | Կրաւորական |
|---|---|

**Սահմանական եղանակ, Ներկայ**

| Եզ. | Յզ. | Եզ. | Յզ. |
|---|---|---|---|
| Դնեմ | Դնեմք | Դնիմ | Դնիմք |

**Անցեալ Անկատար**

| | | | |
|---|---|---|---|
| Դնէի | Դնէաք | Դնէի | Դնէաք |

### Անցեալ Կատարեալ

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| *Եդի* | *Եդաք* | *Եդայ* | *Եդաք* |
| *Եդիր* | *Եդիք* | *Եդար* | *Եդայք* |
| *Եդ* | *Եդին* | *Եդաւ* | *Եդան* |

### Ապառնի

| | | | |
|---|---|---|---|
| *Եդից* | *Դիցուք* | *Եդայց* | *Դիցուք* |
| *Դիցես* | *Դիջիք* | *Դիցիս* | *Դիջիք* |
| *Դիցէ* | *Դիցեն* | *Դիցի* | *Դիցին* |

### Հրամայական եղանակ

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| *Դի՛ր* | *Դի՛ք* | *Դնիջիր, դի-ջիր* | *Եդարուք, դնիջիք* |
| *Մի՛ դներ* | *Մի՛ դնէք* | *Մի՛ դնիր* | *Մի՛ դնիք* |

### Ստորադասական եղանակ

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| *Դնիցեմ* | *Դնիցեմք* | *Դնիցիմ* | *Դնիցիմք* |
| *Դնիցես* | *Դնիցէք* | *Դնիցիս* | *Դնիցիք* |
| *Դնիցէ* | *Դնիցեն* | *Դնիցի* | *Դնիցին* |

### Աներեւոյթ *կամ* Անորոշ դերբայ

*Դնել* — *Դնել (իլ)*

### Անցեալ դերբայ

*Եդեալ* — *Եդեալ*

### Ապառնի դերբայ

*Դնելոց* — *Դնելի*

**Հարցարան.** — Անկանոն բայ որու կ'ըսուի. — Որոնք են Ա. լծորդութեան անկանոն բայերն. — Ի՞նչպէս կը խոնարհուին *առնեմ, ասեմ, գիտեմ, դնեմ* բայերն իրենց կրաւորականներով.

**Հրահանգ 90.** — Որոշել շեղագիր բայերուն ժամանակներն ու եղանակներն. — *Ի սկզբանէ արար Աստուած զերկինս եւ զերկիր. — Որպէս զի մեծ են գործք քո, Տէ՛ր. զամենայն ինչ իմաստութեամբ արարեր. — Եդ առաջի քո հուր եւ ջուր, ուր եւ կամիս՝ ձգեա զձեռն քո. — Մի՛ ասիցես զի ի Տեառնէ թաքեայց. — Յամենայն տեղիս աչք Տեառն գիտեն զբարիս եւ զչարս. — Յ'Աստուած յուսացայ եւ ոչ երկեայց, զի՞ արասցէ ինձ մարդ. — Որ ոք գիտիցէ զբարին եւ ոչ առնիցէ՝ մեղք են նմա. — Ըստ կամաց քոյ արա զինչ եւ կամիս. — Պլինիոս ասէ. Որչափ առաւել բարեգործես զբարեկամս, այնչափ առաւել զօգուտն քո առնես. քանզի առ քեզ դարձեալ փոխադրին որք ի նոցանէ քաջամտութիւնքն են. — Ծառայք անպիտանք եմք, զոր ինչ պարտն էր առնել՝ արարաք:*

**Հրահանգ 91.** — Վերածեցէք ի գրաբար. — *Բարի ըրէք ձեր ատելիներուն. — Երկու տղայք իրարու հետ դաշինք դրին եւ խաղաղութիւն ըրին. — Քեզի ի՞նչ ըսաւ. — Ծառայիս կ'ըսեմ. այս ըրէ՛ եւ կ'ընէ. — Դուն գիտես ամէն բան. — Աստուած Ադամը դրախտին մէջ (ի դրախտի) դրաւ. — Ինչո՞ւ անոր չարիք կ'ընես. — Նամակը պահարանին մէջ դրաւ. — Շուտով ըրէ՛ եւ գնա՛ (երթ). — Ի՞նչ ըրաւ քեզ այն մարդը. — Կ'ըսեն թէ նա բարեկամ է. — Այն ծառայն՝ որ իր տիրոջ կամքը գիտէ եւ չըներ, ծեծ պիտի ուտէ (արբցէ գան). — Ըսաւ թէ լաւ է մեռնիլ քան թէ վատանուն ըլլալ. — Քոյրս ինձ ըսաւ. ըրէ՛ այդ բանը եւ ես ըրի. — Իր ձեռքերը իր*

*կռնակին վրայ դրին (ի վերայ ողին իւրոյ)․ — Քու խօսքիդ համեմատ (ըստ բանի քում) ըրի․ — Անոնց երդում ըրի (երդուայ), որ մէկու մը չպիտի ըսեմ ինչ որ ինծի ըրին անոնք։*

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ**

---

## 43. ԿԻՆ ՀԵՏԱՔՐՔԻՐ

Կռիւ ի տան դրացւոյ ի լուր Եսովպայ
Հանապազօր դըրդեալ ընդ այր և ընդ կին,
Կընոջ ծերոյն մարմաջէր սիրտ հետազօտ
*Գիշեր* վասն էր վիճաբանեալ կռուէին.
Իսկ ծերունին խրատէր՝ ի վէճ առնլ և կընոջ մի խառնիլ.
Ցերեկոյի միում չեւ առնլ ի տուն իւր դարձ արարեալ,
Գրնայ կռուոյ նոցին անծոյժ կինն ի զնին.
Մինչ յարձակէր զայրագին այրն ի կին իւր ցուպ ի ձեռին.
Ցայնժամ զայրոյթ այլ ընդ այլոյ ըզկին դրացւոյն կարծեալ զիւր,
Առնէ ըզնա սաստկահարուած գանածեծ,
Մինչեւ հազիւ կարել նըմա *առնել* անդրէն դարձ ի տուն.
Անդ ի վերայ հասեալ ծերոյն և լըւեալ
Որ ինչ կընոջ իւրոյ կըրեալ զըստունգանացն էր պատիժ,
Ըզնոյն յաւել նըմա ի խրատ վերըստին.
Կին դու ի կռիւ առն և կընոջ ուսիր մի եւըս խառնիլ.

(*Խոնարհեցէք շեղագիր բայերը։*)

*Կռիւ դրդիլ*, կռիւ ըլլալ.
*Մարմաջել*, եռալ.
*Անժոյժ*, անհամբեր.
*Այլ ընդ այլոյ*, սփոթ.
*Գանածեծ*, ծեծ կերած.
*Ստունգանք*, անհնազանդութիւն։

| Ներգործական | | ԸՄՊԵՄ | Կրաւորական |
|---|---|---|---|

**[redacted]կան եղանակ, ներկայ**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| Ըմպեմ | Ըմպեմք | Ըմպիմ | Ըմպիմք |

**Անցեալ Անկատար**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| Ըմպէի | Ըմպէաք | Ըմպէի | Ըմպէաք |

**Անցեալ Կատարեալ**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| Արբի | Արբաք | Արբայ | Արբաք |
| Արբեր | Արբէք | Արբար | Արբայք |
| Արբ, էարբ | Արբին | Արբաւ | Արբան |

**Ապառնի**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| Արբից | Արբցուք | Արբայց | Արբցուք |
| Արբցես | Արբջիք | Արբցիս | Արբջիք |
| Արբցէ | Արբցեն | Արբցի | Արբցին |

**Հրամայական եղանակ**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| Արբ | Արբէք | Արբիր | Արբերուք |
| Մի՛ ըմպեր | Մի՛ ըմպէք | Մի՛ ըմպիր | Մի՛ ըմպիք |

**Ստորադասական եղանակ**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| Ըմպիցեմ | Ըմպիցեմք | Ըմպիցիմ | Ըմպիցիմք |
| Ըմպիցես | Ըմպիցէք | Ըմպիցիս | Ըմպիցիք |
| Ըմպիցէ | Ըմպիցեն | Ըմպիցի | Ըմպիցին |

**Աներեւոյթ կամ Անորոշ դերբայ**

| | |
|---|---|
| *Ըմպել* | *Ըմպել* |

**Անցեալ դերբայ**

| | |
|---|---|
| *Արբեալ* | *Արբեալ* |

**Ապառնի դերբայ**

| | |
|---|---|
| *Ըմպելոց* | *Ըմպելի* |

---

*Ներգործական* *ԼՍԵԼ* *Կրաւորական*

**Սահմանական եղանակ. Ներկայ**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| *Լսեմ* | *Լսեմք* | *Լսիմ* | *Լսիմք* |

**Անցեալ Անկատար**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| *Լսէի* | *Լսէաք* | *Լսէի* | *Լսէաք* |

**Անցեալ Կատարեալ**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| *Լուայ* | *Լուաք* | *Լու եղէ կամ լսելի եղէ, եւլն,* | |
| *Լուար* | *Լուայք* | | |
| *Լուաւ* | *Լուան* | | |

**Ապառնի**

| Եզ. | Յգ. | Եզ. | Յգ. |
|---|---|---|---|
| *Լուայց* | *Լուիցուք* | *Լու եղէց* | *Լու եղիցուք* |
| *Լուիցես* | *Լուիջիք* | *Լու եղիցիս* | *Լու եղիջիք* |
| *Լուիցէ* | *Լուիցեն* | *Լու եղիցի* | *Լու եղիցին* |

### Հրամայական եղանակ

| Եզ. | Յզ. | Եզ. |
|---|---|---|
| *Լո՛ւր* | *Լուարուք* | *Լու լեր, լինիր, եւայլն* |
| *Մի՛ լսեր* | *Մի՛ լսէք* | |

### Ստորադասական եղանակ

| Եզ. | Յզ. | Եզ. | Յզ. |
|---|---|---|---|
| *Լսիցեմ* | *Լսիցեմք* | *Լսիցիմ* | *Լսիցիմք* |
| *Լսիցես* | *Լսիցէք* | *Լսիցիս* | *Լսիցիք* |
| *Լսիցէ* | *Լսիցեն* | *Լսիցի* | *Լսիցին* |

### Աներեւոյթ *կամ* Անորոշ դերբայ

*Լսել* *Լու կամ լսելի լինել*

### Անցեալ դերբայ

*Լուեալ* *Լուեալ*

### Ապառնի դերբայ

*Լսելոց* *Լսելի*

---

## ԿԱՐԵՄ, ԾԱՆԱՉԵՄ

*Ներգործական* *Կրաւորական*

### Սահմանական եղանակ. Ներկայ

Եզակի

*Կարեմ* *Ծանաչեմ* *Ծանաչիմ*

Յոգնակի

*Կարեմք* *Ծանաչեմք* *Ծանաչիմք*

### Անցեալ Անկատար

Եզակի

| | | |
|---|---|---|
| կարէի | ճանաչէի | ճանաչէի |

Յոգնակի

| | | |
|---|---|---|
| կարէաք | ճանաչէաք | ճանաչէաք |

### Անցեալ Կատարեալ

Եզակի

| | | |
|---|---|---|
| կարացի | ծանեայ | ծանուցայ |
| կարացեր | ծանեար | ծանուցար |
| կարաց | ծանեաւ | ծանուցաւ |

Յոգնակի

| | | |
|---|---|---|
| կարացաք | ծանեաք | ծանուցաք |
| կարացէք | ծանեայք | ծանուցայք |
| կարացին | ծանեան | ծանուցան |

### Ապառնի

Եզակի

| | | |
|---|---|---|
| կարացից | ծանեայց | ծանուցայց |
| կարասցես | ծանիցես | ծանուսցիս |
| կարասցէ | ծանիցէ | ծանուսցի |

Յոգնակի

| | | |
|---|---|---|
| կարասցուք | ծանիցուք | ծանուսցուք |
| կարասջիք | ծանիջիք | ծանուսջիք |
| կարասցեն | ծանիցեն | ծանուսցին |

### Հրամայական եղանակ

Եզակի

| | | |
|---|---|---|
| (Չունի) | ծանիր | ծանուցիր |
| | Մի՛ ճանաչեր | Մի՛ ճանաչիր |

Յոգնակի

| | |
|---|---|
| Ծանիրուք | Ծանուցարուք |
| Մի՛ ճանաչէք | Մի՛ ճանաչիք |

**Ստորադասական եղանակ**

Եզակի

| | | |
|---|---|---|
| Կարիցեմ | Ճանաչիցեմ | Ճանաչիցիմ |

Յոգնակի

| | | |
|---|---|---|
| Կարիցեմք | Ճանաչիցեմք | Ճանաչիցիմք |

**Աներեւոյթ կամ Անորոշ դերբայ**

| | | |
|---|---|---|
| Կարել | Ճանաչել | Ճանաչիլ |

**Անցեալ դերբայ**

| | | |
|---|---|---|
| Կարացեալ | Ծանուցեալ | Ծանուցեալ |

**Ապառնի դերբայ**

| | | |
|---|---|---|
| (Չունի) | Ճանաչելոց | Ճանաչելի |

**Հարցարան**. — Ի՞նչպէս կը խոնարհուին *ըմպել*, *չուել*, *ճանաչել* իրենց կրաւորականներով. — Ի՞նչպէս կը խոնարհուի *կարել*.

**Հրահանգ 92**. — Որոշեցէք սեւագիր բայերու ժամանակներն ու եղանակները. — *Յորժամ աղօթես*, ծանիր *թէ ընդ ո՛ւմ խօսիս կամ զի՛նչ խնդրես, եւ զխորհուրդդ ի քեզ հաւաքեա. — Գինի նոր՝ բարեկամ նոր. եթէ հնասցի, ուրախութեամբ* արբջիր. — Զի ծանեան *հեթանոսք զԱստուած եւ ոչ իբրեւ զԱստուած փառաւորեցին. — Լո՛ւր, որդեա՛կ, խրատու հօր քոյ. — Որ ձեզ լսէ՝ ինձ լսէ եւ որ զձեզ անարգէ՝ զիս անարգէ. — Ադամ լուեալ զձայն Աստուծոյ՝ երկեաւ. — Յովսէփ* ծանեաւ *զեղբարս իւր, բայց նոքա ոչ* ծանեան *զնա*։

**Հրահանգ 98.** — **Գրաբարի վերածեցէք.** — *Ով որ լսելու ականջ ունի, թող լսէ· — Սոկրատ ըսաւ· զքեզ ճանչցիր· — Երբոր լսեցին, շատ բարկացան· — Թող չի խմէ գինի եւ օղի· — Սոկրատ խմեց այն թաժակն· — Ո՛վ մարդ, ճանչցիր որ հող ես եւ մոխիր· — Ես անոնցմէ կը ճանչցուիմ, բայց ես զանոնք չեմ ճանչնար· — Լսեցի՞ր, տէ՛ր, այն խօսքերը· — Ես չպիտի կրնամ կատարել զայդ· — Նա՝ որ չափազանց գինի կը խմէ՝ կը գինովնայ (արբենալ)· — Ճանչցայ թէ անոնք քու ծնողքդ էին· — Լսեցէք այս ամէնը եւ ճանչցէք թէ մեծ է Աստուծոյ գթութիւնը։*

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

## 44. ԿԱՐԿԻՆՈՍ

Բայց դարձեալ զգուշացուցանեմ զքեզ փախչել ի բարոյից տկար զեռնոյ միոջ՝ որ շրջի ի ծովու, թէ որչափ խորամանկ է և նենգաւոր, Կարկինոս, որ թարգմանի խեցգետին, ցանկայ ուտել զմիս զեռնոյ միոջ, որ անուանեալ կոչի ոստրէոս, և քանզի դժուարորս է ոստրէոսն, զի իբրեւ խեցեղէն պատեանս ունի շուրջ զիւրեաւ, և իբրեւ ընդ ամրածածուկ պարսպով զգուշացեալ պահի փափուկ մարմինն, և մորթն սեպ և ողորկ խեցանման է, և այսպէս իմն կոչեն զեռունն զայն խեցեմորթ։ Եւ քանզի կերպարանս պատենից գաղտակրի ունի ի միջնոդունսն, զի այնպէս կազմեալ է զեռունն զայն արարիչն, և ոտք խեցգետնոյն ոչ կարեն զամս գտանել յուղորկ և ի սեպ պատեանս զեռնոյն, ժամապահ դարանակալ լինի, միտ դնէ՝ եթէ երբ ելցէ ոստրէոսն ի խորոցն երթալ յեզրն՝ որ անքոյթ իցէ ի հողմոյ։ Եւ իբրեւ երթայ հասանէ յանքոյթ տեղին, սկսանի բանալ զպատեանսն ընդդէմ արեւուն՝ զի ջեռցի· յայնժամ երթայ վաղվաղակի խեցգետինն ընկենու քար ընդ անջրպետսն պատենիցն, զի մի կարասցէ անդրէն զիւրեաւ ամփոփել զպատեանսն, և լինիցի նմա դիւրաւ ըմբռնել զոստրէոսն և ուտել։ Եւ այսպիսի հնարիւք գտանի տկար ոյժն խեցգետնոյ լնուլ զտեղի մեծ ուժոյն· և ընդ այս է զարմանք, զի այսպիսի խորամանկութիւն յանասունսն յանմռունչս գտանիցի։

*Կարկինոս*, խեցգետին (շաշանող).
*Գաղտակուր*, սատափի եւ մարգարիտի մայր.
*Գամ*, ոտք դնելու տեղ.
*Միջնողունք*, կռնակին մէջտեղը։

---

| | | *Ներգ.* | *Կրաւ.* |
|---|---|---|---|
| | **Սահմանական եղանակ, ներկայ** | | |
| *Մեղանչեմ* | *Յառնեմ* | *Ուտեմ* | *Ուտիմ* |
| | **Անցեալ անկատար** | | |
| *Մեղանչէի* | *Յառնէի* | *Ուտէի* | *Ուտէի* |
| | **Անցեալ կատարեալ** | | |
| | Եզակի | | |
| *Մեղայ* | *Յարեայ* | *Կերայ, րի* | *Կեր եղէ* |
| *Մեղար* | *Յարեար* | *Կերար* | *Կեր եղեր* |
| *Մեղաւ* | *Յարեաւ* | *Կերաւ* | *Կեր եղեւ* |
| | Յոգնակի | | |
| *Մեղաք* | *Յարեաք* | *Կերաք* | *Կեր եղաք* |
| *Մեղայք* | *Յարեայք* | *Կերայք* | *Կեր եղէք* |
| *Մեղան* | *Յարեան* | *Կերան* | *Կեր եղեն* |
| | **Ապառնի** | | |
| | Եզակի | | |
| *Մեղայց* | *Յարեայց* | *Կերայց* | *Կեր եղէց* |
| *Մեղիցես* | *Յարիցես* | *Կերիցես* | *Կեր եղիցիս* |
| *Մեղիցէ* | *Յարիցէ* | *Կերիցէ* | *Կեր եղիցի* |

**Յոգնակի**

| | | | |
|---|---|---|---|
| *Մեղիցուք* | *Յարիցուք* | *Կերիցուք* | *Կեր եղիցուք* |
| *Մեղիջիք* | *Յարիջիք* | *Կերիջիք* | *Կեր եղիջիք* |
| *Մեղիցեն* | *Յարիցեն* | *Կերիցեն* | *Կեր եղիցեն* |

**Հրամայական եղանակ**

**Եզակի**

| | | | |
|---|---|---|---|
| *Մեղի՛ր* | *Արի՛* | *Կե՛ր* | *Կեր լեր* |
| *Մի՛ մեղանչէր* | *Մի՛ յառնէր* | *Մի՛ ուտեր* | *Մի՛ լինիր կեր* |

**Յոգնակի**

| | | | |
|---|---|---|---|
| *Մեղարուք* | *Արի՛ք* | *Կերա՛յք* | *Կեր լերուք* |
| *Մի՛ մեղանչէք* | *Մի՛ յառնէք* | *Մի՛ ուտէք* | *Մի՛ լինիք կեր* |

**Ստորադասական եղանակ**

**Եզակի**

| | | | |
|---|---|---|---|
| *Մեղանչիցեմ* | *Յառնիցեմ* | *Ուտիցեմ* | *Ուտիցիմ* |

**Յոգնակի**

| | | | |
|---|---|---|---|
| *Մեղանչիցեմք* | *Յառնիցեմք* | *Ուտիցեմք* | *Ուտիցիմք* |

**Աներեւոյթ** *կամ* **Անորոշ դերբայ**

| | | | |
|---|---|---|---|
| *Մեղանչել* | *Յառնել* | *Ուտել* | *Ուտել* |

**Անցեալ դերբայ**

| | | | |
|---|---|---|---|
| *Մեղուցեալ* | *Յարուցեալ* | *Կերեալ* | *Կերեալ* |

**Ապառնի դերբայ**

| | | | |
|---|---|---|---|
| *Մեղանչելոց* | *Յառնելոց* | *Ուտելոց* | *Ուտելի* |

## ՅԱՆՑԱՆԵՄ

**Սահմանական եղանակ, ներկայ**

| | | | |
|---|---|---|---|
| **Եզ.** | *Յանցանեմ* | *Յանցանես* | *Յանցանէ* |
| **Յոգ.** | *Յանցանեմք* | *Յանցանէք* | *Յանցանեն* |

**Անցեալ անկատար**

| | | | |
|---|---|---|---|
| **Եզ.** | *Յանցանէի* | *Յանցանէիր* | *Յանցանէր* |
| **Յոգ.** | *Յանցանէաք* | *Յանցանէիք* | *Յանցանէին* |

**Անցեալ կատարեալ**

| | | | |
|---|---|---|---|
| **Եզ.** | *Յանցեայ* | *Յանցեար* | *Յանցեաւ* |
| **Յոգ.** | *Յանցեաք* | *Յանցեայք* | *Յանցեան* |

**Ապառնի**

| | | | |
|---|---|---|---|
| **Եզ.** | *Յանցեայց* | *Յանցիցես* | *Յանցիցէ* |
| **Յոգ.** | *Յանցիցուք* | *Յանցիջիք* | *Յանցիցեն* |

**Հրամայական եղանակ**

*Յանցիր* *Մի՛ յանցաներ* *Յանյերուք* *Մի՛ յանցանէք*

**Ստորադասական եղանակ**

*Յանցանիցեմ* *Յանցանիցես* *եւայլն*

**Աներեւոյթ կամ Անորոշ դերբայ**

*Յանցանել*

**Անցեալ դերբայ**

*Յանցուցեալ*

**Ապառնի դերբայ**

*Յանցանելոց*

**Հարցարան**. — Ի՞նչպէս կը խոնարհուին *մեղանչեմ*, *յառնեմ*, *ուսեմ*, *ուսիմ*, *յանցանեմ* բայերն.

**Հրահանգ 94**. — **Ուղղեցէք սեղագիր բայերու ժամանակներն ու եղանակներն**. — *Արի՛ ա՛ռ զմահճիճս քո եւ ե՛րթ ի տուն քո. — Եւ յարուցեալ գնաց ի տուն իւր. — Կեր ուրախութեամբ զհաց քո եւ արբ սրտիւ զուարճացելով զգինի քո, զի հաճեցաւ Աստուած ընդ գործս քո. — Բրտամբք երեսաց քոց կերիցես զհաց քո. — Արիստոտէլ ասէ. Ի կենաց աշխարհիս, որպէս ի սեղանոյ պարտ է յառնել ոչ քաղցեալ եւ ոչ յագեալ, ոչ ծարաւ եւ ոչ արբեալ. — Խաչեցաւ, մեռաւ, թաղեցաւ, յարեաւ յաւուր երրորդի. — Ծառայ՝ որ ոչ գիտէ զկամս տեառն իւրոյ եւ արժանի գանի ինչ գործ գործէ, ըմպել ըմպէ գան, այլ սակաւագոյն. — Յարուցեալ ընդ այգն ինքն ածէ աւել տանն եւ զմահճիճն յարդարէ։*

**Հրահանգ 95**. — **Գրաբարի վերածեցէք**. — *Իսրայէլ մեղանչեց. — Ադամ ծառին պտուղէն կերաւ. — Այդ բաժակը խմէ՛ եւ ուրախ եղի՛ր. — Ե՛լ, ա՛ռ անկողինդ եւ գնա՛. — Երբ լսեցին, շատ բարկացան. — Շուտով ելաւ եւ անոր առջեւ գնաց. — Այլ եւս մեղք մի՛ գործեր. — Վարժապետը կ'ըսէ. յանցանք մի՛ գործեր. — Կե՛ր, խմէ՛ եւ ուրախացի՛ր. — Յիսուս ըսաւ. Առէ՛ք, կերէ՛ք, այս է իմ մարմինս. — Անասնոյ միսը չեն ուտեր եւ եղբայրը անյագաբար կուտեն. — Եւ նա ելնելով առաւ մանուկն եւ մայրը եւ գնաց յԵգիպտոս. — Ե՛լ, տե՛ս Երուսաղէմի աղէտքը. — Մոխիրը իբրեւ հաց կերայ եւ արցունքով իմ անկողինս թրջեցի. — Եթէ մեղք գործեմ, դուն ես որ ինծի պիտի ներես. — Խոզի միս պիտի ուտե՞ս. — Ելէք եւ փախչինք.*

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

## 45. ԾԵՐՈՒՆԻՆ ՍԻՄԷՈՎՆ

Էր այր մի յԵրուսաղէմ, որոյ անուն էր Սիմէովն, և էր այրն այն արդար և երկիւղած, և ակն ունէր մխիթարութեանն Իսրայէլի, և հոգի սուրբ էր ի նմա։ Եւ էր նորա հրաման առեալ ի հոգւոյն սրբոյ մի՛ տեսանել զմահ, մինչեւ տեսցէ զօծեալն Տեառն, և եկն հոգւովն ի տաճարն։ Եւ իբրեւ ածին ծնօղքն զմանուկն Յիսուս, առնել նոցա ըստ սովորութեան օրինացն ի վերայ նորա, և նա՝ ա՛ռ ընկալա՛ւ զնա ի գիրկս իւր և օրհնեաց զԱստուած և ասէ։ Արդ՝ արձակես զծառայս քո, տէր, ըստ բանի քում ի խաղաղութիւն, զի տեսին աչք իմ զփրկութիւն քո, զոր պատրաստեցեր առաջի ամենայն ժողովրդոց։

---

### *Երկրորդ Լծորդութեան Անկանոն բայեր*

*Եղանիմ, լինիմ, ըլլալ.—Ունիմ, ունենալ, բռնել.—Ընդունիմ.—Տանիմ.—Մարթիմ, կարող ըլլալ.—Երկնչիմ, վախնալ։*

**Սահմանական եղանակ, ներկայ**

| | | | |
|---|---|---|---|
| *Եղանիմ* | *Լինիմ* | *Ունիմ* | *Ընդունիմ* |

**Անցեալ Անկատար**

| | | | |
|---|---|---|---|
| *Եղանէի* | *Լինէի* | *Ունէի* | *Ընդունէի* |

**Անցեալ Կատարեալ**

| | | | |
|---|---|---|---|
| *Եղէ* | *Եղէ* | *Կալայ* | *Ընկալայ* |
| *Եղեր* | *Եղեր* | *Կալար* | *Ընկալար* |
| *Եղեւ* | *Եղեւ* | *Կալաւ* | *Ընկալաւ* |
| *Եղաք* | *Եղաք* | *Կալաք* | *Ընկալաք* |
| *Եղէք* | *Եղէք* | *Կալայք* | *Ընկալայք* |
| *Եղեն* | *Եղեն* | *Կալան* | *Ընկալան* |

### Ապառնի

| | | | |
|---|---|---|---|
| Եղէց | Լիցիմ | Կալայց | Ընկալայց |
| Եղիցիս | Լիցիս | Կալցիս | Ընկալցիս |
| Եղիցի | Լիցի | Կալցի | Ընկալցի |
| Եղիցուք | Լիցուք | Կալցուք | Ընկալցուք |
| Եղիջիք | Լիջիք | Կալջիք | Ընկալջիք |
| Եղիցին | Լիցին | Կալցին | Ընկալցին |

### Հրամայական եղանակ

| | | | |
|---|---|---|---|
| Եղիջի՛ր | Լե՛ր, լիջի՛ր, լինիջի՛ր | Կա՛լ, կա՛, կա՛լ-ջի՛ր | Ընկա՛լ, ընկալջիր |
| Մի՛ եղանիր | Մի՛ լինիր | Մի՛ ունիր | Մի՛ ընդունիր |
| Եղերո՛ւք, եղիջի՛ք | Լերո՛ւք, լիջի՛ք | Կալարո՛ւք, կալջի՛ք | Ընկալարո՛ւք, ընկալջի՛ք |
| Մի՛ եղանիք | Մի՛ լինիք | Մի՛ ունիք | Մի՛ ընդունիք |

### Ստորադասական եղանակ

| | | | |
|---|---|---|---|
| Եղանիցիմ | Լինիցիմ | Ունիցիմ | Ընդունիցիմ |

### Աներեւոյթ կամ Անորոշ դերբայ

| | | | |
|---|---|---|---|
| Եղանել | Լինել | Ունել | Ընդունել |

### Անցեալ դերբայ

| | | | |
|---|---|---|---|
| Եղեալ | Լեալ | Կալեալ | Ընկալեալ |

### Ապառնի դերբայ

| | | | |
|---|---|---|---|
| Եղանելոց | Լինելոց | Ունելոց | Ընդունելոց ։ |

*Ունիմ եւ ընդունիմ բայերու կրաւորականները շատ մը բայերու պէս էական բայի օժանդակութեամբ կը ձեւանան, որպէս յաջորդ տանիմ բայն ալ, որուն կրաւորական կատարեալը կ՚ըլլայ տարեալ եղէ, եղեր, եւլն. ապառնին, տարեալ եղէց, տարեալ եղիցիս, եւլն ։*

### Սահմանական եղանակ, Ներկայ

| | | |
|---|---|---|
| Տանիմ | Մարթիմ | Երկնչիմ |

### Անցեալ Անկատար

| | | |
|---|---|---|
| Տանէի | Մարթէի | Երկնչէի |

### Անցեալ Կատարեալ

| | | |
|---|---|---|
| Տարայ | Մարթացայ | Երկեայ |
| Տարար | Մարթացար | Երկեար |
| Տարաւ | Մարթացաւ | Երկեաւ |
| Տարաք | Մարթացաք | Երկեաք |
| Տարայք | Մարթացայք | Երկեայք |
| Տարան | Մարթացան | Երկեան |

### Ապառնի

| | | |
|---|---|---|
| Տարայց | Մարթացայց | Երկեայց |
| Տարցիս | Մարթասցիս | Երկիցես |
| Տարցի | Մարթասցի | Երկիցէ |
| Տարցուք | Մարթասցուք | Երկիցուք |
| Տարջիք | Մարթասջիք | Երկիջիք |
| Տարցին | Մարթասցին | Երկիցեն |

### Հրամայական եղանակ

| | | |
|---|---|---|
| Տա՛ր, տարջի՛ր | ( Զ.–Նէ ) | Երկի՛ր, երկիջի՛ր |
| Մի՛ տանիր | | Մի՛ երկնչիր |
| Տարա՛յք, տարջի՛ք | | Երկերո՛ւք, երկիջի՛ք |
| Մի՛ տանիք | | Մի՛ երկնչիք |

### Ստորադասական եղանակ

| | | |
|---|---|---|
| Տանիցիմ | Մարթիցիմ, մարթայցեմ | Երկնչիցիմ |

*Փախայ եւ չկրցան զիս բռնել. — Անզգամէն փախէք. Այդ ճաշը Բաբելոն տար. — Դուք իմ աշակերտներս եղէք. — Զինուորները գողը բռնեցին. — Զայխտի կրնան գրել. — Զանի քաղաք տարին. — Դուն եղիր անոր աշակերտ. մենք Մովսէսի աշակերտ ենք. — Աստուծմէ վախցի՛ր. — Թռչունները թռան. — Որդիս կորսուեցաւ. — Զիս անոր տարէք. — Ընդունեց զիս. — Թող այնպէս ըլլայ. — Ես զանի պիտի բռնեմ. — Ընդունէ՛ այս տղան. — Կը ջանայ պահուըտիլ անկէ. — Եւ ելնելով կ'երթայ կը կորսուի. — Եթէ մէկէն ստակ առնու, իրեն հետ (ընդ իւր) վկաներ կը տանի. — Կին մը մօտենալով կը հարցնէ. — Դրօշը քեզ տանի (ապռ.)՝ անէծքի ձեւ մ'է։*

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

## 46. ԱՐԾԱԹՍԻՐՈՒԹԻՒՆ

Սակայն արմատ ամենայն չարեաց արծաթսիրութիւնն է, ըստ առաքելոյն, և ագահութիւն, վասն զի չիք և ինչ չարիք որ ոչ ի սոցանէ ծնանին. ատելութիւն մարդկան, խռովութիւն և պատերազմ առ ազգակիցս, գողութիւն և սպանութիւնք և այլ եւս անթիւ վնասք՝ զորս ո՞վ կարէ թուել։ Զի եթէ զտէրն տիեզերաց և զարարիչն արարածոց ի վաճառ եած այս ախտ և ետ սպանանել, զինչ այլ ինչ մնայ ի չարեաց զոր ոչ կարիցէ գործել։ Եւ եթէ զառաքեալն՝ զՔրիստոսի ընտրութեանն արժանաւոր՝ այնպէս վաղվաղակի գերի առեալ տարաւ, և զթիւն պակասեցոյց, և յաճաւորսն զնա յանդգնեցոյց, ապա ո՞վ կարէ կալ առաջի բուռն զօրութեան նորա։

*(Բերականօրէն վերլուծել։)*

## Գ. Լծորդութեան Անկանոն բայեր

### Սահմանական եղանակ, Ներկայ

| | | | |
|---|---|---|---|
| Գամ | Երթամ | Կեամ | Տամ |

### Անցեալ Անկատար

| | | | |
|---|---|---|---|
| Գայի | Երթայի | Կէի | Տայի |
| Գայիր | Երթայիր | Կէիր | Տայիր |
| Գայր | Երթայր | Կեայր | Տայր |
| Գայաք | Երթայաք | Կէաք | Տայաք |
| Գայիք | Երթայիք | Կէիք | Տայիք |
| Գային | Երթային | Կէին | Տային |

### Անցեալ Կատարեալ

| | | | |
|---|---|---|---|
| Եկի | Չոգայ (*) | Կեցի | Ետու |
| Եկիր | Չոգար | Կեցեր | Ետուր |
| Եկն | Չոգաւ | Կեաց, եկեաց | Ետ |
| Եկաք | Չոգաք | Կեցաք | Տուաք |
| Եկիք | Չոգայք | Կեցէք | Ետուք |
| Եկին | Չոգան | Կեցին | Ետուն |

### Ապառնի

| | | | |
|---|---|---|---|
| Եկից | Երթայց | Կեցից | Տաց |
| Եկեսցես | Երթիցես | Կեցցես | Տացես |
| Եկեսցէ | Երթիցէ | Կեցցէ | Տացէ |
| Եկեսցուք | Երթիցուք | Կեցցուք | Տացուք |
| Եկեսջիք | Երթիջիք | Կեցջիք | Տաջիք |
| Եկեսցեն | Երթիցեն | Կեցցեն | Տացեն |

### Հրամայական եղանակ

| | | | |
|---|---|---|---|
| Ե՛կ, եկեսջի՛ր | Ե՛րթ. երթիջի՛ր | Կեա՛ց, կեց-ջի՛ր | Տո՛ւր, տա-ջի՛ր |

(*) Կը գրուի նաեւ չոխայ, չոխար, եւայլն։

| | | | |
|---|---|---|---|
| *Մի՛ գար* | *Մի՛ երթար* | *Մի՛ կենար* | *Մի՛ տար* |
| *Եկա՛յք, ե-կեսջի՛ք* | *Երթա՛յք, եր-թիջի՛ք* | *Կեցէ՛ք, կեց-ջի՛ք* | *Տո՛ւք, տու-ջի՛ք* |
| *Մի՛ գայք* | *Մի՛ երթայք* | *Մի՛ կենայք* | *Մի՛ տայք* |

**Ստորադասական եղանակ**

| | | | |
|---|---|---|---|
| *Գայցեմ* | *Երթայցեմ* | *Կայցեմ* | *Տայցեմ* |

**Աներեւոյթ *կամ* անորոշ դերբայ**

| | | | |
|---|---|---|---|
| *Գալ* | *Երթալ* | *Կեալ* | *Տալ* |

**Անցեալ դերբայ**

| | | | |
|---|---|---|---|
| *Եկեալ* | *Երթեալ* | *Կեցեալ* | *Տուեալ* |

**Ապառնի դերբայ**

| | | | |
|---|---|---|---|
| *Գալոց* | *Երթալոց* | *Կելոց* | *Տալոց* |

*Տալ բային կրաւորականը այսպէս կը խոնարհուի. Սհմկն. եղ. ներկ. Տուեալ լինիմ (տրուիմ). Անց. անկտ. Տուեալ լինէի. Կտր. Տուայ. Ապռ. Տուայց. Հրմ. եզնկ. Տուեալ լեր, լիջիր, եւլն. Ստրդսկն. եղ. Տայցիմ. Աներ. Տուեալ լինել. Անց. դեր. Տուեալ. Ապ. դեր. տալի։*

**Հարցարան.** — Ի՞նչպէս կը խոնարհուին Գ. լծորդութեան անկանոն բայերը. — Տալ բային կրաւորականը ինչպէս կը խոնարհուի.

**Հրահանգ 98.** — Որոշեցէք եղագիր բայերու ժամանակներն ու եղանակները. — *Տուք մեզ յիւղոյդ ձերմէ, զի ահա շիջանին լապտերքս մեր. — Վարդապետն եկեալ է եւ կոչէ զքեզ. — Մարիամ եւ Յովսէփ չոգան ի Նազարեթէ ի Բեթղեհէմ. — Եկայք առ իս ամենայն աշխատեալք եւ բեռնաւորք եւ ես հանգուցից զձեզ. — Որ համբերեսցէ իսպառ՝ նա կեցցէ. — Ոչ մեռայց, այլ կեցից եւ պատմեցից զգործս Տեառն. — Ամենայն եղեւ ի հողոյ եւ դառնայ ի հող. — Ցիսուս ետ իշխանութիւն առաքելոց հանելոյ զդեւս եւ բժշկելոյ զամենայն*

հիւանդութիւնս. — Զհետ նորա ելանէ գայ մինչեւ ի տուն նորա. — Զոր ինչ Աստուած քեզ շնորհ տայ, ի պէտս կարօտելոցն սպասաւորեա, զի շնորհքն աղբիւրասցին եւ դու փառաւորեսցիս. — Նման առ նմանն երթայ ։

**Հրահանգ 99.** — **Գրաբարի վերածեցէք.** — Պիտի երթամ եւ պիտի գտնեմ զանի. — Աղբի՛ս, դուն շատ բարի ես. — Տուէք եւ պիտի տրուի ձեզ. — Եկայ, բայց չտեսայ զքեզ. — Եկէք եւ ձեզի պիտի պատմեմ. — Սրբութիւնը շուներուն մի՛ տաք. — Գացի, առի զանի եւ տուն բերի. — Աղբէ՛, ո՛վ իմ՝ քաջ բարեկամս. — Գնա՛ եւ ինձ լուր (պտոյց) բե՛ր. — Ինծի ուտելիք տուէք (ուտել). — Պիտի ստամ, բայց ոչ հիմա. — Ամեն մարդ գնաց եւ ես մնացի. — Քու տնտեսութեանդ համարը տուր. — Պիտի ապրիմ ու չպիտի մեռնիմ. — Կուգայ ժամանակ եւ արդարութիւնը կը յայտնուի. — Ճշմարտութիւնը յաւիտեան պիտի ապրի. — Ազգը կուգայ եւ ազգը կ'երթայ եւ երկիրը յաւիտեան կայ. — Ի՞նչ, պիտի գանք ես եւ մայրդ եւ քեզի երկրպագութի՞ւն պիտի ընենք ։

**Դիտելիք.** — Տամ բայով աներեւոյթը կը գործածուի եւ այս կերպ գործածութեան մէջ տամ բային ընել տալ կամ թողլ տալ կը նշանակէ. զոր օր. Չետ ողի կլանել, չետ ոգի առնուլ, շունչ առնել չտուաւ ։

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ**

---

## 47. ՄԱՀ ՎԱՍԱԿԱՅ

Եւ իբրեւ այսպէս յամենայն կողմանց հարեալ վատթարացաւ, անկաւ յախտս դժնդակս անդէն ի կապանսն ։ Ջեռաւ փոր նորա, և

հարան և տրորեցան գոգք նորա, և քամեալ մզեցաւ թանձրամսութիւն նորա։ Ոռացին որդունք ընդ աչս նորա և ի վայր սորեցին ընդ ռնգունս նորա, խցան լսելիք նորա, և ծակոտեցան չարաչար շրթունք նորա, լուծան ջիլք բազկաց նորա, և յետկոյս կորացան կրկունք ոտից նորա։ Բղխեաց ի նմանէ հոտ մահու, և փախստական եղեն ի նմանէ ձեռնասուն ծառայք նորա։ Լեզուն միայն կայր կենդանի ի բերան նորա, և ոչ գտաւ խոստովանութիւն ի շրթունս նորա։ Ճաշակեաց զմահ հեղձամղձուկ, և էջ ի դժոխս անհնարին դառնութեամբ։ Ոտնհար եղեն նմա ամենայն սիրելիք նորա, և ոչ յագեցան սաստիկ հարուածովքն ամենայն թշնամիք նորա։

*(Քերականօրէն վերլուծել։)*

*Հարկանել*, վնասուիլ.
*Տրորել*, փտտիլ.
*Մզել*, քամուիլ.
*Սորել*, ջրի պէս վազել.
*Կրկունք, եւ կրունկ*, ոտքին ետեւի կողմը.
*Ոտնհար լինել*, արհամարհել։

---

## *Չորրորդ Լծորդութեան Անկանոն բայեր*

**Սահմանական եղանակ, ներկայ**

Եզակի

| | | |
|---|---|---|
| *Երդնում* | *Գոմ (ըլլամ, գոյութիւն ունենամ)* | *Այտնում (ուռչիմ)* |
| *Երդնուս* | *Գոս* | *Այտնուս* |
| *Երդնու* | *Գոյ* | *Այտնու* |

Յոգնակի

| | | |
|---|---|---|
| *Երդնումք* | *Գոմք* | *Այտնումք* |
| *Երդնուք* | *Գոյք* | *Այտնուք* |
| *Երդնուն* | *Գոն* | *Այտնուն* |

### Անցեալ Անկատար

Եզակի

| | | |
|---|---|---|
| Երդնուի | Գոյի | Այտնուի |
| Երդնուիր | Գոյիր | Այտնուիր |
| Երդնոյր | Գոյր | Այտնոյր |

Յոգնակի

| | | |
|---|---|---|
| Երդնուաք | Գոյաք | Այտնուաք |
| Երդնուիք | Գոյիք | Այտնուիք |
| Երդնուին | Գոյին | Այտնուին |

### Անցեալ կատարեալ

Եզակի

| | | |
|---|---|---|
| Երդուայ | ( Չունի ) | Այտեայ |
| Երդուար | | Այտեար |
| Երդուաւ | | Այտեաւ |

Յոգնակի

| | | |
|---|---|---|
| Երդուաք | | Այտեաք |
| Երդուայք | | Այտեայք |
| Երդուան | | Այտեան |

### Ապառնի

Եզակի

| | | |
|---|---|---|
| Երդուայց | | Այտեայց |
| Երդուիցես | | Այտիցես |
| Երդուիցէ | Գուցէ | Այտիցէ |

Յոգնակի

| | | |
|---|---|---|
| Երդուիցուք | | Այտիցուք |
| Երդուիջիք | | Այտիջիք |
| Երդուիցեն | Գուցեն | Այտիցեն |

**Հրամայական եղանակ**

Եզակի

| | | |
|---|---|---|
| *Երդուի՛ր, երդուիջի՛ր* | (Զուն՚է) | *Այտի՛ր, այտիջի՛ր* |
| *Մի՛ երդնուր* | | *Մի՛ այտնուր* |

Յոգնակի

| | | |
|---|---|---|
| *Երդուարո՛ւք, երդուիջի՛ք* | | *Այտերո՛ւք, այտիջի՛ք* |
| *Մի՛ երդնուք* | | *Մի՛ այտնուք* |

**Ստորադասական եղանակ**

| | | |
|---|---|---|
| *Երդնուցում* | (Զուն՚է) | *Այտնուցում* |

**Աներեւոյթ** *կամ* **Անորոշ դերբայ**

| | | |
|---|---|---|
| *Երդնուլ* | *Գոլ* | *Այտնուլ* |

**Անցեալ դերբայ**

| | |
|---|---|
| *Երդուեալ* | *Այտուցեալ* |

**Ապառնի դերբայ**

| | |
|---|---|
| *Երդնլոց* | *Այտնլոց* |

*Այսնումին պէս կը խոնարհուին զարթնում (արթըննալ), ոստնում (ցատկել), սարտնում (խրտչիլ), ցասնում (բարկանալ), քաղցնում (անօթենալ), ցածնում (ցածնալ, իջնել), պախնում (փախնալ)։*

*Ոչ գոյ, չիկայ ըսելու տեղ՝ չիք կը գործածուի։*

**Հարցարան.** — Ի՞նչպէս կը խոնարհուին Դ. լծորդութեան անկանոն բայերը. — Ո՞ր բայերը *այսնումին* պէս կը խոնարհուին. — *Ոչ գոյ* ըսելու տեղ ինչ բառ կը գործածուի։

**Հրահանգ 100.** — Որոշեցէք շեղագիր բայերուն ժամանակները ու եղանակները. — *Մի՛ երդնուցուս սուտ*.

### Ապառնի

| | | | |
|---|---|---|---|
| Եղէց | Լիցիմ | Կալայց | Ընկալայց |
| Եղիցիս | Լիցիս | Կալցիս | Ընկալցիս |
| Եղիցի | Լիցի | Կալցի | Ընկալցի |
| Եղիցուք | Լիցուք | Կալցուք | Ընկալցուք |
| Եղիջիք | Լիջիք | Կալջիք | Ընկալջիք |
| Եղիցին | Լիցին | Կալցին | Ընկալցին |

### Հրամայական եղանակ

| | | | |
|---|---|---|---|
| Եղիջի՛ր | Լե՛ր, լիջի՛ր, լինիջի՛ր | Կա՛լ, կա՛, կա՛լջի՛ր | Ընկա՛լ, ընկալջիր |
| Մի՛ եղանիր | Մի՛ լինիր | Մի՛ ունիր | Մի՛ ընդունիր |
| Եղերո՛ւք, եղիջի՛ք | Լերո՛ւք, լիջի՛ք | Կալարո՛ւք, կալջի՛ք | Ընկալարո՛ւք, ընկալջի՛ք |
| Մի՛ եղանիք | Մի՛ լինիք | Մի՛ ունիք | Մի՛ ընդունիք |

### Ստորադասական եղանակ

| | | | |
|---|---|---|---|
| Եղանիցիմ | Լինիցիմ | Ունիցիմ | Ընդունիցիմ |

### Աներեւոյթ կամ Անորոշ դերբայ

| | | | |
|---|---|---|---|
| Եղանել | Լինել | Ունել | Ընդունել |

### Անցեալ դերբայ

| | | | |
|---|---|---|---|
| Եղեալ | Լեալ | Կալեալ | Ընկալեալ |

### Ապառնի դերբայ

| | | | |
|---|---|---|---|
| Եղանելոց | Լինելոց | Ունելոց | Ընդունելոց : |

*Ունիմ եւ ընդունիմ բայերու կրաւորականները շատ մը բայերու պէս էական բայի օժանդակութեամբ կը ձեւանան, որպէս յաջորդ* տանիմ *բայն ալ, որուն կրաւորական կատարեալը կ՚ըլլայ տարեալ եղէ, եղեր, եւն. ապառնին, տարեալ եղէց, տարեալ եղիցիս, եւն.:*

### Սահմանական եղանակ, ներկայ

| | | |
|---|---|---|
| Տանիմ | Մարթիմ | Երկնչիմ |

### Անցեալ Անկատար

| | | |
|---|---|---|
| Տանէի | Մարթէի | Երկնչէի |

### Անցեալ Կատարեալ

| | | |
|---|---|---|
| Տարայ | Մարթացայ | Երկեայ |
| Տարար | Մարթացար | Երկեար |
| Տարաւ | Մարթացաւ | Երկեաւ |
| Տարաք | Մարթացաք | Երկեաք |
| Տարայք | Մարթացայք | Երկեայք |
| Տարան | Մարթացան | Երկեան |

### Ապառնի

| | | |
|---|---|---|
| Տարայց | Մարթացայց | Երկեայց |
| Տարցիս | Մարթասցիս | Երկիցես |
| Տարցի | Մարթասցի | Երկիցէ |
| Տարցուք | Մարթասցուք | Երկիցուք |
| Տարջիք | Մարթասջիք | Երկիջիք |
| Տարցին | Մարթասցին | Երկիցեն |

### Հրամայական եղանակ

| | | |
|---|---|---|
| Տա՛ր, տարջի՛ր | ( Չունի ) | Երկի՛ր, երկիջի՛ր |
| Մի՛ տանիր | | Մի՛ երկնչիր |
| Տարա՛յք, տարջի՛ք | | Երկերո՛ւք, երկիջի՛ք |
| Մի՛ տանիք | | Մի՛ երկնչիք |

### Ստորադասական եղանակ

| | | |
|---|---|---|
| Տանիցիմ | Մարթիցիմ, մար-թայցեմ | Երկնչիցիմ |

**Աներեւոյթ կամ անորոշ դերբայ**

| | | |
|---|---|---|
| *Տանել* | *Մարթել* | *Երկնչել* |

**Անցեալ դերբայ**

| | | |
|---|---|---|
| *Տարեալ* | *Մարթացեալ* | *Երկուցեալ* |

**Ապառնի դերբայ**

| | | |
|---|---|---|
| *Տանելոց* | *Մարթելոց* | *Երկնչելոց* |

*Երկնչիմին պէս կը խոնարհուին Թաքչիմ (պահուըտիլ), Թռչիմ, կառչիմ, կորնչիմ, հանգչիմ, փախչիմ, մատչիմ (մօտենալ), մարտնչիմ (կռուիլ) բայերն ։*

**Հարցարան**. — Ի՞նչպէս կը խոնարհուին Բ. լծորդութեան անկանոն բայերը. — Ո՞ր բայերը *երկնչիմ*ին պէս կը խոնարհուին ։

**Հրահանգ 96**. — Որոշեցէք շեղագիր բայերուն ժամանակներն ու եղանակները. — *Կալայ զնա եւ ոչ թողի. — Կենաց եւ մահու դու ունիս իշխանութիւն. — Ի քումէ ձեռանէ փախչել անհնարին է. — Յո՞ երթայց, ես ի հոգւոյ քումէ կամ յերեսաց քոց ես յո՞ փախեայց. — Յաստուծոյ երկիր եւ զպատուիրանս նորա պահեա. — Լուայ զձայն քո ի դրախտի աստ եւ երկեայ, քանզի մերկ էի եւ թաքեայ. — Ել ի քրոջէս եւ թռեաւ, սլացաւ նա ի թեւս հողմոց. — Իւրաքանչիւր ոք` որ զինչ առնէ զբարին, զնոյն ընդունիցի ի Տեառնէ. — Պսակ շնորհաց ընկալցի գլուխ քո. — Զամենայն գիշերս աշխատ եղաք եւ ոչինչ* **կալաք**. — *Եւ ոչ մեզ ծանուցանել* **մարթաց**. — *Նաեւ յայլուստ եւս* **մարթեմք** *իմանալ` թէ մարդոյ բնութիւն բարեաց ցանկացող է եւ ոչ չարեաց ։*

**Հրահանգ 97**. — Գրաբարի վերածեցէք. — *Տղայք կը վախնան. — Թագաւորէն պարգեւ ընդունեցի. —*

*Փախայ եւ չկրցան զիս բռնել . — Անզգամէն փախէք . Այդ ճաշը Բաբելոն տար . — Դուք իմ աշակերտներս եղէք . — Ձինուորները գողը բռնեցին . — Զայխտի կրնան գրել . — Զանի քաղաք տարին . — Դուն եղիր անոր աշակերտ . մենք Մովսէսի աշակերտ ենք . — Աստուծմէ վախցի՛ր . — Թռչունները թռան . — Որդին կորսուեցաւ . — Զիս անոր տարէք . — Ընդունեց զիս . — Թող այնպէս ըլլայ . — Ես զանի պիտի բռնեմ . — Ընդունէ՛ այս տղան . — Կը ջանայ պահուըտիլ անկէ . — Եւ ելնելով կ'երթայ կը կորսուի . — Եթէ մէկէն ստակ առնու , իրեն հետ (ընդ իւր) վկաներ կը տանի . — Կին մը մօտենալով կը հարցընէ . — Դրողը քեզ տանի (ապռ.)՝ անէծքի ձեւ մ'է ։*

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

## 46. ԱՐԾԱԹՍԻՐՈՒԹԻՒՆ

Սակայն արմատ ամենայն չարեաց արծաթսիրութիւնն է, ըստ առաքելոյն, և ագահութիւն. վասն զի չիք և ինչ չարիք որ ոչ ի սոցանէ ծնանին· ատելութիւն մարդկան, խռովութիւն և պատերազմ առ ազգակիցս, գողութիւն և սպանութիւնք և այլ եւս անթիւ վնասք՝ զորս ո՞վ կարէ թուել։ Զի եթէ զտէրն տիեզերաց և զարարիչն արարածոց ի վաճառ եած այս ախտ և ետ սպանանել, զինչ այլ ինչ մնայ ի չարեաց զոր ոչ կարիցէ գործել։ Եւ եթէ զառաքեալն՝ զՔրիստոսի ընտրութեանն արժանաւոր՝ այնպէս վաղվաղակի գերի առեալ տարաւ, և զթիւն պակասեցոյց, և յահաւորսն զնա յանդգնեցոյց, ապա ո՞վ կարէ կալ առաջի բուռն զօրութեան նորա։

*(Քերականօրէն վերլուծել ։)*

## Դ. Լծորդութեան Անկանոն բայեր

### Սահմանական եղանակ, ներկայ

| | | | |
|---|---|---|---|
| Գամ | Երթամ | Կեամ | Տամ |

### Անցեալ Անկատար

| | | | |
|---|---|---|---|
| Գայի | Երթայի | Կէի | Տայի |
| Գայիր | Երթայիր | Կէի | Տայիր |
| Գայր | Երթայր | Կեայր | Տայր |
| Գայաք | Երթայաք | Կէաք | Տայաք |
| Գայիք | Երթայիք | Կէիք | Տայիք |
| Գային | Երթային | Կէին | Տային |

### Անցեալ Կատարեալ

| | | | |
|---|---|---|---|
| Եկի | Չոգայ (*) | Կեցի | Ետու |
| Եկիր | Չոգար | Կեցեր | Ետուր |
| Եկն | Չոգաւ | Կեաց, եկեաց | Ետ |
| Եկաք | Չոգաք | Կեցաք | Տուաք |
| Եկիք | Չոգայք | Կեցէք | Ետուք |
| Եկին | Չոգան | Կեցին | Ետուն |

### Ապառնի

| | | | |
|---|---|---|---|
| Եկից | Երթայց | Կեցից | Տաց |
| Եկեսցես | Երթիցես | Կեցցես | Տացես |
| Եկեսցէ | Երթիցէ | Կեցցէ | Տացէ |
| Եկեսցուք | Երթիցուք | Կեցցուք | Տացուք |
| Եկեսջիք | Երթիջիք | Կեցջիք | Տաջիք |
| Եկեսցեն | Երթիցեն | Կեցցեն | Տացեն |

### Հրամայական եղանակ

| | | | |
|---|---|---|---|
| Ե՛կ, եկեսջի՛ր | Ե՛րթ. երթիջի՛ր | Կեա՛ց, կեցջի՛ր | Տո՛ւր, տաջի՛ր |

(*) Կը գրուի նաեւ չոգայ, չոգար, եւայլն.

| | | | |
|---|---|---|---|
| *Մի՛ գար* | *Մի՛ երթար* | *Մի՛ կենար* | *Մի՛ տար* |
| *Եկա՛յք, ե-կեսջի՛ք* | *Երթա՛յք, եր-թիջի՛ք* | *Կեցէ՛ք, կեց-ջի՛ք* | *Տո՛ւք, տու-ջի՛ք* |
| *Մի՛ գայք* | *Մի՛ երթայք* | *Մի՛ կենայք* | *Մի՛ տայք* |

**Ստորադասական եղանակ**

| | | | |
|---|---|---|---|
| *Գայցեմ* | *Երթայցեմ* | *Կայցեմ* | *Տայցեմ* |

**Աներեւոյթ** *կամ* **անորոշ դերբայ**

| | | | |
|---|---|---|---|
| *Գալ* | *Երթալ* | *Կենալ* | *Տալ* |

**Անցեալ դերբայ**

| | | | |
|---|---|---|---|
| *Եկեալ* | *Երթեալ* | *Կեցեալ* | *Տուեալ* |

**Ապառնի դերբայ**

| | | | |
|---|---|---|---|
| *Գալոց* | *Երթալոց* | *Կելոց* | *Տալոց* |

*Տալ բային կրաւորականը այսպէս կը խոնարհուի. Սհմկն. եղ. ներկ. Տուեալ լինիմ (տրուիմ). Անց. անկտ. Տուեալ լինէի. Կտր. Տուայ. Ապռ. Տուայց. Հրմ. եղնկ. Տուեալ լեր, լիջիր, եւլն. Ստրդսկն. եղ. Տայցիմ. Աներ. Տուեալ լինել. Անց. դեր. Տուեալ. Ապ. դեր. տալի:*

**Հարցարան.** — Ի՞նչպէս կը խոնարհուին գ. լծորդութեան անկանոն բայերը. — Տալ բային կրաւորականը ինչպէս կը խոնարհուի.

**Հրահանգ 98.** — Որոշեցէք շեղագիր բայերու ժամանակները ու եղանակները. — *Տուր մեզ յիւղոյդ ձերմէ, զի ահա շիջանին լապտերքս մեր. — Վարդապետն եկեալ է եւ կոչէ զքեզ. — Մարիամ եւ Յովսէփ չոգան ի Նազարէթէ ի Բեթղեհէմ. — Եկայք առ իս ամենայն աշխատեալք եւ բեռնաւորք եւ ես հանգուցից զձեզ. — Որ համբերեսցէ ի սպառ՝ նա կեցցէ. — Ոչ մեռայց, այլ կեցից եւ պատմեցից զգործս Տեառն. — Ամենայն եղեւ ի հողոյ եւ դառնայ ի հող. — Յիսուս ետ իշխանութիւն առաքելոց հանելոյ դեւս եւ բժշկելոյ զամենայն*

հիւանդութիւնս . — Զհետ նորա ելանէ զայ մինչեւ ի․ տուն նորա . — Զոր ինչ Աստուած քեզ շնորհ տայ, ի պէտս կարօտելոցն սպասաւորեա, զի շնորհքն աղբիւրասցին եւ դու փառաւորեսցիս . — Նման առ նմանն երթայ ։

**Հրահանգ 99 . — Գրաբարի վերածեցէք .** — Պիտի երթամ եւ պիտի գտնեմ զանի . — Ապրի՛ս, դուն շատ բարի ես . — Տուէք եւ պիտի տրուի ձեզ . — Եկայ, բայց չտեսայ զքեզ . — Եկէք եւ ձեզի պիտի պատմեմ . — Սրբութիւնը շուներուն մի՛ տաք . — Գացի, առի զանի եւ տուն բերի . — Ապրէ՛, ո՛վ իմ քաջ բարեկամս . — Գնա՛ եւ ինձ լուր (պտոյց) բե՛ր . — Ինծի ուտելիք տուէք (ուտել) . — Պիտի սամ, բայց ոչ հիմա . — Ամեն մարդ գնաց եւ ես մնացի . — Քու տնտեսութեանդ համարը տուր . — Պիտի ապրիմ ու չպիտի մեռնիմ . — Կուգայ ժամանակ եւ արդարութիւնը կը յայտնուի . — Ճշմարտութիւնը յաւիտեան պիտի ապրի . — Ազգը կուգայ եւ ազգը կ'երթայ եւ երկիրը յաւիտեան կայ . — Ի՞նչ, պիտի գանք ես եւ մայրդ եւ քեզի երկրպագութի՞ւն պիտի ընենք ։

**Դիտելիք . —** Տամ բայով աներեւոյթը կը գործածուի եւ այս կերպ գործածութեան մէջ տամ բայն ընել տալ կամ թողլ տալ կը նշանակէ . զոր օր. Չետ ոգի կլանել, չետ ոգի առնուլ, շունչ առնել չտուաւ ։

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

## 47. ՄԱՀ ՎԱՍԱԿԱՅ

Եւ իբրեւ այսպէս յամենայն կողմանց հարեալ վատթարացաւ, անկաւ յախտս դժնդակս անդէն ի կապանսն ։ Ջեռաւ փոր նորա, և

հարան և տրորեցան գոգք նորա, և քամեալ մզեցաւ թանձրամսութիւն նորա։ Եռացին որդունք ընդ աչս նորա և ի վայր սորեցին ընդ ռնգունս նորա, խցան լսելիք նորա, և ծակոտեցան չարաչար շրթունք նորա, լուծան ջիլք բազկաց նորա, և յետկոյս կորացան կրկունք ոտից նորա։ Բղխեաց ի նմանէ հոտ մահու, և փախստական եղեն ի նմանէ ձեռնասուն ծառայք նորա։ Լեզուն միայն կայր կենդանի ի բերան նորա, և ոչ գտաւ խոստովանութիւն ի շրթունս նորա։ Ճաշակեաց զմահ հեղձամղձուկ, և էջ ի դժոխս անհնարին դառնութեամբ։ Ոտնհար եղեն նմա ամենայն սիրելիք նորա, և ոչ յագեցան սաստիկ հարուածովքն ամենայն թշնամիք նորա։

*( Քերականօրէն վերլուծել ։ )*

*Հարկանել*, վնասուիլ.
*Տրորել*, փշրիլ.
*Մզել*, ճմլուիլ.
*Սորել*, ջրի պէս վազել.
*Կրկունք, եւ կրունկ*, ոտքին ետեւի կողմը.
*Ոտնհար լինել*, արհամարհել։

---

## *Չորրորդ Լծորդութեան Անկանոն բայեր*

**Սահմանական եղանակ, Ներկայ**

Եզակի

| | | |
|---|---|---|
| *Երդնում* | *Գոմ* (*ըլլամ, գոյութիւն ունենամ*) | *Այտնում* (*ուռչիմ*) |
| *Երդնուս* | *Գոս* | *Այտնուս* |
| *Երդնու* | *Գոյ* | *Այտնու* |

Յոգնակի

| | | |
|---|---|---|
| *Երդնումք* | *Գոմք* | *Այտնումք* |
| *Երդնուք* | *Գոյք* | *Այտնուք* |
| *Երդնուն* | *Գոն* | *Այտնուն* |

### Անցեալ Անկատար

Եզակի

| | | |
|---|---|---|
| *Երդնուի* | *Գոյի* | *Այտնուի* |
| *Երդնուիր* | *Գոյիր* | *Այտնուիր* |
| *Երդնոյր* | *Գոյր* | *Այտնոյր* |

Յոգնակի

| | | |
|---|---|---|
| *Երդնուաք* | *Գոյաք* | *Այտնուաք* |
| *Երդնուիք* | *Գոյիք* | *Այտնուիք* |
| *Երդնուին* | *Գոյին* | *Այտնուին* |

### Անցեալ Կատարեալ

Եզակի

| | | |
|---|---|---|
| *Երդուայ* | ( *Չունի* ) | *Այտեայ* |
| *Երդուար* | | *Այտեար* |
| *Երդուաւ* | | *Այտեաւ* |

Յոգնակի

| | | |
|---|---|---|
| *Երդուաք* | | *Այտեաք* |
| *Երդուայք* | | *Այտեայք* |
| *Երդուան* | | *Այտեան* |

### Ապառնի

Եզակի

| | | |
|---|---|---|
| *Երդուայց* | | *Այտեայց* |
| *Երդուիցես* | | *Այտիցես* |
| *Երդուիցէ* | *Գուցէ* | *Այտիցէ* |

Յոգնակի

| | | |
|---|---|---|
| *Երդուիցուք* | | *Այտիցուք* |
| *Երդուիջիք* | | *Այտիջիք* |
| *Երդուիցեն* | *Գուցեն* | *Այտիցեն* |

### Հրամայական եղանակ

Եզակի

| | | |
|---|---|---|
| *Երգուի՛ր, երգուիչի՛ր* | (Զուտ) | *Այտի՛ր, այտիչի՛ր* |
| *Մի՛ երգնուր* | | *Մի՛ այտնուր* |

Յոգնակի

| | |
|---|---|
| *Երգուարո՛ւք, երգուիչի՛ք* | *Այտերո՛ւք, այտիչի՛ք* |
| *Մի՛ երգնուք* | *Մի՛ այտնուք* |

### Ստորադասական եղանակ

| | | |
|---|---|---|
| *Երգնուցում* | (Զուտ) | *Այտնուցում* |

### Աներեւոյթ կամ Անորոշ դերբայ

| | | |
|---|---|---|
| *Երգնուլ* | Գոլ | *Այտնուլ* |

### Անցեալ դերբայ

| | |
|---|---|
| *Երգուեալ* | *Այտուցեալ* |

### Ապառնի դերբայ

| | |
|---|---|
| *Երգնլոց* | *Այտնլոց* |

*Այտնումին պէս կը խոնարհուին զարթնում (արթըննալ), ոստնում (ցատկել), սարտնում (խրտչիլ), ցասնում (բարկանալ), քաղցնում (անօթենալ), ցածնում (ցածնալ, իջնել), պախնում (վախնալ) :*

*Ոչ գոյ, չիկայ ընելու տեղ՝ չիք կը գործածուի :*

**Հարցարան.** — Ի՞նչպէս կը խոնարհուին Դ. լծորդութեան անկանոն բայերը. — Ո՞ր բայերը *այտնումին* պէս կը խոնարհուին. — *Ոչ գոյ* ընելու տեղ ինչ բառ կը գործածուի :

**Հրահանգ 100.** — Որոշեցէք շեղագիր բայերուն ժամանակներն ու եղանակները. — *Մի՛ երգնուցուս սուտ.*

*— Եւ պահեալ զքառասուն տիւ եւ զքառասուն գիշեր՝ ապա քաղցեաւ. — Որպէս թէ մանուկ ոք ի գանիցն վազիցէ (ծեծէն փախչի) եւ ի բաց ոստիցէ. — Չիք ամենեւին տկարութիւն զԱստուծով. — Ցասեաւ յանիրաւի. — Աղուեսուց՝ որջք գոն եւ թռչնոց երկնից՝ դադարք, եւ որդւոյ մարդոյ ոչ գոյ՝ ուր դիցէ զգլուխ. — Գոյ սուտ՝ որ բարի է. — Որ երդման ընկերին չհաւատայ, դիւրին է նմա եւ սուտ երդնուլ. — Գոյին ոմանք ի սպասաւորաց. — Երդուի՛ր ինձ չխաբել նմա. — Գուցէ՞ն այլ ինչ արարածք բանաւորք քան զհրեշտակս եւ զդեւս եւ զմարդիկ. — Չիք ինչ վնասակար եւ թշնամի մարդկան քան զբարեկեցութիւն։*

**Հրահանգ 101.** — Վերածեցէք ի գրաբար. — *Ամենքն ալ երդում ըրին. — Նա քու երեսէդ փախցաւ. — Ձիերը կը խրտչին. — Առաւօտ է, արթնցիր. — Վրէժխնդիր մը եղայ. — Երդում ըրէք. — Ուռեցան. — Այս մարդը շատ անգամ կը բարկանայ. — Լերինք ցածցան. — Եւ անիկա ցատքեց ու մօտեցաւ մեզ (առ հյց.ով). — Երդում ըրին թէ չպիտի վնասեն. — Ուռեցան եւ պայթեցան. — Արթննալով իր մայրը խնդրեց։*

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

## 48. Ս. ԲԱՐԹՈՂԻՄԷՈՍ

Երանելի առաքեալն Բարթողիմէոս, որ էր մի յերկոտասանիցն, երթեալ մտանէ յիւր վիճակ առաքելական ընտրութեանն, և ի սկզբան քարոզութեանն իւրոյ՝ եղեւ մտանել նմա ի քաղաքն Եդեմ կոչեցեալ մերձ ի սահմանս Հնդկաց ընդ Թովմայի առաքելոյ, և անցեալ ընդ շինամէջ քաղաքին նստաւ առ աղբիւր մի, յորում ազդմունք դիւթականք հմայեալ կատարէին։ Յայնժամ երանելի առաքեալն ասէ ի ձայն մեծ. Ջուրս այս ցամաքեսցի և մի ամենեւին կացցէ ունել ոյժ խոնաւութեան, և առժամայն ցամաքեցաւ վտակն յորդահոս ջրոյն...։

Եւ սկսան նեղել ի ծարաւոյ բազմութիւնք քաղաքին. և առեալ վիրգս ի ձեռն կամէին արկանել ի վերայ առաքելոյն, և հարեալ քարամբքն զմիմեանս սատակէին, և ի քարանց ձգելոց սատակեցան ոգիք իբրեւ երեսուն։ Եւ մերձեցեալ սուրբ առաքեալն ի մեռեալսն, եդ ձեռն և աղօթս արարեալ ի վերայ նոցա դարձան ոգիք նոցա ի նոսա, և կանգնեցան կացին կենդանիք և փութացեալ իւրաքանչիւր ոք ի նոցանէ բերէին զհիւանդս և նեղեալս յայսոց և ի պէսպէս ախտից և ի ցաւոց և բժշկեաց զամենեսին։ Յայնժամ սկսաւ քարոզել նոցա զաւետարանն Մատթէոսի կարգաւ և լուեալ խնդութեամբ ընդունէին զքարոզութիւն սուրբ աւետարանին։

*Վիրգ*, Նեsելու fur։

---

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ՔԱՂՈՒԱԾՔ ԲԱՅԻՑ ԺԱՄԱՆԱԿԱՑ, ԵՂԱՆԱԿԱՑ ՎՐԱՅ

*(Բոլոր շեղագիր բայերն աներեւոյթ դրուած են. փոխեցէք զանոնք իւրաքանչիւր հրահանգին վրայ նշանակուած ժամանակին կամ եղանակին։)*

**Հրահանգ 102.** — *Սահմանական եղանակ, ներկայ.* — *Նոքա* անցանել *(անցանեն) եւ դու* կալ մնալ *(կաս մնաս) յաւիտեան. — Անբարեխառնութիւն* կարճել *զկեանս. — Զօրհանապազ (մեք)* դիմել *ի մահ. — Ամենայն մարմին որպէս հանդերձ* մաշել. *— Թէ* ելանել *(ես) յերկինս, դու անդ ես, եւ թէ* իջանել *(ես) ի դժոխս, եւ անդ մօտ ես. — Անդուլ զբօսանք* ճանճրացուցանել. *— Ամենայն գետք* գնալ *ի ծով. — Խայթ խղճի* պատառել *զմիտ. — Մեք խստիւ* դատել *յաճախ զայլս. — Ի բեւեռային նահանգս սառամանիք ոչ* լուծանել։

**Հրահանգ 103.** — *Անցեալ* անկատար. — *(Նոքա)* գալ հասանել *մեծաւ ճոխութեամբ յաշխարհս Աղուա-*

նից. — Հունձք բազում լինել եւ մշակք սակաւ. — Աղաչել զորտ զմողնջիւն. — Սոկրատ կրթել զհոգին ի համբերութիւն. — Եգիպտացիք հատանել վճիռ ի վերայ մեռելոց. — Կրեսոս լինել մարթամ. — Նախնիք ի պատերազմունս արձակել նետս եւ նիզակս. — Գարայիպք՝ ազգ վայրագ, ուտել զպատերազմական գերիս իւրեանց։

**Հրահանգ 104.** — Անցեալ կատարեալ. — Աղեքսանդր տիրել ամենայն Ասիոյ. — Մովսէս հանել զԻսրայէլ յերկրէն Եգիպտացւոց. — Ես օծանել զքեզ, սուրբդ Աստուծոյ. — Ես գտանել զմատանին իմ. — Կարկուտն աւերել զհունձս. — Գետք ողողանել զդաշտս. — Ամենայն ազգք արեւելից պաշտել զարեգակն։

**Հրահանգ 105.** — Ապառնի. — Հնձողք կապել զորայս. — Դու տրտմել ընդ կորուստ ժամանակին. — Ծիծառունք գալ յաշնան. — Աշխատութիւն տալ քեզ բազում արդիւնս. — Չարք փախչել յերեսաց նորա. — Նոքա խնդրել զիս եւ ոչ գտանիցեն. — Դու սիրել զիս. — Ոյք խնդրեն զՏէր՝ մի՛ պակասել ի նոցանէ ամենայն բարութիւն. — Տեառն Աստուծոյ քում երկիրպագանել (դու) եւ զնա միայն պաշտել (դու)։

**Հրահանգ 106.** — Հրամայական եղանակ. — Հատուցանել (դու) զպարտիս քո. — Յիշել (դու) զբարիս զոր ընկալար. — Լինել (դուք) իմաստուն. — Խոյս տալ (դու) յամպարշտէն. — Զգոյշ լինել (դու) ի շողոքորթից. — Խնդրել (դու) զբարիս քո յարդարութենէ. — Օրհնել (դուք) զանիծիչն ձեր. — Խոնարհեցուցանել (դու) զգլուխ քո, վէ՛ս Սիկամբրացի, այրել (դու) զոր պաշտէիրն եւ պաշտել (դու) զոր այրէիրն. — Կրթել (դու) զանձն քո յաստուածպաշտութիւն։

**Հրահանգ 107**. — *Ստորադասական եղանակ. — Եթէ այրել (նոքա), անխոյթ լեր. — Լինել սակաւք, որ ոչ ճանաչել զբարեկամս. — Կորնչել ամպարշտին. — Եթէ յառնել ի միջի ձերում մարգարէ կամ երազահան. — Կամիմ լսել որ ինչ խօսել (նա). — Ընդէ՞ր կռուել չարն. — Մինչեւ ցե՞րբ խօսել (դու). — Եթէ կոչել ոք զքեզ ի հարսանիս, երթիջիր բազմիջիր ի յետին տեղւոջ, զի յորժամ գայ որ կոչեացն զքեզ, ասել. բարեկամ, ի վեր մատիր:*

## ԴԱՐՁԵԱԼ ՔԱՂՈՒԱԾՔ

**Հրահանգ 108**. — *Սահմանական եղանակ, ներկայ. — Երախտապարտութիւն զնէս պնդել հաճոյից. — Մեղուք քաղել զհիւթ ծաղկանց. — Մնալ հաւատք, յոյս եւ սէր. — Ամենայն ծառ բարի պտուղ բարի առնել եւ ծառ չար պտուղ չար առնել. — Ի տանէ անօրինաց խորշել (կրաւ.) արդարք. — Ողորմութեամբ եւ հաւատով սրբել (կրաւ.) մեղք. — Իմաստութեամբ շինել (կրաւ.) տուն եւ հանճարով կանգնել (կրաւ.). — Իւղով, խնկով եւ գինեաւ զուարճանալ սիրտ. — Անձն ամպարշտի ցանկալ չարեաց. — Ի պտղոյ արդարութեան բուսանել ծառ կենաց:*

**Հրահանգ 109**. — *Անցեալ անկատար. — Հիպոկրատ ծաղկել ի ժամանակս Պերիկլեայ. — Ի Հռովմ Վեստեան կուսանք անշէջ պահել զհուր նուիրական. — Մեք փախչել ի վտանգաց. — Խամրեալ էին ծաղկունքն որք յառաւօտուն ծաղկել եւ զորս քաղել (մեք) ուրախութեամբ. — Ջուր բղխել ի ժայռէն ի հարուած գաւազանին Մովսիսի. — (Մեք) ատել երբեմն զուսումն՝ որ այժմ սիրելի է մեզ:*

**Հրահանգ 110**. — *Անցեալ կատարեալ*. — *Աղեքսանդր մեռանել ի ծաղիկ հասակի*. — *Հրեայք ելանել յԵգիպտոսէ ի ձեռն Մովսէսի*. — *Առաջին քրիստոնեայք դիւցազնաբար տառապել*. — *Երկիրն ոչ ընդունել զպայմանս խաղաղութեան*. — *Աստուած այնչափ սիրել զմեզ, մինչեւ զորդի իւր միածին տալ*. — *Գալ, տեսանել, յաղթել (եզ. Ա. դէմք)*. — *Պատրել նախածնողք մեր*. — *Սպանել բարակք որսականք* :

**Հրահանգ 111**. — *Ապառնի*. — *Մեք ոչ ստանալ զճոխութիւնս ի վնաս առողջութեան մերոյ*. — *Յաչաղկոտք մեռանել*. — *Զոր ինչ հնձել ոք, զնոյն քաղել*. — *Արք բարեգործք գալ յօգնութիւն թշուառաց*. — *Վատասիրտք փախչել*. — *Մազ մի ի գլխոյ ոչ կորնչել*. — *Ոչ մատնել եղբայր զեղբայր ի մահ*. — *Կատարել (ես) զպարտիս իմ* :

**Հրահանգ 112**. — *Հրամայական եղանակ*. — *Մի՛ խնդալ (դու) ընդ աղէտս այլոց*. — *Առնել (եզ. ստո-րաս.) զոր ինչ պարտիս, թէպէտ եւ ինչ պատահեսցի* :

**Հրահանգ 113**. — *Ստորադասական եղանակ*. — *Եթէ յանցանել (եզ.) քեզ, յանդիմանեա՛ զնա*. — *Ո՞վ կարել շինել քեզ նմանող*. — *Յորժամ տեսանել (նա) զքեզ, ուրախանալ*. — *Նա սիրել զքեզ*. — *Լինել (նա) թշնամի քեզ*. — *Որ խօսել, ի միտ առցէ*. — *Երթալ տէրդ իմ առաջի իմ եւ ծառայ քո եկեսցէ* :

ԴԱՐՁԵԱԼ ՔԱՂՈՒԱԾՔ

**Հրահանգ 114**. — *Սահմանական եղանակ, ներկայ*. — *Դուն ուրեք անձրեւել յԵգիպտոս*. — *Արք իմաստունք*

*կանխատեսել զպատահարս. — Հեռաձայն լինել գիւտ Էտիսընի. — Ամբարհաւանութիւն կորուսանել զմեզ. — Նա է Յովհաննէս Մկրտիչ, որ բառնայ զմեղս աշխարհի. — Տէր ամբարտաւանից հակառակ կայ եւ տայ շնորհս խոնարհաց. — Յերկարել արդարոց ուրախութիւն. — Արդարն ողորմել եւ տայ առանց խնայելոյ։*

**Հրահանգ 115.** — *Անցեալ անկատար. — Նախնիք քրմուհիք նստել յեռոտանիս. — Նախնիք առ ի չգոյէ կողմնացուցի ոչ նաւել ի հեռաւոր վայրս. — Մուսայք լինել (յոգ. Գ. դէմ) ինն. Մնեմոսինեայ դստերք, որք են՝ Կլիոյ՝ պատմութեան, Եւտերպէ՝ երաժշտութեան, Մելպոմենէ՝ ողբերգութեան, Թալիա՝ կատակերգութեան, Տերփսիքոր՝ կաքաւոյ, Երատոյ՝ երգոց սիրոյ, Կալիոպէ՝ վիպասանութեան, Պոլիւհիմնիա՝ ճարտարխօսութեան, Ուրանիա՝ աստեղագիտութեան։*

## ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

### 49. ՄԵԾՆ ՆԵՐՍԷՍ

Այլ եպիսկոպոսապետն Հայոց Ներսէս շինէր զամենայն աւերեալսն երկրին, յանձն առնէր և մխիթարէր, դարմանէր և տեսուչ լինէր ամենայն աղքատաց և զորկունս և զաղքատս հանգուցանէր։ Եւ շինէր զեկեղեցիս ընդ ամենայն տեղիս, և զամենայն կործանեալսն կանգնէր և զամենայն կարգսն տապալեալ ուղղէր և նորոգէր։ Շինէր և հաստատէր, խրատէր և յանդիմանէր, բազում առնէր նշանս և զօրութիւնս մեծամեծս և բազում բժշկութիւնս սքանչելեաց։ Եւ յօրէնսն սաստէր մեծապէս, և զոր օրհնէր՝ օրհնէր, և զոր անիծանէր, անիծեալ լինէին։

(*Ստորագծեցէք անկատարները։*)

*Ուռուկ*, բոռոց (Փ-ին)։

**Հրահանգ 116.** — *Կատարեալ.* — **Ստորագծեցէք հետեւեալ հատուածին մէջ կատարեալ ժամանակները. —** *ՏԻԿՆԱՅՔ ՓԱՓԿԱՍՈՒՆՔ. — Մոռացան զկանացի տըկարութիւն եւ եղեն արուք առաքինիք ի հոգեւոր պատերազմին. մարտ եղեալ կռուեցան ընդ մեղսն կարեւորս, հատին կտրեցին եւ ընկեցին զմահաբեր արմատս նորա։ Միամտութեամբ յաղթեցին խորամանկութեանն, եւ սուրբ սիրով լուացին զկապուտակ ներկուածս նախանձուն. հատին զարմատս ագահութեան, եւ չորացան մահաբեր պտուղք ոստոց նորա։ Խոնարհութեամբ կափեցին զամբարտաւանութիւն, եւ նովին խոնարհութեամբ հասին երկնաւոր բարձրութեանն։ Աղօթիւք բացեալ զփակեալ դրունս երկնից եւ սուրբ խնդրուածովք իջուցին զհրեշտակս ի փրկութիւն. լուան աւետիս ի հեռաստանէ եւ փառաւորեցին զԱստուած ի բարձունս։*

**Հրահանգ 117.** — *Ապառնի. — Աշխատ լերուք եւ քաղցն ոչ ժամանել առ ձեզ. — Դիտել (դուք) թէ քանի՛ պատուական է ժամանակն. — Ուսանողն լինել երախտագէտ առ ուսուցիչն. — Ընտիր քերթուածք շարժել միշտ զսիրտս մեր։*

**Ստորագծեցէք հրամայականները.** — *Միա՛յն զգլուխդ խոնարհեցո՛ եւ անդէն հոգեւորական պսակն ի վերայ գլխոյդ եւ առաւել քան զականս պատուականս զարդարեսցէ զքեզ։ Միայն յօժարեա՛ց ի կոչումն արքայականս. եւ անդէն քաղցրութիւն խորտկացն ի քիմս քո պատրաստեսցի։ Միայն ծարաւի լե՛ր սիրոյն, եւ անդէն աղբիւր կենդանութեան զերաշտութիւն ծարաւոյն պասքելոցն յագեցուսցէ զքեզ։ Միայն լուա՛ զքեզ յաղտոյ, եւ անդէն անթառամ եւ լուսաւոր զգեստուն՝ առաւե-*

կազոյն եւ քան զանուշահոտ շուշան ծաղիկն զքեզ լցուցանէ ։

Խորտիկ, ընտիր կերակուր.
Երաշտութիւն, սաստիկ ծարաւ.
Պասքիլ, ծարաւիլ։

## ԴԱՐՁԵԱԼ ՔԱՂՈՒԱԾՔ

### Տեղագիր բառերը գրաբարի վերածեցէք

**Հրահանգ 119.** — Սահմանական եղանակ, ներկայ. — Ի գործոյ իւրմէ կը ճանչցուի գործաւորն. — Հարսնուկն կը ծաղկի ի դաշտս ցորենոյ. — Սկիւռն կը վախնայ ի ջրոյ. — Մարդ կը ծնի, կ'ապրի եւ կը մեռնի. — Մենավաճառք կը վնասեն վաճառականութեան. — Արեգակն կ'երեւի մեզ այնպէս փոքր զի հազիւ կը հաւատանք բանից աստեղագիտաց՝ որ կ'ըսեն թէ յոյժ մեծ է այն. — Յարատեւ կամք կը յաղթէ դժուարութեանց. — Զկամս երկիւղածաց կը կատարէ (առնել) Տէր, եւ աղօթից նոցա կը լսէ եւ կ'ապրեցնէ զնոսա. — Սէր ամենայնի կը յաղթէ; ամենայնի կը համբերէ. — Բարի անուն կը մնայ յաւիտեան ։

**Հրահանգ 120.** — Անցեալ անկատար. — Երբեմն կը կարծէինք թէ տափարակ էր երկիր. — Նախնիք կը նըկատէին զբախտն կոյր. — Պենելոպէ կը քակէր զոր ինչ կը շինէր ի տուընջեան. — Պարանոցն Սուէզի կը միացընէր զԱսիա ընդ Ափրիկէ. — Հռովմայեցիք կը համարէին թէ Հռոմուլոս սերեալ էր յԱրէս դից. — Թանձրամիտքն կը յիմարէին եւ վատասիրտքն կը թուլնային (լքանել) ։

**Հրահանգ 121.** — Անցեալ կատարեալ. — Իբրեւ Աղեքսանդր չկրցաւ քակել զԳորդեան հանգոյցն, յայնժամ կտրեց. — Եղբարք Յովսեփու ներկեցին զպատմուճան նորա յարեան ուլոյ. — Տիտոս առաւ եւ կործանեց զԵրուսաղէմ. — Նոյ անիծեց զորդի իւր զՔամ. — Երեւցաւ նմա հրեշտակ Տեառն բոցով հրոյ. — Դալարցաւ գաւազան Ահարոնի. — Հասան (ժամանել) ինձ որոգայթք մահու. — Ուրախացաւ այրն եւ երկրպագեց Աստուծոյ:

**Հրահանգ 122.** — Ապառնի. — Ապա պիտի գիտնաս զելս կատարածի դորա. — Թող երթամ օգնել նմա կամ մեռանել. — Պարիսպք քաղաքին պիտի կործանին. — Զամենայն զկեղտ անուն ի մէնջ ի բաց վերցընենք. — Որ անարգէ զհայր՝ պիտի նախատուի (նախատ լինել. — Եկայք երթանք (ելանել) առ նա. — Իւրաքանչիւր ոք ի ձէնջ պիտի մկրտուի. — Անմիտն պիտի ծառայէ իմաստնոյն. — Որդի իմաստուն պիտի օրհնուի ի ծնողաց. — Սիրեցեալն ի Տեառնէ պիտի բնակի յուսով:

**Հրահանգ 123.** — Հրամայական եղանակ. — Զհիւանդս բժշկեցէք, ձրի առէք եւ ձրի տուէք. — Մի՛ ստանայք ոսկի եւ ոչ արծաթ եւ ոչ երկուս հանդերձս ունիցիք. մի՛ պարկ ի ճանապարհ, մի՛ կօշիկս, մի՛ ցուպ. — Եղիր իրաւախոհ ընդ ոսոխի քում վաղագոյն. — Սէ՛ր անուն Յիսուս, սիրով քով ճմլէ՛ սիրտ իմ քարեղէն. — Մի՛ ցանկայք մահու մոլորութեամբ կենաց ձերոց. — Լսէ՛ խրատու հօր քոյ եւ մի՛ մերժեր զխրատ մօր մօր քոյ. — Մի՛ կարծէք եթէ եկի լուծանել զօրէնս եւ զմարգարէս:

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

## 50. ՏԱԲԻԹԱ

Ի Յոպպէ էր կին ոմն աշակերտեալ՝ անուն Տաբիթա, որ անուանեալ կոչի Այծեմնիկ։ Սա էր լի գործովք բարեօք և ողորմութեամբք զոր առնէր։ Եւ եղեւ յաւուրսն յայնոսիկ հիւանդանալ նմա և մեռանել։ Եւ աշակերտացն լուեալ եթէ Պետրոս ի Լիւդդա է, առաքեցին երկուս արս առ նա, աղաչել զի մի՛ դանդաղեսցի գալ առ նոսա։ Յարուցեալ Պետրոս եկն ընդ նոսա, զոր՝ իբրեւ եկն՝ հանին ի վերնատունն, և կացին շուրջ զնովաւ այրիքն ամենայն, լային և ցուցանէին զձորձս և զհանդերձս՝ որչափ առնէր նոցա Այծեմնիկն։ Եւ հանեալ արտաքս զամենեսեան Պետրոսի՝ եդ ծունր, եկաց յաղօթս և ասէ․ Տաբիթա՛, արի՛ կա՛ց յանուն Տեառն Յիսուսի Քրիստոսի։ Եւ նա եբաց զաչս իւր, և տեսեալ զՊետրոս՝ նստաւ կանգուն։ Ձեռն ետ նմա և յարոյց զնա, կոչեաց զորբսն և զայրիս և առաջի կացոյց զնա կենդանի։

*Չի մի դանդաղեսցի գալ առ նոսա*, որպէս զի իրենց գալու չուշանայ։

*Նստաւ կանգուն*, շիտակ նստաւ։

---

## *ՊԱԿԱՍԱՒՈՐ ԵՒ ԴԻՄԱԶՈՒՐԿ ԲԱՅԵՐ*

*Պակասաւոր կ՚ըսուին այն բայերն, որ ամէն ժամանակ ու եղանակ չունին, զորօր.*

*Ա. Պարտիմ, պէտք է ինձ որ, որուն գործածական ժամանակներն են,*

**Սահմանական եղանակ, ներկայ**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| *Պարտիմ* | պէտք է ինձ որ | *Պարտիմք* | պէտք է մեզ որ |
| *Պարտիս* | պէտք է քեզ որ | *Պարտիք* | պէտք է ձեզ որ |
| *Պարտի* | պէտք է անոր որ | *Պարտին* | պէտք է անոնց որ |

**Անցեալ Անկատար**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Պարտէի | պէտք էր ինծի որ | Պարտէաք | պէտք էր մեզի որ |
| Պարտէիր | պէտք էր քեզի որ | Պարտէիք | պէտք էր ձեզի որ |
| Պարտէր | պէտք էր անոր որ | Պարտէին | պէտք էր անոնց որ |

**Ստորադասական եղանակ**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| Պարտիցիմ | պէտք ըլլայ ինծի որ | Պարտիցիմք | պէտք ըլլայ մեզի որ |
| Պարտիցիս | պէտք ըլլայ քեզի որ | Պարտիցիք | պէտք ըլլայ ձեզի որ |
| Պարտիցի | պէտք ըլլայ անոր որ | Պարտիցին | պէտք ըլլայ անոնց որ |

**Աներեւոյթ կամ անորոշ դերբայ**

*Պարտել*

**Դիտողութիւն.** — *Տարբեր բայեր են պարտիմ եւ պարտեմ բայերն, որոց առաջինը չէզոք բայ է եւ կը նշանակէ պարտք ունենալ, իսկ երկրորդը կը նշանակէ յաղթել:*

*Բ. Թողել, ըսել, սեպել, որ հետեւեալ ժամանակներն ունի միայն.*

**Սահմանական ապառնի**

| Եզակի | | Յոգնակի | |
|---|---|---|---|
| (Չունի) | | Թողցուք | ըսենք, սեպենք |
| Թողցես | ըսես, սեպես | Թողջիք | ըսէք, սեպեցէք |
| Թողցէ | ըսէ, սեպէ | Թողցեն | ըսեն, սեպեն |

**Հրամայական եղանակ**

*Թո՛ղ, թողջի՛ր, ըսէ՛, սեպէ՛ Թողէ՛ք ըսէ՛ք, սեպեցէ՛ք*

**Աներեւոյթ կամ Անորոշ դերբայ**

*Թողել ըսել, սեպել*

Դիմազուրկ կամ միադիմի կ'ըսուին այն բայերն՝ որոնց միայն եզակի երրորդ դէմքը կը գործածուի ։ Ինչպէս .

Պիտի ըսել է պէտք է, պիտէր, պէտք էր, պիտեցաւ, պէտք եղաւ, պիտեսցի կամ պիտիցի՝ պէտք պիտի ըլլայ։

Ցաւ է՝ ցաւ կու գայ, ցաւ էր՝ ցաւ կու գար, ցաւեաց՝ ցաւ եղաւ, ցաւեսցէ կամ ցաւիցէ՝ ցաւ ըլլայ կամ պիտի ըլլայ ։

Դիմազուրկ բայերն ընդհանրապէս տրական հոլով մը կ'առնուն ։ Զոր օր. Ցաւեսցէ քեզ, պիտի ցաւիս ։

Դիմազուրկներուն մեծ մասը էական բայով կը ձեւանայ, ինչպէս . ի դէպ է, վայել է, կը վայլէ . պատշաճ է, արժան է, պատշաճ է . պարտ է, հարկ է, պէտք է . մարթ է, հնար է, գոյ հնար, կարելի է . բաւ է, շատ է, հերիք է . օրէն է, անկ է, կամ է ինձ, զի՞ փոյթ է քեզ, ինչո՞ւ պէտք է . դէպ լինի, կը պատահի . ազդ լինէր, ազդ եղեւ, իմաց տրուեցաւ ։

Կան մի քանի ամբողջ բայեր, որոնք եզակի Գ. դէմքով կը գործածուին իբր դիմազուրկ, եւ են՝ հասանէ (հարկ կ'ըլլայ), թուի (կ'երեւի), դիպեսցի (պիտի պատահի) եւայլն ։

Գրաբարի յատուկ դիմազուրկ են .

Դեռ աւուր շատ կայ, դեռ իրիկուան բաւական ատեն կայ .

Մինչդեռ աւուր կայ, քանի որ ցորեկ է .

Դեռ գիշերոյ կայ, դեռ գիշեր է ։

**Հարցարան**. — Ո՞ր բայերը պակասաւոր են . — Ո՞ր բայերը դիմազուրկ են . — Դիմազուրկ բայերը ինչ հոլով խնդիր կ'առնուն . — Դիմազուրկներուն մեծ մասը ինչ բայով կը ձեւանայ . — Ուրիշ դիմազուրկ բայեր կան . — Գրաբարի յատուկ ուրիշ դիմազուրկներ կան ։

**Հրահանգ 124. — Լուծեցէք հետեւեալ նախադասութիւնները.** — *Յորժամ զանկրեւութէն ճառիցէ ոք՝ պարտի զմիտս յատակել եւ զխորհուրդս սրբել. — Թէ բնութեամբ իցեն չարիքն, ոչ պարտի օրէնսդիրն օրէնս դնել. — Մարդոյ ոչ է հնար փոխել ի կերպարանս ինչ յոր եւ կամիցի. — Այնմ չէ հնար վրիպել. — Թուի թէ ի ծովէ ելանիցէ. — Ցուցաց նմա վասն անկելոցն ի հուր եւ տանջելոց. — Պարտ էր նմա զամենայն կարողութիւն յանձին ունել. — Որ վասն եղբարց հասանիցէ կրել յանձին. — Զգաստից ընդ արբեցողս եւ իմաստից ընդ անմիտս խօսել չէ պարտ։*

**Հրահանգ 125. — Գրաբարի վերածեցէք.** — *Պէտք է որ արուեստաւորը աշխատի (վաստակել) ոչ. թէ շահու համար, այլ համբաւի համար. — Կը ցաւիմ որ չեմ կրնար գալ. — Կը կարծէր թէ քնոյ մէջ է. — Կը պատմուի թէ դուն ես անոր թելադրիչը. — Կարելի չէ որ թողում. — Պէտք է որ մենք միշտ բարիք ընենք. — Յիսուս ըսաւ. Պէտք է որ մէկզմէկ սիրէք. — Ըսէք որ իր պարտքը վճարէ. — Դեռ իրիկուան բաւական ատեն կայ. — Պատշաճ է զանի պատուասիրել. — Պատահեցաւ որ եօթն եղբայրներ թագաւորին առեանը տանին. — Կարելի՞ է արդեօք այդ ծառայութիւնը մառուցանել անոր. — Ինչո՞ւդ պէտքն է. — Ցաւ եղաւ ինձ զանի անգամ մ'ալ չտեսնելս. — Իմաց տրուեցաւ անոր ետ չըդառնալ. — Կերեւի թէ անիկա կը ստէ։*

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

## 51. Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ

Առաջելանման Սուրբ Հայրապետն մեր Տէր Գրիգորիոս էր որդի Պարթեւին Անակայ և Ոգոհեայ, յղացեալ ի չու ծնողացն և ծնեալ ի Վաղարշապատ քաղաքի յամի Տեառն 257։

Իբրեւ բնաջինջ եղեւ և տունն մեղապարտին Անակայ ի վրէժ արեանն Խոսրովու, միայն առանձին խնամօքն Աստուծոյ ապրեցան երկոքին որդիք Պարթեւին Անակայ ի ձեռն մանկաբարձաց, յորոց զմին Սուրէն անուն փախուցին ի Պարսս առ հօրաքոյր իւր և զմիւսն՝ որ Լուսաւորիչ հանդերձեալ էր մեզ լինել, տարաւ ի Յունաց աշխարհ ի Կեսարիա Կապադովկիացւոց՝ ստնտու նորա լեալ Սոփի կին։ Անդ մկրտեցաւ և անուանեցաւ Գրիգորիոս, որ թարգմանի *արթուն* կամ *հսկող*։

Անդ ի Կեսարիա սնեալ Գրիգորի ընդ ձեռամբ դայեկին, որ էր երկիւղած Քրիստոսի և ըստ աճել հասակին զարգացեալ յերկիւղն Աստուծոյ և ի վարս Աստուածպաշտութեան՝ ուսաւ և զՔրիստոսական դպրութեան հանգամանս։

Բայց յարբունս հասեալ մանկանն հասակի՝ փեսայացուցանէ հաւատացեալ ոմն այր, որում անուն էր Դաւիթ՝ ի դուստր իւր Մարիամ։ Եւ յետ երից ամաց՝ երկուց որդւոց լինելոյ, ի կամաց երկոցունց՝ մեկնեալ ի միմեանց զատչէին։

*Զու*, նամբորդութիւն.
*Յարբունս հասանել*, չափահաս լինել.
*Զատչել*, մեկնիլ, բաժնուիլ։

---

# ԳԼՈՒԽ Ե.

## ԴԵՐԲԱՅ

Դերբայ կ'ըսուին այն կարգ մը բառերը՝ որոնք թէ բայի եւ թէ գոյականի կամ ածականի զօրութիւն ունին։ Դերբայք երեք են. Անորոշ, անցեալ եւ ապառնի դերբայ։

Անորոշ դերբայը, որ աներեւոյթ ալ կ'ըսուի, իբրեւ գոյական կը հոլովի գետ օրինակին պէս, ինչպէս. Սիրել, սիրելոյ, եւայլն։

Անցեալ դերբայը իբրեւ ածական կը հոլովի թէ՛ եզակի եւ թէ յոգնակի, որ կը կոչուի բայածական, ինչպէս. Կարդացեալ, կարդացելոյ։

Ապառնի դերբայն երկու տեսակ է, լի եւ լոց վերջաւորութեամբ. լի ապառնին եկեղեցի օրինակին պէս կը հոլովի եզակի եւ յոգնակի. զոր օր. Սիրելւոյ, սիրելեաւ. իսկ լոց վերջաւորեալն անփոփոխ կը մնայ։

Լի վերջաւորող բայածականք երկու մտքով կը գործածուին սովորաբար, նախ ող եւ իչ նշանակութեամբ, եւ երկրորդ՝ պէտք է, կարելի է. զոր օրինակ. Ընթերցանելիք, մեկն. ընթերցողները. — Բայց դիտելի է զի, բայց պէտք է գիտնալ որ։

Ող վերջաւորած բայածականները Բ. հոլովման տակ կը հոլովին։

**Դիտող.** — Ող վերջաւորուած բայածականներն հոլովման ատեն ո՝ն ու ի կը փոխուի. զոր օր. Կայր պատանին ի վերայ հնձողացն.

**Ծանօթ.** — *Բայածական են բայերէ շինուած ած, եղի վերջաւորութեամբ ածականներ՝ որոնք դերբայ կը համարուին ։*

*Ող եւ ած բայածականներէ ձեւացած աշխարհաբար խօսքերը գրաբարի մէջ ընդհանրապէս որ յարաբերականի հետ գլխաւոր բայով մը կը բացատրուին, զոր օր. Եկող մարդն, այրն որ եկն. շինած գիրքս, մատեանն զոր յօրինեցի ։*

**Հարցարան.** — *Դերբայ* որն կ'ըսուի. — Ի՞նչպէս կը հոլովին անորոշ եւ անցեալ դերբայները. — Ապառնի դերբայը քանի՞ տեսակ է. — *Լի* վերջաւորող բայածականն ինչպէս կը գործածուին. — *Ող* վերջաւորած բայածականները ինչպէս կը հոլովին. — *Ող* եւ *ած* բայածականներէ ձեւացած աշխարհաբար խօսքերն ինչպէս կը բացատրուին.

**Հրահանգ 126.** — Վերլուծեցէք հետեւեալ նախադասութիւնները. — *Բայց հարկ է ախտացելոյն յիմեքէ ախտանալ. — Քանզի եւ կերակրի եւ աճէ եւ յածի եւ շունչ առնու, որ եւ մանաւանդ է նշանակ կելոյն. — Աղբիւր պարտիզաց, ջրհոր ջրոյ կենդանւոյ եւ հոսեցելոյ ի Լիբանանէ. — Քրիստոս՝ գլուխ զկեցեալսն ընդ Քրիստոսի. — Ո՛չ արժէն չարչարանք ժամանակիս զհանդերձեալ փառսն, որ յայտնելոց են ի մեզ. — Այս վըկայէ բանիցս ասացելոց. — Կաքաւ կարէ կեալ առանց ըմպելոյ. — Ծիծաղելւոյ անձին կենդանւոյ (կապկի) ծիծաղելի պիտոյ է տալ եւ զմարմնոյն կազմութիւն. — Զխորհուրդս մտացն մեռուցանելով, ոչ խորհել զերկրաւորս, այլ զերկնայինսն. — Օրհնեցէք զհալածիչս ձեր. — Ուրախ լե՛ր, բերկրեալդ. — Ժամանակի պէտք են ասելոյ զայս ամենայն. — Կօշկօք արդարութեան ամրացեալք՝ անկասկած են ի թիւնից խածանող օձին. — Յաճախեա՛ խորհել նախ քան զառնելն ։ — Ոչ եթէ որ*

*լսելիք օրինացս են՝ արդարացեալ են առաջի Աստուծոյ, այլ առնելիք օրինացն արդարասցին։ — Խորհուրդ չար խորհեցելոյն իւրոյ է խիստ չար։*

**Հրահանգ 127. — Գրաբարի վերածեցէք. —** *Մարդ առանց կերակրոյ չկրնար ապրիլ. — Կապելու եւ արձակելու իշխանութիւն ունէր. — Հիները կը կարծէին թէ Ատլաս լեռը իր ուսերուն վրայ կը կրէ (բարձեալ ունել) երկինքը. — Լսելով այդ ամենը՝ զարհուրեցան. — Հրաման ըրին ինկածները վերցընել եւ թաղել. — Պէտք է ուղիղ երթալ՝ ոչ յաջ եւ ոչ յահեակ մոլորելով (խոտորել). — Անոր շնորհաց արժանանալ՝ ի՜նչ փառք. — Տրտմելով լսեց իր որդւոյն մահուան գոյժը. — Իմացեալ մահը մահ է, մահ ոչ իմացեալ անմահութիւն է. — Ի՞նչպիսի ներման (ներել) արժանի է. — Աշխատողներուն (աշխատեալք) հրամայեց հանգիստը, եւ ոչ որդնապարար մարմնասէրներու. — Մեռեալը տապանին մէջ կայ անշարժ. — Սոկրատ կ'ըսէ. Լաւագոյն համարէ՛ լաւ մեռնիլը քան չարաչար ապրիլ. — Ոչ երիվար առանց սանձուց եւ ոչ իմաստութիւն առանց խելաց կ'ստացուի (ստանալի է). — Երկրին ցրուածները ժողվեց։*

---

## ԲԱՅԻՑ ԲԱՂԱԴՐԵԱԼ ԺԱՄԱՆԱԿՆԵՐԸ

*Բայերուն անցեալ եւ ապառնի դերբայներն, էական բային ներկային, անկատարին եւ ստորադասականին հետ գործածուելով՝ յետադաս բաղադրեալ ժամանակները կը կազմեն.*

**Յարակատար**

| | | | |
|---|---|---|---|
| Եզ. | *Սիրեալ եմ* | *Սիրեալ ես* | *Սիրեալ է* |
| Յոգ. | *Սիրեալ եմք* | *Սիրեալ էք* | *Սիրեալ են* |

**Գերակատար**

| | | | |
|---|---|---|---|
| Եզ. | *Սիրեալ էի* | *Սիրեալ էիր* | *Սիրեալ էր* |
| Յոգ. | *Սիրեալ էաք* | *Սիրեալ էիք* | *Սիրեալ էին* |

**Ստորադասական Անցեալ**

| | | | |
|---|---|---|---|
| Եզ. | *Սիրեալ իցեմ* | *Սիրեալ իցես* | *Սիրեալ իցէ* |
| Յոգ. | *Սիրեալ իցեմք* | *Սիրեալ իցէք* | *Սիրեալ իցեն* |

**Ներկայ Ապառնի**

| | | | |
|---|---|---|---|
| Եզ. | *Սիրելոց եմ* | *Սիրելոց ես* | *Սիրելոց է* |
| Յոգ. | *Սիրելոց եմք* | *Սիրելոց էք* | *Սիրելոց են* |

**Անկատար Ապառնի**

| | | | |
|---|---|---|---|
| Եզ. | *Սիրելոց էի* | *Սիրելոց էիր* | *Սիրելոց էր* |
| Յոգ. | *Սիրելոց էաք* | *Սիրելոց էիք* | *Սիրելոց էին* |

**Ստորադասական Ապառնի**

| | | | |
|---|---|---|---|
| Եզ. | *Սիրելոց իցեմ* | *Սիրելոց իցես* | *Սիրելոց իցէ* |
| Յոգ. | *Սիրելոց իցեմք* | *Սիրելոց իցէք* | *Սիրելոց իցեն* |

*Հայերէնի մէջ բուն ապառնի ժամանակ ցուցնելու համար* ներկայ *ապառնի բաղադրեալ ժամանակը կը գործածուի ։ Օրինակ կ'ըսուի ․ Պիտի երթամ — երթալոց եմ․ պիտի գամ — գալոց եմ, եւայլն ։*

**Հարցարան** . — Որո՞նք են բայից *բաղադրեալ ժամանակները* . — Բուն ապառնին ո՞ր ժամանակն է ։

**Հրահանգ 128. — Լուծեցէք հետեւեալ նախադասութիւնները.** — *Գալոց է նովին մարմնով. — Տեսեալ էի զնա բազում անգամ. — Երանի՛ ամենեցուն՝ ոյք յուսացեալ են ի Տէր. — Օրհնութիւն հօրն մերոյ Ներսիսի հանգուցեալ էր ի վերայ մեր. — Աստուած փառաւորեալ է ի խորհուրդս սրբոց իւրոց. — Ծաղկեալ էր ուսումնասիրութիւն յաշխարհին. — Յորժամ դարձան յուղեւորութենէն, վախճանեալ էին սուրբքն. — Բառնալոց է քահանայութիւն յազգէ սրբոյն Գրիգորի. — Երբայեցւոցն պարգեւեալ եղեւ գիր յԱստուծոյ ի ձեռն Մեծին Մովսիսի. — Իսկ քեզ մինչեւ ցկատարումն աշխարհիս որ ինչ լինելոց է՝ եցոյց զամենայն. — Բացեալ է դուռն շնորհի ողորմութեան նորա առ ամենեսեան ոյք սիրեն զնա. — Ջնջեալ են նոքա ի դպրութենէ երկնից բարութեանցն. — Դառն ագահութեամբ զբաղեալ էր. — Զի ասացին թէ ինքեանք չեն ուսեալ:*

**Հրահանգ 129. — Գրաբարի վերածեցէք.** — *Պատուէր եղած էր ամէն բան պատրաստել. — Կը յիշեցնեմ ձեզ, վանականներուն, թէ հրաժարած էք երկրաւոր կեանքէ. — Որոց անունները գրուած են կենաց գրքին մէջ (ի դպրութիւն). — Պիտի անցնի եւ անկէ նշան մը չպիտի մնայ. — Ընդունած էր բայց կը ծածկէր ամենէն. — Ինչ որ պիտի տար, առաջուց (յառաջագոյն) կը պատրաստէր. — Գողցած էր, բայց կ'ուրանար. — Եւ Յուդա՝ որ Յիսուսը պիտի մատնէր. — Պիւթագոր աշակերտներուն պատուիրած էր մսէ հրաժարիլ. — Յայտնած է նա ինձ ամէն գաղտնիք. — Լսած էր բայց չէր հաւատար. — Շատ փափաքած էր ատոր. — Եթէ Պարսկաստան (ի Պարսիկս) ծնած ըլլայիր. — Անոր որդին մեռած էր. — Յեսանը սորված չէ (բնաւորեալ ոչ է) կտրելու,*

*այլ սուրը սրելու, որպէս զի կարէ (առ ի հատանել)։ — Ես Տիրոջ (ի Տէր) յուսացած եմ։*

## ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

## 52. ՑԼԱԳԼՈՒԽՆ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ

Իբրեւ եղեւ Աղեքսանդրոս չորեքտասանամեայ, ի միում աւուր դէպ եղեւ նմա անցանել ընդ այն տեղիսն՝ ուր էր ցլագլուխ ձին յարգել արկեալ։ Եւ լուաւ նա զահագին խրխնջիւն նորա, դարձաւ ի մանկտին Փիլիպպոսի, որ պահէին զնա, եհարց և ասէ. Զի՞նչ է գոչիւնս այս։ Եւ զհետ երբայր նորա Պտղոմէոս, որ յետոյ փրկիչն կոչեցաւ, ասէ ցնա. Տէր, ցլագլուխ ձին է այն, զոր հայրն քո արգելեալ փակեաց, առ ի սպատուհասել զյանցաւորս, վասն զի մարդակեր է։ Եւ լուեալ ձիոյն զխօսելն Աղեքսանդրի, երկրորդ անգամ խրխնջեաց ահագին և խրոխտ, այլ քաղցր և գաղտ։ Եւ Աղեքսանդրի տեսեալ զնորա նորոգ դէմսն և զնշխարս ոսկերաց բազում մարդկան՝ ողորմէր. և բացեալ զերկաթի ախեալ դուռս վանդակին, բուռն հարեալ զպախուցոց նորա՝ հեծաւ ի վերայ առանց սանձուց։ Եւ անդէն վաղվաղակի ընթացեալ ոմն պատմեաց Փիլիպպոսի հօր նորա, և նորա յիշեալ զպատգամն՝ որ ունի այսպէս. Հեծեալն ի ցլագլուխ ձին՝ հնազանդեցուցէ զամենայն ոք. և փութացեալ ընդ առաջ որդւոյն իւրոյ և պատահեալ նմա և ողջոյն տուեալ ասէ. Աշխարհակալդ Աղեքսանդրէ, խնդա և ուրախ լեր։ Եւ զուարթ և խնդամիտ Էր Փիլիպպոս ի յոյս որդւոյն և կայր մնայր թէ զի՞նչ լինիցի։

*Յարգել արկեալ*, արգիլուած.
*Գոչիւն*, աղաղակ.
*Ախել* կամ *աղխել*, կղպել. *ախեալ*, կղպուած.
*Բուռն հարկանել*, բռնել.
*Պախուց*, սանձ.
*Խնդամիտ*, ուրախսիրտ.
*Կալ մնալ*, սպասել։

# ԳԼՈՒԽ Զ.

---

## ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

*Եւ Յիսուս չոգաւ անտի հանդերձ աշակերտօք. — Մի լինիր ընկեր ընդ առն բարկացողի։*

*Այս խօսքին մէջ այլեւայլ գոյականներ կան, որոնք եթէ իրենց սկզբնական ձեւով դրուած միայն, անհասկընալի կ'ըլլային. որովհետեւ չէինք կրնար հասկընալ թէ ինչ յարաբերութիւն ունին մէկմէկու հետ, աշակերտ, առն բառերն։ Բայց աշակերտօք բառին առջեւ դնելով հանդերձ, կը հասկընանք թէ աշակերտներով մէկտեղ գնաց Յիսուս. — Նոյնպէս առն բառին առջեւ դնելով ընդ նախադրութիւնը, դիւրին է հասկընալ թէ բարկացող մարդու հետ։*

*Նախադրութիւն կ'ըսուին այն խնդրառու բառերն, որոնք յարաբերութեան կամ գործողութեան պարագաները կը ցուցնեն. զորօր. Գնայր առ տանուտէրն. գնացողին՝ տանուտէրին հետ ունեցած վերաբերութիւնը կը ցուցնէ. — Խօսէր ընդ նմա, խօսելու գործողութեան մէջ անոր հետ ունեցած վերաբերութիւնը կը յայտնէ։*

*Նախադրութիւնները այլ եւ այլ հոլովներով խնդիր կ'առնուն։*

*Նախադրութեան գլխոյն կը վերաբերին Նախդիրները, այսինքն այն ամէն մասնիկներն, որոնք անուանց եւ դերանուանց քով դրուելով այլ եւ այլ նշանակութիւններ կուտան։*

*Նախդիրը հոլովակերտ է, այսինքն հոլով կը շինէ. իսկ Նախադրութիւնը հոլովառու է, այսինքն հոլոված բառ մը հետ կ'ուզէ։*

*Բուն նախդիրներն են զ, ի, յ, ց, առ, ընդ, ըստ։*

**Հարցարան**. — *Նախադրութիւն* ո՞րն կ՚ըսուի. — Նախադրութիւններն քանի՞ հոլով կ՚առնուն. — *Նախդիր* ո՞րն կ՚ըսուի. — Ինչո՞ւ նախդիրն *հոլովակերտ* կ՚ըսուի եւ նախադրութիւնն՝ *հոլովառու*. — Բուն նախդիրներն որո՞նք են։

## Զ ՆԱԽԴԻՐ

*Զ նախդիրն՝ որ հայցական կը շինէ, կը դրուի նաեւ աննախդիր բացառականի եւ գործիականի վրայ եւ կ՚ըսուի զ նախդրիւ բացառական եւ զ նախդրիւ գործիական։*

*Զ՝ աննախդիր բացառականով կը նշանակէ անձի մը կամ բանի մը վրայով, զորօր. Տրտնջել զնմանէ։*

*Զ նախդիրը սեռական հոլովով կը գործածուի ընդհանրապէս հարկանել բային հետ, զորօր. Հարկանել զամօթի, զքարի, զահի, զգետնի։*

*Կախել, ունել, բուռն հարկանել, զոհանալ բայերն զով աննախդիր բացառական հոլով խնդիր կ՚առնուն եւ աշխարհաբար բացառական կը թարգմանուին, զորօր. Կախել զփայտէ, կալեալ զձեռանէ։*

*Զ՝ գործիականով կը նշանակէ. 1. Բոլորտիքը, 2. Անորոշ ժամանակ. զորօր. Շուրջ եղեն զինեւ. նոյնպէս կ՚ըսուի. վաղեաց զինեւ, զգետով. վրայէս, գետէն ցատկեց։*

*Զայնու ժամանակաւ, զմիջաւուրբ, եւայլն։*

*Զ նախդրիւ գործիական կը գործածուի արկանել, անկանել, ածել, անցանել, ծիծաղել բայերուն հետ. զորօր. Արկաւ զխուրիւ զփածանելին, քանզի մերկ էր. — ածել զբոցով։*

**Հարցարան**. — Զ նախդիր քանի՞ հոլով կը շինէ. — Զ նախդիրը ի՞նչ հոլովներուն հետ կը գործածուի. — Բացառականով, գործիականով ի՞նչ կը նշանակէ։

**Հրահանգ 180. — Լուծեցէք հետեւեալ նախադասու-
թիւնները.** — *Հարայ զգետնի. — Զդիմի հարաւ դիւին.
— Նորա ոգին կախեալ կայ զդորա ոգւոյդ. — Բուռն ե-
հար հրեշտակն զգագաթանէ նորա եւ կալաւ զվարսից
գլխոյ նորա. — Ցարեայ ընհատարակի գիշերաւ. — Արկին
զնովաւ ձորձս. — Զնովկիմբ ածեալ ասէ. — Քող արկ զե-
րեսօք իւրովք. — Անցուցեր զամենեքումբք. — Սար-
սափիւն գայ զոսկերօքն. — Ունիցի ինչ խէթ դքէն. —
Ետես կախեալ խոյ մի զծառոյն Սաբեկայ զեղջերացն.
— Եւ այնու կենդանութեամբ ամենայն արարածք զնո-
րա բնութենէն կախեալ կան, որպէս ճառագայթք ա-
րեգական զանուէն կախեալ կան. — Լսեմք բազում ինչ
զնմանէ. — Հողագործն մշակէ զերկիր. — Եղբարքն
Յովսեփայ բերէին համբաւ չար զնմանէ. — Ծիծաղին
զինեւ թշնամիք իմ. — Զայնու ժամանակաւ Ներոն յա-
րոյց հալածանս. — Աստ արկեր զգաղխ գլուխս, բայց
թէ ժողովել կարիցես, մեծ զարմանք են. — Անցեալ էին
զաւուրբք (ծերացած). — Որ զնովաւն կային. — Ան-
ցանեն զերդմամբ. — Զորձ զգլխով արկեալ ակն ու-
նէր մահու. — Ամպ եւ մէգ է շուրջ զնովաւ. — Արկ
զերեսօք զաստուածատիպ պատկերն՝ որ նկարեալ էր ի
դաստառակին. — Բուռն հարեալ զինէն կանգնեաց զիս։*

**Հրահանգ 181. — Գրաբարի վերածեցէք։** — *Քաղքին
բոլորտիքը կը պտըտին. — Անոր վրայով կը չարախօ-
սէին. — Իմ վրայովս, քու վրայովդ, անոր վրայով. —
— Անոր բոլորտիքը մեծ բազմութիւն կար. — Ժամը ին-
նին պիտի գամ (զինն ժամու). — Կէս գիշերուան ա-
տեն. — Կէս օրուան ատեն մարդ չիկար. — Անոր պատ-
ուէրը չպահեց (անցանել զպատուիրանաւ). — Անոր
վրայ կը ծիծաղին. — Շատ ձմեռներ վրայէս անցաւ եւ*

*տեսայ բազում գարուններ. — Սոկրատ բանտին մէջ մեռաւ՝ իր բոլորտիքն եղող աշակերտաց հետ հոգւոյ անմահութեան վրայ խօսելով. — Հրամայեց հանել այն բարձր աշտարակէն եւ սպաննել. — Ոտքերէն կապ կապեցին (արկանել կապ). — Իր անձին նկատմամբ անօրէնութիւններ խօսեցաւ. — Եւ անոր շուրջը եղողները դուրս ելան. — Եւ այսպէս վրայ բերելով կ՚ըսէ. — Ոտքը ոտքին վրայ դրած, արմուկը ծունկին (ի ծունգն) եւ ձեռքը ծնօտին (ի ծնօտին) նստաւ այնպէս. — Ոսկորները դող (սարսափիւն) կ՚իյնայ. — Կապեցին կախեցին Գրիգորիս մանուկը ձիուն պոչէն։*

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

## 53. ԶՈՐԵՑՈՒՆՑ ԵՂԱՆԱԿԱՑ ԸՆԴ ՄԻՄԵԱՆՍ ՎԷՃ

Նամիշտք արփւոյն չորեքին
Որ իշխեցօղք են տարւոյն,
Մին՝ որ ի ճեմ իւր ոտին
Պըճնէ զարօտ երփն ի գոյն։

Երկրորդն ի շող բոցակէզ,
Միւսն ողկուզօք սիգաճեմ,
Չորրորդն ի ձեանց բազմեալ դէզ
Տային միմեանց վէճ ընդդէմ։

Նորափետուր, մին, ինև
Ասէր, երկիր զարդարի.
Միւսն այն՝ թէ զհասկ ոսկեձև
Ես ներկանեմ ի վայրի։

Նախանձընդդէմ երկոցուն
Անդուստ և միւսըն պանծայր,
Գոյլ լուսատու ձիթենւոյն
Եւ զուարթարար որթոյ մայր։

Չորրորդն յայնժամ դաշն և հեզ
Ձայնեալ առ քորսն իւր ասէր.
Թող արմըտիք կացցեն ձեզ,
Ծաղկունք և կութք այգեբեր։

Այլ տէրն ի գալ իւր յաշխարհ
Առ ի ծնանել տղայաբար
Նախամեծար զարհամարհ
Սառամանիս իմ արար։

**Նաժիշտ**, աղախին.
**Արփի**, արեւ.
**Ձեմ**, քալուածք.
**Երփն**, գոյն.
**Սիգաճեմ**, հպարտութեամբ քալող.
**Դէզ**, կոյտ.
**Նախանձընդդէմ**, իրարու դէմ նախանձող.
**Դաշն**, քաղցր.
**Արհամարհ**, անարգ։

## Ի կամ Յ ՆԱԽԴԻՐ

*Ի կամ յ նախդիրն անորոշ հայցականով շարժում ցուցնող բայերու քով կը գործածուի . զորօր. Մտանել ի տուն , ելանել յաշտարակն ։*

*Շարժում ցուցնող բառն դէպի ո՛ւր հարցմամբ կը ճանչցուի ։ Իսկ եզ. որոշականով դադարում ցուցնող բայերուն քով կը գործածուի . զորօր. Նստել ի տան , մնալ ի քաղաքի ։ Դադարում ցուցնող բառն ո՞ւր հարցմամբ կը ճանչցուի ։*

*Չորրորդ , հինգերորդ եւ վեցերորդ ( Գետ, Հռովմ եւ Գայիանէ ) հոլովմանց այէս հոլովող անուններն ի նախդրիւ անորոշ հայցական կը դրուին դադարում ցուցընող բայերու քով ալ . զոր օր. Երթալ ի Հռովմ, Նստել ի Հռովմ ։*

*Յոգնակի բառերն ի նախդրիւ հայցական կը դրուին թէ՛ դադարում եւ թէ՛ շարժում ցուցնող բայերու քով. զոր օր. Բնակել յապարանս ։*

*Ի կամ յ նախդրիւ անորոշ հայցականը կը գործածուի գործիական հոլովի տեղ. զոր օր. Ի ձայն մեծ, ի սիւն ամպոյ, ի սուր սուսերի, կը թարգմանուին մեծ ձայնով, ամպէ սիւնով, սրով ։ Ի կամ յ նախդրի այս գործածութիւնն որո՞վ կամ ի՞նչ բանով կը ճանչցուի ։*

*Ի կամ յ նախդրիւ անորոշ հայցականն վասն, համար, նշանակութիւնը կ'ունենայ, զոր օր. Ի պէտս, գործածութեան համար ։ Այս գործածութիւնը մանաւանդ բայանուններու հետ յաճախ է ։*

*Դարձեալ ի նախդրիւ եզ. տրականն՝* ատեն *կը ցուցնէ, զոր օր. Ի նեղութեան խմում, ի հարսնութեան Սաթենկան ։*

*Ի կամ յ նախդիրն անորոշ դերբայներու հետ գործածուելով* ատեն *կը նշանակէ, զոր օր. Ի ծնանելն Յիսուսի ։ Ատեն ցուցնող նախադրութիւնն ե՞րբ հարցումով կը ճանչցուի ։*

**Հարցարան.** — *Ի* կամ *յ*՝ շարժում ցուցընող բայերու քով ինչ հոլով կ'առնու. — Դադարում ցուցընողներու քով ինչ. — Դ. Ե. եւ Զ. հոլովմանց պէս հոլովող անուններ ինչ հոլով կ'առնու. — *Ի* կամ *յ* նախդրիւ անորոշ հայցականը ինչ հոլովի տեղ կը գործածուի. — Ո՞ր նախադրութեան տեղ կը գործածուի. — *Ի* կամ *յ* եզ. տրականով ինչ կը ցուցնէ. — Անորոշ դերբայներու հետ ինչ նշանակութիւն կ'ունենայ ։

**Հրահանգ 182. — Լուծեցէք հետեւեալ նախադասութիւնները.** — *Խօսեցաւ նա զնոյն բանս ի բարբառ Հռովմայեցւոց. — Զայս ասացի քեզ ի խրատ. — Զոգան ի տուն. — Հեծեալ էր ի ջորւոջ. — Սա եղեւ ի փրկութիւն Իսրայելի. — Կատարեցաւ ի տեղւոջն. — Խնայեա՛ յիս. — Եւ ի լեառն ձիթենեաց. — Դրօշմեցի զանունն*

*տարփելի ի սրտի իմում. — Ի թագաւորութեան Սողոմոնի. — Ի միասնութեան եղբօր իմոյ. — Այս է ի փառս Աստուծոյ. — Պատուեա՛ զբժիշկ ի պէտս անձին քո. զի եւ նա յԱստուծոյ արարեալ է. — Բազում մոլեալք դարձցին ի ճանապարհս ճշմարտութեան. — Զաքէ՛, փութա՛ էջ այտի, զի այսօր ի տան քում արժան է ինձ ագանել. — Ած զնա ի պանդոկ մի. — Գթացաւ ի նա. — Առաքեաց զնոսա յայգի իւր. — Եղբայր քո եմուտ ի պարտէզ. — Զմեծն Գրիգորիոս պահեաց անարատ ի խոր վիրապին. — Մկրտէր զնոսա յանուն սուրբ Երրորդութեանն. — Քրիստոս ծնաւ ի կուսէն ի կերպարանս մարդոյ. — Ընկալար զՔրիստոս ի գբին տառապանաց. — Լսելի եղեւ ձայն բարբառոյ յանապատին. — Ի հովուութեան Նորա բազում խաղաղութիւն լինէր աշխարհին. — Շնորհքն այնպէս հանգեաւ ի նմա զի մեծամեծ նշանս եւ բժշկութիւնս առնէր հիւանդաց:*

**Հրահանգ 188.** — Թարգմ. ի գրաբար. — *Մովսէս եւ Ահարոն վկայութեան խորանը փախան. — Մեծ հանդէս կար այդւոյն մէջ. — Մէկն իր ագարակը եւ մէկը շուկան (ի վաճառ) գնաց. — Հեռու աշխարհ գնաց. — Այն աշխարհին մէջ սաստիկ սով եղաւ. — Նա մեծ սուգի մէջ էր. — Երբ խօսքն աւարտեց՝ լեռն ելաւ. — Եւ գանձը Պարսից արքունիքը կերթար. — Ապարանքը կը բնակէր. — Եգիպտոս բնակեցաւ. — Թռչունները օդին մէջ կը բնակին. — Սուրհանդակին դառնալու ատեն. — Սկսան բարձր ձայնով ողբալ անոր մահը. — Բաշխեց անոնց շատ պարգեւներ. — Սոսկական մարդու կերպարանքով երեւցաւ նա. — Անոնք՝ որ միջնաբերդին մէջ ամրացած էին, սկսան սովէ նեղուիլ. — Եւ այս ամէնը եղաւ անոր ծննդեան տօնի օրը. — Եւ իշխանը բարձր*

*տեղն մը վրայ իր վրանը դրած էր (հարկանել զխորան) — — Եւ նա զԱստուած օգնութեան կոչեց ։*

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

## 54. ԱՆՑՔ ԻՍՐԱՅԵԼԱՑԻՈՑ ԸՆԴ ԾՈՎՆ ԿԱՐՄԻՐ

Օրհնեսցուք զՏէր, զի փառօք է փառաւորեալ, զերիվարս եւ զհեծեալս նոցա ընկէց ի ծով . . . խորք ծածկեցին զնոսա, ընկլան յանդունդս իբրև զվէմս. . . ։ Աջ քո, տէր, փառաւորեալ է զօրութեամբ իւրով, աջ քո, տէր, խորտակեաց զթշնամիս, առաքեցեր զբարկութիւն քո, և եկեր զնոսա իբրեւ զեղէգն և հողմով սրտմտութեամբ քո պատառեցան ջուրք, պաղեցան որպէս պարիսպ ջուրք, պաղեցան ալիք ի մէջ ծովուն . . . ։ Առաքեցեր զհողմն քո և ծածկեաց զնոսա ծով, ընկղմեցան որպէս կապար ի ջուրս սաստիկս։ Ո՞վ իցէ նման քեզ յաստուածս, տէր, և կամ ո՞վ նմանիցէ քեզ փառաւորեալդ ի սուրբս սքանչելի փառօք, որ առնես զնշանս. ձգեցեր զաջ քո, և եկուլ զնոսա երկիր . . . լուան ազգք և բարկացան և երկունք կալան զբնակիչս Բանանացւոց . . . ։ Անկցի ի վերայ նոցա ահ և երկիւղ. մեծութեամբ բազկի քո քարասցին, մինչեւ անցցէ ժողովուրդ քո, տէր, մինչեւ անցցէ ժողովուրդ քո այս՝ զոր ստացար։ Տարեալ տընկեսցես զնոսա ի լեառն ժառանգութեան քո. տէր թագաւոր յաւիտեան և յաւիտեան և ևս. զի մտին երիվարք Փարաւոնի կառօք և հեծելովք նորա ի ծով, և ած ի վերայ նոցա տէր զջուրս ծովուն և որդիքն Իսրայելի գնացին ընդ ցամաք ի մէջ ծովուն։

*Պաղիլ*, սառիլ.
*Ձգել* (զաջ), երկնցնել.
*Երկունք*, վիշտ, տառապանք.
*Ընդ ցամաք*, ցամաքէն.

**Դիտելիք.** — *Այսր, անդր, այդր, աստ, անդ, աստի, անտի, այտի մակբայները գոյականներու հետ այսայդ, այն ցուցական ածականներուն տեղ կը գործածուին։*

*Այսր, այդր, անդր՝ ի կամ յ նախդրիւ անորոշ հայ-*

ցականներուն քով կը դրուի ․ աստ , անդ՝ ի կամ յ նախադրիւ տրականներու քով , եւ աստի, անտի , այտի՝ բացառականներու քով ։

| Զորօր. | Փոխանակ ըսելու | Կ'ըսենք |
|---|---|---|
| Ի կամ յ նախադրիւ անորոշ հայցական | ի պարտէզն յայն | ի պարտէզ անդր |
| | ի պարտէզդ յայդ | ի պարտէզ այդր |
| | ի պարտէզս յայս | ի պարտէզ այսր |
| Ի կամ յ նախադրիւ տրական | ի տանն յայնմիկ | ի տան անդ |
| | ի տանս յայսմիկ | ի տան աստ |
| բացառական հոլովներու քով | ի քաղաքէդ յայդմանէ | ի քաղաքէ այտի |
| | ի քաղաքէն յայնմանէ | ի քաղաքէ անտի |
| | ի քաղաքէս յայսմանէ | ի քաղաքէ աստի |

**Հրահանգ 184**․ — Լուծեցէք հետեւեալ նախադասութիւնները․ — Վաղիւ երթիջիք ի քաղաք անդր․ — Ցորէ անտի ոչ ոք երեւեցաւ․ — Ժողովեալ էաք ի տաճարին ի տօնի անդ․ — Եւ ասէ Տէր ցՆոյ․ Ե՛լ ի տապանէ այտի․ — Ելին գազանք յանտառէ անտի․ — Բանակեցաւ զօրն ի դաշտի անդ․ — Եւ ահաւասիկ ի խորանի անդ է․ — Ե՛կ մո՛ւտ դու ի տուն այսր․ — Ոչ ոք մնասցէ ի քաղաքի աստ․ — Մի՛ ի տօնի աստ․ — Զգոյշ լերո՛ւք ի շանց անտի․ — Մեզ յանապատի աստ ո՞ւստի իցէ այնչափ հաց․ — Թերեւս ամաչեսցեն յորդւոյ աստի իմմէ․ — Խռնեցաւ ամբոխն ի գաւթի անդ․ — Գրիգոր ել ի վիրապէ անտի․ — Կինս զոր ետուր ընդ իս , սա ետ ինձ ի ծառոյ անտի եւ կերայ․ — Մի՛ մերձենար ի տուն այդր․ — Հեռացաւ յարանց այտի․ — Արար նա ընդունելութիւն մեծ ի տան անդ ։

**Հրահանգ 185**․ — Վերածեցէք ի գրաբար․ — Անոր

այն խօսքերէն վախցաւ. — Այն պտուղէն մի՛ ուտէք. — Այն քաղաքը գնա՛. — Այդ անտառը մտի՛ր. — Այդ հացէն մի՛ ուտեր. — Այն բազմութեան մէջ կոյր մը կար. — Բազմութենէն մէկը առաջ եկաւ (յառաջ մատեաւ). — Այն գաւթին մէջ ջրհոր մը կար. — Անոր աշակերտներն այն քաղաքը գացած էին. — Այն ջրհորէն ջուր հանեց. — Այս տունն եկո՛ւր. — Վաղը կը մտնենք այն քաղաքը. — Փախաւ այն կրակէն. — Այն տանը մէջ խաղաղութիւն չկայ. — Այս հիւանդութեան մէջ կարելի չէ ուրախ ըլլալ. — Եւ անիկա այն բարձր տեղէն վար ինկաւ (ի բարձունէ). — Այն այգիին մէջ աղբիւր մը կար. — Այն սովին ատենը շատեր մեռան. — Այն օրէն (ի վեր) ոչ ոք կը համարձակի։

## Ց ՆԱԽԴԻՐ

Ց նախդիրը առեմ, տամ, հարցանեմ բայերուն հետ կը գործածուի, զոր օր. Առէ ցնա, հարցին ցնա, տուք զդա ցտեարս իւր։

Ց նախդիրը աննախդիր հայցականի հետ մինչեւ կը նշանակէ, զոր օր. Երթիցուք ցԲեթղեհէմ։

**Հարցարան**. — Ց նախդիրը ո՞ր բայերուն հետ կը գործածուի. — Ց նախդիրը ո՞ր հոլովով ինչ կը նշանակէ։

## ԱՌ ՆԱԽԴԻՐ

Առ՝ աննախդիր հայցականով դէպի անձ մը շարժում ընել կը նշանակէ, զոր օր. Եկն առ իս, առ դատաւորն։

Գրաբարի յատուկ զրուցուածք են հետեւեալները. Առ այր, մարդ գլուխ. առ մի օր, մէկ օրուան համար։

*Առ նախդիրը սեռականով, հայցականով եւ բացառականով համար կամ պատճառաւ կը նշանակէ եւ աշխարհաբար բացառական կը թարգմանուի, զոր օր. Առ ահի, առ ամօթոյ, առ սէր, առ ի չգոյէ. վախէն, ամօթէն, սիրելէն, չըլլալէն ։*

*Առ՝ եզակի տրականով կը նշանակէ քովը, զոր օր. Նստէր առ դրան, դրան քով. առ դատողին, դատողին քով ։*

*Առ՝ նախդիրը բացառականով կողմն կը նշանակէ, զոր օր. Անհնարինքն առ ի մարդկանէ, մարդոց կողմէն անհնար եղածները ։*

*Առ նախդիրը գործիականով կը նշանակէ. 1. Ատեն, զոր օր. Առ Սողոմոնիւ, Սողոմոնի ատենը ։*

*2. Քովը, քովն ի վեր, զոր օր. Առ եզերբ, առ ճանապարհաւ. եզերքն ի վեր, ճամբուն քով ։*

*3. Բաղդատութիւն. — Զոր օր. Զի՞նչ է յարդ առ ցորենով, յարդը ցորենին նայելով ի՞նչ է ։*

*Առ կամ առ ի՝ աներեւութի հետ վասն, համար կը նշանակէ, զոր օր. Առ ի խնդրել կամ լոկ ի խնդրել ։*

*Ունել բայն առ նախդրիւ անորոշ հայցական խնդիր կ'առնու եւ համարիլ կը նշանակէ, զոր օր. Առ մեծ ոք ունի զքեզ ։*

**Հարցարան**. — *Առ* նախդիրն աննախդիր հայցականով ինչ կը նշանակէ. — *Առ* նախդիրը սեռականով հայցականով եւ բացառականով ինչ կը նշանակէ. — Տրականով ինչ կը նշանակէ. — Դարձեալ բացառականով ինչ կը նշանակէ. — Գործիականով ինչ կը նշանակէ. — Աներեւոյթի հետ ինչ կը նշանակէ. — Ունել բայն *առ* նախդրիւ ինչ կը նշանակէ ։

**Հրահանգ 186**. — Լուծեցէք հետեւեալ նախադասութիւնները. — *Առ տեղ սատակեցան. — Անց առ նովաւ. — Ոչ ելին արտաքս առ ահին Հրէից. — Երթայր*

*Դաւիթ առ լերամբ. — Առ սէր ընչից չոգաւ զիւրովին (ինքզինքն սպաննեց). — Առ մեզ ագի՛ր զայս գիշեր. — Հանգեան առ ճանապարհաւն. — Գնացէ՛ք ի քաղաք առ այս անուն. — Շրջեցուցանէին զնա առ առակէ. — Կալան զնա առ լաւն. — Առ մեծ ոմն ունի զիս. — Երթայր առ ափն գետոյն. — Եթէ առցես կանայս առ դստերօք իմովք. — Ե՛րթ ցդրունս քաղաքին. — Ընդէ՞ր ցայդվայր ետուք ընթեռնուլ. — Կերան ցյագ. — Սաէ ցնա. — Ո՞վ ի ձէնջ առ հոգալ իւրում յաւելուլ կարիցէ ի հասակ իւր կանգուն մի. — Առ առն մեղաւորի եմուտ լուծանել. — Առ Սերուքաւ եղեւ սկիզբն հեթանոսութեան. — Ոսկի ցիս է առ այնու պնակաւ, եւ ականք պատուականք իբրեւ զկաւ առ այնու գեղեցկութեամբ. — Մի՛ գտցուք առ երախտաւորն ապերախտ. — Որպէս կաթ մի ջուր առ ծովուն ջրով, եւ որպէս ճրագ առ արեգակամբ. — Աղքատ ոք առ վշտին մատուցեալ աղաչէ վասն պատառոյ միոյ հացի. — Մի՛ առ արդարս ունիր զանձն քո առաջի Աստուծոյ:*

**Հրահանգ 187**. — — Վերածեցէք ի գրաբար. — *Ելնելով հօրը եկաւ. — Ղազարոս կը նստէր դրան քով. — Աղջիկը պատուհանին քովն էր. — Իմ քովէս անցաւ. — Վշտէն կը մարէր. — Տգիտութենէն այնպէս կը խօսի. — Եղբօրը գնաց. — Ամօթէն կը կարմրէր. — Հեթանոսութեան սկիզբը Թարայի ատեն եղաւ. — Զգիտնալով կերաւ. — Ես պէտք է որ քենէ մխիթարիմ եւ դուն ի՞նձ կուգաս. — Իսկ անոնք Քրիստոսի սիրոյն համար շատ ուրախութեամբ կ'ընդունէին ամէն չարչարանքներ. — Մէկը ճամբուն քով ինկաւ. — Մարդ անօթութենէն իր անձին կէսը կ'ուտէ. — Ագար նստաւ ճամբուն քով. — Վախէն կը դողար. — Հաց չըլլալէն. — Լերան քովէն*

կ'երթար. — Մարիամ կոյս եւ միւս Մարիամ խաչին քով կը կենային. — Սողոմոնի ատեն Աստուծոյ տաճարը շինուեցաւ. — Կաթ չըլլալէն այն բանին յօժարեցաւ. — Մեծի տեղ կը դնէ ինքզինքը. — Կուռքերն ոչ երբեք ճշմարիտ Աստուծոյ տեղ դրի։

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

### 55. ՏՈՒՆ ԽԱԲԵԱԼ

Աւելազանց տենչ զայր ագահ
Առնէ ի խաբըս դիւրասահ,
Ցինչս օտարին որկորուստ,
Զիւրըն մատնէ ի կորուստ։
Ընդ գետ ի լող անկեալ շուն,
Միս ի բերան յիւր ի չուն,
Ցառեալ ետես զըստուեր իւր
Ի հայելւոջ անդ ի ջուր։
Եւ համարեալ այլ իմն որս
Յորկոր այլոյ ջուրցն ի խորս,
Գրաւել և զայն ցանկացաւ,
Այլ ցանկութիւնն ինքնադաւ
Լիք զոր ունէրն ի բերան,
Եւ ոչ միւսումըն ժաման։

*Աւելազանց*, չափազանց.
*Որկորուստ*, որկրամոլ.

---

## ԸՆԴ եւ ԸՍՏ ՆԱԽԴԻՐՔ

*Ընդ նախդիրը եզակի եւ յոգնակի սեռականով կը նշանակէ տեղը. զոր օր. Ընդ նորա, անոր տեղ, ընդ Սողոմոնի, Սողոմոնին տեղ։*

*Ընդ նախդիրը եզակի տրականով եւ յոգնակի հայ-*

ցականով կը նշանակէ հետ. (դարձեալ կը նշանակէ մէկուն վրայ կամ մէկուն նայիլ, զարմանալ, եւայլն։) Զօր. Ընդ նմա, ընդ նոսա, անոր հետ, անոնց հետ։

Ընդ նախդիրն անմախնդիր հայցականով կը նշանակէ.

1. Բանի մը մէջէն կամ մէջտեղէն. զօր. Եւ ընդ քո անձն անցցէ սուր։

2. Կը նշանակէ տարածութիւն. զօր. Եւ համբաւ նորա ընդ ամենայն աշխարհ։

3. Դէպ այս ինչ ատեն. զօր. Ընդ այն ժամանակս, այն ատենները։

4. Շարունակութիւն ժամանակի. զօր. Ընդ ամս տասն։

5. Կողմէն. զօր. Ընդ արեւելս, ընդ հիւսիս։

6. Երբ խօսքը բան մը ուրիշ բանի կցելու, կապելու վրայ է. զօր. Կարել ընդ մորթ, կապել ընդ նաւն։

7. Ամենը մէկտեղ. զօր. Ընդ այր եւ ընդ կին։

8. Եւ շաղկապով կրկնուած երկու բանի մէջտեղն. զօր. Ընդ իս եւ ընդ քեզ, ընդ հովիւս իմ եւ ընդ հովիւս քո։

Ընդ՝ անմախնդիր եզ. բացառականով՝ կողմ նշանակութիւն ունի. զօր. Ընդ աջմէ։

Ընդ՝ գործիականով տակը՝ կը նշանակէ. զօր. Ընդ արեգակամբ։

Ընդը աներեւոյթով բան մը ըլլալուն պէս կը նշանակէ. զօր. Ընդ անցանելն, անցնելուն պէս։

**Ծանօթ.** — Կան շատ բայեր՝ (ընդհանրապէս ներքին զգածմունք ցուցնող), որոնք ընդ նախդրով հայցական խնդիր կ՚առնուն. զօր. Խնդամ, ուրախ լինիմ, նախանձիմ, նախանձ բերեմ, եւայլն։

Իսկ ըստ նախդիրը եզ. եւ յոգն. տրականով կը նշա-

նակէ համեմատ, չափովը. զոր օր. Ըստ գործոց քոց։

Ըստը աներեւոյթին տրականով եւ հայցականով կը նշանակէ աստիճանաբար, չափովը. զոր օր. Ըստ պակասելոյ ամացն. Տեղիք ինչ են ծովու, որոց ջուրն ըստ աճել լուսնոյ աճէ եւ ըստ պակասելն՝ պակասէ։

Ըստը անորոշ հայցականով կը նշանակէ. 1. Տեղւոյ կամ իրի մը սահմանեալ անդին. զոր օր. Ըստ երկիր անդր ոչինչ է։

2. Կը նշանակէ ամեն մէկ, մարդ գլուխ. զոր օր. Ըստ այր, ըստ բերան։

Ըստ՝ աննախդիր բացառականով յաջորդութեան նշանակութիւն ունի. զոր օր. Որ ըստ նմանէ էին։

Կ'ըսուի նաեւ. Ամ ըստ ամէ, մի ըստ միոջէ։

**Հարցարան.** — Ընդ նախդիրը սեռականով ինչ կը նշանակէ. — Եզ. տրականով եւ յոգ. հայցականով ինչ. — Աննախդիր հայցականով ինչ. — Գործիականով ինչ. — Աներեւութով ինչ. — Ըստ նախդիրը տրականով ինչ կը նշանակէ. — Աներեւութին տրականով կամ հայցականով ինչ կը նշանակէ. — Անորոշ հայցականով ինչ կը նշանակէ. — Աննախդիր բացառականով ինչ կը նշանակէ։

**Հրահանգ 188.** — Վերլուծեցէք հետեւեալ նախադասութիւնները. — Զանձինս իւրեանց միախառնակեցին ընդ Աստուծոյ ճշմարտութեան. — Ճարակեսցէ գայլ ընդ գառին. — Խօսեցաւ ընդ հրեշտակս. — Կիցի բարեխօս ընդ արարիչ եւ ընդ արարածս. — Նստաւ ընդ ահեկէ. — Ակն ընդ ական եւ ատամն ընդ ատաման. — Արասցուք ըստ բանի քում. — Պատմեաց մի ըստ միոջէ. — Զի՞նչ տացէ մարդ փրկանս ընդ անձին իւրոյ. — Եւ յիշեցից զուխտն իմ՝ որ ընդ իս եւ ընդ ձեզ. — Անց ըստ երդումն. — Ե՛րթ ըդրունս քաղաքին. — Ասէ ցնա. — Մի՛ երթար ընդ դուռն՝ որ ընդ արեւելս. — Ընդ ամե-

Նայն դատարկ բանի համար տացես . — Սիրեաց զնա Յովնաթան ըստ անձին իւրում . — Տուր ինձ տէր առնուլ պսակ ընդ այնոսիկ՝ որ արժանի արարեր մեռանել վասն անուան քո . — Կարծէին զնմանէ թէ ընդ ուղեկիցսն իցէ . — Խնդրէին խօսել ընդ նմա . — Ընդէ՞ր առակօք խօսիս ընդ նոսա . — Նստէին ընդ հովանեաւ ծառոց . — Նստէին ընդ աջմէ նորա եւ ընդ ահեկէ . — Մտէք ընդ նեղ դուռն . — Էին իբր հոգիք վեց հազար ընդ այր եւ ընդ կին եւ ընդ մանկտի . — Ոչ կարեմք ելանել ըստ հրաման թագաւորին . — Առաջնորդեա՛ մեզ ըստ կամաց քոց . — Անդ լինիջիր ցորժամ ասացից քեզ ։

**Հրահանգ 189** . — Վերածեցէք ի գրաբար . — Յիսուսի հետ կը խօսէին . — Մարդը մեր պատկերին համեմատ ստեղծենք (արարցուք) . — Անցաւ դռնէն . — Հօր աջ կողմը նստաւ . — Ստակի տեղ անոնց գինի տուինք . — Անոր համբերութեանը կը զարմանային . — Շատ տարիներ աշխատեցաւ . — Դաշտին երկայնութեանը վրայ կը պտըտէին . — Իմ եւ քու մէջտեղդ խտիր չիկայ . — Մարդ գլուխ ցորեն տուին . — Տուն տունի կցել . — Իմ յարկիս տակ մտան . — Դիւրին է մալուխը ասեղին ծակէն անցունել . — Իմ եւ քու մէջտեղդ կռիւ չըլլայ . — Ինծի հետ մի՛ վիճիր . — Աստուած թող քեզ տայ քու գործերուդ համեմատ . — Դաշտերէն անցաւ . — Շատ կը զարմանամ ադոր վրայ . — Անոր խօսքին համեմատ . — Դեմոսթենէս կը նախատուէր յաճախ չարերու հետ պտըտելով , կ'ըսէ . եւ բժիշկներ հիւանդներու հետ , բայց իրենք առողջ ( ողջ ) են . — Հոգին մարմնոյ հետ չի թաղուիր . — Ըսուածներուն համեմատ դայթակղեցայ . — Լա՛ց լացողներուն հետ եւ խնդա՛ խնդացողներուն հետ . — Շատին կամ քչին մէջ խտիր չկայ ։

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ**

---

## 56. ԲԱՐԵՐԱՐՈՒԹԻՒՆ

Ո՛րչափ աղքատք կան ի մոռացօնս, քանի՛ք՝ առանց օգնութեան և ձեռնտուութեան։ Մոռացօնք՝ որ այնու մանաւանդ արժանի են ողբոց, զի են կամաւ և գիտութեամբ մեծատանց, և վասն այնորիկ իսկ արժանի պատժոց։ Մեկնեցից զոր ասացի։ Քանի՛ բիւրք աղքատաց են որ հասեալ կան ի յետին տագնապ տնանկութեան, և զորս ոչ ոք խորհի սփոփել, զի չիք որ գիտիցէ զնոսա, և ոչ որ կամիցի գիտել։

Ո՛րչափ ճշմարիտ աղքատք են զորս մերժեմք և անտես առնեմք, որպէս թէ չիցեն այնպիսիք։ Զառնումք եւ չկամիմք իսկ առնուլ յանձն աշխատութիւն եւ ջան հասանել ի վերայ թէ իցեն արդարեւ ի տառապանս։ Ո՛րչափ աղքատք իցեն որոց հառաչանք առ տկարութեանն չհասանեն յականջս մեր, եւ որոց ի հուպն չկամիմք երթալ զի մի՛ զհեծութիւն նոցա լսիցեմք։

Քանի՜ք զրկեալ են ի պիտոյից կարի իսկ կարեւորաց, մինչդեռ մեծատունքս վայելեմք յառատութեան։ Եթէ չգոյր օր դատաստանի, ապա յիրաւի էր ասել թէ Աստուած հաճի իմն եւ խնդայ ընդ տառապանս աղքատին տուայտելոյ ի խստութենէ եւ յանագորոյնութենէ մեծատանց ։

## *ՀՈԼՈՎԱՌՈՒ ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆՔ*

*Նախդիրներէն զատ կան Նախադրութիւններ, որոնք միշտ որոշեալ հոլովով բառ մը կ՚ուզեն եւ ըստ այնմ կը գործածուին ։*

**Սեռական հոլով պահանջողները**

*Վասն , համար . վասն Աստուծոյ , վասն սիրոյ .*

*Ցաղագս , աղագաւ , համար, պատճառաւ . յաղագս ձեր , ձեր աղագաւ .*

*Սակս , համար . սակս ընտրութեան .*

*Առանց , առանց · առանց հացի , առանց նորա .*
*Յետ , ետևը · յետ աւուրց .*
*Յետոյ , ետեւը , ետին · յետոյ նորա կայր .*
*Առաջի , առջեւը · առաջի ձեր .*
*Զկնի, զհետ, ետեւէն· գնաց զկնի նորա, զհետ նորա.*
*Ի մէջ (տրա.) մէջ , մէջը · ի մէջ տաճարի .*
*Ի միջոյ (բացառ.) մէջէն · ի միջոյ ժողովրդեան իմոյ.*
*Ի միջի , մէջը · ի միջի ձերում .*
*Ի վերայ , վրան · ի վերայ լերին .*
*Ի վերոյ , վերի դին · ի վերոյ տաճարին .*
*Առընթեր , քով · առընթեր աշտարակին .*
*Ի ներքոյ , տակը · ի ներքոյ երկրի .*
*Յանդիման , հանդէպ, ընդդէմ, դիմաց · յանդիման տաճարին , ընդդէմ գանձանակին , հանդէպ մեր .*
*Հակառակ , դէմ · հակառակ կամաց :*
*Ընդ առաջ , դէմ · ընդ առաջ նորա :*
*Փոխանակ , տեղը · փոխանակ իմ տէր հովուեսցէ զքեզ .*
*Ի ձեռն , ընդ ձեռն, ձեռօք · ի ձեռն Եսայեայ Մարգարէի .*
*Զօրէն , պէս · զօրէն հաւու թռուցելոյ :*

**Տրական հոլովով**

*Լուր ի լուր , լսելով · ինձ լուր ի լուր :*

**Ի նախդրիւ հայցական հոլովով**

*Մօտ , մերձ , մօտ · մօտ ի լեառն , մերձ ի տուն .*
*Մինչեւ ի*
*Մինչեւ ց } մինչեւ · մինչեւ ի մահ, մինչեւ ցաստեղս:*
*Հուպ , մօտ , հուպ ի քաղաքն :*

### Բացառական հոլով

*Բաց, բայց, զատ, բացի. բաց ի նմանէ, բայց ի քէն.*

*Գաղտ, գաղտուկ. գաղտ ի մօրէն.*

*Հեռի, հեռու. հեռի յամպարշտաց.*

*Մեկուսի, ուրոյն, զատ, հեռու, մէկդի. մեկուսի յամբոխէն, ուրոյն ի նմանէ։*

*Հանդերձ, մէկտեղ. հանդերձ աշակերտօք.*

*Շուրջ զ, բոլորտիք. շուրջ զնովաւ։*

**Հարցարան.** — Նախդիրներէն զատ ինչեր կան. — Ի՞նչ հոլովներով կը գործածուին։

**Հրահանգ 140.** — Լուծեցէք հետեւեալ նախադասութիւնները. — *Ոչ կարէ քաղաք թաքչել որ ի վերայ լերին կայցէ. — Վասն այնորիկ թողցէ այր զհայր իւր եւ զմայր եւ երթիցէ զհետ կնոջ իւրոյ. — Նստոյց զուղտսն արտաքոյ քաղաքին. — Ընթացաւ ծառայն ընդ առաջ նորա. — Եւ արձակեաց զաղաւնին զհետ նորա. — Ցետ քառասուն աւուրց եբաց Նոյ զպատուհան տապանին. — Առանց նենգութեան է մանուկն. — Անց նա ընդ մէջ ամբոխին. — Եւ այլն անկաւ ի մէջ փշոց. — Ե՛կ զկնի իմ. — Ելին նոքա յայնկոյս Յորդանանու. — Էր ի ներքոյ վարագուրին. — Ածին զնա մինչեւ ի դուռն քաղաքին. — Որդեա՛կ իմ Աբիսողոմ, Աբիսողո՛մ, որդեակ իմ, ո՞ տայր զմահ իմ փոխանակ քո. — Անգործ մեղու լաւ է քան զժիր պիծակ. — Բարեչափութիւն անդամոց՝ հանդերձ վայելուչ դունով՝ դեղեցկութիւն առնէ մարմնոյ. — Խորհուրդ խաղաղութեան եղիցի ի մէջ երկոցունց. — Որպէս մարմին առանց հոգւոյ մեռեալ է, նոյնպէս եւ հոգի առանց օրինաց մեռեալ է եւ աւերակ. — Եթէ վասն Աստուծոյ հալածիս, մի՛ խէթ պահեր. — Ես եմ Աստուած եւ չի՛ք այլ ոք բաց յինէն։*

**Հրահանգ 141.** — **Վերածեցէք ի գրաբար.** — *Դու ես այն վէմը եւ այդ վէմին վրայ պիտի շինեմ իմ եկեղեցիս. — Այն գիւղին մօտ՝ զոր Յակոբ իւր Յովսէփ որդւոյն տուաւ. — Ժողովրդեան համար ըրաւ զայս. — Հեռո՛ւ վատ մարդերէ. — Ծառին տակն էր. — Իւր եղբօրմէն գաղտուկ գնաց. — Առանց ջուրի եւ առանց հացի մարդ չապրիր. — Գերդաստանը երկրին անդին կողմը. — Մինչեւ իւր մահը հոն մնաց. — Իւր կիներով մէկտեղ հոն գնաց. — Քաղքին դիմաց կը նստէր. — Մովսէսի ձեռքով Իսրայելացիք Եգիպտոսէն ելան. — Ծառին հովանւոյն տակ կը նստէր. — Իմ տունս եկեղեցւոյն մօտ է. — Գացէք այն գիւղն՝ որ մեր դիմացն է. — Տունէ եւ բարեկամներէ հեռու. — Ասոր համար յարմարագոյն անուն վանք դրուեցաւ. — Շատ տարիներ առաջ անմխիթար խորհուրդներ զիս կը նեղէին. — Մեռեալին վրայ մի՛ տրտմիր, քանզի հարկ է անշուշտ մեռնիլ, այլ անոնց վրայ՝ (տրտմէ՛) որ չարաչար հիւանդութեամբ կը մեռնին. — Գոհութեամբ աշխատութիւնն առանց ցաւի չըլլար. — Հինգ տարիէն ետքը մեռաւ։*

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

## 57. ՏԵՍԻԼ ՅԱԿՈԲԱՅ

Արձակեաց Իսահակ զՅակոբ և գնաց ի Միջագետս Ասորւոց։ Հասեալ ի տեղի մի՝ ննջեաց անդ, քանզի արեւն ի մուտս էր։ Եւ առ ի քարանց տեղւոյն և եդ ընդ սնարս իւր և ննջեաց ի տեղւոջն յայնմ։ Եւ ետես տեսիլ. սանդուղք հաստատեալ յերկրի, որոյ գլուխ իւր հասանէր մինչեւ յերկինս. հրեշտակք Աստուծոյ ելանէին և իջանէին ընդ նա, և Տէր հաստատեալ կայր ի նմա։ Եւ ասէ. Ես եմ Տէր Աստուած Աբրահամու, մի՛ երկնչիր, զի երկիրդ յորում դուն ննջեցեր՝ քեզ տաց զդա և զաւակի քում, և օրհնեսցին ի քեզ ամենայն ազգք երկրի։

Զարթեաւ Յակովբ ի քնոյ անտի իւրմէ և ասէ. Տէր է ի տեղւոջս յայսմիկ. Յարեաւ ընդ առաւօտն, առ զվէմն զոր եդ ընդ սնարս իւր, և կանգնեաց զնա արձան, ուխտեաց և ասէ. Եթէ եղիցի Տէր Աստուած ընդ իս, և տացէ ինձ հաց ուտելոյ և հանդերձ զգենլոյ, և դարձուցանէ զիս ողջութեամբ ի տուն հօր իմոյ, վէմս՝ զոր կանգնեցի՝ եղիցի ինձ տուն Աստուծոյ:

**Դիտելիք.** — *Կան մի քանի նախադրութիւններ, որոնք իրենց խնդրէն ետքը կը դրուին, զոր օր. Չափ, կողմ, կոյս, հետ, յառաջ, ելն: Ասոնցմէ զատ կան նախադրութիւններ, առաջ եւ ետքը դրուող:*

**Հրահանգ 142.** — Լուծեցէք հետեւեալ նախադասութիւնները. — *Ոգւով չափ սիրէր զնա. — Մարքն հանդերձ կալեալ ածին յատեան Թագաւորին. — Երկու ամօք յառաջ պատահեցաւ այդ. — Մահու չափ ատեմ զնա. — Յարեւմուտս կոյս գնացին բարեպաշտք. — Յորմէհետէ տեսի ես զնա, ուրախ եղէ. — Իմ առաջի ետուն զարծաթն. — Կաց մեզ առընթեր. — Եւ մատեաւ նա յային կոյս. — Ամաւ յառաջ փախեաւ ի քաղաքէ. — Ի նախնեաց հետէ հաստատեալ է տօն. — Յարմատոն հուպ հասեալ է բոտութիւն. — Զբօսանաց աղագաւ երթայր յորս ընդ անտառս. — Չարին զկնի մի՛ ընթանար. — Գետոյ այէս սահի անցանէ. — Աշակերտօքն հանդերձ եմուտ Յիսուս ի պարտէզն. — Դարձաւ նա ի Թիկունս եւ խօսեցաւ ընդ մեզ:*

# ԳԼՈՒԽ Է.

## ՄԱԿԲԱՅ

*Ազդողագոյն է խրատ ողոք քան ըզսաստից կըշտամբանս ։*
*Գողոց ըզտուն Եսովպոսի կողոպտելով գիշերայն,*
*Ընդոստ ի քնոյ զնոսա այսպէս ամաչեցոյց ծերունին.*
*Չեւ ժամանակ չու առնելոյ է, ո՛ արք,*
*Ըզկարասին իմ ձեզ կանխիկ յայնժամ կըրել ծանուցից.*

Այս խօսքին մէջ կը տեսնենք որ բայերու առաջ կամ ետքը զանազան բառեր դրուած են՝ որոնք գործողութեան այլ եւ այլ պարագաները կը ցուցնեն. Այսպէս գիշերայն բառը ժամանակ կը ցուցնէ, չեւ նոյնպէս ժամանակ կը ցուցնէ, այսպէս որակական բառ մ'է, կանխիկ, յայնժամ ժամանակի գաղափարը կուտան դարձեալ.

Այն բառերն՝ որոնք գործողութեան մը այլեւայլ պարագաներն, այսինքն կերպը, ժամանակը, քանակութիւնը եւ տեղը կը ցուցնեն՝ Մակբայ կ'ըսուին. որօր. Ահա հոր եւ ահա փայտ. ո՞ւր է ոչխար յողջակէզ. ահա ցուցնելու գաղափարը կուտայ, ուր տեղ ցուցնող բառ մ'է ։

Մակբայը շատ անգամ ածականներուն եւ ուրիշ մակբայի ի՞նչ ըլլալը կը ցուցնէ ։

Ածականներն, նոյնպէս նախադրութիւններէն ոմանք երբ խնդիր չունենան, իբրեւ մակբայ կը գործածուին ։

Մակբայներն իրենց նշանակութիւններուն համեմատ

*գլխաւորապէս եօթն տեսակի կը բաժնուին, որոնք են. Տեղական, Ժամանակական, Եղանակական, Քանակական, Հաստատական, Ժխտական եւ Հարցական:*

**Հարցարան**. — *Մակբայ* ինչ կ'ըսուի. — Մակբայը շատ անգամ ինչ կը ցուցնէ. — Ո՞ր բառերն իբրեւ մակբայ կը գործածուին. — Մակբայները քանի մասերու կը բաժնուին.

## ՏԵՂԱԿԱՆ ՄԱԿԲԱՅՆԵՐ

*Տեղական կ'ըսուին այն տեսակ մակբայները, որոնք տեղւոյ գաղափար կը յայտնեն. զորօր.*

*Յո՞ (շարժում ցուցնող բայի քով)* } ուր.
*Ուր (դադարում ցուցնող բայի քով)* }
*Ո՞ւստի*, ո՞ւրկէ.
*Ուրեք կամ ուրեմն*, տեղ մը.
*Այլուր*, ուրիշ տեղ.
*Այլուստ*, ուրիշ տեղէ.
*Աստ*, հոս (*դդրմ.*). — *Այսր*, հոս (*շրժմ.*).
*Այսրէն*, նորէն հոս.
*Աստի*, ասկէ.
*Աստէն*, հոս սա տեղ.
*Այդր*, դա տեղը.
*Այտի*, ատկէ.
*Այդրէն*, այդտեղ, հոդ.
*Անդ*, հոն, (*դդրմ.*). — *Անդր*, հոդ (*շարժում*).
*Այր անդր*, ասդին անդին.
*Անդրէն*, նոյն տեղը.
*Անտի*, անկէ.
*Ի ներքուստ*, ներսէն.
*Արտաքս*, դուրս.
*Արտաքուստ*, դուրսէն.

Ի վեր, վէր.
Ի վերուստ, վէրէն.
Ի վայր, վար.
Առաջոյ, առջեւէն.
Յետս, ետ.
Ի բաց մէկդի.
Ի բացուստ, ի հեռուստ, ի հեռաստանէ, — հեռուէն.
Մօտ, ի մօտ, մօտ.
Ի մօտոյ, մօտէն։

Հարցարան.—Ո՞ր մակբայները տեղական կ'ըսուին եւ որոնք են.

Հրահանգ 148.— Ուր եւս իցեմ, անդ եւ պաշտօնեայն իմ եղիցի. — Յո՞ ընթանաս. — Ո՞ւստի գիտես զայդ. — Ոչ ուստեք է փրկութիւն. — Ածէ՛ք այսր. — Այսր անդր շրջէր. — Կայր նա արտաքոյ. — Բարեկա՛մ, ի վեր մատիր. — Յետս յետս չոգան եւ զարկան զգետնի. — Ետես ի հեռուստ եւ ծանեաւ զորդին. — Երկիցս ձգեցին ի վեր. — Ընդ առաջ երթայր նմա մինչեւ ի սանդուղսն. — Մտին ամենեքեան ի ներքս. — Անդէն արգելաւ պատանին, ապա յետս դարձուցաւ անմիտս. — Եւ կոչեցեալ զամենայն զպաշտօնեայս իւր զառաջեաւ. — Հաստատեցաւ դաշն խաղաղութեան ի միջի. — Յո՞ եդիք զնա. — Փախերուք այտի. — Անդ եղիցի լալ եւ կրճել ատամանց. — Անխափան եմուտ անդր. — Եւ նոքա սփռեալ են այսր անդր. — Անտի շուրջ յայց ելեալ ի գաւառս գաւառս. — Ետուն նմա այլուր քաղաքս հինգ եւ արծաթ բազում. — Որ աստ զմարմինն պարարէ, ի յաւիտենական հանգիստն ոչ մտանէ. — Վաղ հասիր, դեռ զամուսինն իմ խողխողեն։

**Հրահանգ 144.** — **Աշխարհաբարէ գրաբար.** — *Սոկրատի հարցուցին թէ ի՞նչ է դժոխք, կ'ըսէ. Ոչ ես հոն գացած եմ, եւ ոչ անկէ մէկն եկաւ. — Ուր որ շատ դեղեր եւ բժիշկներ կան, հոն եւ բազմապատիկ ցաւեր. — Ուր դիակ կայ, հոն պիտի ժողվուին արծուիք. — Եւ հոն գալով կ'աղաչէին քաղքին բնակիչները. — Դուք հոն չէք կրնար գալ. — Ո՞ւր փախչիմ ես քու առջեւէդ (յերեսաց քոց). — Ուր ատելութիւն (հեռ) եւ նախանձ, հոն է անկարգութիւն եւ ամէն չար բաներ. — Մէջ մի՛ խնար, գուցէ ի բաց մղուիս, եւ մի՛ կենար հեռու, որպէս զի չմոռցուիս. — Ետ դարձան ամենքը՝ որ գացած էին. — Հոն մնաց նա մեծաշուք յաղթութեամբ. — Անկէ կ'արշաւէին դէպ ի այն աշխարհը. — Եւ մարմինը մէջտեղ դրուած էր. — Եւ աւելի առաջ երթալով կործանեցին քաղաքները. — Հոն ժողվեց քաղքին բնակիչները. — Տեղէ մը օգնութիւն չիկայ. — Գուցէ վերէն վրէժխնդիր մը ելնէ. — Եւ դուրս կանչելով հարցուց անոր. — Իրենց անձերը վար նետեցին անկէ. — Աստին անդին կը պտըտցունէին զանի. — Մէկդի գացէք, ո՛վ չարեր։*

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

## 58. ԼԱԶԱՐԵԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆՆ Ի ՄՈՍԿՈՒԱ

Առանձին յիշատակի արժանի զարդ քաղաքիս է Լազարեան Ուսումնարանն արեւելեան լեզուաց՝ կառուցեալ յամին 1816 յառատաձեռնութենէ մեծազնեայ եղբարցն երկոցուն ազնուական իշխանաց և խորհրդականաց Պետութեան Յովհաննու և Յովակիմայ Լազարեանց։ Զայս Ուսումնարան յամին 1828 Պետութիւնն Ռուսաց ընկալաւ ընդ հանրական տեսչութեամբ Ուսումնարանացն Ռուսիոյ, որպէսզի կարասցեն աշակերտեալքն ի նմա ի լրման ժամանակի ուսման իւրեանց անցանել ի Համալսարանն Արքունի։ Դասախօսութիւն Ուսումնարանին

է ի Ռուս բարբառ. իսկ առ ուսումն այլոց լեզուաց, որպէս և հայկականին, որոշեալ են առանձին ժամանակք. և ամք ուսման իւրաքանչիւր պատանեաց կարգեալ են եօթն։ Գումար դրամոցն և կալուածոց առատաձեռնելոց ի պէտս Ուսումնարանին հասանէր յամին 1830 ց900,000 րուպլիս, որովք դաստիարակին անդ 30 կամ 40 հայկազուն մանկունք ձրի ամենեւին. այլ բազմագոյն են որք վարձուք ուսանին. իսկ տեղին ասի բաւական լինել հարիւրից և աւելի եւս ուսանողաց։

## ԺԱՄԱՆԱԿԱԿԱՆ ՄԱԿԲԱՅՆԵՐ

*Ժամանակ ցուցնող մակբայները ժամանակական մակբայ կ'ըսուին. ինչպէս հետեւեալները.*

*Արդ, այժմ, այժմիկ, հիմա.*

*Յայժմ, մինչեւ հիմա.*

*Ցայնժամ, այն ատեն.*

*Իբրեւ, երբոր.*

*Մինչ, մինչդեռ, երբ.*

*Մինչեւ, մինչեւ որ.*

*Տակաւին, դեռ, դեռ (գռեհ.).*

*Չեւ, դեռ ոչ.*

*Արդէն, հիմակուընէ.*

*Արդ եւս, դեռ հիմայ.*

*Այն ինչ, դեռ նոր.*

*Այլ եւս, ալ, դեռ աւելի.*

*Եւս, ալ.*

*Այսօր, այսօր.*

*Վաղիւ, վաղը.*

*Երէկ եւ եռանդ, երեկ եւ առջի օրը.*

*Հերու, անցած տարի.*

*Այգուն, այգուց, ընդ այգն, առտուան դէմ.*

*Առաւօտու, ուց, առտուն.*

*Ընդ առաւօտն, օտս, առտուան դէմ.*

Ընդ երեկս, իրիկուան դէմ.
Գիշերայն, գիշերի, գիշերանց.
Ի մթայ, ընդհուպ, մօտերս.
Վաղ կամ անագան, ուշ կամ կանուխ.
Վաղու եւս, վաղուց, շատոնց.
Ի վաղուց հետէ, շատոնց ի վեր.
Յորմէհետէ, քանի որ (է վեր).
Յայսմհետէ, յայնմհետէ } առկէ ետքը, անկէ ետքը.
Այսուհետեւ, այնուհետեւ }
Մինչ, ցանդ, յար, միշտ.
Հանապազ, հանապազօր, զօրհանապազ, ամէն օր.
Յաւիտեան, մինչեւ վերջը.
Մերթ, մերթ, երբեմն երբեմն.
Երբեմն կամ երբեք, ատեն մը.
Դարձեալ, միւսանգամ, վերստին, կրկին, նորէն.
Վայր մի կամ վայրիկ մի, քիչ մը.
Զառաջինն, առաջ.
Յառաջագոյն, կանխաւ, առաջուց.
Տակաւ, քիչ քիչ.
Վաղվաղակի, շուտ մը.
Իսկոյն, իսկ եւ իսկ, անդէն եւ անդ, առ օրին, նոյն օրին, առժամայն, նոյնժամայն, անմիջապէս, շուտ մը.
Փութանակի, փութով, փութապէս, շուտով.
Անագան, ուշ.
Տարաժամ, կանուխ, ժամանակէն առաջ.
Յանկարծ, յանկարծակի, յանկարծոյն, յեղակարծում, յանկարծ.
Նախ, առաջ. — Ապա, յետոյ, ետքը.
Ապա յետոյ, հուսկ յետոյ, հուսկ ուրեմն, ուր ուրեմն, ամենէն վերջը.

Միանգամ, երկիցս, երիցս, մէկ, երկու, երեք անգամ։

Հրահանգ **145**. — Վերլուծեցէք հետեւեալ նախադասութիւնները. — Մինչդեռ ժամանակս ի ձեռս է, գործեսցուք զբարիս. — Վաստակեա՛ յաւիտեան եւ կեցցես մինչեւ իսպառ. — Այժմ առ մեզ գտանին անբաւ գրուցաց մատեանք. — Յայնժամ գայ Յիսուս ի Գալիլեէ. — Մինչդեռ ուտէին եւ ըմպէին. — Չեւ հաւու խօսեալ, երիցս ուրացցիս զիս. — Այլ եւս երեք աւուրք են եւ Նինուէ կործանեսցի. — Ոչ եւս կարեմ խօսել. — Այսօր է զոր արար Տէր. — Ոչ կարես բարեկամ ճշմարիտ ըստանալ, մինչեւ զչարն ոչ հալածեսցես. — Այդչափ վաղ մեռաւ. — Դուն ուրեք երեւի արտաքս. — Մինչդեռ խաղաղութեան պատեալ էր զամենայն. — Եկեալ գիշերի գողացան զնա մինչ մեք ի քուն էաք. — Յանկարծակի գուժկան եհաս առ մեզ. — Յայնժամ դեռ եւս կենդանի էր ծերունի սուրբն Դանիէլ. — Ապա իբրեւ ընդ գինիս մտին. — Դարձեալ եկեալ թաղէ զդիակունս. — Վաղվաղակի անց յառաջ. — Երթիցուք վաղիւ ի քաղաք անդր. — Արդ հոտեալ իցէ, քանզի չորեքօրեայ է. — Ցար ի փոփոխման կայ. — Հերու այսպէս արարէք. — Երբեք երբեք խաւարեցուցանէ. — Առաւօտն երեքկին ոչ վաղվաղակի լուեսցի. — Եթէ ստանաս բարեկամ, փորձիւ ստացի՛ր զնա, եւ մի՛ իսկ եւ իսկ վստահ լինիր ի նա. — Որ առաջ էին տեղիք պատկերաց կռոցն, եւ ապա յանուն Աստուածութեանն օրհնեցան եւ եղեն տուն աղօթից եւ տեղի ուխտից ամենայն ումեք։

Հրահանգ **146**. — Աշխարհաբարէ գրաբար. — Վազը կուգայ. — Երէկ տեսայ քու եղբայրդ. — Վերջը սի-

*տի լսեմ քեզ. — Յաւիտեան ապրէ՛. — Հիմա չեմ կրնար գալ. — Բեզի պիտի լսեմ ետքը. — Եւ կը ցաւէին թէ այնչափ շուտ մեռաւ. — Շուտով երբ այս տեսան, շատ ուրախացան. — Բարի անունը յաւիտեան կը մնայ. — Յետոյ խրկեց անոնց իւր որդին եւ կ՚ըսէ. — Ուշ հասաւ պատգամաւորը. — Նախ զանոնք անցուց, յետոյ ինք անցաւ. — Երկիցս ըսի իրեն. — Մերթ կուլար, մերթ կը հառաչէր. — Գիշերանց յարձակեցան աշտարակին վրայ. — Ասկէ ետքը գիտցէք թէ ես եմ ձեր ուսուցիչը. — Այսօր գնա՛, վաղը եկո՛ւր. — Նորէն կրկնեց. Եմ ես Յովսէփ. — Շատոնց ի վեր հետամուտ էի սորվելու. — Ինչ որ մէկ անգամ պատուիրեցի, ալ չեմ կրկներ. — Ամէն օր աղօթենք առ Աստուած. — Եւ իրիկուան դէմ դարձան գացողները. — Կանուխ մեռաւ այրւոյն տղան. — Մօտերս պիտի տեսնեմ այն մարդը. — Շատոնց կը ճանչնամ ես. — Առաւօտուն պիտի սերմանես քու սերմդ. — Եւ իսկոյն անոր ձեռքը առողջացաւ (ողջանալ). — Այսօր կառքի մէջ, վաղը դագաղի մէջ. — Այն ատեն կուգայ հարիւրապետը. — Եւ գիշերանց փախաւ մինչդեռ զանի կը փնտռէին. — Երբ դեռ խօսքը բերանն էր. — Աղքատները ամէն օր անոր հետ կ՚ուրախանային։*

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

## 59. ՄԵԾՆ ՊԵՏՐՈՍ

Հասակագեղ էր Պետրոս և ազնուադէմ, այլ ահագնահայեաց և խրոխտ, ոգելից ի բանս և համառօտախօս. ատեցող սեթեւեթից և սիրող պարզութեան, ցանգ վառեալ ի տենչ մեծամեծ իրաց. և անխոնջ ի վաստակս առ ի հասանել ըղձիցն. Արդարասէր էր և ճշմարտասէր, և ի խնդիր ճշմարտութեան և արդարութեան և առ անարգագոյնս ի մարդկանէ զիջանէր, և ի խստութիւնս անաչառս անխնայ

ձեռն արկանէր։ Մեծ էր Պետրոս ի բարս, ոչ միայն զի այնպիսիս ունէր բարս ի բնէ, այլ զի պահեաց զնոսին և ընդդէմ ապականարար դաստիարակութեանն՝ յոր մատնեալ էր ի մանկութենէ։ Մեծ ևս եկաց ի գործս՝ զանձն ի բռին եղեալ յօգուտ իւրոյ աշխարհին և մեծամեծս արարեալ յամենայնի։ Սակայն և նա ինքնին զփորձ առեալ զտկարութեան մարդկային բնութեանն, և տեսեալ զի յակամայս ձգի երբեք երբեք ի յանցմունս՝ զորս պախարակելիս ճանաչէր, բազում անգամ գոչէր ցաւագին. «Եղուկ եմ ես, զի կարացից նորոգել զազգն իմ, այլ ոչ և զանձն իմ» ։

Ողբս առեալ կոծեցան զնա Ռուսք ամենայն, յոլովք առ սիրոյ և յերախտագէտ մտաց, և ոմանք առ հիացման։ Ընդ ամենայն տեղիս աշխարհին լցին զյիշատակարանս և զարձանս նորա, և ոչ այնու շատացեալ, խնամով հաւաքեցին զոր ինչ միանգամ գտին զնորա առանձին, և մինչեւ ցայժմ պարծանօք ցուցանեն օտարականաց զնշխարս վեհազինն իւրեանց մեծի։ Մարմին նորա ցուցանի բազմեալ ի գահոյս և զգեցեալ հանդերձիւն հանդիսի՝ զոր Կատարինեայ կիտեալ էր։ Անդ մերձ առ մարմնոյն պահին գրասեղան նորա ընկուզի՝ յորում գրէր յոտին կալով, յատակագրութիւն Քրոնշդատ քաղաքի՝ գծեալ նորին ձեռամբ, ձեռագիրք նորա բազումք, վերջին կօշիկքն բազում անգամ կարկատեալք, զէնքն, երիվարն պատերազմի՝ յոր հեծեալն էր և ի Փոլթաւա , գաւազանն ահագին , ձող մի երկաթի հարիւր եւ քսան լտեր՝ դարբնեալ ձեռամբ նորին, կանթեղ բազմաստեղն ի փղոսկրէ՝ յոր ամս բազումս վաստակեալ էր, սկուտղ նորա հաւատարիմ, զոր իւր իսկ տուեալ էր յարդալից պահել, և գաղափար մի սեանն Տրայիանու, զոր կամէր ինքնին ճախարակել նախ ի փղոսկրէ և դնել ի էին ի պատուանդանին մակագիրք չորք, և շուրջանակի պատկերք պղնձիք երեւեցուցիչք յաղթանակացն նորա ի վերայ Շուեդաց և ի կատար սեանն անդրի նորին ։

*Ահագնահայեաց*, ահագին նայուածքով.

*Ոգելից* (*ի բանս*), հանճարեղ խօսքի մէջ.

*Ցանգ*, միշտ.

*Զանձն ի բռին եղեալ*, մահն աչք առնելով, հոգին բերանը գալու չափ աշխատիլ.

*Կիտեալ էր*, բանուած էր, ասեղնագործած էր.

*Բազմաստեղն*, շատ ճիւղերով ։

## ԵՂԱՆԱԿԱԿԱՆ ԵՒ ՔԱՆԱԿԱԿԱՆ

Քանի՛, ո՛րչափ.
Ո՛րչափ, ո՛րչափ.
Այսպէս, ասանկ.
Ոչ այդպէս, ատանկ չէ.
Այնպէս, անանկ.
Յունարէն, Հրեարէն, Եբրայեցի.
Նշանացի, նշանով.
Բռնցի, բուռով. — Աքացի, ոտքով.
Գաղտ, ի ծածուկ, գաղտուկ.
Լռելեայն, անձայն.
Այլազգ, ուրիշ կերպ.
Զրի, ձրի. — Մեծապէս, եւեյօֆ.
Յայտնապէս, յայտնի.
Այսչափ, այդչափ, այնչափ. ասչափ, աղչափ, անչափ.
Առաւել, աւելի.
Ամենեւին, բնաւ, բոլորովին.
Կարի, յոյժ, շատ.
Կարի քաջ, աղէկ մը.
Սակաւ ինչ, քիչ մը.
Սաստիկ, խիստ.
Բարւոք, աղէկ. — Չարաչար, գէշ.
Ջուր, ի զուր, ընդ վայր, վայրապար / Տարապարտ, տուց, ընդունայն, ի նանիր } պարապ տեղ.
Ի հարեւանցի, վարկպարազի, վերիվերոյ, հարեւանցի.
Յամր, կամաց.
Յիրաւի, իրաւամբ.
Յանիրաւի, անիրաւ տեղ.
Կամաւ, մտադիւր, սիրով. — Ակամայ, չուզելով.

*Սոէպ, յաճախ, շատ անգամ.*
*Դուն ուրեք, քիչ անգամ։*

**Հրահանգ 147.** — **Վերլուծեցէք հետեւեալ նախադասութիւնները.** — *Քանի՛ անձուկ է դուռն. — Այսպէս ասէ Տէր Աստուած. — Ոչ այդպէս արար ամենայն ազգաց Տէր. — Իբրեւ կարի չառ սովորեալ. — Կարի քաջ հեռի է աստի. — Խնդացին յոյժ ուրախութիւն մեծ. — Սաստիկ տանջէ. — Բարւոք թուեցաւ նմա. — Փութանակի եհաս սուրհանդակն. — Յիրաւի կրէ պատիժ պատուհասից. — Կարես եւ յոյժ կարես. — Եթէ ոչ Տէր պահէ զքաղաք, ընդունայն ջանին պահապանք նորա. — Խնդրէք եւ առնուք ոչ, վասն զի չարաչար խնդրէք. — Որպէս կամիք թէ արասցեն ձեզ մարդիկ, այնպէս արասջիք եւ դուք նոցա. — Որչափ մեծ իցես, այնչափ խոնարհեցո՛ զանձն քո եւ առաջի Տեառն գտցես շնորհս. — Յականջս անզգամի ամենեւին մի՛ խօսիր, զի մի՛ անգոսնեսցէ զիմաստութիւն բանս քո. — Որ մեղ գնէ տարապարտուց՝ ոչ ապրեսցի. — Որ ձեռներէց լինի տարապարտուց՝ առանց պատժի ոչ լինի. — Որ ոչ առ փորձ, սակաւ ինչ գիտէ. — Որչափ զրկես եւ աշխատես եւ նեղես, եւ համբերես, անապական զանձ պատրաստես քեզ յերկինս. ապա թէ տրտնջես եւ նեղսրտիս, ի զուր աշխատիս եւ անվարձ ելանես. — Որչափ բարեկամ ստացեալ է քո, այնչափ իմացիր ունել քեզ աչս եւ ականջս եւ ձեռս. — Որչափ առաւել բարեգործես զբարեկամս, այնչափ առաւել զօգուտն քո առնես. — Տիմոն մարդատեաց ի հարցանելն թէ ընդէ՞ր զամենայն մարդ հաւասար ատես, եւ նա ասէ. Զչարսն ատեամ եւ զանիրաւսն, եւ յիրաւի է այս. իսկ զայլսն ատեամ, զի նոքա ոչ ատեան զայնպիսիսն։*

**Հրահանգ 148**. — **Աշխարհաբարէ գրաբար**. — *Պիւթագորի հարցուցին թէ ո՞րչափ (քանի՞ն). է մարդուս կեանքը. — Նա վեր ելնելով տանիքը՝ քիչ մը նայեցաւ (յառիլ). — Շատ լաւ է լռելը քան խօսիլը. — Եթէ գիտես թէ ի՛նչ բանի համար (վասն որոյ) կը լաս, աղէկ կ՛ընես. — Որովհետեւ այնպէս սովոր էին անոնք. — Եւ չարաչար կը տանջէին սուրբը. — Եւ շատ կը սաստկանար պատերազմը. — Երբ խիստ շատ ստիպեց, յանձն առաւ խօսիլ. — Եւ շատ յոգնած էր. — Եւ ոչ այնպէս Մեծն Մովսէս զուարթագոյն կ՛ուրախանար Սինա լեռնէն իջնելուն (յէջսն Սինէական լեռնէն). — Բոլորովին ինքզինքը անպարտ կ՛ընէր. — Պարապ տեղը թշնամացաւ նա ինծ. — Բայց անոնք սիրով կ՛աշխատէին, բայց չարաչար կը նեղուէին. — Ի զուր տեղ մինչեւ հիմա քեզ կ՛ատէր. — Շատ. ամուր էր այն քաղաքը. — Ոչ թէ կատարեալ այլ վեր ի վերոյ ընենք. — Պարապ տեղ կը զրպարտէք. — Որչափ որ նա իր քոյրը կը սիրէր, այնչափ քոյրը զանի կ՛ատէր. — Մեծապէս մեծարուեցաւ անկէ — Լռիկ կերպով զանի կանչեց:*

**ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ**

---

## 60. ՀՐԵՇՏԱԿ ԵՒ ՄԱՆԿԻԿ

Չքնաղագեղ զուարթուն հրեշտակ
Յեզր օրրանի հակեալ ի մէտ,
Իբր ի յառուին վճիտ ալեակ՝
Թուէր դիմաց իւրոց կալ դէտ։

«Համանըմանդ ինձ ո՛վ մանկիկ,
Արդ՛, ասէր, եկ դու ընդ իս.
Ե՛կ եղիցուք մեք երջանիկ.
Չիք ինչ վայել քեզ ի յաստիս։

Զրգոն անխառն յերկրի բերկրանք,
Աստ ի հաճոյս ծընգի հոգին.
Տըրտմահաղորդ խընդից են ձայնք,
Եւ հեշտութիւնք հեծեծագին։

Զիմըրդ, գայցեն վիշտք և վըտանգ
Խըռովել զքոյդ ճակատ ամբիծ,
Նըսեմացըն աչք կապուտակ
Ի յարտասուաց դառնակսկիծ։

Ոչ, ոչ. յողոց զաւառն անհուն
Գայցես ընդ իս ճախր առնուլ փոյթ
Ի՛ աստուածախնամըն Տեսչութիւն
Տացէ զաստէն աւուրս ըզքոյդ։

Մի՛ ոք ի քումդ ի բնակութեան
Արկցէ զիւրեւ ձորձ սըգազգեաց,
Ժողովեսցեն յետինդ ըզժամ
Իբր ըզնախկին պահս քոց կենաց։։

Եւ թօթափեալ ըզթեւսըն լուսոյ
Թըռեաւ զուարթունն անդ ընդ բանին
Ի բնակութիւնսըն մըշտագոյ.
—«Հէ՛ք մայր, մեռա՛ւ քո որդին։»

*Զմնաղագեղ*, շատ գեղեցիկ.
*Դէտ կալ*, դիտել.
*Յաստիս*, աշխարհի վրայ. [խառն.
*Տրտմահաղորդ*, տրտմութեան հետ
*Ճախր առնուլ*, թռչիլ.
*Զուարթուն*, հրեշտակ.
*Մշտագոյ*, յաւիտենական.
*Նսեմանալ*, մթըննալ.

## *ՀԱՍՏԱՏԱԿԱՆ, ԺԽՏԱԿԱՆ ԵՒ ՀԱՐՑԱԿԱՆ ՄԱԿԲԱՅՆԵՐ*

*Հարկաւ, ի հարկէ, առ հարկի, ստիպուելով.*
*Այո՛, այո. — Ոչ, մի՛, ոչ.*
*Արդարեւ, ստուգէն, իրաւցընէ.*
*Իսկ, անգամ.*
*Զի՞, ընդէ՞ր, է՞ր, վասն է՞ր, է՞ր աղագաւ, առ ի՞նչ, զմէ՞, առ իմէ՞, հի՞մ, ինչո՞ւ.*

*Ո՞չ, ո՞չ ապաքէն, չէ՞ որ.*
*Միթէ, իրա՞ւ.* [համար.
*Զիա՞րդ, ո՞րպէս, ի՞նչպէս. — Զի՞ է զի, ինչո՞ւ*
*Ե՞րբ, ե՞րբ.*
*Բնաւ, ամենեւին, բնաւին, ոչ.*
*Համբուն, բոլորովին:*

**Հրահանգ 149.** — Վերլուծեցէք հետեւեալ նախադասութիւնները. — *Ապաքէն իբրեւ զհայր գութ ունի. — Հարկաւ ես ի ձեռս նորա. — Ի մանկութեան ոչ հաւաքեցեր, եւ զիա՞րդ գտանիցես ի ծերութեան քում. — Դու զի՞ դատես զեղբայր քո, կամ ընդէ՞ր անգոսնես զեղբայր քո. — Դիոգինէսի հարցին թէ ընդէ՞ր ոսկին դեղին է գունով, ասէ. Զի բազում խնդրողս ունի. — Ոչ հաճոյ էր ի պաշտօն Տեառն Աստուծոյ. — Տեսեր, զիա՞րդ մեծարեցի զքեզ. — Մի՛ քննեսցի աշխարհս եւ մի՛ այլայլեսցի սուրբ ուխտն. — Ամենեւին ոչինչ ըզբաղեալ ընդ ատոխ. — Ակն առնուլ կամ աչառել բնաւ ամենեւին ոչ գիտէր. — Չես արժանի, հի՞մ գաս, մի՛ գար ի ներքս. — Ո՞րպէս եւ կամ զիա՞րդ կատարեաց նա զհրամանսն. — Այո՛, Տէ՛ր, եւ դու գիտես, զի սիրեմ զքեզ. — Զիա՞րդ յինէն ըմպել խնդրես ի կնոջէ Սամարացւոյ. — Ոչ էր նա մարդ, այլ հրեշտակ համբուն. — Միթէ եւ դու ընդ Յիսուսի էիր. — Ե՞րբ տեսաք զքեզ ծարաւի, մերկ, եւ կարօտ ամենայնի. — Ցայնմ կղզւոջ ոչ գտանէր ոչ ջուր ըմպելոյ եւ ոչ դոյզն ինչ արմատ. — Արդ զի՞ է զի այդչափ հոսին քրտունքդ. — Ա՞յնչափ գնոց զգիւղն վաճառեցէք. — Այո՛, այնչափ:*

**Հրահանգ 150.** — Աշխարհաբարէ գրաբար. — *Իրաւցընէ մոլի մարդը խաղալիկ է իւր կիրքերուն. — Ոչ*

*ցուպ , ոչ մախաղ ճամբու համար . — Դուք չէք կրնար հոն գալ . — Ի՞նչու չէք սորվիր ձեր ուսումները . — Եթէ ես ըսեմ այո՛, ինք կ՚ըսէ , ոչ . — Ստիպուելով կարդացի այն հրամանները . — Չէ՞ որ երկու ճնճղուկ մէկ դանկի կը ծախուին . — Չէ՞ որ ամէն օր մեզի հետ է . — Եւ նա կ՚ուրանար բոլորովին իւր գործածները . — Ինչո՞ւ կը հեռանաս քու երկրէդ . — Ինչո՞ւ կը լաես , խօսէ՛ . — Ի՞նչպէս գտար գողին հետքերը . — Եթէ չարձակէք անիկա իր տեղը . — Շատ չարիք պիտի հասցընեմ քեզի . — Ի՞նչպէս հոս մտար , քանի որ հարսնիքի հանդերձ չունէիր . — Անշուշտ ինչ որ կ՚ըսեմ, պիտի կատարես . — Բնաւ իր պատուոյն նախանձախնդիր չէ . — Այո՛, այո, ես եմ յանցաւոր ոչ թէ անիկայ . — Ի՞նչպէս պիտի կարդաս , քանի որ կարդալ չես գիտեր . — Օրը տասներկու ժամ չէ՞ մի ( է աւուր ) . — Ե՞րբ պիտի գաս . — Ինչո՞ւ կը տրտնջաք , հարկաւ պիտի գտնէք ձեր բարեկամը . — Ոչ ոչ , նա ձեզմէ չպիտի բաժնուի . — Ի՞նչպէս , ի՛նչ գործի համար ( յոր գործ ) գացած էիք , կատարեցի՞ք . — Ինչո՞ւ կուլաս , մանուկ . — Միթէ դուն ալ այն մարդուն աշակերտներէն ես . — Եւ անիկայ կ՚ըսէ . Չեմ։*

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

## 61. ԽԱԴ ԵՊԻՍԿՈՊՈՍ

Այրս այս Խադ էր ի Կարին գաւառէ , ի գեղջէ Մարագայ , ձեռնասուն էր սա եպիսկոպոսապետին Ներսէսի, զառաջեաւ իւրով զսա էր սնուցեալ։ Այլ իբրեւ ի միտս աջողակս երեւէր, և յառաջադէմ եղեւ ի հաւատս, և հաւատարիմ յամենայն գործս գտաւ, ապա աղքատաց ևս տեսչութիւն ի սրբոյն Ներսէսէ սմա հաւատացաւ։ Ապա եպիսկոպոսապետն Ներսէս յորժամ երթայր յերկիրն Յունաց, ձեռնադրեաց զայս Խադ յեպիսկոպոսութիւն, եթող զսա իւր փոխանակ տեղապահ և գնաց։

Իսկ նա մտ. շրջել ընդ աշխարհն, կարգել և խրատել, ուսուցանել և դարմանել զաղքատսն, որպէս էր նմա յանձն արարեալ սրբոյն Ներսիսի և իւր գնացեալ։ Բազում նշանք և արուեստք և զօրութիւնք, բժշկութիւնք հիւանդաց լինէին ի ձեռս նորա. բազում յոյժ առնէր սքանչելիս մեծամեծս։ Բայց իբրեւ պաշտէր զաղքատսն, և սպառէր թափէր զամենայն յուրանս և զնորամանս և զմառանս գինւոյն, և զկարասս ամենայն մառանացն տայր բաշխել աղքատացն, երբայր յայլում աւուր տեսանէր լցեալ ինքնին իբրեւ ի հրամանէ Աստուծոյ, և դարձեալ օր ըստ օրէ մատակարարէր աղքատացն։

*Պաշտել*, հոգալ.
*Ցուրան*, բուրգի ձեւով աման.
*Նշանք, արուեստք, զօրութիւնք*, հրաշք։

---

## ԿՐԿՆԱԻՈՐ ԵՒ ԲԱՂԱԴՐԵԱԼ ՄԱԿԲԱՅՆԵՐ

*Անուն մը կրկնուելով կամ հոլովուելով մակբայ կ'ըլլայ, ինչպէս. Ոտն, ոտն, ոտք ոտք. յոշ յոշ, անդամ անդամ, կտոր կտոր. երախանս երախանս, դաս դաս։*

**Դիտեցէք.** — *Ինչպէս տեսնուեցաւ արդէն, մակբայները երեք տեսակ են. պարզ բառեր, հոլովուած բառեր եւ բարդեալ բառեր. զոր օր. Վաղ, արագ, պարզ են. կարի, հարկաւ, հոլովուած են. իսկ տարաժամ, Անյանչափ՝ բարդ բառեր են։ Կան նոյնպէս նախդրիւ մակբայներ, ինչպէս. ընդ վայր, ի զուր, ընդհանուր, եւլն.։*

*Ասոնցմէ զատ կան մասնիկներով մակբայներ, զոր օր. Վաղվաղակի, Անյաժամայն, եւլն.։*

*Աբար եւ ապէս մասնիկներն ալ մակբայ կը շինեն, որոնք թէ՛ գոյականներու եւ թէ ածականներու վրայ կը դրուին. ինչպէս, Քաջ-աբար, հզօր-ապէս, դիւցազն-ապէս։*

**Հարցարան**. — Մակբայները ինչ տեսակ բառեր են. — *Աբար եւ ապէս* մասնիկները ինչ կը շինեն.

**Հրահանգ 151**. — **Վերլուծեցէք սոյն նախադասութիւնները**. — *Զմիսն անդամ անդամ յօշէին. — Խորշս խորշս գործեսցես զտապանն. — Մինչեւ չեղջս չեղջս կուտէր ի ցամաքի կղզւոյն. — Բազմեցուցանէին զնոսա դասս դասս. — Ողջամբ եհաս յերկիր անդր. — Փութացաւ երագագոյն ճեպըճեպի. — Որ դարուն ի հանգստեան կայ, ձմեռն ի սովոյ եւ ի սառնամանեաց սատակի. — Եւ հոսէին ի նմանէ քրտունք իբրեւ զկայլակս արեան՝ ոլոռն ոլոռն հեղեալ յերկիր. — Պաղատիմք առ Տէր ի տուէ եւ ի գիշերի. — Ամի ամի գայր ի տաճարն նորոգել զուխտսն. — Նա զամենայն չարիս դիւրաւ գործէ, եւ զբարին ոչ երբեք. — Խնդութեամբ ընկալաւ նա զգիրն. — Մարդկաբար յանցեաք քեզ. — Եւ մինչ ուժգնապէս հնչէր զանգակն. — Անկան ի տեղւոջն դիւցազնաբար. — Զայնէ առ իս սիրողաբար. — Մեծապէս ուրախ լինէին. — Արջք օրհասականք ընդ վախճանել չնչոյն հզօրագոյնս կռուին։*

**Հրահանգ 152**. — **Աշխարհաբարէ գրաբար**. — *Կարգ կարգ առաջ կ'անցունէին յանցաւորները. — Երբոր դիմացէ դիմաց չարութեան զօրքը. — Օրէ օր գէշ լուր (համբաւ) կը բերէին անոր նկատմամբ. — Կամաց կամաց երեւան կ'ելնէր դաւը. — Դիւրին կերպով կը կրէին այն հարուածները. — Խիստ կերպով կը հրամայէ դաս դաս նստիլ. — Կտոր կտոր միսը կաթսայէն հանեցին. — Պարծանօք յայտնի կերպով պատմեց իր գործերը. — Եւ առ հասարակ ամենքը այն հիւանդութենէն մեռան. — Շուտով այն քաղաքէն ելաւ. — Քաջի պէս մեռաւ. — Խումբ խումբ նստան դաշտին վրայ. — Աստուծոյ*

*մարդուն ըսածները շուտով մը (հուպ ընդ հուպ) կատարուեցան. — Փութով տագնապով կը հանէր վանքը. — Ողջ ողջ ազատեցան Դանիէլ եւ ընկերքը կրակին մէջէն. — Ամէն մարդ ինքն իր կամքով (ինքնակամ) համարձակ (արձակ արձակ) յառաջ կ'երթար (խաղայր). — Մեծապէս վախցաւ։*

## ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

## 62. ՎԱՍՆ ՊԱՏՈՒՈՅ ՀԱՐՑ

Արիստոտէլ ասէ. Պարտ է որդւոց պատուել զհայր առաւել քան զծառայս, զի որդւոցն՝ բնութեամբ է հնազանդութիւն, և նոցա ի հարկէ։

Սոկրատէս ասէ. Այնպէս լեր առ ծնօղս քո, որպէս կամիս լինել առ քեզ զորդիս քո։

Աղեքսանդրոս թագաւոր ի հարցանելն թէ զո՞վ մանաւանդ սիրես. զՓիլիպպո՞ս հայր քո թէ զԱրիստոտէլ վարդապետն քո, ասէ. Զմինն՝ զի կեցոյ եղեւ ինձ պատճառ և զմիւսն՝ զի բարւոք կեցոյ։

Եւրիպիդէս ասէ. Որ ի ժամանակի կենաց իւրոց զծնօղս իւր պատշաճաբար պատուեսցէ, նա ի կեանս և ի մահու՝ Աստուծոյ սիրելի է։

Սողոնի հարցեալ՝ թէ ընդէր Հելլենացւոց օրէնսդիրքն պատիժ ոչ գրեցին զանողացն զծնողսն, ասէ. Զի ոչ գիտէին թէ յայնքան լրբութիւն գան ոմանք։

Ոչ գոյ մեծագոյն պատիւ զաւակաց՝ քան թէ բարի ծնողաց լինիցին զաւակք, և ծնողացն զբարի պատիւ արժանաւորապէս մատուցանել։

Սոկրատէս ասէ. Որպիսի հաս մատուցանես ծնողացն քոց, զնոյն ի ծերութեան քում ընկալցիս յորդւոց քոց։

*Գանող*, ծեծող. *Հաս*, տուր։

---

# ԳԼՈՒԽ Ը.

---

## ՇԱՂԿԱՊ

*Մեծաձայն կարդացէք, զի Աստուած է, Թերեւս զբօսանք ինչ իցեն նմա, եւ միանգամայն Թերեւս առնիցէ հրաման, կամ թէ ի քուն իցէ եւ յառնիցէ։*

*Այս խօսքին մէջ կը տեսնենք որ Նախադասութիւնները իրարու հետ կապուած են կարգ մը բառերով, զոր օր. Մեծաձայն կարդացէք զի Աստուած է. հոս զին կը կապէ երկու Նախադասութիւնները, նոյնպէս վերջի եւ, կամ թէ բառերն ալ կը կապեն իրենց կարգին՝ Նախադասութիւնները։*

*Այն բառերն՝ որ երկու խօսք կամ երկու բառ իրարու հետ կը կապեն, շաղկապ կ'ըսուին, զոր օր. Հայր իմ եւ մայր իմ. եւ շաղկապը կը կապէ այս երկու բառերը։*

*Գործածական շաղկապներն են.*

*Եւ*, ու.
*Եւ*, *եւս*, ալ.
*Այլ*, բայց, հապա.
*Բայց*, *սակայն*, բայց.
*Եթէ*, *թէ*, եթէ, թէ որ.
*Եթէ*, *թէ*, որ, թէ.
*Կամ*, կամ.
*Զի*, որ, թէ, որպէս զի.
*Զի*, *քանզի*, *վասն զի*, վասնզի.
*Յորժամ*, երբոր.
*Որովհետեւ*, որովհետեւ.

*Որպէս զի*, այնպէս որ, որ.
*Որպէս թէ, իբրեւ թէ, իբր թէ*, կարծես թէ.
*Գրեթէ*, գրեթէ.
*Թէպէտ, թէպէտեւ, թէեւ*, 'թէեւ.
*Ապա, ապա ուրեմն*, ուրեմն.
*Ապա եթէ, ապա*, իսկ եթէ, այլ եթէ.
*Գոնեայ, գոնէ, գէթ*, գոնէ.
*Իսկ, իսկ*, հապա.
*Մանաւանդ*, մանաւանդ.
*Նա՛*, մանաւանդ թէ.
*Քան, քան թէ*, քան թէ.
*Անգամ*, մինչեւ, նաեւ, նոյն իսկ.
*Այսինքն, այս է*, այսինքն.
*Արդ եւ արդ* }
*Այլ արդ, իսկ արդ* } արդ, ուստի.
*Ուստի* }
*Սմին իրի, զմին իրի, նմին իրի*, ասոր համար, անոր համար, այս պատճառաւ։

**Հարցարան.** — Շաղկապ որո՞ւ կ'ըսուի. — Որո՞նք են գործածական շաղկապները։

**Հրահանգ 158.** — Լուծեցէք սոյն նախադասութիւնները. — *Քանզի զամենայն ինչ, որ հայցէր, առնոյր ի Տեառնէ. — Փոխանակ զի խաւարեցուցի զաշխարհ իմ, վասն այսորիկ խաւարեցաւ լոյս աչաց իմոց. — Մի՛ համարիք եթէ եկի լուծանել զօրէնս, այլ լնուլ. — Փոխանակ զի զգործս Կայէնի գործեցեր, զանէծսն Կայէնի զգեցջիր. — Դիւրագոյն է երկրագործ մշակաց զկորդացեալ երկիր ի գործ արկանել, քան գիտնոց զտգէտսն ածել ի գիտութիւն հաւանութեան. — Լուէք, այլ ոչ հաւատայք. — Եթէ կամիս՝ կարող ես զիս մաքրել.*

— Ասէք թէ անձրեւ գայ եւ լինի այնպէս. — Որովհետեւ նոցա արարէք, ինձ արարէք. — Թէպէտեւ նախատի վասն ոչ ամաչէ. — Ապա թէ մեռանիցի, բազում արդիւնս առնէ. — Քաղցր է մեղր, բայց ախտալից մարմնոյ վնաս առնէ. — Օգտակար է խրատ եւ յանդիմանութիւն, բայց որ զդէմս յարեւմուտս է հաստատեալ՝ նմա անօգուտ է. — Եթէ ցաւակցութեամբ չսիրես զեղբայրն, մի՛ կար ընդ նմա. — Եթէ խնդրէ ոք ի քէն եւ տաս, գոհացի՛ր զԱստուծոյ՝ զի դու առաւել չահեցար քան զնա. — Մի՛ խորհել զհեշտալին այլ զազնիւն. — Տունկք յարմարոյ աճեն եւ փառք ի հեզութենէ. — Իսկ ես զի զճշմարտութիւն խօսիմ, ոչ հաւատայք ինձ։

**Հրահանգ 154.—Աշխարհաբարէ գրաբար.—** Քենէ՞ կ'ըսես ադ, թէ ուրիշները ըսին. — Պէ՞տք է՝ կայսեր տուրք տալ թէ չէ. տա՞նք մի չի տանք. — Բայց դուք չէք հաւատար, որովհետեւ իմ ոչխարներէս չէք. — Թէպէտ մարմնով հեռու եմ, բայց հոգւով ձեզի հետ եմ. — Եթէ մեռնիլ ալ պէտք ըլլայ (հասանիցէ) քեզի հետ, քեզ չեմ ուրանար. — Ոչ թէ դուք զիս ընտրեցիք, այլ ես ընտրեցի զձեզ. — Անիկա ո՞վ է որ հովերն ալ ծովն ալ կը հնազանդին ասոր. — Չէք առնուր, որովհետեւ չարաչար կը խնդրէք. — Որովհետեւ քիչին մէջ հաւատարիմ եղար, շատերու վրայ դնեմ քեզ. — Չէ՞ք գիտեր որ Աստուծոյ տաճար էք. — Ըսէ՛ որ այս քարերը հաց ըլլան. — Թէեւ Աստուծմէ չեմ վախնար, գոնէ աս այրի կնոջ զիս յոգնեցընելուն համար իրեն դատը առնեմ. — Գրուած է որ մարդ միայն հացով չապրիր. — Ինձ խորտիկ պատրաստէ՛, որ ուտեմ եւ օրհնեմ քեզ. — Երանելի է մանաւանդ տալը քան առնուլը. — Թո՛ղ որ ադ ամէնը Բէլէն կերուած չգտնուի՝ մենք մեռնինք, ապա թէ ոչ Դանիէլը։

ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱՒՈՐԻ

## 63. ԿԵՆՑԱՂ ՇԻՆԱԿԱՆ

Ո՛վ երջանիկք յոյժ, թէ մրշակք
Բաղդին իւրեանց իցեն գիտակք,
Ոյց ճաշ դիւրին տայ շնորհապարտ
Ի խազմարար գինուց զերծ արտ...
Այլ է անդորր անդ անկասկած,
Խաղաղութիւն համատարած.
Կենցաղ անփորձ խաբէութեան,
Փարթամ ի յինչըս բազմազան.
Անձաւք և լիճք ականակիտք,
Եւ դաշտք Տեմպեայ հովանախիտք.
Է բառաչող անդանօր կով,
Եւ քաղցրախորժ նինջ ընդ ծառով,
Անդ գազանաց որջք և անտառք,
Եւ ժիրաժիր մանկրտւոյ պարք,
Սովորք ի կեանըս խըստամբեր,
Դից և ծնողաց պաշտօնասէր.
Արդարութիւն զվերջին զիւր հետ,
Ի գնալն յերկրէ, առ նոսա եդ։

*Խազմարար*, խռովարար.
*Բազմազան*, ամէն կերպ.
*Պար*, խումբ.
*Պաշտօնասէր*, ջերմեռանդ։

# ԳԼՈՒԽ Թ.

---

## ՁԱՅՆԱՐԿՈՒԹԻՒՆ

Այն ձայներն եւ բառերն՝ որոնք մեր զանազան կրքերը կը յայտնեն, ինչպէս. ցաւ, զարմանք, բարկութիւն, ուրախութիւն, ցանկութիւն, եւլն. Ձայնարկութիւն կամ Միջարկութիւն կ'ըսուին ։

Գործածական Ձայնարկութիւններն են հետեւեալներն.

Ո՛, ով, ո՛վ.
Երանի՛, էրնէկ.
Վա՛յ, աւա՛ղ (ցաւ, ողբ, եւլն.), վա՛յ.
Բարէ՛, ո՛վ, ո՛հ (ցաւ եւ զարմանք).
Եղո՛ւկ, աւա՛ղ.
Ձի՛, քանի՛ (զմայլում), ի՛նչ, ի՛նչչափ.
Աղէ՛, հապա՛, օ՛ն, հապա՛.
Ա՛յ, ա՛յ.
Վա՛շ (ուրախութիւն), օ՛խ.
Աղնի՛ւ, ափրի՛ս (աֆէրէմ).
Իրրե՛ւ զի, ի՛նչ աղէկ է.
Որպէ՛ս զի, ի՛նչ.
Ցանկա՛րծ, երանի՛ թէ.
Օ՛ն անդր, փարդա՛ստ, խա՛ւ լիցի.
Տա՛յր ոք, } ա՛խ, ո՛ւր էր թէ.
Ո՛ տայր, }
Իցի՛ւ, իցէ՛ թէ, երանի՛ թէ ։

**Ծանօթ.** — *«Միջարկութիւն ներուած է լոկ երբեմն հանգիստ մնալ պարբերութեան մէջ, երբ մարդու խորհրդածութիւններուն շարքը վայրկենական զգածմամբ մը կ'ընդհատի, ուստի եւ շատ վայելչապէս անունն առած է Միջարկութիւն* [interjection] *ընդմէջ արկեալ, անկեալ։» (Հ. Ս. ՏԷՐՎԻՇԵԱՆ, Հնդեւրոպական Նախալեզու, էջ 11)։*

**Հարցարան.** — *Ձայնարկութիւն* որո՞ւ կ'ըսուի. — Որո՞նք են գործածական Ձայնարկութիւնները։

**Հրահանգ 155.** — Վերլուծեցէք հետեւեալ նախադասութիւնները. — *Ո՜հ, կարի է ատտոյելս, այլ եւ ատտոպելոց ատտոյել. — Ո՛վ, քանի՛ գեղեցիկ է յարկն՝ որ յարկաւ (հարկ. բայ. կը նշանակէ՝ ձգուեցաւ). — Վա՜յ այնոցիկ՝ որ զանձինս առ իմաստունս ունիցին. — Երանի՛ է ծառային այնմիկ, զոր եկեալ տէրն գտանիցէ արթուն. — Վա՜յ որոյ լքելոյ, զի ոչ հաւատայ. — Աւա՜ղ փառացս անցաւորի. — Ո՛վ աստուածասէր հոգւոյն. — Ո՛վ ծայրագոյն խոնարհութեանն. — Ո՛վ մեծագոյն առաքինութեանն. — Բարէ՛ կուսութեան մօրս. — Տէր օ՛ն անդր, թողէ՛ք զբարբանջմունս. — Վա՜շ երջանիկ մշակաց. — Ազնի՛ւ, ծառայ բարի եւ հաւատարիմ. — Զի՛ բարի եւ զի՛ վայելուչ, զի բնակին եղբարք ի միասին. — Ո՛ տայր ինձ զծուխ ծխանի եւ զառաւօտն նաւասարդի. — Վա՜յ մարդոյն այնմիկ, յորոյ ձեռն գայցէ գայթակղութիւն. — Ո՛րպէս զի քաղցր են գործք քո, Տէր, զամենայն ինչ իմաստութեամբ արարեր. — Ո՜հ այպանալից ծաղրուն. — Իցի՛ւ թէ էիր դու իմ որդի. — Ո՛վ համբոյր նենգութեան եւ առիթ մահու. — Ո՛ տանէր զիս ընդ աւուրցն առաջնոց. — Վա՜յ ինձ մեղաւորիս, որ զրկեալ եմ ի բարեաց։*

**Հրահանգ 156.** — Աշխարհաբարէ գրաբար. — *Արիստո՛մ որդեակ իմ, որդեա՛կ իմ Արիստոմ, երանի՜ թէ ես քու տեղդ մեռնէի. — Երանի՜ քեզ, Սիմոն. — Իցի՛ւ թէ հոն ըլլայի. — Աղեքսանդրոս տեսնելով Դիոգինէսը որ կը բնանար կարասին մէջ, կ'ըսէ, ո՜վ իմաստութեամբ լի կարաս. — Վա՜հ, դուն որ տաճարը կը քակէիր եւ երեք օրուան մէջ կը շինէիր. — Վա՜յ ձեզ, դպիրներ եւ փարիսեցիներ. — Երանի՜ ողորմածներուն, որովհետեւ անոնք ողորմութիւն պիտի գտնեն. — Օ՜ն մէկդի տար. — Երանի՜ թէ գտնէի զանի. — Ո՛հ, ինչպէս վայելուչ է. — Օ՛ն, խրախոյս առէ՛ք եւ մտէ՛ք առիւծաբար այս ասպարէզին մէջ. — Աւա՜ղ, կորսնցուցի իմ միակ բարեկամս. — Ա՜հ, ինչու, ո՜վ սուրբ քաղաք, կը լաս դու. — Բարէ՛, ինչպէս կը պտըտին դաշտերուն մէջ. — Օ՛ն, ի հանդէս եղէք, այսօր մեծ տօն է. — Ազնի՛ւ, լաւ ծառայեցիր. — Վա՜յ, որ կը նախատէ իր հայրը եւ մայրը. — Այլ ինձ քա՛ւ լիցի ուրիշ բանով պարծենալ բայց միայն Յիսուսի Քրիստոսի խաչով. — Հապա՛, ելէ՛ք երթա՛նք ասկէ. — Ի՜նչ գեղեցիկ է ծերոց համար՝ իմաստութիւն. — Իցի՛ւ կարենայի քեզի հետ գալ մինչեւ անծանօթ ծովեզերք. — Իցի՛ւ կարելի ըլլար (մարթէր) ձեզի հետ ապրիլ եւ մեռնիլ. — Ո՜վ խորք մեծութեան եւ իմաստութեան եւ գիտութեան Աստուծոյ:*

### ՎԱՐԺՈՒԹԻՒՆ ԳՐԱԲԱՐԻ

---

## 64. ՎԱՐԱԳԱՅ ԽԱՉ

Այս է հրաշալի յայտնութիւն և երեւումն խաչափայտին Հռիփսիմեանց ի լեառն Վարագ, յամի տեառն 653, և ի թուականութեան Հայոց ՃԲ. զորոյ զպատմութիւն այսպէս համառօտէ Տէր Իսրայէլ առուգաբան. Սուրբ տիկնայքն Հռիփսիմէ և Գայիանէ ի գալն իւրեանց

յերկիրն Հայոց՝ ունէին մասն ինչ ի Քրիստոսի խաչափայտէն, զոր տարաւ տիկինն Պատրոնիկէ յԵրուսաղեմայ ի Հռովմ, և էր կին Կղոդեայ կայսեր. և էր Հռիփսիմէ յազգէ նորին և կապեցին զայն ի պարանոց նորա պահապան կուսին։ Եւ ի ժամանակս հալածանաց առեալ Հռիփսիմեանց զսուրբ խաչն փրկչական՝ փախստեայ եկին ի Հայս, և յորժամ հասին ի լեառն Վարագ, քահանայքն՝ որ ընդ նոսա էին, եւ ոմանք ի քերցն մնացին անդ՝ ունելով զսուրբ խաչն և տարեալ ամփոփեցին ի վերայ վիմի միոյ անգիտելի ի մարդկանէ, զի սուրբ տիկնայքն ի Վաղարշապատ կատարեցան նահատակութեամբ. և աշխարհն առ ժամայն ի խաւար կռապաշտութեան էին, և ոչ գիտէին թէ ո՞ւր է, զի ի համբաւէ լուեալ էին թէ ի լեառն Վարագայ է։ Եւ յետ բազում ժամանակաց յաւուրս Թոքկայ միայնակեցի, և ի հայրապետութեան Ներսիսի Շինողի և մինչդեռ կային յաղօթս սուրբ ճգնաւորքն Թոքիկ և Ցովէլ աշակերտ իւր, յերիր ժամու աւուրն լցաւ Վարագ լուսով, և (սուրբ խաչն) ակներեւ տեսլեամբ ամենայն ռամիկ ժողովրդեանն թռուցեալ ի տեղւոջէն լուսափայլ երեւմամբ՝ եմուտ յեկեղեցին, ուր սպասաւորէին սուրբ ճգնաւորքն, և նստաւ ի վերայ սուրբ սեղանոյն, և եկեղեցին լցաւ լուսով և անուշահոտութեամբ, եկաց մինչեւ յերեկոյն լոյսն և ապա անյայտ եղեւ։ Ի նուազել լուսոյն՝ ահիւ ըմբռնեալ արքն, ձայն եղեւ առ նոսա ի խաչանիշ լուսոյն՝ որ ասէր. Աստ հանգեցաւ Քրիստոս զընակիլ սուրբ խաչիս՝ ի բժշկութիւն և ի փրկութիւն ամենեցուն ի նա ապաւինելոց։

Եւ եկն անդ կաթողիկոսն Ներսէս, և կարգեցին ամ յամէ տօն մեծ կատարել ի սուրբ տեղւոջն զօր երեւման սուրբ Խաչին (ի Վարագ) ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ։

**Ծանօթ.** — *Հոս կը վերջացնենք Թարգմանելի Հատուածոյ շարքը. այսու հանդերձ կը խնդրենք Մեծ. Պաշտօնակիցներէ, որ Քերականութեանս յետագայ կանոններուն հրահանգներէն վերջ՝ վերաքաղ մ'ընել տան իրենց աշակերտաց, մինչեւ ցայսվայր եղած Թարգմանելի Հատուածներէն, հանդերձ վերլուծութեամբք, եւ հետզհետէ պատահած կանոններու մասին վարժութեամբք։*

# ԳԼՈՒԽ Ժ.

---

## ՏՐԱՄԱԲԱՆԱԿԱՆ ԼՈՒԾՈՒՄՆ

Տրամաբանական լուծումն է խօսք մը նախադասութեանց բաժնել, միանգամայն անոնց տեսակները որոշել եւ դասաւորել կանոնք։

Ամէն նախադասութիւն կը բաղկանայ էապէս երեք բառերէ, որք են. Ենթակայ, կապ եւ ստորոգելի (*)։

Մէկ կամ աւելի նախադասութիւններով խօսք կը կազմուի (**)։

### ԵՆԹԱԿԱՅ

Ենթակայն այն գլխաւոր գաղափարն է, որուն վրայ դատողութիւն կ'ընենք։

Նախադասութեան մը ենթակայն կ'ըլլայ պարզ կամ բաղադրեալ, ջոկ կամ բազմամասն։

---

(*) Նախադասութիւնը շատ քիչ անգամ այս երեք էական բառերուն մէջ կ'ամփոփուի։ Յաճախ կը պարունակէ այն՝ երկրորդական բառեր, որոնք կը կոչուին լրացուցիչ, որոնք կ'եղանակաւորեն, կը ճշդեն ստորոգելոյն կամ ենթակային նշանակութիւնը։ Լրացուցիչ կ'ըլլան գոյական, ածական, դերանուն, աներեւոյթ, անցեալ ընդունելութիւն եւ մակբայ։

(**) Դիտող. — Մեր քերականներէն ոմանք շփոթելով՝ խօսքը պարբերութիւն կոչած են, որ աւելի գրագիտական տեսութեամբ կ'առնուի։

*Ենթակայն պարզ է, երբ եղակի կամ յոգնակի մէկ բառ է․ բաղադրեալ է, երբ մէկէ աւելի բառեր են։*

*Ենթակայն ղոկ է, երբ լրացուցիչ չունի․ բազմամասն է, երբ լրացուցիչ ունի։*

**Հարցարան.** — Ի՞նչ է *տրամաբանական լուծումն*. — Ամէն նախադասութիւն քանի՞ բաներէ կը բաղկանայ. — Ինչպէս կը կազմուի *խօսք* մը. — Ի՞նչ է *ենթակայն*. — Ե՞րբ կ'ըլլայ ենթակայն *պարզ* կամ *բաղադրեալ, ղոկ* կամ *բազմամասն*.

**Հրահանգ 157.** — Որոշել ենթակայներու տեսակները. — *Ծերութիւն եւ հիւանդութիւն պատերազմ է ժամանակեայ. — Եղբայրասէր կրօնաւոր ազգակցութիւն ունի առ Քրիստոս. — Աղքատութիւն բազում ընչից է կարօտ, իսկ ագահութիւն ամենայնի. — Ապշութիւն է դանդաղութիւն մտաց ի բան եւ ի գործ. — Չիք կորուստ չար քան զժամանակին. — Մահ իմացեալ մահ է, մահ ոչ իմացեալ անմահութիւն է. — Ս. Սահակ եւ Ս. Մեսրոպ լուսաւորեցին զՀայս. — Այր յանձնապաստան անկանի ի խորխորատ կորստեան. — Այր հեզ բժիշկ է սրտի. — Ակն ագահի ոչ յագի մասամբ. — Սպիտակ լեառն յԵւրոպա եւ Տավալակիրի յԱսիա են յոյժ բարձրաբերձ լերինք. — Լեզու արձակ փշրէ ոսկերս. — Զօշաքաղութիւն է ժողովել շահս անպատեհս։*

## *ԿԱՊ*

*Բայն է այն կապը՝ որ ստորոգելին ենթակային հետ կը կապէ։ Բայը միայն էական բայն է։*

*Շատ անգամ էական բայը ստորոգելոյն հետ կը միանայ եւ ուրիշ բայ մը կը կազմէ, որուն կ'ըսուի ածական բայ։ Ածական բայ են բոլոր Ներգործական,*

կրաւորական եւ չէզոք բայերը, զոր օր. Սիրեմ, սիրող եմ ըսելու տեղ է։

**Ծանօթ.** — *Երբեմն եմ էական բայն ալ իբր ածական բայ կը գործածուի, եւ այն ատեն ըսելեայն ստորոգելի մը կ'իմացուի, զոր օր. Եղբայրս պարտէզն է, այսինքն եղբայրս պարտէզը* ներկայ *կամ* նստած *է։*

**Հարցարան.** — Ո՞ր բառն է *կապը.* — *Ածական բայ* որն կ'ըսուի։

**Հրահանգ 158.** — Լուծել ածական բայերը, այսինքն ստորոգելին երեւան բերել. — *Աշխատիմ (աշխատող եմ). — Սիրեմ զճշմարտութիւն. — Էին արք հինգ ի սենեկի անդ. — Կարէր կենարարն տանց ջրոյ տալ կենդանութիւն. — Դատաւոր մի էր ի քաղաքի ուրեմն. — Կիմոն Աթենացի ոչ այլ ինչ ընկալաւ ի հօրէն իւրմէ Միլտիադեայ, բայց անուն փառաւոր եւ տուգանս հնգից տաղանդաց. — Որ մանկանացն ծնեալ, անմահ զիւրն յիշատակ եթող. — Ցանկութիւնք սպանանեն զծոյլ, զի ոչ յօժարեն ձեռք նորա գործել ինչ. — Զոսկի քո եւ զարծաթ պինդ կապեա՛, եւ բանից քոց արա՛ չափ եւ կշիռ, եւ բերանոյ քոյ արա՛ դուռն եւ նիգ. — Բամբասեցին Մարիամ եւ Ահարոն զՄովսէս. — Եւ էր այր մի ի Մաոն եւ հօտք իւր ի Կարմեղոս. — Իբրեւ սթափեցաւ ի գինւոյ անտի, պատմեաց նմա կինն իւր զբանս զայսոսիկ. — Որդի մարդոյ ոչ եկն զոգիս մարդկան կորուսանել, այլ կեցուցանել։*

## ՍՏՈՐՈԳԵԼԻ

Ստորոգելին *այն յատկութիւնը կամ որպիսութիւնն է, որ ենթակային կ'ընծայուի։*

*Ստորոգելին ալ ենթակային պէս կ՚ըլլայ պարզ կամ բաղադրեալ, ղոկ կամ բազմամասն։*

*Ստորոգելին պարզ է, երբ մէկ է, զոր օր. Առիւծը գիշատիչ է։*

*Բաղադրեալ է, երբ մէկէ աւելի է, զոր օր. Արջը գիշատիչ եւ խոտակեր է։*

*Ստորոգելին ղոկ է, երբ լրացուցիչ չունի, զոր օր. Վարդը գեղեցիկ է։*

*Բազմամասն* (*) *է, երբ լրացուցիչ ունի, զոր օր. Մարկոս աշխատասէր եւ կիրթ է։*

**Հարցարան**. — Ի՞նչ է *ստորոգելին*. — Ի՞նչպէս կ՚ըլլայ ստորոգելին. — Ե՞րբ կ՚ըլլայ *պարզ* կամ *բաղադրեալ*, *ղոկ* կամ *բազմամասն*։

**Հրահանգ 159**. — Ցուցնել ստորոգելիներու տեսակները. — *Սիրելի է առաքինութիւն* (*սիրելի, ստորոգելի, պարզ եւ ղոկ*). — *Ջարեհ եւ Արթուն են ժրաջան եւ ուշադիր.* — *Քաղցր է գարուն.* — *Գործք Տեառն են երկինք եւ երկիր.* — *Հրաշակերտ բնութեան է սիրտ մայրենի.* — *Անձնանուէր եւ հաւատարիմ է շուն.* — *Սկիզբն ամենայնի՝ Աստուած է.* — *Անճառ է Աստուած եւ անպատում.* — *Օդ, առանց ցօղոյ խոնաւութեան, վնասակար եւ ապականիչ է.* — *Ռուսիա գրեթէ եօթներորդ մասն է ցամաքի տիեզերաց.* — *Մի՛ լինիր ծաղրածու եւ կատակերգակ, զի մի՛ ժառանգեսցես զանվախճան զլացն.* — *Խոնարհութեամբ եւ յուսով հնազանդել եւ գիտութեամբ աշխատել՝ կատարելութիւն է.* — *Զիջավիկութիւն*

---

(*) *Բազմամասն եղող ենթական եւ ստորոգելին իրենց իմաստը լրացնող բառեր կ՚ունենան, այսինքն ածական մը, յատկացուցիչ մը, բացայայտիչ մը, խնդիր մը կամ մակբայ մը. ասոնք լրացուցիչ կամ յաւելուած կը կոչուին։*

*եւ զհանգիստ ատեա՛. — Որ լաւն է, եւ զուարթ երեւի. — Գովելի են գեղեցիկքն եւ պարսաւելի գարշելիքն ։*

## ՔԵՐԱԿԱՆԱԿԱՆ ԵՆԹԱԿԱՅ ԵՒ ՏՐԱՄԱԲԱՆԱԿԱՆ ԵՆԹԱԿԱՅ
## ՔԵՐԱԿԱՆԱԿԱՆ ՍՏՈՐՈԳԵԼԻ ԵՒ ՏՐԱՄԱԲԱՆԱԿԱՆ ՍՏՈՐՈԳԵԼԻ

**Քերականական ենթակայ** (*) *կը կոչուի նախադասութեան ենթական, երբ առանձին առնենք զայն, առանց իր լրացուցիչներուն, այսինքն առանց իր իմաստը լրացնող կամ որոշող բառերուն. իսկ* **տրամաբանական ենթակայ** *կը կոչուի, երբ իր լրացուցիչներով մէկտեղ առնենք, զոր օր.* Գուբ խոր է **բերան անօրինի**.

**Բերան**, *քերականական ենթակայ.*

**Բերան անօրինի**, *տրամաբանական ենթակայ ։*

**Քերականական ստորոգելի** *կ'ըսուի նախադասութեան մը ստորոգելին, երբ առնենք զայն, առանց իր լրացուցիչներուն. իսկ* **տրամաբանական ստորոգելի** *կը կոչուի, երբ իր լրացուցիչներով մէկտեղ առնենք, զոր օր.* **Բարուց աղուխսու պատկեր** *է այր խոհական.*

**Պատկեր**, *քերականական ստորոգելի.*

**Բարուց աղուխսու պատկեր**, *տրամաբանական ստորոգելի ։*

**Դիտող.** — *Տրամաբանական ենթական եւ ստորոգելին կրնան, իբր լրացուցիչ, նախադասութիւն մ'ալ բովանդակել, զոր օր.* **Ամբարհաւաճութիւն՝ որ ուռուցանէ զմեզ**, *է* **ախտ ինչ՝ որ ապականէ զբարս** ։ **Ամբարհաւաճութիւն՝ որ ուռուցանէ զմեզ**, *տրամաբանական ենթակայ,* **ախտ ինչ՝ որ ապականէ զբարս**, *տրամաբանական ստորոգելի ։*

---

(*) **Քերականական ենթակայն կը կոչուի ցերքայի.**

**Հրահանգ 160. — Ցուցնել քերականական ենթակայ եւ տրամաբանական ենթակայ, քերականական ստորոգելի եւ տրամաբանական ստորոգելի.** — *Որդի խնամոտն ուրախութիւն է ծնողաց (որդի՝ քեր. ենթ. որդի խնամոտն՝ տրամաբանական ենթ.) — Գաբրիէլ եւ Միքայէլ են պետք հոգեղինայն դասուց (պետք, քեր. ստոր. պետք հոգեղինացն դասուց՝ տրամ. ստոր.). — Հատն մանանխոյ փոքր է քան զամենայն սերմանիս. — Առաքինութիւն պատուականագոյն է քան զոսկի եւ քան զականս պատուականս. — Հոգեւոր առաջնորդ աստուածային հուր է. — Խաղաղասէր կրօնաւոր՝ ջահ պայծառ է եղբայրութեանն. — Դուստր՝ ստացուած օտար է. — Լաւ է այր, որ յաղթէ բարկութեան, քան որ առնուցու զքաղաք հզօր. — Փառք եւ հանգիստ են պտուղք աշխատութեանց եւ քրտանց. — Պատուականագոյն գանձ են մատեանք եւ բազում անգամ բժիշկք հիւանդութեանց հոգւոյ. — Մանուկ զգօն մեծարէ զծնողս իւր։*

## ՆԱԽԱԴԱՍՈՒԹԵԱՆՑ ՏԵՍԱԿՆԵՐ

*Երեք տեսակ նախադասութիւն կայ. Անկախ կամ բացարձակ նախադասութիւն, գլխաւոր նախադասութիւն, եւ ստորադաս նախադասութիւն։*

*Անկախ կամ բացարձակ նախադասութիւն կ՚ըսուի այն՝ որ ինքնին լրացեալ իմաստ կուտայ, զոր օր. Արեգակն ծագէ ի վերայ արդարոց եւ մեղաւորաց։*

*Գլխաւոր նախադասութիւն կը կոչուի այն՝ որուն բայը կախում չունի ուրիշ նախադասութենէ մը, այլ որուն իմաստը կը լրանայ ուրիշ նախադասութեան մը յաւելմամբ։ Այս խօսքերուն մէջ*

*Հաւատամ զի է Աստուած ։*

*Մի՛ յանդուգն անկանիցիս ի մարտ, զի մի՛ յեսոյ զղջանայցես. Հաւատամ, մի՛ յանդուգն անկանիցիս ի մարտ, գլխաւոր նախադասութիւններ են ։*

*Ստորադաս նախադասութիւն կը կոչուի այն՝ որ գլխաւոր նախադասութենէ մը կախում ունի եւ անոր իմաստը կը լրացնէ, զոր օր. Զի է Աստուած, զի մի՛ յեսոյ զղջանայցես, ստորադաս նախադասութիւններ են ։*

*Ստորադաս նախադասութիւն մը կրնայ ունենալ իրմէ կախեալ ուրիշ մէկ կամ աւելի ստորադաս նախադասութիւններ, զոր օր. Աստուած կամի, զի յամեսցի այր զայրացեալ ի խնդրել վրէժ. — մինչեւ անցցէ բարկութիւն նորա ։*

**Հարցարան**. — Քանի՞ տեսակ նախադասութիւն կայ. — Ո՞ր նախադասութիւններն են *անկախ* կամ *բացարձակ*, *գլխաւոր* եւ *ստորադաս*. — *Ստորադաս նախադասութիւնն* ի՞նչ կ'ունենայ ։

**Հրահանգ 161**. — Ընդօրինակեցէ՛ք հետեւեալ խօսքերը եւ ըսէ՛ք թէ ո՞րն է գլխաւոր, ստորադաս եւ միջանկեալ եւ թէ ի՞նչ է իրենց կապակցութեան եղանակը. — *Պատանի նանրասէր, որ կանացաբար զարդարի, անարժան է իմաստութեան եւ փառաց. — Մինչդեռ զայսոսիկ Ագայէլ եւ Մենտոր ընդ միմեանս խօսէին, եւ ահա դելփինք թեփամորթք, ոսկեճաճանչք եւ կապոյտք խաղային ընդ ծով՝ ամբառնալով փրփրադէզ զալիս. — Փառասիրութիւն եւեթ եւ ագահութիւն աղբերք են աղետից մարդկան, որք ի խնդիր ստանալոյ զամենայն, աւելորդացն ցանկութեամբ թշուառանան. — Եթէ զերծանիցիմք միայն ի մրրկէս, կասկածեցից յանձնէ, իբր ի վտանգաւորագոյն ոսոխէ. — Յորժամ առնիցես դու զճշմարտութիւն, յաջողեսցին ամենայն գործք քո. —*

Ամենայն ինչ մեռանի, անմահ կան կրօնք. — Լո՛ւր ամենեցուն եւ սակաւուց հաւատս ընծայեա՛. — Իբրեւ ետես զի, գթացաւ ի տիս մանկութեան իմոյ, եւ եհարց զանուն իմ եւ զհայրենիս ։

## ԿՑՈՐԴՈՒԹԻՒՆ ԱՆԿԱԽ ՆԱԽԱԴԱՍՈՒԹԵԱՆՑ

Անկախ նախադասութիւնները կը կցորդուին իրարու

1. Պարզ առընթերադրութեամբ, զոր օր. Եկի, տեսի, յաղթեցի ։

2. Համակարգութեան շաղկապներով (եւ, կամ, բայց, այլ սակայն, իսկ, որովհետեւ, ուրեմն, ապա, ապա ուրեմն, ուստի, վասն այնորիկ, վասն որոյ), զոր օր. Ծուլութիւն յանկուցանէ զբարեկամս. իսկ աղքատութիւն ուծացուցանէ զնոսա ։

**Ծանօթ**. — Պատճառական զի եւ իմէ բաղադրեալ ուրիշ շաղկապներով կապուած նախադասութիւններն եւս անկախ կը համարուին յոմանց ։

## ԿՑՈՐԴՈՒԹԻՒՆ ՍՏՈՐԱԴԱՍ ՆԱԽԱԴԱՍՈՒԹԵԱՆՑ ԳԼԽԱՒՈՐԻՆ ՀԵՏ

Ստորադաս նախադասութիւնները գլխաւորին հետ կը կցորդուին .

1. Որպէս զի, իբրեւ, յորժամ, եթէ, մինչեւ, մինչ-զի (որ, որպէս), մինչդեռ, որպէս, որչափ, որպէս թէ շաղկապներով, զոր օր. Զի ներող եւ արգահատող է Արարիչն, այն ամենեցուն իսկ յայտ է ։

Այր ժրաջան վաստակէ, մինչ ննջէ ծոյլն ։

2. Յարաբերական դերանուններով, ուր մակբայով եւ վերջապէս ո՛ր անորոշ ածականով, զոր օր. Առաջնիք ձեզ բարեկամս, յորոց մի՛ իցէ ձեզ ամաչել ։

*Ուր եմ ես — անդ եւ պաշտօնեայն իմ եղիցի ։*
*Ասա՛ մեզ — որո՞վ իշխանութեամբ առնես զայդ ։*

**Ծանօթ.** — *Ստորադաս նախադասութիւնները կըրնան երկու տեսակի բաժնուիլ, երկրորդական եւ միջանկեալ ։*

*Շաղկապներով կապուածները երկրորդական են . իսկ յարաբերականով կապուածները միջանկեալ ։*

*Միջանկեալ նախադասութիւնք կամ որոշիչ են եւ կամ մեկնիչ ։*

*Միջանկեալ նախադասութիւնը մեկնիչ է, երբ խօսքին մէջ անուան մը կամ դերանուան մը իմաստը կ'որոշէ եւ կարելի չէ զանց ընել զայն առանց գլխաւոր նախադասութեան իմաստն այլայլելու, զոր օր. Արհամարհեա՛ որ ինչս ստանայ եւ վայելել ոչ գիտէ, քանզի նման են որ ձիս ստանան եւ վարել ոչ գիտեն ։ Որ ինչս ստանայ, եւ վայելել ոչ գիտէ, որոշիչ միջանկեալ է, վասն զի կ'որոշէ այն մարդը՝ որ ինչքեր ունի եւ վայելել չգիտեր ։*

*Միջանկեալ նախադասութիւնը մեկնիչ է, երբ խօսքին մէջ անուան մը կամ դերանուան մը իմաստը կը մեկնէ, կը բացատրէ եւ կարելի է զանց ընել զայն առանց գլխաւոր նախադասութեան իմաստը խանգարելու, զոր օր. Գթութիւն՝ որ է մայր առաքինութեանց, պարտ է բնակել ի քեզ . որ է մայր առաքինութեանց, մեկնիչ է ։*

**Հարցարան.** — Անկախ նախադասութիւնները ինչպէս կը կցորդուին իրարու . — Ստորադաս նախադասութիւնները ինչպէս կը կցորդուին իրարու ։

**Հատուած 162. — Որոշեցէք նախադասութեանց տեսակները.** — *Ուր ոչ գոյ երկմիտ՝ դադարէ կռիւ. — Որ զմահ ոչ գիտէ, երկնչի ի մահուանէ. — Ազգ մարդկան ոչ այլ ինչ է, բայց ազգատոհմ մի համասփիւռ ընդ երեսս երկրի. — Որպէս փորձի ի բովս արծաթ եւ ոսկի, նոյնպէս ընտրէ զսիրտս Աստուած. — Ընդ որդիս մի՛ ծիծաղեսցիս, զի մի՛ յետոյ լացցես զնոսա. — Որ ուտէ զհաց անպզտամին, լցցի բերան նորա կոպճով. — Աղէ՛ դու ասա՛, ուստի՞ հմայիւք զիս կախարդեցեր. բարութիւն սրտի քո անշուշտ է այն, որ զիս կախարդէ. — Մինչդեռ նա պայնոսիկ առ յուսահատ վշտին ցնորեալ բարբառէր, հասի կալայ զնա գրկապինդ. — Են են արկածք ձհազինք եւ աղէտք անպարտակիրք, ուր եւ իմաստնոց սասանի յոյս. — Մարդոյ մահկանացուի, որ պանդուխտ է եւ անցաւոր ի վերայ երկրի, ոչ է վայելել ի զբօսանս ի հանգիստ ի գրգանս ի փութիւն եւ ի փառս. — Բազմահոդ տուընջեանս՝ որ կոչի կեանք, գիշեր ի վերայ հասանէ մահ. — Պատմութիւն օգտակար է մեզ մանաւանդ այնու զի հրահանգէ զմեզ:*

**Հատուած 163. — Աշխարհաբարէ գրաբար.** — *Ով որ իմաստուններու հետ կ՚երթայ, իմաստուն պիտի ըլլայ. — Երբ նախատէ ըզքեզ քու բարեկամդ, փոխի՛ր, մի՛ արհամարհեր. — Ուրախ սիրտը կայտառ (բարեձոյն) կ՚ընէ. — Այն որ՝ ալեաց կատաղութեան սանձ կը դնէ, նա գիտէ չարերուն որոգայթները (զկամփուլս) խորտակել. — Հեռի՛ ըլլայ մենէ ստախօսութիւնն, որովհետեւ ստախօս մարդն ինքն իր անձը կ՚անարգէ, (անձամբ զանձն թշնամանէ) եւ կ՚ստիպէ զմեզ իր խօսքերուն չհաւատալ՝ նոյն իսկ երբ ճշմարիտը ըսէ. — Քանի մը անձինք Սոկրատայ հարցուցին թէ երջանիկ մարդը*

ո՞վ է . անիկա որ քիչ բանի կը կարօտի, ըսաւ . — Անցած ժամանակն այլ ևս չի դառնար . — Սոկրատայ վրայ շատ չափաւորութիւն տեսնուեցաւ, անոր համար իր բոլոր կեանքին մէջ ամենևին տկարութիւն չզգաց . — Այն՝ որ յաջողութեան ժամանակ բարիք չըներ, դըժբախտութեան ժամանակ շատ կը կրէ . — Գինին՝ որ մնաց ժամանակ մը շտեմարանին մէջ, ստացաւ այնպիսի յատկութիւններ զորս առաջ չունէր . — Ցորմէ հետէ Ֆրանքլին հնարեց շանթարգելը, կրնան շէնքերը շանթահար ըլլալէ զերծ մնալ . — Երբ ճարտարախօսը դադրեցաւ խօսելէ, բոլոր ունկնդիրները ծափահարեցին (ծափս հարկանել) . — Ամէն ոք կը սիրէ այն երկիրը՝ ուր ծնած է ։

---

# ՕՐԻՆԱԿՔ ՏՐԱՄԱԲԱՆԱԿԱՆ ԼՈՒԾՄԱՆ

## ՕՐԻՆԱԿ Ա.

### ՆԿԱՐԱԳԻՐ ՁԻՈՅՆ

### ԽՕՍՔ Ա.

Որոտայ ի դաշտի եւ դափր հատանէ . ելանէ ի դաշտ զօրութեամբ . ի պատահել նետից արհամարհէ եւ ոչ դարձցի յերկաթոյ ։

Այս խօսքն ունի հինգ անկախ նախադասութիւններ։

1. Որոտայ ի դաշտի, որոտացող է . Է կապ, ենթակայ լռելեայն Նա պարզ եւ լոկ, որոտացող ստորոգելի պարզ եւ բազմամասն, լրացուցիչ ունի ի դաշտի ։

2. Դափր հատանէ, դափր հատանող է . Է կապ, ենթակայ լռելեայն Նա պարզ եւ լոկ, հատանող ստորոգելի պարզ եւ լոկ ։

3. Երանէ ի դաշտ զօրութեամբ, երանօղ է. է կապ. ենթակայ լռելեայն նա պարզ եւ լոկ. երանօղ ստորոգելի պարզ եւ բազմամասն, լրացուցիչ ունի 1. ի դաշտ, 2. զօրութեամբ:

4. Ի պատահել նետից արհամարհէ, արհամարհօղ է. է կապ, ենթակայ լռելեայն նա պարզ եւ լոկ. արհամարհօղ ստորոգելի պարզ եւ բազմամասն, լրացուցիչ ունի ի պատահել նետից:

5. Եւ ոչ դարձցի յերկաթոյ. եղիցի կապ, ենթակայ լռելեայն նա պարզ եւ լոկ, դարձօղ ստորոգելի պարզ եւ բազմամասն, լրացուցիչ ունի, 1. ոչ, 2. յերկաթոյ:

## ԽՕՍՔ Բ.

Ի վերայ նորա շողան աղեղն եւ սուսեր, եւ շարժին վահանի եւ նիզակի, եւ բարկութեամբ ապականէ զերկիր եւ ոչ հաւատայ մինչեւ փող հարկանիցի:

Այս խօսքը կը պարունակէ չորս նախադասութիւն:

1. Ի վերայ նորա շողան աղեղն եւ սուսեր եւ շարժին վահանի եւ նիզակի, են կապ, աղեղն եւ սուսեր եւ շարժին նիզակի ենթակայ բաղադրեալ եւ բազմամասն, լրացուցիչ ունի նիզակի. շողացօղ ստորոգելի պարզ եւ բազմամասն, լրացուցիչ ունի՝ ի վերայ նորա:

2. Եւ բարկութեամբ ապականէ զերկիր, անկախ նախադասութիւն, է կապ, ենթակայ լռելեայն նա պարզ եւ լոկ. ապականօղ ստորոգելի պարզ եւ բազմամասն, լրացուցիչ ունի 1. բարկութեամբ, 2. զերկիր:

3. Եւ ոչ հաւատայ, անկախ նախադասութիւն, է կապ, ենթակայ լռելեայն նա պարզ եւ լոկ. հաւատացօղ ստորոգելի պարզ եւ բազմամասն, լրացուցիչ ունի ոչ:

4. Մինչեւ փող հարկանիցի, ստորադաս նախադասութիւն, լիցի կապ, ենթակայ լռելեայն նա պարզ

եւ լոկ․ հարկանող ստորոգելի պարզ եւ բազմիմասն, լրացուցիչ ունի՝ մինչեւ ։

## ԽՕՍՔ Գ.

Եւ իբրեւ փող հարկանի, նա վաշվաշ կարդայ, ի հեռաստանէ առնու զհոտ մարտի, վազս առնլով եւ փնչելով ։

Այս խօսքը կը պարունակէ երեք նախադասութիւն։

1. Եւ իբրեւ փող հարկանի, ստոր. նախադասութիւն, ունի կապ, փող ենթակայ պարզ եւ լոկ․ հարկեալ ստորոգելի պարզ եւ բազմիմասն, լրացուցիչն՝ իբրեւ ։

2. Նա վաշվաշ կարդայ, գլխաւոր նախադասութիւն, է կապ, նա ենթակայ պարզ եւ լոկ․ կարդացող ստորոգելի պարզ եւ բազմիմասն, լրացուցիչ՝ վաշվաշ ։

3. Ի հեռաստանէ առնու զհոտ մարտի, վազս առնելով եւ փնչելով, անկախ նախադասութիւն, է կապ, նա ենթակայ լռելեայն պարզ եւ լոկ․ առօղ ստորոգելի պարզ եւ բազմիմասն, լրացուցիչ ունի 1. ի հեռաստանէ, 2. զհոտ մարտի, 3. վազս առնելով եւ փնչելով ։

## ՕՐԻՆԱԿ Ը.

Եթէ առնեն քեզ սէր, գոհացի՛ր զԱստուծոյ, եւ եթէ ոչ առնեն, մի՛ տրտնջեր․ եւ մի՛ տրտմեցուցաներ զանձն ուրուք, այլ նեղեա զքեզ սակաւ մի լռութեամբ․ զի որ մարտնչի, ժուժկալութեան պէտք են ։

Այս խօսքը կը պարունակէ ութը նախադասութիւն։

1. Եթէ առնեն քեզ սէր, ստոր. նախադասութիւն, որ գլխաւորին հետ կապուած է եթէ շաղկապով․ են կապ, ենթակայ լռելեայն նոքա պարզ եւ լոկ․ արարող ստորոգելի պարզ եւ բազմիմասն, լրացուցիչ ունի՝ քեզ սէր ։

[illegible] Աստուծոյ . գլխ. նախադասութիւն , [illegible] ենթակայ լռելեայն պարզ եւ լոկ . գոհացող [illegible] պարզ եւ բազմամասն, լրացուցիչ՝ զԱստուծոյ.

3. Ու [illegible] ոչ [illegible] , ստորադաս նախադասութիւն [illegible] կապուած եւ երկ շաղկապներով . [illegible] ենթակայ լռելեայն պարզ եւ լոկ . արարող ստորոգելի պարզ եւ բազմամասն , լրացուցիչ ունի ոչ :

4. Մի՛ տրտնչեր , գլխաւոր նախադասութիւն , չէ՛ր կապ , դու ենթակայ լռելեայն պարզ եւ լոկ . տրտնչող ստորոգելի պարզ եւ բազմամասն , լրացուցիչ ունի մի՛ :

5. Եւ մի՛ տրտմեցուցաներ զանձն ուրուք , անկախ նախադասութիւն , չէր կապ , դու ենթակայ լռելեայն պարզ եւ լոկ . տրտմեցուցանող ստորոգելի պարզ եւ բազմամասն , լրացուցիչ ունի 1. մի՛, 2. զանձն ուրուք .

6. Այլ նեղեա զքեզ սակաւ մի ղռուբեամբ , անկախ նախադասութիւն , չէ՛ր կապ , դու ենթակայ պարզ եւ լոկ . ներող ստորոգելի պարզ եւ բազմամասն , լրացուցիչ ունի 1. զքեզ , 2. սակաւ մի ղռուբեամբ :

7. Զի ժուժկալութեան պետք գոյող են նորա , ստոր. նախադասութիւն, են կապ. պետք ենթակայ պարզ եւ բազմամասն, լրացուցիչ՝ 1. ժուժկալութիւն. 2. նորա:

8. Որ մարտնչի , ստոր. միջ. նախադասութիւն որ ով կապուած վերի նախադասութեան հետ . է կապ , որ ենթ. պարզ եւ լոկ . մարտնչող ստորոգելի պարզ եւ լոկ :

# ՄԱՍՆ Բ.



## ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ

Համաձայնութիւն (*) կ'ըսուի քերականութեան այն մասն՝ որ կը սորվեցնէ խօսքին մէջ բառերն իրենց վարած պաշտօնին եւ վերաբերութեան համեմատ այնպիսի ձեւերով գործածել եւ շարել, որ կազմուած խօսքն իմաստ մը տայ։

Բառերը խօսքին մէջ զանազան պաշտօններ կը կատարեն եւ իրարու հետ վերաբերութիւն ունին իբրեւ տէր բայի եւ բայ, իբրեւ խնդիր եւ խնդրառու, իբրեւ ստորոգելի եւ ստորոգեալ, իբրեւ բացայայտիչ եւ բացայայտեալ։

**Հարցարան.** — Համաձայնութիւն որն կ'ըսուի. — Բառերը խօսքին մէջ ինչպէս կը կապուին.



---

(*) Մինչեւ ցարդ Քերականութեան ընթացքին մէջ մասունք բանին առանդելով հանդերձ՝ խօսք մը իրարու հետ կապուելու մասին ինչ ինչ կանոններ տուինք. տեսնենք այժմ անոնց կարեւոր մանրամասնութիւնները համաձայնութեան այս մասին մէջ.

# ԳԼՈՒԽ Ա.

## ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆՔ ՏԷՐԲԱՅԻ

Տէրբային կրնայ դրուիլ ուղղական, սեռական, տրական հոլով ։

Դիմաւոր բայերու տէրբային միշտ ուղղական հոլով է, այսպէս. Ծագէ արեգակն. իջանեն անձրեւք. մեռանի մարդ ։

Բայը տէրբայիին հետ թուով եւ դէմքով կը համաձայնի, զոր օր. Ես ճանաչեմ. դու լսես. Նոքա ասացին ։

Եթէ տէր բային եզակի թուական անուն է, գոյական կանով կամ առանց գոյականի, բայը կրնայ յոգնակի դրուիլ, զոր օր. Ընկալան զնա տասն այր (*) ։

Երբ շատ եզակի անուններ տէրբայի ըլլան՝ բայը յոգնակի կը դրուի, ինչպէս. Կարծր են քար եւ երկաթ ։

Եթէ բայը խօսքին մէջ առաջ է տէրբայիներէն, առաջին տէրբայիին հետ կրնայ համաձայնիլ, զոր օր. Եմուտ Նոյ եւ որդիք նորա եւ կին նորա ։

Նոյնպէս եթէ տէրբայիները կապուած ըլլան ոչ եւ կամ շաղկապով, բայը կրնայ համաձայնիլ իրեն մօտի բառին հետ, զոր օր. Ոչ մահ եւ ոչ կեանք եւ ոչ հրեշտակք եւ ոչ այլ ինչ արարած կարէ մեկնել զմեզ ի սիրոյ անտի Աստուծոյ ։

---

(*) Այս՝ իմաստի համեմատ համաձայնութիւն է, որ աւելի քերականական ձեւ մ'է բակառութիւն կոչուած ։

*Եթէ տէրբային հաւաքական գոյական անուն է, բայը եզակի կը դրուի. յոգնակի ալ կը դրուի բակա-ռութեամբ, զոր օր. Ետես ամենայն ժողովուրդն, ան-կան ի վերայ երեսաց իւրեանց։*

*Եթէ տէրբային անեզական բառ է, բայը յոգնակի կը դրուի, զոր օր. Եղիցին կամք քո։*

*Երբ խօսքին մէջ շատ դէմք կայ, բայը նախապա-տիւ դէմքին հետ կը համաձայնի։ Առաջին դէմքը երկ-րորդէն նախապատիւ է, երկրորդն երրորդէն, զոր օր. Ես եւ հայր իմ մի եմք։*

**Հարցարան.** — *Տէրբային* ինչ հոլով կը դրուի. — Եթէ բայը դի-մաւոր է, տէրբային ինչ հոլով դրուելու է. — Բայը ինչպէս կը համա-ձայնի տէրբայինին հետ. — Եթէ տէրբային եզակի թուական անուն ըլլայ, բայը ինչպէս կը դրուի. — Եթէ շատ եզակի անուններ տէրբայի ըլլան, բայը ինչպէս կը դրուի. — Եթէ տէրբային խօսքին մէջ առաջ է, ինչպէս կը համաձայնի. — Նոյնպէս եթէ տէրբայիները *ոչ* եւ *կամ* շաղկապով կապուած ըլլան, բայը ինչպէս կը համաձայնի. — Եթէ տէրբային հա-ւաքական բառ մ'ըլլայ, բային հետ ինչպէս կը համաձայնի. — Անեզա-կան տէրբային ինչպէս կը համաձայնի. — Եթէ խօսքին մէջ քանի մը դէմք ունեցող տէրբայի ըլլայ, որ տէրբայինին հետ կը համաձայնի բայը։

**Հրահանգ 164.** — Վերլուծեցէք հետեւեալ նախա-դասութիւնները. — *Անկաւ Բէլ. — Երկինք պատմեն զփառս Աստուծոյ. — Յարեաւ Մովսէս եւ Յեսու պաշ-տօնեայ նորա. — Եւ մեռաւ Սաւուղ, եւ երեքեան որ-դիք նորա եւ կապարճակիրն եւ ամենայն արք նորա. — Ինքն աստի արբ եւ որդիք նորա եւ խաշինք նորա. — Դու ես որդի իմ. — Քաղցր են կեանք. — Շքեղ է բը-նութիւն. — Գեղեցիկ է գարուն. — Կոյր զրկի ի ճա-ռագայթից արեգական եւ ոգիտութիւն զրկի ի կատար-եալ կենաց. — Դատարկութիւն սկիզբն է չարեաց. — Արդարն ողորմի եւ տայ առանց խնայելոյ. — Մեք գի-տեմք, զի այրն այն մեղաւոր է. — Դու լինիր նորա ա-*

*չակերտ. մեք Մովսիսի աշակերտք եմք. — Ունկն դրանս քննէ եւ կոկորդ զկերակուրս ճաշակէ. — Յորժամ դու եւ նա միայն լիցէք. — Հաճ եմք ես եւ դու ընդ միմեանս. — Ես եւ հայր եկեսցուք եւ օթեվանս առ նմա արասցուք. — Խաւար եւ ջուր ունէին զերեսս ամենայնի. — Արք խաղաղութեան եմք մեք. — Կեա՛ց դու եւ ամենայն ժողովուրդ քո. — Այլ ոչ դուք եւ ոչ դա, ոչ եւ որ զկնի ձեր գալոցն է, զայն ի մեզ ոչ կարէ տեսանել. — Հողմ եւ ծով հնազանդին սմա։*

**Դասանք 165.** —Համաձայնութիւն անեզական տէր-բայիներու. — *Բարձր են երկինք. — Խոր են դժոխք. — Անցցեն կեանք մեր. — Էին կուռք մի Բաբելացւոց անուն Բէլ. — Մնան հաւատք, յոյս եւ սէր. — Ընդունելի են աղօթք քո. — Շքեղ են ապարանքն. — Սուրբ են օրէնք. — Հզօր են կամք. — Մշտնջենական եղիցին փառք Սոկրատայ։*

**Դասանք 166.** — Գրաբարի վերածեցէք. — *Բոլոր ժողովուրդը աղաղակեց. — Ամէն ոք պիտի պատուէ իւր ընկերը. — Ես Աստուծոյ քահանայ եմ. — Արեգակը պիտի խաւարի եւ լուսինը իւր լոյսը չպիտի տայ. — Դուք ճշմարտութիւնը սիրեցէք. — Պարտէզին ծառերը ծաղկեցան. — Իմաստուն կիները տուներ շինեցին. — Մանուկ էի ես եւ ծերացայ. — Անխելք մարդը իւր ընկերները կ'անարգէ. — Նա՛ որ անզգամին հացը կ'ուտէ, անոր բերանը կոպիճով պիտի լեցուի. — Իսկ տիկինն Փառանձեմ երբ տեսաւ թէ մինակ մնացի. — Այն մարդուն դէմքը աղուոր է. — Ես եւ իմ հարազատ եղբայրս այսօր քենէ պիտի հրաժարինք. — Ադոր կամքը ըրէ՛ եւ տուրէ՛ դուն եւ մենք։*

## ՏԷՐԲԱՅԻՆ՝ ՍԵՌԱԿԱՆ ԵՒ ՏՐԱԿԱՆ ՀՈԼՈՎ

*Տէրբային սեռական կը դրուի.*

1. *Երբ եւ շաղկապով կապուած երկու բայ միեւնոյն տէրբային ունենան, եւ շաղկապը կը ջնջուի, առաջին բայը անցեալ դերբայի կը փոխուի եւ տէրբային սեռական կը դրուի, զոր օր.* Հրէից *կալեալ զիս՝ կամէին սպանանել. փոխանակ ըսելու, Հրեայք կալան զիս եւ կամէին սպանանել։*

2. *Բայերու յարակատարի, գերակատարի, ստորադասական անցեալի եղանի Գ. դէմքերը սեռական տէրբայի կ'առնուն եւ ամէն դէմքի տեղ կը գործածուին, զոր օր. Տեսեալ է իմ, փոխանակ ըսելու. Տեսեալ եմ ես, տեսեալ է քո, փոխ. Տեսեալ ես դու, տեսեալ է նորա, փոխ. Տեսեալ է նա։*

*Տէրբային տրական կը դրուի, երբ երկու գլխաւոր բայ զի կամ* եթէ *շաղկապով կապուած ըլլան, կրնայ զի կամ* եթէ *շաղկապը զանց առնուիլ, երկրորդ բայն անորոշ դերբայի փոխուիլ եւ տէրբային տրական դրուիլ, զոր օր. Այսպէս եղեւ ամենեցուն զերծանել, փոխանակ ըսելու. Այսպէս եղեւ զի ամենեքին զերծան։*

**Ծանօթ.** — *Անցեալ դերբայի քով ուղղական տէրբայի ալ կը դրուի, մանաւանդ երբ անորոշ բառ ըլլայ, զոր օր.* Օգնութիւն *հասեալ առ ի յԱստուծոյ, մինչեւ ցայսօր կացի (ողջ)։*

*Յարակատարի, գերակատարի, ստորադասական անցեալի քով ալ ուղղական տէրբայի կը դրուի, զոր օր. Գնացեալ էր* նա *։*

*Նոյնպէս աներեւոյթներու քով ալ ուղղական տէրբայի կրնայ դրուիլ, զոր օր. Սաէին* որոշումն *լինել։*

**Հարցարան.** — Տէրբային ուղղականէ զատ ինչ հոլով կը դրուի. — Ե՞րբ սեռականն կը դրուի. — Ե՞րբ տրականն կը դրուի.

**Հրահանգ 167. — Վերլուծեցէք սոյն նախադասութիւնները.** — *Տեսեալ արդարոց ծիծաղեցան. — Առեալ Սեմայ եւ Յաբեթի հանդերձ՝ ծածկեցին զմերկութիւն հօր իւրեանց. — Եւ չգտեալ աղաւնւոյն հանգիստ ոտից իւրոց՝ դարձաւ անդրէն առ Նա ի տապան անդր. — Մինչ զի հաց եւս ոչ ժամանել ուտել նոցա. — Արարեալ ժողով Հրէից նզովեցին զանձինս ոչ ուտել եւ ոչ ըմպել. — Եղեւ բառնալ երկնից եւ իջանել հոգւոյն սրբոյ. — Մարմնոյ ի սուրբ օդ վայելեալ՝ առողջագոյն լինի. — Ջիք իմ ճաշակեալ եւ ոչ արբեալ. — Տեսեալ մարդկան զծիծառն՝ նովաւ ճանաչեն զհասանել գարնայնոյն. — Անսաստել ումեք Աստուծոյ՝ չար է. — Եղեւ մեռանել աղքատին եւ տանել հրեշտակաց զնա ի ծոցն Աբրահամու. — Հաճեցաւ տէր բնակել սրբոցդ Աստուծոյ ի տեղւոջդ. — Արդ նախանձեալ չարին՝ արկանէ զմարդն ի մահ. — Գրանոց է իմ կազմեալ եւ բազում գրեանս ժողովեալ. — Ոչ կերեալ դորա եւ ոչ արբեալ. — Ոչ երբեք ասացեալ է նոցա քեզ զայդ. — Նորա ընկեցեալ զձորձս իւր՝ եկն առ Յիսուս. — Եկեալ առ նա եղբարցն իւրոց անկան առաջի նորա. — Տեսեա՞լ է քո զմանուկն. — Ոչ է բարւոք մարդոյդ միայն լինել. — Զոր առեալ մեծին Սահակայ եւ Մեսրոպայ՝ դարձեալ թարգմանեցին զմիւսանգամ թարգմանեալն մութապէս. — Եւ նոցա ընկալեալ զթուղթն եւ ընթերցեալ եւ զորս առաքեացն տեսեալ, յոյժ ուրախ եղեն. — Մինչչեւ լեալ էր լուսոյն՝ ոչինչ երեւէր յաշխարհի գեղեցկութիւն իրիք. — Ոչ է մարթ հովուի թողուլ զխաշն իւր, այլ պարտ է հովուի դնել զանձն ի վերայ ոչխարին իւրոյ. — Լուեալ*

է մեր ի սուրբ հարցն մերոց, եթէ գլուխ ամենայն առաքինութեան համբերութիւն է։

**Հրահանգ 168.** — **Վերածեցէք ի գրաբար.** — *Ես ոչ սուտ խօսած եմ եւ ոչ երդում ըրած. — Զուգեց որ մենք անցնինք. — Մինչեւ անգամ շատերն ըսին թէ մեռաւ. — Իսկ նա աշակերտները տանելով Մելիտինացւոց քաղաքը, կը յանձնէր քաղաքին սուրբ եպիսկոպոսին. — Պատահեցաւ որ քահանայ մը նոյն ճամբէն իջնէ. — Ես տեսած չեմ. — Նա այն հրաշքները (զնշանս) տեսնելով, հաւատաց. — Եղաւ որ երկինք բացուեցաւ. — Կարդացա՞ծ ես. — Պատգամաւորը այս ըսելով գնաց. — Եթէ ես տեսած ըլլայի. — Բրուտը ճմլելով (լմեալ) կակուղ կաւը կը դնէ անիւին վրայ (դրգան). — Գայլերը ոչխարը յափշտակելով անտառ փախան. — Աղաչեցինք որ նա Երուսաղէմ չերթայ (ելանել յ.). — Գիտեմ թէ դուն շատ տարիներէ ի վեր այս ազգին դատաւոր ես. — Դուք անոնց համար լացած էք. — Եթէ նա փախած չըլլար. — Եթէ ես եկած եւ խօսած չըլլայի անոնց հետ. — Ես զանի սիրած եմ. — Աստուած ստեղծած է այս աշխարհը. — Երբ նա այս բանը լսեց, սոսկաց. — Եթէ նա նիւթապէս (մարմնապէս) ծնած չըլլար, եւ ոչ դուն հոգեպէս կը ծնէիր. — Եթէ նա ծառայի կերպարանք յանձն առած չըլլար, եւ ոչ դուն որդեգրութեան փառքը կը շահէիր. — Կաղաչեմ որ յիշէք դուք անոր երախտիքները. — Հրամայէ՛ ինձ որ քեզի գամ այս ջրոյս վրայ։*

# ԳԼՈՒԽ Բ.

---

## ԽՆԴԻՐ ԵՒ ԽՆԴՐԱՌՈՒ

*Խնդիր կ՚ըսուին այն բառը կամ այն բառերն, որ կը լրացնեն խօսք մը կամ անոր մէկ մասին իմաստը ։*

*Խնդիր ունեցող բառը խնդրառու կ՚ըսուի ։*

*Խնդրառու կրնան ըլլալ. 1. Գոյականը, 2. Ածականը, 3. Նախադրութիւնը եւ 4. Բայը ։*

**Հարցարան.** — *Խնդիր* եւ *խնդրառու* որոնց կ՚ըսուի. — Որոնք խնդրառու կրնան ըլլալ ։

### ԳՈՅԱԿԱՆՆԵՐՈՒ ԽՆԴԻՐԸ

*Գոյականներու քով դրուած սեռական հոլովը ինչպէս տեսանք (էջ 18) յատկացուցիչ կ՚ըսուի եւ յատկացուցչին վերաբերած բառն ալ յատկացեալ կ՚ըսուի ։*

*Բայանունները, այսինքն բայի զօրութիւն ունեցող գոյականներ իրենց բայերուն ընութեան խնդիրները կ՚առնուն, զոր օր. Ելք ի Բաբիլոնէ, դարձ յերկիր, մուտ յաշխարհ ։*

**Հարցարան.** — *Յատկացուցիչ* որոնց կ՚ըսուի. — Բայանունները ինչ հոլով խնդիր կ՚առնուն ։

**Հրահանգ 169.** — Վերլուծեցէք. — *Սամփսոն զմահ առիւծուն ոչ յայտնեաց ծնողաց իւրոց. — Հալածեաց*

*զգունդս դիւացն ի բնակութենէ իւրեանց . — Սրբէին զպղծութիւն կռապաշտութեանցն եւ առնուին զկահ եւ եւ զկազմածս ատրուշանացն . — Միով գօտեաւ ճշմարտութեան պնդեցին զմէջս արք եւ կանայք . — Ոչ երեւեցաւ տեղի գերեզմանի նորա . — Տեսցեն զնա ամենայն միայնակեացք աշխարհին Յունաց . — Ուսան զդպրութիւն հայրենի աշխարհին իւրեանց . — Լուան զտրտունջ ժողովրդեան զնմանէ . — Զիք փրկութիւն ի թշնամեաց . — Նախ քան զմեկնումն ի տանէ անտի՝ բազում արտասուս հեղի . — Սիրեմք զպահս , զի մայր է ողջախոհութեան եւ աղբիւր ամենայն իմաստութեան. — Արմատ ամենայն բարեգործութեան՝ է յոյսն յարութեան. — Զի ակնկալութիւն վարձուցն հատուցման՝ ընդարձակէ զոգիսն ի գործս բարութեան :*

**Հրահանգ 170.** — Վերածեցէք ի գրաբար. — *Մօտեցաւ մահուան ժամը . — Առիւծը բոլոր կենդանեաց (գազանք) հզօրագոյնն է . — Անոնք փոյթ չունէին (չէր նոցա փոյթ) հին ժամանակաց անցքերը գիտնալ . — Դուք էք իմ վշտերուս պատճառները . — Բայց մանկանց բարի բնաւորութիւնն օր ըստ օրէ երեւան կուգար . — Նա է որ թռչնոց ձագերը կը կերակրէ . — Մարդուն կեանքը կ'անցնի փայլակի մը պէս արագ . — Ինչո՞ւ համար մինչեւ այդ տեղը կարդալ տուիր . այլ ընթերցումը յառաջ տար , եւ հոն կը լսես յարութիւնը , շատերուն յայտնուիլը , երկինք վերանալը , Հօր աջ կողմը նստիլը , երկրորդ գալստեան խոստումը , հրաշալի յարութիւն տալով բոլորին . — Եւ այս ամէն չարիք մարդուս մտքին մէջ կը մտնեն տգիտութենէ . — Որուն սիրտը նենգաւոր թշնամւոյն բնակարան եղաւ :*

## ԱԾԱԿԱՆԱՑ ԽՆԴՐԱՌՈՒԹԻՒՆԸ

*Ածականներն իրենց նշանակութեան համեմատ սեռական, տրական, բացառական եւ գործիական հոլով խնդիր կ'առնուն ։*

*Թուական ածականները եւ անորոշ դերանունները բացառական եւ երբեմն ի նախդրիւ անորոշ հայցական հոլով խնդիր կ'առնուն ։*

*Սեռական հոլով խնդիր առնողներ, զոր օր. Պարգեւատու բարեաց. սրտագէտ ամենայնի ։*

*Տրական խնդիր առնող ածականներէն ոմանք վերջահոլով, ոմանք ի նախդրիւ հայցական եւ ոմանք նախադրութեամբ խնդիր կ'ուզեն, զոր օր. Նման են մանկտւոյ. նման նմա, ոչ գտանի գեղեցիկ համեմատ սմա. ոչ իմիք պիտանացու. ես ի տանջանս պատրաստ եմ. բաւական առ ամենայն ։*

*Ընդհանրապէս տարբերութիւն, հեռաւորութիւն, զրկում, օտարութիւն ցուցընող ածականներ բացառական հոլով խնդիր կ'առնուն, զոր օր. Ոչինչ ընդհատ ի մանկտւոյ ։*

*Գործիական հոլով խնդիր առնող բառեր, զոր օր. Լի խնկով, հաշմ ոտիւք, տիօք առոյգ եւ բարձր հասակաւ ։*

**Համառօտ**. — Ածականներն ինչ հոլով խնդիր կ'առնուն. — Թուական եւ անորոշ ածականներն ինչ հոլով կ'առնուն. — Ուրիշ ինչ ածականներ ինչ հոլով խնդիր կ'առնուն. — Տրական խնդիր առնող ածականներէն ոմանք ինչ հոլով կ'առնուն. — Ո՞ր նշանակութիւն ունեցող բառերն են որ բացառական հոլով խնդիր կ'ուզեն. — Ըսէ գործիական հոլով առնող բառեր.

**Հրահանգ 171.** — **Վերլուծեցէք.** — Կէսքն ի նոցանէ կորեան. — Զէր ինչ իմիք պիտանացու. — Ծա գրաւոր էր գրովք. — Ստեփանոս լի էր Հոգւով Սրբով. — Մեծն ի ձէնջ եղիցի ձեր սպասաւոր. — Բժշկի նման է եկեղեցւոյ վարդապետ, բազմաց եւ զանազան ախտից բըժշկական դեղս տանելով. — Զի աւուրբք մանուկ, տիօք առոյգ եւ բարձր հասակաւ, գեղով երեսաց սքանչելի եւ չքնաղ, զի այլ ոչ գտանէր ուրեք նման նմա ի վերայ երկրի. — Ի մտաց պակաս է. — Զարագործն ծարաւի է արեան. — Երկիւղած էր նա յԱստուծոյ. — Եղեւ նա հաւասար հրեշտակաց. — Գիտակ եմ ամենայն խնդրոյ. — Հմուտ էր որսոյ. — Զիք տեղի Թափուր յԱստուծոյ. — Լի եմ ուրախութեամբ. — Ցերեկաց քոց ոչ կարօտ եղէ. — Ոչ կարօտ (զուրկ) է յիմաստութենէ. — Մեք նոքօք կարօտ եմք եւ ոչ նոքա մեօք. — Եւ էր ծառայն աներկիւղ ի տեառնէ իւրմէ. — Եւ ոչ զանձն արժանի համարեցաւ առ քեզ գալոյ. — Ո՞ բաւական իցէ առ այս. — Նախանձընդդէմ էին նմա. — Մահու պարտական լիցի. — Եւ ինքն էր կաղ յերկուց ոտից իւրոց. — Աստուծոյ արժանի է այն, որ աստուածութեանն ինչ անարժան ոչ գործէ. — Ազատ է յախտից երկնաւորաց։

**Հրահանգ 172.** — **Վերածեցէք ի գրաբար.** — Անոնցմէ հազար մը կորսուեցաւ. — Զակքէոս ծառի մը վրայ ելաւ, որովհետեւ հասակով կարճ էր. — Ոտքէն եւ ձեռքէն տկար էր. — Անոնցմէ մէկը չազատեցաւ. — Ձենէ մէկը զիս պիտի մատնէ. — Նա աղքատաց գթած էր. — Ամէն բանի պատրաստ եմ. — Մեզի անոնց հաւասար ըրիր. — Տասն բանի տեղեակ պիտի ըլլան. — Քու անձիդ վստահ եմ. — Իր տիրոջը պիտանի է. — Խնկով

մի տուփ մը գտայ . — Երեսաց գեղեցկութեամբ ոքան-չէմ . — Անոնց արիւնէն անպարտ եմ . — Գթած եղիր ամենուն համար . — Աշխատութիւնը մարմնոյ օգտակար է . — Խօսքէ եւ ձեռքէ անպիտան . — Ուրիշ մարդոց պէս չեմ . — Ձեր ճշմարիտ առաջնորդներուն հնազանդ եղէք . — Հոգեղէններէն ո՞վ Ս. Գրիգորի այսչափ չարչարանաց սիրտ կրնար տոկալ. ի՞նչպէս բնութեամբ մահկանացու եւ եղծանելի ըլլալով, այնչափ չարչարանքներ կը կրէր (բերէր ի մարմնի) . — Անոր հաւասար ընկեր մը չիկայ եւ ոչ անոր հակառակ էութիւն մը . — Բանի մը կարօտ մէկը չէ . — Չիկայ չար բան մը՝ որ բնութեամբ չար ըլլայ . — Մերկ եմք երկնաւոր զգեստներէ . — Այդ ամէնը պահեցի իմ մանկութենէս ի վեր . — Հիմայ ինչո՞վ պակաս եմ . — Աստուած հեռի է ախտերէ եւ չարչարանքներէ ։

## ԲԱՅԵՐՈՒՆ ԽՆԴԻՐԸ

Բայերը կ'ունենան տրական, հայցական, բացառական եւ գործիական հոլով խնդիր ։

Խնդիրը երկու է . Սեռի խնդիր եւ բնութեան խնդիր ։ (Տե՛ս սեռի խնդրի կանոն, էջ 85) ։

Բնութեան խնդիր կ'ըսուին բայերուն տրական, բացառական, գործիական հոլով խնդիրները եւ այն հայցականները, որոնք ոչ թէ սեռի խնդիր են, այլ ուրիշ պարագայ կը ցուցնեն ։

Տրական հոլովն որո՞ւ, ի՞նչ բանի հարցման կը պատասխանէ, զոր օր. Տուք եւ տացի ձեզ . ձեզ տրական հոլով է ։

**Ծանօթ**. — Տրական խնդիր առնող բայերէն ոմանք ի նախդրիւ հայց. խնդիր կ'առնուն, զոր օր. Հայիմ,

նայիլ, գթալ, խնայել, յուսալ, պարծիլ, եւայլն։ Նոյնպէս ըսել, երբ մէկին ըսել կը նշանակէ, տրական հոլով կ'առնու. Տանիլ, երբ համբերել, զգուշանալ, երբ պահպանել նշանակէ, տրական կ'առնու։

**Հարցարան.** — Բայերն ինչ հոլով խնդիր կ'ունենան. — Խնդիրը քանի է. — Ո՞ր հոլովները բնութեան խնդիր կ'ըսուին. — Տրական հոլովը ինչ հարցման կը պատասխանէ։

## ԲԱՑԱՌԱԿԱՆ ԵՒ ԳՈՐԾԻԱԿԱՆ ՀՈԼՈՎ

*Բացառական հոլովն ուսկէ՞, ի՞նչ բանէ, ո՞ւրկէ հարցմանց պատասխան է. զոր օր. Ոչ յարեւելից յարեւմուտս կողմն գնայցէ, այլ յարեւմտից յարեւելս։*

*Գիտենք թէ կրաւորական բայերն բացառական հոլով սեռի խնդիր կ'առնուն. բայց երբեմն կրաւորական բայերու քով բացառական հոլով կ'ըլլայ, որ ոչ թէ սեռի խնդիր է, այլ բնութեան խնդիր։ Զոր օր. Մերժեցաւ քուն յաչաց իմոց։*

*Որո՞վ, ի՞նչ բանով հարցման պատասխանը գործիական է, զոր օր. իմաստութեամբ արար նա զամենայն։*

**Հարցարան.** — Ի՞նչ հարցման կը պատասխանեն բացառական եւ գործիական հոլովները։

**Հրահանգ 178.** — Վերլուծեցէք. — *Մի՛ տրտմեցուցաներ զոք եւ մի՛ տրտմիր յումեքէ. — Մի՛ բարկանար աշակերտի մեղուցելոյ, զի հիւանդն ոչ թէ յիւր կամաց հիւանդանայ. — Լաւ է յստակ խորհրդով ննջել քան պիղծ խորհրդով աղօթս մատուցանել եւ վարձս ոչ առնուլ եւ ի զուր աշխատել. — Որ զեղբայրն ի մարմնաւոր կերակրոյ զրկէ, չէ ցանկացօղ սեղանոյն Քրիստոսի. — Խոնարհութեամբ եւ յուսով հնազանդել եւ գիտութեամբ*

*աշխատել՝ կատարելութիւն է . — Յորժամ առաքէ քեզ Աստուած փափուկ կերակուր , կամ մաքուր հաց կամ միրգ , զՔրիստոսի մասն կարօտեալ եղբօրն տուր նախ քան զքո ճաշակելն , զի Քրիստոս քեզ սեղանակից լինի . — Ո՛րչափ ի խեղկատակութենէ սուտ երդմունք լինին , քանի՛ վնասք , ո՛րչափ բանք զազրութեան . — Որ շինել սկսանի , պարտ է կատարել , զի մի՛ ծաղր լիցի անցաւորացն . — Զերախայրիս կալոյ խմոյ եւ հնձանի խմոյ մատուցանել Քրիստոսի . — Ոչ ուրուք ի ձէնջ մազ մի ի գլխոյ կորիցէ . — Յիւրաքանչիւր առաքինութեանց կարգեաց ստանալ զբարութիւն . — Եւ այնու ոչ ի չարէ ումեքէ պարտ է զգուշանալ եւ զճճիս խմանալ , այլ ի միջէ բարւոյ արարչէ . — Նաեւ չքոտեօքն զկծեցուցանէ զմեզ , որպէս լուովն եւ ճանճիւ եւ մժխով եւ գոռեխով , մլով եւ մկամբ եւ այլովք նոյնպիսեօք :*

**Հրահանգ 174**. — Վերածեցէք ի գրաբար . — *Աստուած ամէն բան իմաստութեամբ եւ խորհրդով ստեղծեց (արար) . — Խորհրդով գործէ՛ ամէն բան . — Ամէն խօսքի մի՛ հաւատար . — Բարի մարդուն տուաւ իմաստութիւնը , գիտութիւնը , ուրախութիւնը . — Ամէն տգեղ խօսք ձեր բերնէն թող չելնէ . — Որդեա՛կ , երբ մեղր գտնես , չափով կեր . — Ով որ արծաթ կը սիրէ , արծաթով չպիտի յագենայ . — Բարիք եւ չարիք , կեանք եւ մահ , աղքատութիւն եւ մեծութիւն Աստուծմէ են . — Լաւ է այն մարդն՝ որ բարկութեանը կը յաղթէ . — Ով որ արդարութեամբ կ'երթայ , օգնականութիւն պիտի գտնէ . — Եւ արդ արարածներէն ո՞րը բարի կը կարծեն կամ ո՞րը չար . — Բժիշկներէն իմաստունները ապականեալ անդամները սուր երկաթի միջոցաւ ( ի ձեռն ) սովոր են կտրել . — Բեզմով մեր եկեղեցիները կը ցնծան . — Դու*

*Տէ՛ր, քու ողորմութիւնովդ պահեցիր քու սիրելիներդ. — Ով որ ճշմարտութեամբ միացած է Աստուծոյ որդւոյն հետ, հոգւոյ աչքերով կը տեսնէ իմանալի արեգական ճառագայթից յստակ լոյսը։*

## ՀԱՅՑԱԿԱՆ ՀՈԼՈՎ ԲՆՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐ

*Հայցական հոլովը չորս պարագայի մէջ բնութեան խնդիր է.*

*Ա. Երբ ժամանակի ստորոգութիւն կը ցուցնէ, զոր օր. Եւ նստան շուրջ զնովաւ զեւթն օր եւ զեւթն գիշեր. հոս զեւթն օր եւ զեւթն գիշեր, հայց. հոլով բնութեան խնդիր է։*

*Բ. Երբ ճամբայ ցուցնէ, զոր օր. Ես երթամ զհայրենի ճանապարհն. զհայրենի ճանապարհն հայց. հոլով բնութեան խնդիր է։*

*Գ. Երբ ձեւ, կերպ կամ եղանակ կը ցուցնէ, զոր օր. Զայս օրինակ ճառէր։*

*Դ. Երբ հեռաւորութիւն կամ չափ ցուցնէ, զոր օր. Տային գարի տասն հազար քոռ. որ տարապարհակ վարիցէ զքեզ մղոն մի։*

**Հարցարան.**— Հայցական հոլովը երբ բնութեան խնդիր է։

**Հրահանգ 175.** — Վերլուծեցէք. — *Եղեւ նա յայնմ վիրապի ամս երեքտասան. — Արարին նմա հարսանիս աւուրս եօթն. — Հող կերիցես զամենայն աւուրս կենաց քոց. — Ընդէ՞ր կայք աստ զօրս ցերեկ դատարկք. — Հեռացաւ պանդուխտն զերկուց աւուրց ճանապարհ. — Բարձրացաւ աշտարակն քառասուն կանգուն. — Մի՛ երթար ճանապարհ ընդ նոսա. — Զվեց օր արար Տէր Աստուած զերկինս եւ զերկիր. — Երթիցուք զուղղորդն. —*

*Ծառայեաց ամս եօթն ․ — Ես ընդ ձեզ եմ զամենայն
աւուրս մինչեւ ի կատարած աշխարհի ․ — Այսքան ժա-
մանակս եկաց ընդ մեզ եւ մեք մի քուրձ ալիւր տանէաք
նմա ․ — Եկեաց ամս յիսուն եւ երիս ։*

**Հրահանգ 176** ․ — Գրաբարի վերածեցէք ․ — *Ատիկա
այս տարի թող ․ — Շատ գիշերներ քունը անոր աչ-
քերէն փախաւ (հատաւ) ․ — Մարդն հեռացաւ երկու
օրուան ճամբայ ․ — Ցորգանանու ճամբէն մարդիկն ա-
նոնց ետեւէն ինկան (զհետ պնդել) ․ — Տարւոյն մէջ ե-
րեք ժամանակ ինձ տօն ըրէք ․ — Եօթը տարի ծառա-
յեց ․ — Գիշեր եւ ցորեկ չէր դադրեր բարիք գործելէ ։
— Մովսէս քառասուն օր Սինա լերան գլուխը կեցաւ ․
— Շիտակ ճամբէն քալէ՛ , չես իյնար , եւ եթէ իյնաս
ալ՝ շուտ կ՚ելնես. — Երկար (ձիգ) ժամեր կ՚սպասէին ա-
նոր գալուն ․ — Եւ այսպէս շքով եւ պատուով կ՚առաջ-
նորդէր անոնց երկար ճամբէն (զերկայնութիւն ճանա-
պարհին) ․ — Բերեմ հաց եւ կերէք եւ յետոյ ձեր ճամ-
բան գացէք ․ — Եւ ամենքն ալ պատրաստուեցան բոլոր
գիշերը ․ — Կը տարածէր զանոնք դաշտին երկայնու-
թեան վրայ ․ — Ով որ այս պզտիկներէն մէկուն բաժակ
մը ջուր կը խմցնէ ․ — Այսպէս խօսելով՝ կը քաշալերէր
զանոնք ստէպ ․ — Այս կերպով կը ճառէ (կարդէ) ․ —
Բերոսոս նոյն ձեւով Մովսէսի պատմութեան գրքին հա-
մեմատ վիպագրեց ․ — Մովսէսի գիրքը այսպէս կը
պատմէ ։*

(Շարունակութիւն)

*Շատ բայեր գործիականի տեղ հայցական կ՚առնուն
իրենց բայանուններն կամ ուրիշ նոյն եւ նման նշանա-
կութիւն ունեցող բառերը , նաեւ զանոնք յարաբերող*

որ յարաբերական դերանունը, զոր օր. Ցասեաւ նա ցասումն մեծ, ընել է ցասմամբ մեծաւ։

**Ծանօթ.** — *Այս ձեւը խօսքին սաստկութիւն ու վայելչութիւն կու տայ։*

*Երբեմն ներգործական բայեր երկու հայցական հոլով կ'առնուն, որոց մին սեռի խնդիր է եւ միւսը բնութեան խնդիր, զոր օր. Որ զգեցուցանէր զձեզ (ձեզ) կարմիրս։*

*Չէզոք բայերն ալ տարբեր նշանակութեամբ իբր ներգործական գործածուելով սեռի խնդիր կ'առնուն, զոր օր. Ոչ հաճեցան (ընկալան) զհօրն հրաման։*

*Բայերը կ'ունենան նաեւ նախադրութեամբ խնդիրներ։*

**Հարցարան.** — Շատ բայեր գործիականի տեղ ինչ հոլով կ'առնուն. — Երբեմն ներգործական բայերը քանի հայցական հոլով կ'ունենան. — Ե՞րբ չէզոք բայերը սեռի խնդիր կ'ունենան. — Ուրիշ ինչ կ'ունենան բայերը։

**Հրահանգ 177.** — Վերլուծեցէք. — *Իբրեւ ետես Յովաբ ցածուցեալ զԴաւիթ ի ցասմանէն՝ զոր ցասուցեալ էր Աբիսողոմայ. — Որդեա՛կ, զկեանս մուրացողութեան մի՛ կեար. լաւ է մեռանել քան զմուրանալ. — Զնոյն զարդ եկեղեցեաց զարդարէին. — Զղջանայր զառաջին քակումն ի նոցանէ. — Եւ ինքն զառածեալ անդրէն դառնայր անմխիթար տրտմութեամբ զօթեւանս ագանէր. — Բազումք ախտանան զայսպիսի ախտ. — Բարկացաւ Տէր ի վերայ հարցն ձերոց բարկութիւն մեծ. — Այսպիսի կեանս պարտ է կեալ քրիստոնէից. — Նախանձեցայ վասն Երուսաղէմի նախանձ մեծ. — Զմահ անարգանաց մեռաւ. — Մեղոյց զնոսա մեղս մեծամեծս. — Անէծ զիս անէծս ցաւագինս. — Զղջացաւ Յուսիկ զամուսնանալն. — Զայսպիսի պատիժս պատժեցաւ. —*

Պսակեցար ի թագաւորէն զանթառամ փառաց զպսակն. — Գիտես զծառայութիւնն զոր ծառայեցի քեզ. — Ի մեղս իւր զոր մեղաւ, ի նմին մեռցի. — Հարուածք զոր հարցէ Տէր զազգս ամենայն. — Տեսի ես զնեղութիւնն՝ զոր նեղեն զնոսա Եգիպտացիքն. — Երկչոտն միշտ կանխէ զանհնարինս. — Ո՛րպիսի մահ ոչ մեռանիցին. — Փութան տագնապին զելս վշտացելոյն յաշխարհէս։

**Հրահանգ 178.** — Գրաբարի վերածեցէք. — Մէկ սիրով սիրեցին զՅիսուս. — Վկայարաններ կը շինէին եւ եկեղեցեաց միեւնոյն զարդերով կը զարդարէին. — Ժողովուրդը պիտի դատեն արդար դատաստանով. — Այս օրհնութեամբ զԱստուած օրհնեցին. — Շատ չարչարանքով չարչարեցին. — Անթառամ եւ երկնային ծաղկով ծաղկեցար. — Հիւանդութեամբ հիւանդացաւ. — Իսրայէլ պիտի փրկուի յաւիտենական փրկութեամբ. — Այն օրհնութիւնը՝ որով Մովսէս Աստուծոյ մարդն օրհնեց Իսրայէլի որդիները. — Այն վախով՝ որով կը վախնաս. — Կ՚ըղձային երկրին պատառումը. — Այն յանցանքին համար՝ զոր գործեց (յանցեաւ). — Առակներով շատ բան կը սորվեցնէր անոնց. — Առողջացան մեր ականջները երկնաւոր անախտաւորութեամբ. — Քու եղբայրդ նախանձեցաւ (խանդաւ) քու տիկնութեանդ. — Եթէ ուզէի նոյն կեանքով ապրիլ եւ նոյն ախտով ախտանալ. — Խոսրով անոր յաջորդ կը դնէ (յաջորդէ) Սահակը. — Եսաւ ոխ կը պահէր Յակոբին այն օրհնութեանցն համար՝ որով օրհնեց զանի իւր Իսահակ հայրը. — Իսահակ շատ մեծ զարմացմամբ զարմացաւ։

## ՏԱՐԻՔ, ԱՐԺԷՔ, ՉԱՓ ՑՈՒՑՆՈՂ ԽՆԴԻՐՆԵՐ

*Տարիք ցուցնող բառերը սեռական հոլով կը դրուին, զոր օր. Նոյ էր ամաց վեցհարիւրոց ։*

*Գնելու, առնելու, ծախելու վերաբերեալ բառերը սեռական հոլով կը դրուին, զոր օր. Ո՞չ ապաքէն երկու ճնճղուկք դանկի միոջ վաճառին ։*

*Իսկ չափ եւ կշիռ ցուցնող բառերն այլ եւ այլ հոլովներ կը դրուին, զոր օր. Երբեմն սեռական, ինչպէս աւուր միոյ ճանապարհ, երբեմն բացառական, կամ աւելի յաճախ գործիական, զոր օր. Եմմաուս էր հեռի յԵրուսաղեմէ հարիւր եւ վաթսուն ասպարիսաւ ։*

**Հարցարան.** — *Տարիք* ցուցնող բառերն ինչ հոլով կը դրուին. — *Գնելու, ծախելու* վերաբերեալ բառերն ինչ հոլով. — *Չափ եւ կշիռ* ցուցնող բառերն ինչ հոլով.

**Հրահանգ 179.** — Վերլուծեցէք. — *Նոքա վաղվաղակի կշռեցին եւ առին ի ձեռս նորա երեսուն արծաթի. — Ո՞չ դահեկանի միոջ սակ արկեր ընդ իս. — Որ էր ամաց վաթսուն եւ երկուց. — Տային տասն հազար քոռ ցորենոյ. — Ա՞յնչափ գնոց զդաշտն վաճառեցէք. — Էր նա ամաց երկոտասանից. — Լայնութիւն նորա երից կանգնոց. — Աղեքսանդր երեսուն եւ երկուց ամաց եղեալ վախճանեցաւ. — Գետինն երկերիւր սատերի արծաթոյ է. — Էր Աննա այրի ամաց իբրեւ ութսուն եւ չորից. — Կշռեցին զվարձս իմ երեսուն արծաթի. — Ողջո՞յն իցէ մանկանն իմոյ Աբիսողոմայ. — Բարձին զնշխարսն երկոտասան սակառի. — Անձն՝ որ մեղիցէ ակամայ սրբութեանց Տեառն, մատուսցէ վասն յանցանաց խոյ անարատ յօդեաց՝ գնոց արծաթոյ ի յիսուն սիկղէ. — Տարուն զձեւ եւ զօրինակ Բաբելոնի չի-*

նէր. — Որ տակաւին վաճառէր, մեծաց գնոց վաճառի. Երթիցուք ճանապարհ գնաց երից աւուրց. — Նինուէ էր քաղաք մեծ՝ իբրեւ գնաց երից աւուրց ճանապարհի. — Արասցես տապանակ վկայութեան յանփուտ փայտից, յերկուց կանգնոց եւ ի կիսոյ զերկայնութիւն նորա եւ ի կանգնոյ կիսոյ զլայնութիւն նորա եւ ի կանգնոյ եւ ի կիսոյ զբարձրութիւն նորա ։

**Հրահանգ 180.** — Վերածեցէք ի գրաբար. — Յուդա երեսուն արծաթի վաճառեց իւր տէրը. — Հեղի իննսուն եւ ութ տարուան էր. — Երեսուն տարուան էր Դաւիթ թագաւորելու ատեն. — Ես այսօր քեզի կուտայի յիսուն սիկղ արծաթ. — Անոր իշխանութիւնը երեսուներկու տարուան էր. — Յովաս եօթը տարուան էր. — Նա տասնեւվեց տարուան էր. — Տասնեւութը կանգուն (բցռ.) էր մէկ սեան բարձրութիւնը. — Սողոմոն եօթանասուն հազար բեռնակիր մարդիկ (սեռ.) ժողվեց. — Հարիւր քսան տաղանդ ոսկի (սեռ.) տուաւ վաճառականին. — Ասիկա այս ձեւով կը գրէ իւր պատմութիւնը. — Հինգ դահեկանի սակարկութիւն ըրաւ (սակ արկանել). — Ոչ մէկ մարդ (ոչ ոք ի մարդկանէ) ստակով կը գնէ մահապարտը եւ կ'սպաննէ. — Արդար արիւնը ստակով չգնուիր. — Սափոր մը (գործի.) ջուր բերէք. — Մէկ քարընկէցի չափ հեռացաւ. — Իսկ մնացորդներն ոչ աւելի եւ ոչ պակաս, այլ տասներկու սակառ լի. — Գետինը չորսհարիւր սատեր արծաթի է. — Ստացաւ արտը (անդ) հարիւր ոչխարի ։

# ԳԼՈՒԽ Գ.

---

## ՍՏՈՐՈԳԵԼԻ

Էական բայէն զատ նաեւ ուրիշ քանի մը ներգործական բայերու սեռի խնդիրները, ինչպէս են անուանել, կոչել, առնել, դնել, կարգել, կացուցանել, գործել, շինել բայերն եւ ուրիշներ, ինչպէս նաեւ չէզոք եւ կրաւորական բայերու տէրբայիներն ստորոգելի կ'ունենան, զոր օր. Կոչեցի զձեզ բարեկամս. Հոս բարեկամս սեռի խնդրոյն կը վերաբերի եւ անոր՝ հայցական դրուած է։

Որդիք Աստուծոյ կոչեսցին. Որդիք ուղղական դրուած է, որովհետեւ բայը կրաւորական է եւ ենթակային կը վերաբերի ստորոգելին։

Երբեմն դիմաւոր էական բայը աներեւութի կը փոխուի, եւ այն ատեն ստորոգելին հայցական կը դրուի, զոր օր. Պարտ էր ձեզ լինել վարդապետս։

Երբ ստորոգելին հաւաքական անուն կամ ածական կ'ըլլայ, կամ յոգնակին անգործածելի բառ ըլլայ, եզակի կը դրուի, զոր օր. Զգոյշ լերուք։

Բայց եթէ տէրբային եզակին եւ ստորոգելին յոգնակի է, բայը յոգնակի կը դրուի, զոր օր. Ճանապարհք դժոխոց են տուն նորա։

Եթէ ստորոգելին գոյական բառ մ'է, շատ անգամ ի նախդրիւ հայցական կը դրուի, զոր օր. Ի հող եւ ի մոխիր է բաժին իմ։

**Հարցարան. — Էական բայէն զատ ուրիշ ո՞ր բայերն ստորոգելի կ'ունենան. — Ե՞րբ ստորոգելին հայցական կը դրուի. — Ե՞րբ ստորոգելին եզակի կը դրուի. — Ե՞րբ բայը յոգնակի կը դրուի. — Ե՞րբ ստորոգելին ի նախդրիւ հայցական կը դրուի.**

**Հրահանգ 181. — Վերլուծեցէք.** — *Մի՛ լինիցի այն քեզ ի մեղս. — Դարձուցէք զնոսա լինել ձեզ ի ծառայս եւ յաղախնայս. — Օրէնքն զողջանգամսն հրամայեն կացուցանել քահանայս. — Զբոլոր իսկ զՅոյնս ոչ դանդաղիմ մայր եւ դայեակ ասել իմաստից. — Ընդէ՞ր կայք դատարկք. — Յորմէ ծնաւ Յիսուս՝ որ անուանեցաւ Քրիստոս. — Ո՞ կացոյց զքեզ դատաւոր. — Զանձն իւր մատոյց պատարագ. — Զամուր ամուր տեղիս շինէր բերդս. — Գիտէր զնա այր արդար եւ սուրբ. — Կոչեաց Աստուած զլոյսն տիւ եւ զխաւարն կոչեաց գիշեր. — Սա կոչեսցի կին, զի յառնէ իւրմէ առաւ. — Կամիմ զձեզ լինել ողջապահս. — Ճարտարապե՞տ արդեօք կոչեսցուք զքեզ. — Ապա ուրեմն է ինչ զօրութիւն ծածուկ, որ զապականիչսն միմեանց խառնուածովք արար օգտակարս իրերաց. — Զդստերս նոցա առցուք մեզ կանայս եւ զդստերս մեր տացուք նոցա. — Ո՞ կացոյց զքեզ դատաւոր ի վերայ մեր. — Սկիզբն չարեաց զնախանձն ասեմք. — Արար զհրեշտակս իւր հոգիս եւ զպաշտօնեայս իւր բոց հրոյ. — Արար զծովն ցամաք. — Անուանեաց զանուն տեղւոյն այնորիկ՝ դառնութիւն. — Ժողովուրդս քո այս յազգ մեծ լինիցի. — Եւ եղիցին երկուքն ի մարմին մի. — Զուարթուն կոչին հրեշտակք, որ են անքուն ակամբ եւ լուրջ երեսօք. — Եղիցին դժուարինքն ի դիւրինս եւ առապարքն ի հարթ ճանապարհս. — Նաեւ նոքին իսկ որք չարքն կարծին անմտաց, երբեք երբեք օգտակարք լինին. — Յիրաւի ասին մարդիկ արարիչք չարեաց. — Ետ նոցա իշխանու-*

*թիւն որդիս Աստուծոյ լինել. — Եղիցին ինձ ի ծառայս։*

**Հրահանգ 182. — Վերածեցէք ի գրաբար.** — *Յաղ-թանդամ մարդը հսկայ կ'անուանեն եւ յաղթանդամ օձը՝ վիշապ. — Նախանձը չարեաց սկիզբ կ'ըսենք. — Իրա-ւամբ մահը պատիժ կրեց. — Զրուան անունով մէկը կար, որ բախտ կամ փառք կը թարգմանուի. — Բասի-լիսկոս կը կոչուի օձերու տեսակ մը (ազգ) որ միայն նա-յելով կ'սպաննէ մարդը կամ անասունը. — Կ'ուզեմ որ դուք բարեաց մէջ իմաստուն ըլլաք. — Նա զքեզ ընկեր ըրաւ. — Մեզի անոնց հետ բնակակից ըրաւ. — Օրէնք չէ զանի չար կոչել, այլ վրէժխնդիր. — Աստուածա-տուր գիրքը երկինքը հաստատութիւն կը կոչեն. — Լու-սաւորները աւելի պայծառութեան համար աստուած կը կարծէին (նախնիք). — Ադամ եղաւ կենդանի շունչ. — Աբրահամ օտարները եւ աղքատները ընդունելուն հա-մար Աստուծոյ բարեկամ կոչուեցաւ. — Դուք ինծի ժո-ղովուրդ պիտի ըլլաք. — Այն տեղին անունը կոչուեցաւ գերեզմանք ցանկութեան. — Զանոնք ձեր վրայ առաջ-նորդ դրի (կացուցի). — Հոն Իսրայէլ մեծ ազգ եղաւ. — Այսօր ձեզի համար վկայ ունիմ երկինքը եւ երկիրը. —Մարդը կենդանի ոգի եղաւ. — Եկած էին անոնք այն լեռը, որ Ցլու գլուխ կը կոչուի. — Սողոմոն խաղաղու-թիւն կը թարգմանուի. — Ես ըլլամ ձեզ Աստուած եւ դուք եղէք ինձ ժողովուրդ։*



# ԳԼՈՒԽ Դ.

## ԲԱՑԱՅԱՅՏԻՉ ԵՒ ԲԱՑԱՅԱՅՏԵԱԼ

### ԿՈՉԱԿԱՆ

Երբ երկու գոյականներ միեւնոյն անձը կամ առարկան կը ցուցնեն, եւ երկրորդը առաջնոյն մեկնիչն է, այսինքն ո՞րն կամ ի՞նչ ըլլալը կը ցուցնէ, այդ վերջինը բացայայտիչ կ'ըսուի, զոր օր. երբ ըսեմ.— Ղեւոնդ, չեմ հասկընար թէ ո՞վ է, բայց երբ ըսեմ Ղեւոնդ պատմագիր, պատմագիր բառը կը բացայայտէ: Նոյնպէս երբ ըսեմ Կիկերոն, Հռոմ ճարտարախօս, այս վերջին բառերը կը յայտնեն Կիկերոնին ո՞վ ըլլալը, եւ Կիկերոնն է բացայայտեալ:

**Ծանօթ.**— Երբեմն բացայայտիչ գոյականն առաջ ալ կը դրուի անհամաձայն ձեւով, զոր ոմանք ածականաբար գործածուած կը համարին:

Բացայայտեալն ի՞նչ հոլով ըլլայ՝ բացայայտիչն ալ նոյն հոլովով կը դրուի. իսկ նախդիրը սովորաբար առաջ դրուողը կ'առնու. զոր օր. Հանդերձ կնաւ իւրով Սափիրաւ:

*Տեղւոյ անունները շատ անգամ առաջ կը դրուին եւ միայն նախդրիւ կը հոլովին, ինչպէս. ի Սիոն լեռնէ, ի Հռովմ քաղաքէ։*

*Շատ անգամ բացայայտիչն ու բացայայտեալը միեւնոյն հոլովով կը դրուին, որոնց մէջ զօրութեամբ կամ ներգործութեամբ կ'իմացուին՝* այսինքն, *այս է, ասեմ, եւլն. զոր օր.* Զմայրն ամենայն չարեաց՝ *զարծաթսիրութիւն։*

**Հարցարան.** — *Բացայայտիչ* որն կ'ըսուի. — Բացայայտիչ եւ բացայայտեալ ինչ հոլով կը դրուին. — Տեղւոյ անունները ինչպէս կը համաձայնին. — Ո՞ր պարագային՝ բացայայտիչ եւ բացայայտեալ նոյն հոլովով կը դրուին։

**Հրահանգ 188.** — Վերլուծեցէք. — *Ես Ներսէս Թարգմանեցի զԹուղթս զայս ի հայ բարբառ. — Յուսի՛կ, որդի Գրիգորի, մի՛ երկնչիր, զի լուաւ Տէր աղօթից քոց. — Եւ առաքէր պատգամ առ եպիսկոպոսն Կեսարու Եւսեբիոս գալ ի* պայքար յանդիմանութեան *(հակաճառութեան). — Էին երկոքեան մերկ, Ադամ եւ կին իւր. — Զիա՞րդ յինէն ըմպել խնդրես ի կնոջէ Սամարացւոյ. — Ես հովիւս յանցեայ, դոքա ոչխարքդ զի՞ արարին. — Մովսէս արածէր զխաշինս Յոթորայ աներոյ իւրոյ. — Մելքիսեդեկ, արքայ Սաղիմայ, եհան հաց եւ գինի. — Ես Տուբիթ զճանապարհս ճշմարտութեան գնացի. — Ետ նմա զԱսանէթ դուստր Պետափրեայ քրմի Արեգ քաղաքի կնութեան. — Աշակերտք եմք մեծին Մովսիսի մարգարէին. — Եդ զմեզ ի բանտի ի տան դահճապետին, զիս եւ զմատակարարն. — Իսրայելացիք մարտեան յեզերս Յորդանան գետոյ. — Տարագիր եղեւ յեկեղեցւոյ յիւրմէ հօրէ. — Սուրբն Ներսէս իմաստուն հայրապետն առաջնորդէր եւ լուսաւորէր, խրատէր եւ*

*կարգէր եւ չինէր աղքատաց հանգիստ ․ — Մատուսցուք պատարագ օրհնութեան, զպտուղ շրթանց ․ — Գետն Դանուբ Թափի ի Սեաւ ծով ․ — Հերովդէս եդ ի բանտի զՅովհաննէս վասն Հերովդիայ, կնոջ Փիլիպպոսի եղբօր նորա ․ — Մի՛ սիրեր զծուլութիւն եւ զքուն, զմայրն ամենայն թշուառութեանց ։*

**Հրահանգ 184**․ — Վերածեցէք ի գրաբար ․ — *Գրիգոր Լուսաւորչի մայրը Ոգոհէ բարի կին մ'էր ․ — Քարէ եւ փայտէ արձաններ չինել (կռոց եւ դրօշելոց հանգամանք) Աբրահամու հօր Թարայի ատեն եղաւ ․ — Հանեցի ղանոնք Եգիպտացւոց երկրէն ծառայութեան տունէն ․ — Ահարոն քահանային որդին Եղիազար Թող պահէ (պահեսցէ) սրբութիւնները ․ — Սին անապատէն մինչեւ Եդոմ ձեզի Թող ըլլայ (եղիցի) այն կողմը ․ — Աստուած խօսեցաւ Քորէբ լերան վրայ կրակին մէջէն ․ — Երդում ըրաւ Տէրը քու հայրերուդ՝ Աբրահամու, Իսահակայ եւ Յակոբայ՝ քեզի տալ այն գեղեցիկ քաղաքները ․ — Ասոր օրով (յաւուրս սորա) քահանայապետ եղաւ Գրիգորի երէց որդին Վրթանէս ․ — Նոյնպէս եւ եկեղեցին ձեր ճշմարիտ մայրը կանչեց հնազանդ եւ կամարար որդւոց բազմութիւնը, հաւատացեալ ժողովրդոց համար կ'ըսեմ ․ — Մաքսապետն Զակքէոս անոր տեսութեան փափաքեցաւ ․ — Կոստանդիանոսի մայրը Հեղինէ ողորմութիւն կը բաշխէր կարօտելոց յԵրուսաղէմ ․ — Սողոմոն արքայն գրեց Երգ երգոցը ․ — Մեծն Աղեքսանդրի կինը, Ռոգսանէ, Դարեհի աղջիկն էր ։*

## Կ Ո Չ Ա Կ Ա Ն

*Կոչական է այն անձը կամ իրն՝ որուն խօսք կ'ուղղուի, զոր օր․ Հա՛յր, մեղայ յերկինս եւ առաջի քո ։ Հոս հայր կոչական է ։*

*Կոչականէն առաջ շատ անգամ ով կամ ո բառը կը դրուի, իսկ եթէ կոչականը եզակի ըլլայ, կոչականէն ետքը դու կը դրուի, զոր օր. Ե՛րթ առ մրջիւնն, ո՛վ վատ. Ա՛յր դու:*

*Երբ կոչականէն առաջ ածական ըլլայ, ածականին վրայ դ կը դրուի, բայց երբ կոչականէն ետքը յատկացուցիչ ըլլայ, կոչականին վրայ դ գիրը, զոր օր. Մեծդ Սոկրատ. Ուսուցիչդ վարժարանիս:*

**Ծանօթ.** — *Ոս վերջաւորող յատուկ անուններ երբ կոչական ըլլան, ոսը կը փոխուի է ի, զոր օր. Ղազարո՛ս, Ղազարէ՛:*

**Հարցարան.** — *Կոչական* որն կ'ըսուի. — Կոչականէն առաջ շատ անգամ ինչ կը դրուի. — Երբ կոչականէն առաջ ածական ըլլայ, ածականին վրայ ինչ կը դրուի:

**Հրահանգ 185.** — Վերլուծեցէք. — *Աստուած ողորմեսցի քեզ, որդեա՛կ. — Յիսուս, որդի Դաւթի, ողորմեա՛ց մեզ. — Յովսէ՛փ, որդի Դաւթի, մի՛ երկնչիր առնուլ զՄարիամ կին քո. — Ապրեցո՛, զիս, Տէ՛ր, ի մարդոյ չարէ. — Եթէ սիրես զիս, Պետրէ՛, արածեա՛ զոչխարս իմ. — Ո՛վ Սողոն Սողոն, գեղեցիկ բարբառեցար, ոչ երանել զբարեբախտութիւն մարդոյ մինչեւ ցվախճան. — Ծառա՛յ բարի եւ հաւատարիմ, մո՛ւտ յուրախութիւն տեառն քո. — Մոլիս, Պաւղէ՛, բազում դպրութիւնք զքեզ ի մոլորութիւն դարձուցանեն. — Մի՛ երկնչիր, Պետրէ՛, յայսմհետէ որսայցես զմարդիկ ի կեանս. — Որդի մարդոյ, դէտ կացուցի զքեզ տանդ Իսրայէլի. — Զի՞նչ գործես, ո՛վ քաջդ. — Լո՛ւր, երկի՛ն, եւ ունկն դիր, երկի՛ր, զի Տէր խօսեցաւ. — Երանեմ քեզ, Կեսարիա Կապադովկացւոց, քանզի ի քեզ ձեռնադրեցաւ*

հօտից բազմաց հովուապետն. — Օրհնեալ է գալուստ քո, ո՛վ հայր հրաշալի. — Զակքէ՛, փութա՛ է՛ջ այտի: — Սաւո՛ւղ, Սաւուղ, զի՞ հալածես զիս. — Զիա՞րդ անկար յորս, պարծա՛նք ամենայն երկրի. — Աղեքսանդրէ՛, ի Բաբիլոն պարտ է քեզ մեռանել:

**Հրահանգ 186.** — Վերածեցէք ի գրաբար. — Փրկէ՛ զիս, Աստուա՛ծ, ամէն չար բաներէ. — Միայն քեզի, ո՛վ Տէր, ապաւինելով կ'աղաչեմ. — Ո՛վ մայր իմ, ինչո՞ւ զիս ծնար. — Շատ ուրախ եղիր, ո՛վ Սիոնի դուստր. — Չպիտի թողում քեզի, ո՛վ սիրելի մայրս. — Որդի՛ք, քա՛ւ լիցի ձեզ, մի՛ խորհիք այդ խորհուրդը. — Ո՛վ Տէր, եթէ իմ շրթունքս բանաս, քու օրհնութիւններդ պիտի երգէ. — Յակոբ կ'ըսէ անոնց. Եղբայրներ, ո՞ւրկէ էք դուք. — Աբիսողո՛մ, որդեա՛կ իմ, որդեա՛կ իմ Աբիսողոմ, երանի՛ թէ ես քու տեղդ մեռնէի (ո՛ տայր ինձ զմահ իմ փոխանակ քո), ես քու տեղդ. — Հա՛յր, ներէ՛ (թող) ատոնց, վասնզի չեն գիտեր, ի՛նչ կը գործեն. — Կ'աղաչեմ ձեզ, ո՛վ տեարք իմ եւ հարք, աղօթք ըրէք իմ անարժանութեանս վրայ, որպէս զի արժանի ըլլամ ընդունիլ առաքինութեան պսակը. — Յիշեցէք, ո՛ առաքինիք, մեծն Մովսէսը. — Ըսաւ անոր Յիսուս. Այսքան ժամանակ ձեզի հետ եմ եւ զիս չճանչցա՞ր, Փիլիպպոս. — Ո՞վ ցուցուց քեզի, ո՛վ մարդ, եթէ այդպէս արօր կը շինուի (կազմիցի). — Ո՛վ որդեակ, ինչո՞ւ բաժնուեցար իմ գրկէս:



## ԳԼՈՒԽ Ե.

---

## ՅՕԴ

Հայերէնի մէջ առարկայ մը կամ առարկաներ որոշելու համար երեք գիրեր կան, որ կը գործածուին. ս, դ, ն։ Ասոնք այս, այդ, այն ցուցականներու պէս հեռաւորութիւն եւ մօտաւորութիւն կը ցուցընեն միանգամայն, եւ երբեմն ալ այլեւայլ դէմքի էական դերանուններու տեղ կը գործածուին։

Ասոնց մէջէն ն է միայն, որ ուրիշ լեզուաց յօդին դերը կը կատարէ, զոր օր. Մի՛ ոք ոտնհար լիցի այրւոյս, որ մնացի միայնացեալս ի բազմաց. (Փոխ. ինձ, ես)։

Ոչ բաւեմք արարածքս զարարիչն պատմել. (Փոխ. մեք)։

Այդպէս արասցուք որպէս ասացերդ. (Փոխ. դու)։

Իսկ որ հանճարեղն լիցէ՝ զառաջնորդութիւն ստասցի. (Փոխ. նա)։

Որ զիսն սիրեն՝ սիրեմ, եւ որ զիսն խնդրեն՝ գըտցեն շնորհս. (Փոխ. նոքա)։

Ահաւասիկ տեղիս՝ յորում մեք բնակիմք՝ նեղ է մեզ. (Փոխ. այս)։

Արասցես ագօթս ի վերայ մնացորդացս՝ որ մնացին. (Փոխ. այսոցիկ)։

Պսակդ եղիցի այնոցիկ՝ որ ակն ունին. (Փոխ. այդ)։

Հատէք զծառսդ եւ քշտեցէք զոստս դորա. (Փոխ. զայդոսիկ)։

*Զոր մեքն քարոզեմք. (Փոխ. զայն)։*

*Եթէ զբարիսն ընկալաք ի Տեառնէ, չարեացս ո՞չ համբերիցեմք. (Փոխ. զայնոսիկ, այսոցիկ)։*

*Երբեմն ս, դ, ն կը գործածուին նաեւ ուր որ էական դերանունն յայտնի եւս դրուած է, զոր օր. Ես հովիւս յանցեայ, դոքա ոչխարքդ զի՞ արարին։*

*Գոյականը խօսքին մէջ թէ՛ որոշեալ եւ թէ անորոշ կրնայ դրուիլ, զոր օր. երբ ըսեմ ուսուցիչն, որոշեալ է. իսկ երբ ըսեմ ուսուցիչ՝ անորոշ է։*

**Հարցարան.** — Ե՞րբ կը գործածուին ս, դ, ն. — Ուրիշ ո՞ր պարագայի մէջ կը գործածուին. — Գոյականը խօսքին մէջ ինչպէս կը դրուի։

**Հրահանգ 187.** — Վերլուծեցէք նախադասութիւնները. — *Գործս մեծ եւ ընդարձակ է. — Պարտ է մեզ որ կարողքս եմք՝ զտկարութիւն տկարացն բառնալ. — Դու խոկ բաւական լինիցիս ամենայնի հասու լինել զորոց մեքս ամբաստանեմք զդմանէ. — Ոչ է բարւոք գործդ զոր դուքդ առնէք. — Դարձի՛ զուգս մեր յուրախութիւն, զի կենդանիքս օրհնեսցուք զանունդ քո մեծ, Տէ՛ր. — Տէ՛ր իմ, դո՛ւ միայն օգնես ինձ միայնումս. — Իբրեւ զմէտ մի ի նժարից կշռոց է ամենայն աշխարհս առաջի քո. — Մի՛ վրիպեսցի բան մի ի բանից քոց զոր խօսեցարդ. — Լո՛ւր ձայնի աղախնոյ քոյ եւ նայեա՛ց ի խնդրուածս այրւոյս. — Որ երկիւղածն է՝ նա մեծ է յաւիտեան. — Մի՛ գնասցես դու աստի մինչեւ կատարեսցին աւուրք չորեքտասան հարսանեացս. — Տունս, զոր ես շինեմ, մեծ է. — Որ վկայդ ես այրւոյն՝ առ որում ես բնակեալ եմ. — Ես տաց զվարձս նորա՝ մինչեւ կենդանիս եմ. — Մի՛ տաց փառս մարդոյ, այլ քեզ միայն ճշմարտիդ Աստուծոյ. — Հրաման ետ առնել որպէս*

*եւ խօսեցաւ. — Հաց կարօտելոց՝ կեանք աղքատաց, եւ որ զրկէն զնոսա, այր է արեանց. — Որ ելանէն ի քէն՝ նա ժառանգեսցէ զքեզ. — Ապաքէն եւ որդւոցս ընդ նոյն հետս հարցն պարտ է ընթանալ. — Հոգիս յօժար է, բայց մարմինս տկար. — Իբրեւ լուաւ այրն, արտմեցաւ յոյժ. — Ո՞ւր է մանուկն. — Որ խոստացաւն՝ կարող է առնել։*

**Հրահանգ 188.** — Վերածեցէք ի՛ գրաբար. — *Չեմ գիտեր ինչ որ կը խօսիս (ոչ գիտեմ զինչ խօսիսդ). — Այն որ քենէ պիտի ծնի՝ սուրբ է. — Կը պատուիրէր մէկուն չըսել ինչ որ եղաւ. — Հա՛յր, տո՛ւր ինծի այն բաժինը՝ որ քու ինչքերէդ կ'իյնայ. — Թո՛ղ տուէք այդ մանկտւոյն ինծի գալ եւ մի՛ արգիլէք զանոնք. զի այդպիսիններուդ համար է երկնից արքայութիւնը. — Ի՞նչ են այդ բաները, որոնց վրայ կը վիճիք մէկ մէկու հետ. — Լեցուցէ՛ք այդ թակոյկները ջրով. — Ան՝ որ երկնքէն կուգայ, ամենէն վեր է (ի վերոյ է քան զամենայն). — Անոնք՝ որ չեն տեսներ, պիտի տեսնեն, եւ անոնք որ կը տեսնեն՝ պիտի կուրնան. — Արծաթ եւ ոսկի չունիմ, բայց ինչ որ ունիմ, քեզ պիտի տամ. — Քակէ՛ ոտիցդ կօշիկները. վասն զի այդ տեղը՝ ուր դուն կեցար, սուրբ երկիր է. — Առէ՛ք ձգեցէ՛ք զիս այդ ծովը. — Այն՝ որ ձեր վրայ բերաւ չարիքներ, ձեր վրայ պիտի բերէ յաւիտենական ուրախութիւնը. — Չիկայ ամօթ քեզի յուսացողներուն. — Նա՝ որ զիս կ'արհամարհէ, պիտի անարգուի. — Ա՞յդչափ են այն մանուկները (մանկտի). — Վարդապետն եկած է եւ քեզի կը կանչէ. — Ինչ որ ես կը գործեմ, դուն այժմ չես գիտեր, բայց յետոյ պիտի գիտնաս։*

## ԴԱՐՁԵԱԼ ՅՕԴ

Ընդհանուր եւ վերացեալ մտքով առնուած գոյականները գրաբար առանց յօդի կը գործածուին, զոր օր. Բուռն է իբրեւ զմահ՝ սէր։

Նոյնպէս շատ իրական եւ նիւթական բաներու անուններ առանց յօդի կը մնան, երբ սեռ կը ցուցնեն, զոր օր. Մարմին ցանկայ հակառակ հոգւոյ։

Այն ամէն բաներու անուններն՝ որ բնութեան մէջ միակ են, առանց յօդի կը գործածուին, զոր օր. Աստուած, Տէր, երկին, երկիր, եւլն. բառեր, ինչպէս. Երկինք եւ երկիր անցցեն եւ բանք իմ մի՛ անցցեն. Աստուած լոյս է եւ խաւար ի նմա չիք եւ ոչ մի։

Աւելի յաճախ՝ անուանց յոգնակին անյօդ կը մնայ, զոր օր. Դեւք հաւատան եւ սարսեն։

Նոյնպէս ածականներուն եզակին յօդով է, եւ յոգնակին անյօդ, զոր օր. Անզգամն անգոսնէ զխրատ հօր։ Բայց երբեմն եզակին ալ անյօդ կը գործածուի, զոր օր. Կոյր զրկի ի ճառագայթից արեգական։

Զանց առնուած կամ չկրկնուած գոյականին տեղ ն կը դրուի ածականին կամ յատկացուցչին վրայ, զոր օր. Մի՛ թողուր զբարեկամ հին, զի նորն ոչ է հաւասար նմա։

Կրնայ որ եւ է մասն բանի կամ նաեւ ամբողջ խօսք մը՝ իբրեւ գոյական անուն յառաջ բերուիլ յօդով, զոր օր. Եղիցի ձեր բան՝ այոն այո, եւ ոչն ոչ։

Հասարակ անուն մը բնաւ յօդ չառներ, եւ եթէ հայցական է, զ նախդիրն ալ չառներ, երբ մասնական իմաստով գործածուի, զոր օր. Են նաւք ի նաւահանգըստի։

**Հարցարան.** — Ընդհանուր մտքով առնուած գոյականներն ինչպէս կը դրուին. — Ո՞ր բառերն առանց յօդի կը գործածուին. — Անուանց յոգնակին ինչպէս կը մնայ. — Ածականներուն եզակին ինչպէս կը մնայ. — Զանց առնուած կամ չկրկնուած գոյականին տեղ ինչ կը դրուի. — Ո՞ր պարագային մէջ յօդ կը դրուի. — Հասարակ անուն մը երբ յօդ չառներ։

**Հրահանգ 189.** — Վերլուծեցէք նախադասութիւնները. — *Այր երկմիտ առանց հաստատութեան է յամենայն ճանապարհս իւր. — Բառնայ թեթեւն պծանին. — Զամենեցուն զուստ եւ զզիարդն յայտնեաց համառօտ. — Կրօնաւորութիւն սուրբ եւ անարատ՝ է այցելու լինել որբոց եւ այրեաց ի նեղութեան իւրեանց. — Ի նմին բերանոյ ելանեն օրհնութիւնք եւ անէծք. — Եթէ արդարն հազիւ կեցցէ, իսկ ամպարիշտն եւ մեղաւորն ո՞ւր երեւեսցին. — Որ սիրէ զընկերն, զօրէնսն կատարէ, զմի՛ շնայցես եւ մի՛ սպանանիցես եւ մի՛ գողանայցես. — Բարձէ՛ք զչարն ի միջոյ ձերմէ. — Սէր երկայնամիտ է, ոչ նախանձի, ոչ ամպարհաւաճէ, ոչ հպարտանայ. — Ոչ պարտին որդիք հարց գանձել, այլ հարք որդւոց. — Կեցցէ արդարն. — Աստուած է որ յաջողէ ի մեզ զկամելն եւ զառնելն. — Մերկացարուք զհին մարդն եւ զգեցարուք զնորն. — Ի վերայ արդարոյ օրէնք ոչ կան, այլ ի վերայ անօրինաց եւ անհնազանդից. — Մոռացուցեն վիշտք զխափկութիւն եւ զգեղ. — Զի եթէ խօսելն ընդ արծաթոյ համարեսցիս, լուռ կալն ընդ ոսկւոյ է. — Բարւոք է արեգակն եւ գեղեցիկ բնութեամբ. — Թէ ջուր թէ հուր թէ երկիր թէ օդ, թէ իցեն եւ թէ չիցեն, զայն ոչ գիտեն. — Կապանք եւ նեղութիւնք մնան քեզ. — Ամենայն օրէնք ի մի բան կատարին, ի սիրեսցես զընկեր քո իբրեւ զանձն քո. — Զկարգս պտղոյն եւ զտասանորդացն՝ որ ի նախնեացն սովորու-*

Թիւն էր տալ յեկեղեցին, վասն այնորիկ հանէր հրաման ընդ աշխարհ՝ զի մի՛ ոք տացէ. — Քանզի ոչ երբէք ցանգ ձմեռն կայ եւ ոչ մշտ ամառն, ոչ հանապազ գարուն եւ ոչ բնաւ աշուն. — Չէ օրէն Հռովմայեցւոց շնորհել ումեք զոք, մինչեւ ամբաստանեալն յանդիման ունիցի զչատախազսն եւ տեղի պատասխանւոյ առնուցու վասն ամբաստանութեանն. — Զհեթանոսացն յիրաւի պարտ է ի լոյզ եւ ի խնդիր արկանել. — Չէրն չէին վասն չէին յաշտ առնէր։

**Հրահանգ 190.** — Վերածեցէք ի գրաբար. — Արդարոց եւ մեղաւորաց յարութիւն պիտի ըլլայ (լինելոց է). — Երանելի է մարդ որ փորձանքի կը համբերէ. — Ամէն մարդ թող ըլլայ լսելու համար արագ եւ խօսելու համար ծանր. — Զոր օրինակ մարմին առանց հոգիի մեռած է, նոյնպէս եւ հաւատքը առանց գործոց մեռած է. — Ուր հեռ եւ նախանձ, հոն է անկարգութիւն եւ ամէն չար բաներ. — Չար խօսքեր քաղցր բարքերը կ'ապականեն. — Աստուծոյ վախը կ'ուրախացնէ սրտերը եւ շնորհք եւ ուրախութիւն եւ երկայն օրեր կուտայ. — Արծաթսիրութիւնը ամէն չարեաց արմատ է. — Մի՛ թողուր հին բարեկամը. գուցէ այն որ նոր է, անոր (նմա) հաւասար չըլլայ. — Կեանքը եւ մահը, բարին եւ չարը, մեծութիւնը եւ աղքատութիւնը Աստուծոյ առջեւ հաւասար են. — Աստուած միայն կարող է ընել ոչընչէ, ինչպէս որ կ'ուզէ. — Պատուիրանին գլուխը սէրն է. — Մեծը մեծութեան մէջ կը փառաւորուի եւ աղքատը իր հանճարով. — Նա բարին գիտէ եւ չըներ եւ հիմար է չարին եւ չխորշիր. — Հաւատարիմ բարեկամը՝ ամուր աշտարակ եւ ով որ գտաւ զանի, գանձ գտաւ. — Այն որ քիչը (զսակաւն) կ'անարգէ, քիչ քիչ

պիտի կործանի (առ փոքր փոքր). — Ոչ թէ իմ կամքս, այլ քուկդ ըլլայ. — Մարդ կը նայի երեսին եւ Աստուած սրտին. — Արդարները յաւիտեան կ'ապրին ։

## ԴԱՐՁԵԱԼ ՅՕԴ

Երբ յօդ առնող բառը յատկացուցիչ ունի, յօդը յատկացուցչին վրայ կը դրուի, երբեմն ալ զանց կ'առնուի, զոր օր. Ես ձայն առիւծուն լսէի՝ որ գոչէր ի քառաթեւին ։

Բայց երբ յատկացուցիչը յատուկ անուն է, յօդը յատկացեալին վրայ կը դրուի. երբեմն երկուքին վրայ ալ կը դրուի, զոր օր. Լուսոյ զձայնն Պետրոսի ։

Երբ յօդ առնող բառն ածական ունի, ածականը թէ նախադաս ըլլայ թէ յետադաս, ընդհանրապէս յօդը գոյականին վրայ կը դրուի, զոր օր. Հրաման ետ հանել զպատուական պատմուճանն ։

Եթէ ածական ունեցող գոյականը յատուկ անուն է, ածականը յետադաս եղած ատեն, երկուքին վրայ ալ յօդ չդրուիր. բայց երբ ածականը նախադաս է, յօդ կ'առնու, զոր օր. Մեծն Սահակ ։

Եւ շաղկապով կապուած երկու բառերէն առաջինը միայն յօդ կ'առնու, զոր օր. Մեղաւորն եւ մաքսաւոր ։

Յօդ կը դրուի անուանեմ, կոչեմ բայերուն հետ գործածուած ուղղական խնդրոյն վրայ, եթէ անիկա բայէն առաջ է, թէեւ ուղղական խնդիրը յատուկ անուն ըլլայ, զոր օր. Պետրոս՝ որ Կեփասն կոչեցաւ. որ Պաւղոսն կոչէր ։

Յօդ կը դրուի երբեմն վայելչութեամբ ածականաբար գործածուած գոյականներու կամ յատուկ անուանց

վրայ, զոր օր. Եպիսկոպոսն անուն ի Հելլենացի լեզուէ է։

Մարդու եւ տեղւոյ անունները գրեթէ միշտ անյօդ կը միան. բայց երբեմն ալ այս, այդ, այն ցուցականներով կամ ս, դ, ն յօդերով կը գործածուին, զոր օր. Ո՞վ է Պաւղոսն։

Երբեմն զարդի համար նախադաս ածականը յօդ կ'առնու, զոր օր. Պերճն ճեմօք։

Յօդ կը դրուի նաեւ.

Ա. Երբեմն որ ինչ եւ զինչ բառերէն ետքը. որոնք այն ինչ որ կամ աշխարհաբար՝ այն որ, ինչ որ կը նշանակեն, զոր օր. Զոր ինչ եսս գործեմ. եկեալ ցուցին տեառն իւրեանց զամենայն ինչ որ եղեւ։

Բ. Յօդ կը դրուի շատ անգամ մինչ, յորժամ, ուր, ուստի, ուրկէ, իբրեւ շաղկապներէն ետքը կամ որպիսի, որքան, որչափ, զիարդ մակբայներէն ետքը. քանզի այսպիսի խօսքերու մէջ միշտ զօրութեամբ բառ մը կամ բայ մը կ'իմացուի, եւ յօդը անոնց տեղ կը բռնէ, զոր օր. Լաւագոյն եւս ստացուածս ունիք յերկինս, ուր կանն եւ մնան. յորժամ լինէրն իսկ՝ եւ անդ էի. որ յերկրէ ստեղծեալ, յետ սակաւ միոյ ի նոյն երթայ ուստի առաւն։

Այսպիսի խօսքերու մէջ ալ այնպէս բառը մինակ կամ ուրիշ բառերով մէկտեղ զօրութեամբ կ'իմացուի, զոր օր. Որպէս եւ կանխաւն ասէի, այսինքն այնպէս՝ որպէս եւ կանխաւ ասէի։

Անորոշ դերբայի տեղ շատ անգամ զի շաղկապով դիմաւոր բայ կը գործածուի. այն ատեն զի շաղկապէն անմիջապէս ետքը եկող բային վրայ յօդ կը դրուի, զոր օր. Ոչ զի մեռաւն, այլ զի խաչեցաւն, այն աւելի են զարմանք։

**Հարցարան**. — Յօդը յատկացուցչին թէ յատկացեալին վրայ կը դրուի. — Ե՞րբ յատկացեալին վրայ կը դրուի. — Յօդը ածականին թէ գոյականին վրայ կը դրուի. — Ե՞րբ ածականին վրայ կը դրուի. — Եւ շաղկապով կապուած երկու բառերէն որն յօդ կ՚առնու. — Ո՞ր պարագայի մէջ յօդ կը դրուի. — Երբեմն իբրեւ ինչ յօդ կը դրուի ածականաբար գործածուած գոյականներու կամ յատուկ անուանց վրայ. — Մարդու եւ տեղւոյ անունները ինչպէս կը գործածուին. — Երբեմն իբրեւ ինչ նախադաս ածականն յօդ կ՚առնու. — Ո՞ր պարագաներու մէջ ալ յօդ կը դրուի։

**Հրահանգ 191**. — *Տաճարն Երուսաղէմի շինեցաւ ի Սողոմոնէ, կանխագոյն ամօք հարիւր քառասուն եւ երիւք եւ ամսովք ութիւք քան զշինել Տիւրացւոց զԿարքեդոն. — Զի ճառ խաչին՝ կորուսելոցն յիմարութիւն է, այլ փրկելոցս մեզ՝ զօրութիւն Աստուծոյ. — Ադամաւն ամենեքին մեռանին, նոյնպէս եւ Քրիստոսիւ ամենեքին կենդանասցին. — Ծաղկեցաւ գաւազանն Ահարոնի. — Յետ թիւրելոյն սատանայի եւ խաբելոյ զմարդն՝ ընդէ՞ր իսկ Աստուած ոչ եբարձ ի միջոյ. — Սիրեցեալն ի Տեառնէ բնակեսցէ յուսով. — Որպէս արարն՝ նոյնպէս արասցի նմա. — Փառաւորեմք զկարգիչն նոցա եւ զյօրինիչ. — Եղեւ քահանայապետ երէց որդին Գրիգորի Վրթանէս. — Էր ամբոխ բազում ի դուռն եկեղեցւոյն. — Ուստի իցէ հիմն շինուածոյն, եւ կատարն անտի լինիցի. — Դնէր ծունր մեծն Յակոբ. — Եւ էին լապտերք բազումք ի վերնատանն, ուր էաքն ժողովեալ. — Զկարգն Աստուծոյ արհամարհեալ այպանէին. — Մինչդեռ խօսէրն առաջի նորա, նա լուռ եւեթ կայր. — Դարձուցէ (Աստուած) զճշմարիտ իւրաքանչիւր վերակացուս յիւրաքանչիւր ժողովուրդսն եւ յիւրեանց վաստակս ի շինել եկեղեցին՝ ուստի մերժեցանն. — Յիշեցէ՛ք զբանն Տեառն պատուիրանին՝ որպէս պատուիրեաց ծառայից՝ հնազանդ կալ տերանց իւրեանց. — Ընդ սակաւ աւուրս եկին ըն-*

րին զայն ինչ, զորմէ յղեացն. — Եւ ագուցեալ զպատմուճանն մեծ, էած զգօտին ընդ մէջ իւր. — Տէր քննէ զարդարն եւ զամպարիշտ. — Երանի՛ որ խորհի զաղքատն եւ զտնանկ. — Ինչ որ ոչ յափշտակեալն է՝ տուժէի նոցա. — Ընտրեաց նա զազգն Յուդայ. — Դատ արարէք որբոյն եւ այրւոյ, իրաւունս արարէք տնանկին եւ խոնարհի. — Ելին տեսանել զի՞նչ իցէ որ գործեցաւն.

**Հրահանգ 192.** — (Նոյն). — Ոչ գիտես զինչ վաղիւն ծնանիցի քեզ. — Նա հեռացաւ յինէն հեռագոյն քան որպէս էրն. — Ոչ ի չարէ ումեքէ պարտ է պզազանան եւ պճճխս խմանալ. — Որպէս թէ յորժամ ծնանիցինն, անդէն եւ մահունքն իւրաքանչիւր ուրուք անվրէպ սահմանիցին. — Յորժամ կարիճն յաստեղատանն է եւ ծնանիցի ոք, չար եւ մեղանչական լինելոց է. — Զի գործես, վասն այնորիկ վայլուն նախատիցես. — Զի դատարկն նստէր. — Արեգակն եւ լուսին զուգակիցք են միմեանց. — Մեծագեղն զարդուք. — Որպէս եղեւն՝ այնպէս խօսի. — Մինչ տղայն էի, իբրեւ զտղայ խորհէի, այլ իբրեւ եղէ այր, զտղայութեանն խափանեցի. — Յաւեաց նմա վասն անկելոցն ի հուր եւ տանջելոց. — Այլ իբրեւ արդարոյ պարտ էր խորհել թէ որպէս ի միասինն արարաք զնա, առհասարակ արժան է մեզ եւ վայելել ի նմա. — Մինչ առնելն կամեցար զխս, գոյր այլ Աստուած. — Յորժամ զհողն խնդրեցեր. — Մարմնաւո՞ր ոք էր Յեսուն եթէ անմարմին. — Մինչ չէին աշխարհ, գիտաց խորհել եւ առնել բանիւ. — Ելից եւ արարից որպէս միշտն. — Ուր եսն եմ, անդ եւ պաշտօնեայն իմ եղիցի. — Սակայն եւ ի նոցանէ, զոր ինչ հաւաստին կարծեմք, առնումք. — Ի նոյն ըլուր, ուստի էջն, վերջոտնեալ ելանէ. — Այլ մեք, որ ինչ պիտոյն մերոյ

հաւաքմանս է, չարեացուք. — Հոգին անուն զանմարմին նշանակէ բնութիւն. — Մանրեայ զխեցին եւ զերկաթ. — Պատմեայ զգործն զինչ եղեւն. — Զոր արար Դաւիթ՝ յորժամ քաղցեաւն եւ որ ընդ նմայն էին. — Ոչ վասն զի եկինն միայն, այլ առաւել եւս զի համարձակեցանն. — Մինչդեռ Ապողոս ի Կորնթոս էր։

**Հրահանգ 198.** — Վերածեցէք ի գրաբար. — Ոտնակոխ պիտի ընես (առ ոտն կոխեսցես) առիւծը եւ վիշապը. — Ի՞նչու ուշացաւ (յամեաց) Քրիստոսի գալուստը. — Ըսենք ինչ որ հարկաւոր է. — Կ'երգէր իր ձեռքով ինչպէս եւ միշտ (հանապազ). — Տեսէք ի՛նչ կ'ընէր Քրիստոս. — Ի՞նչպէս սորվեցուց մեզի մեծ Զրադաշտը. — Քրիստոսական պատարագը չմատուցուիր (ոչ մատչի). — Հնդկին ակռաները ո՞ւրկէ այնքան ճերմակ են. — Չարչարեցին Յիսուս Քրիստոսը արդարը եւ անարատը. — Աստուծոյ սէրը ամէն երկրաւոր մեծութենէ (քան զ—) մեծ է. — Ատոր համար ինչ որ ստացաւ, մարդոցմէ կորսուեցաւ. — Անահիտ ծնունդ Մեծին Արամազդայ. — Նա կարճ եւ անկայուն (անկայ) ժամանակը կ'ողբար. — Մեռելներէ տարբեր չեն (ընդհատ) երբ չարիքներու մէջ են. — Ի՞նչ է առաքինութեան գլուխը, խոնարհութիւն. — Ինչ որ ապագային պիտի ըլլայ, ատոր նման չէ. — Եւ արուեստաւորը (ձեռագէտն) որպէս զի ինչքերը աւելցնէ, տեսակ տեսակ հնարք կը հնարէ. — Առաքինին երբ ուրիշներու համար ինքզինքը կը զոհէ (զոհիցէ), ուրիշներուն հետ ինքն ալ կ'ապրի. — Կուլային Թամուզը՝ որ Ադոնիսն է առասպելաց (յառասպելս). — Ինչպէս որ միշտ (ցանգ) կ'ընէի եւ հիմա կ'ընեմ. — Չարագործի պէս կը ներկայանար (կայր առաջի) տգեղ (տգեղծն) կերպարանքով։

## ԳԼՈՒԽ Զ.

---

## ԱԾԱԿԱՆ

Ածականը գոյականին ի՛նչպէս ըլլալը երեք այլ եւ այլ աստիճանով կրնայ ցուցնել, եւ անոնք են. Պարզ, բաղդատական եւ գերադրական ։

Ածականը պարզ է, երբ միմիայն գոյականին ի՛նչպէս ըլլալը կը ցուցնէ. ինչպէս. մեծ քաղաք, ժիր մեղու. մեծ, ժիր՝ պարզ են ։

Բաղդատական կ՚ըսուին այն ածականները որ բաղդատուած առարկաներու որպիսութեան մէջ առաւելութիւն կամ հաւասարութիւն կը ցուցընեն. զոր օր. Լաւ է անուն բարի քան զինչս ։

Բաղդատականներն երբ հաւասարութիւն ցուցընեն՝ իբրեւ զ նախադրութիւնը կ՚առնուն, երբ տարբերութիւն ցուցընեն՝ քան նախադրութեամբ հայցական կ՚առնուն, զոր օր. Արագ իբրեւ զեղջերու. — Մեծ քան զնոսա ։

Երբեմն ածականն եւս մասնիկն առնըլով բաղդատական կ՚ըլլայ, զոր օր. Ես եւս մեծամեծս չինեցից ։

Տեղւոյ եւ ժամանակի ածականներն եւ մակբայներն երբեմն բացառական հոլով խնդիր կ՚առնուն փոխանակ քան նախադրութեան, զոր օր. Աստուած ի յօդապատ մարմնոց ի վեր է ։

Գերադրական կ՚ըսուի ածականն, երբ գոյականին ի՛նչպէս ըլլալը սաստկութեամբ կը ցուցընէ. զոր օր. Գերադրական է չարաչար, ժանտ, ժանտաժուտ, ամենահեշտ ։

**Գիտելիք.** — *Ածականին բացառական կամ ի նախդրիւ հայցականը երբեմն գերադրականի նշանակութիւն կ'ունենայ, զոր օր. Անմեղն ի ձէնջ արկցէ քար ։*

*Առաւելութիւն ցուցնող բաղդատական ածականին վերջը գոյն մասնիկը կրնայ աւելնալ, զոր օր. Իմաստնագոյն, հզօրագոյն, եւայլն ։*

**Հարցարան.** — Ածականը քանի աստիճան ունի. — Ե՞րբ *պարզ* է, երբ *բաղդատական* է. — Բաղդատականներն ինչ նախադրութիւն կ'առնուն. — Երբեմն պարզ ածականը ինչ մասնիկ կ'առնու. — Տեղւոյ եւ ժամանակի ածականներն *քան* նախադրութեան տեղ ինչ հոլով կ'առնուն. — *Գերադրական* որու կ'ըսուի ։

**Հրահանգ 194.** — Վերլուծեցէք նախադասութիւնները. — *Քան զողորմածութիւն չիք ինչ պիտանացու. — Լաւ է իմաստութիւն քան զականս պատուականս. — Լաւ է անուն բարի քան զմեծութիւն բազում. — Ո՞չ ապաքէն ոսկին եւս ծանր քան զերկաթն իցէ. — Մեծազօրն Նաբուգոդոնոսոր բռնագոյն էր քան զՀերակլէս Լիբիացւոց. — Այդպիսի գեղ ազնիւ եւ հասակ գեղեցիկ իբր զայդ չիք իմ տեսեալ. — Երանելին Նունէ եղ գնաց աշակերտել զայլ եւս գաւառսն Վրաց. — Ոչ է աշակերտ լաւ քան զվարդապետ իւր. — Պատուականագոյնք ի նոսին՝ անուանեցան գլուխ. — Յառաջ կոչէր զկրտսերս յաւագաց. — Զնչլին փայտի հաւատան մարդիկ զանձինս իւրեանց. — Յոյս անշնորհակալին (ապերախտ) իբրեւ զսառն ձմերայնոյ հալեսցի եւ ծորեսցէ իբրեւ զջուր անպիտան. — Զեւ անմտագոյն քան զձեզ. — Չիք ոք անամօթ քան զխեղկատակն. — Ոչ է մեծութիւն լաւ քան զմարմնոյ ողջութիւն. — Իմաստնագոյնք իցէք քան զիս. — Քակեցից զշտեմարանս իմ եւ եւս մեծամեծս շինեցից. — Կորիւն առիւծու հզօր է քան զանասունս. —*

*Չիք այլ ամպարշտութիւն մեծ քան զայս՝ գնել զհիւղէ զուգակից Աստուծոյ իսկութեանն. — Հանդերձք նորա եղեն սպիտակ իբրեւ զլոյս. — Այլ Մեծն Սահակ ոչինչ կասեաց զհոգեւոր կաթնն դիեցուցանել մանկանց եկեղեցւոյ հանդերձ Մեսրոպաւ. — Եւ ձորձք նորա եղեն փայլուն սպիտակ յոյժ. — Կացցեն ի հաւատս անշարժ իբրեւ զվէմ. — Լաւ են հարուածք բարեկամի քան զհամբոյրս թշնամւոյ ։*

**Հրահանգ 195.** — **Գրաբարի վերածեցէք.** — *Անիկէ աւելի ծեր էին (ծերագոյն աւուրբք). — Անօթիներուն (քաղցելոց) քու հացդ բրդէ եւ անյարկ աղքատները քու տունդ տար. — Նա ամենէն պատուականագոյն էր. — Չար գազան մը կերաւ զանի. — Քենէ աւելի իմաստնագոյն մարդ չիկայ. — Մանանան եղեամի պէս ճերմակ էր. — Մովսէս բոլոր մարդերէն աւելի հեզ էր. — Անիկա մենէ շատ աւելի զօրաւոր է. — Գեղեցիկ տուներ պիտի շինես եւ անոնց մէջ (ի նոսա) պիտի բնակիս. — Փոշիի պէս մանր եղաւ. — Զգուշացի՛ր ամէն չար բանէ. — Նա անկէ փոքր էր. — Հրեշտակի տեսքին պէս (տեսիլ) շատ երեւելի էր անոր տեսքը. — Մեղրէ անուշ ի՞նչ (կայ) կամ առիւծէ հզօրագոյն ի՞նչ. — Ողորմութիւն ընելէն կամ տուրքեր տալէն աւելի ուրիշ մեծ եւ պատուական բան չիկայ Աստուծոյ առջեւ. — Օձերու պէս խորագէտ եղէք եւ միամիտ՝ աղաւնիներու պէս. — Իսրայելի որդւոց թիւն էր ծովու աւազի չափ անթիւ եւ անչափ. — Արծիւներէ աւելի արագ են անոր երիվարները. — Նա ամենէն փառաւորագոյնն էր. — Լոյսէն աւելի ի՞նչ պայծառագոյն բան կայ (կայցէ) կամ սիրամարգէն աւելի ի՞նչ գեղեցկագոյն բան ։*

# ԴԼՈՒԽ Է.

---

## ՍՏԱՑԱԿԱՆ ԴԵՐԱՆՈՒՆ

*Ստացական դերանունները* իմ, քո, մեր, ձեր, իւր *երբ կը գործածուին իբր դերանուն, այսինքն՝ մինակ, առանց գոյականի, կը նշանակեն* իմինս, քուկինդ, մերինը, ձերինը, իրենը, *եւայլն. եւ այն ատեն կ'ուզեն յօդ (ն) եւ կը վարեն այլ եւ այլ պաշտօններ ։ Բայց երբ ստորոգելի ըլլան, յօդ չեն առնուր, զոր օր.* Յիւրսն եկն եւ իւրքն *զնա ոչ ընկալան ։*

Նորա, նոցա, իւրեանց *յատկացուցիչներն այս կերպով կը գործածուին եւ կը հոլովուին այսպէս, նորա, նորայոյ, նորայոց, նոցա, նոցայոց ։*

**Հարցարան.** — Ի՞նչ կանոն կայ ստացական դերանուանց վրայ. — Ի՞նչ գիտէք *նորա, նոցա, իւրեանց* յատկացուցիչներուն վրայ ։

**Հրահանգ 196.** — Վերլուծեցէք նախադասութիւնները. — *Նաեւ չքոտեօքն զկծեցուցանէ զմեզ . . . զի է ի նոցանէ՝ որ զմեզ աշխատ առնէ եւ է ինչ՝ որ մերումն վնասակար լինի. — Եւ նոքա նորայոցն ցանկանայցեն վասն գեղեցկութեանն եւ պայծառութեան. — Չհոգայցեմք ինչ նոցա, այլ ընդ նոցայնոցն. — Իբրեւ լուան՝ որ իւրքն էին, ելին ունել զնա. — Սիրեաց զիւրսն՝ որ յաշխարհի աստ են, ի սպառ սիրեաց զնոսա. — Եթէ յաշխարհէ աստի էիք, աշխարհ զիւրսն սիրէր արդեօք. — Յիմմէ անտի առնու եւ պատմէ ձեզ. — Զորս ետուր*

ինձ յաշխարհէ , քո էին . — Որ ինչ իմ է , ամենայն քո է , եւ որ ինչ քո է , այն իմ է . — Ոչ ոք ի նոցանէ ասէր զընչից իւրոց թէ իւր իցէ . — Ծանեաւ տէր զայնոսիկ՝ որ իւրքն են . — Ես զիմսն արձակեցի եւ դու զքոյսն . — Սրբասէր է տատրակ եւ եթէ դէպ լինի վարուժանին իւր մեռանել , ո՛չ երբեք միաւորի ընդ այլ ումեք յիւրոցն մինչեւ ի վախճան իւր . — Արդ սկսեալ ցուցից զմերն . — Մերքն դառնային՝ բարձեալ զբեռինս իւրեանց . — Ինքեանք Ջրասոյզ եղեն իւրայովքն ամենեքումբք . — Իսկ Աղեքսանդրոս իւրայովքն գնաց յԵգիպտոս . — Ոչ հաւատամ քեզ զօտարս ընդունել , որ զքոյն արձակեցեր . — Գրեցեր առ իս զի բարեպաշտ եղեր առ իմսն . — Իշխանութիւն է քեզ այսուհետեւ յիմսն ոչ խնայել . — Ոչ եթէ երկնչելով պատուեցի զքոյսն եւ ոչ յուսալով գալ ի հաշտութիւն ողոքեցի զքոյսն . — Ցիւրայոցն ըմբռնեցաւ ։



## ԳԼՈՒԽ Ը.

# ՅԱՐԱԲԵՐԱԿԱՆ ԴԵՐԱՆՈՒՆ

*Յարաբերական դերանունն (*) յառաջ կը բերէ ուրիշ նախադասութեան մը անունը կամ դերանունն եւ այն յառաջ բերուածն յարաբերեալ է, զոր օր. Դա է որդի իմ, ընդ որ հաճեցայ. ընդ որ կը յարաբերէ որդի իմ բառը։*

*Ուր որ յարաբերեալը կը գտնուի, գլխաւոր նախադասութիւն է այն. իսկ ուր որ յարաբերականը կը գտնուի, միջանկեալ կամ երկրորդական նախադասութիւն է, զոր օր. Ամենայն ինչ, որ բարի է, լոյս է. Ամենայն ինչ լոյս է, գլխաւոր նախադասութիւն. որ բարի է, միջանկեալ նախադասութիւն կ'ըսուի։*

*Յարաբերականով եղած նախադասութիւնը միջանկեալ կ'ըսուի, վասն զի ընդհանրապէս յարաբերեալին եւ անոր բային մէջտեղ կը մտնէ. ինչպէս վերի օրինակը։*

*Միջանկեալ նախադասութիւնն երբեմն գլխաւոր նախադասութենէն վերջը կուգայ եւ երբեմն ալ առաջ, զոր օր. Զի՞նչ արասցուք մանկանն՝ որ ծնանիցի. հոս միջանկեալ նախադասութիւնը վերջը գրուած է։ Որ սիրէ զեղբայր իւր, ի լոյս բնակէ. հոս միջանկեալ նախադասութիւնը առաջ անցած է։*

---

(*) *Որ յարաբերականին մէկ ձեւն է ռ, որ պակասաւոր հոլովում ունի եւ երբեմն յարաբերականին տեղ կը գործածուի։*

*Յարաբերական դերանունը կարելի եղածին չափ իր յարաբերելոյն քով պէտք է դրուի, մանաւանդ երբ երկդիմութեան մը պատճառ ըլլայ։*

*Իսկ երբ երկդիմութիւն մը չըլլայ, յարաբերականը կրնայ առանց անպատեհութեան իր յարաբերեալէն հեռու դրուիլ, զոր օր. Որ բարւոք վերակացու լինին երիցունք, կրկին պատուոյ արժանի եղիցին։*

*Յարաբերականն ու յարաբերեալը հոլովով իրարու չեն համաձայնիր, այլ իրենց բայէն կախում ունի հոլովը, զոր օր. Ո՞վ է սա՝ որ դիմեալ գայ. — Այր մի՝ որում Յիսուս ասեն՝ եբաց զաչս իմ։*

*Եթէ այլ եւ այլ հոլով խնդիր առնող բայեր կան, յարաբերականը պէտք է այլ եւ այլ հոլովներով կրկնուի, զոր օր. Ցուցանեմ ձեզ զաւետարանն իմ՝ զոր ընկալարուք, յոր եւ հաստատեալդ էք։*

*Յարաբերականն ու յարաբերեալը թուով պէտք է համաձայնին, այսպէս. Կոչեաց զծառայսն՝ որոց տուեալ էր զարծաթն։*

*Սակայն երբեմն եզակի ուղղականն ու հայցականն յոգնակի ուղղականին եւ հայցականին տեղ կը գործածուին, զոր օր. Երանի՛ այնոցիկ՝ որ սուրբ են սրտիւք։*

**Հարցարան. — Յարաբերական դերանունն ինչ պաշտօն կը կատարէ. — Ո՞րն է գլխաւոր եւ որը միջանկեալ նախադասութիւն. — Ինչու միջանկեալ կ'ըսուի նախադասութիւնն. — Ո՞ւր կը դրուի միջանկեալ նախադասութիւնն. — Յարաբերական դերանունն ուր պէտք է դրուի. — Ե՞րբ կրնայ հեռու մնալ այն. — Յարաբերականն ու յարաբերեալն ինչպէս կը համաձայնին. — Երբ այլ եւ այլ հոլովով խնդիր առնող բայեր ըլլան, յարաբերականն ինչ հոլով պէտք է դրուի. — Յարաբերականն ու յարաբերեալն ինչպէս պէտք է դրուին. — Յարաբերականը կրնա՞յ եզակի դրուիլ փոխանակ յոգնակիի.**

**Հրահանգ 197.** — **Վերլուծեցէք հետեւեալ նախադասութիւնները.** — Ամենեքին՝ որ ընդունէին զնա՝ կեան եւ որք թողուն զնա՝ մեռցին. — Որ հեռաւորքն իցեն՝ յիշեսցեն զիս. — Յիշեա՛ զեկեղեցի քո, զոր ստացար ի սկզբանէ. — Հա՛յր մեր, որ յերկինս ես, սուրբ եղիցի անուն քո. — Յիշեա՛ զբան ծառայի քո յոր եւ յուսացուցեր զիս. — Զամենայն զոր ինչ ասացերդ, ի լրութենէ սրտի եւ ի բարւոք մտաց խօսեցար. — Թագոյց զհրեշտակսն զոր արձակեցաք. — Խելամուտ լե՛ր բանիցս զոր խօսեցայց ընդ քեզ. — Յամօթ արար որ ծնաւն զնոսա. — Պսակդ եղիցի այնոցիկ՝ որ ակն ունին. — Նոքա ոչ իմացան զբանն զոր խօսեցաւ ընդ նոսա. — Վաղվաղակի եհաս նաւն յերկիրն յոր երթային. — Նա է մարդ կատարեալ՝ որ կարօղն է սանձահարել զամենայն մարմին իւր. — Ահաւասիկ վարձք մշակաց՝ որ գործեն զանդս ձեր, առ ձեզ են. — Յետս կացին նոքա ի սուրբ պատուիրանէն՝ որ նոցա աւանդեցաւ. — Որ էրն ի սկզբանէ, զորմէ լուաքն, որում ականատեսն իսկ եղեաք. — Այս են աւետիք զոր լուաք առ ի նմանէ եւ պատմեմք ձեզ. — Ամենայն՝ որ ինչ յաշխարհի է, ցանկութիւն է. — Մեծատունք՝ որ ի կարասւոյն հարեալ են, ատէպ թօթափեն զհանդերձսն, զի մի՛ ցեցակեր մեցամէս լինիցին. — Հա՛յր արդար, դու ես, որ առնես սքանչելիս. — Ոչինչ օգտեցան, որք այնպէսն գնացին. — Հաստատուն կա՛ց յոր ուսարդ. — Է ամօթ, որ ածէ մեղս, եւ է՛ ամօթ, որ ածէ զփառս եւ զուրախութիւն. — Մեհենատեղին Հերակլեայ կայ դէմ յանդիման լերինն մեծի՝ որում Ցուլն անուանեալ կարդան:

**Հրահանգ 198.** — **Վերածեցէք ի գրաբար.** — Բոլոր գանձանակը ձգողներէն շատ ձգեց (արկ). — Երանելի

նու, զոր օր. Ցօրէ յորմէ խօսեցայ ես ընդ քեզ. մոխանակ ըսելու, Ցորում խօսեցայ, եւայլն ։

Երբեմն ալ յարաբերականն անհոլով կը պահուի, զոր օր. վասն որ հարկանէ զակն ։

**Հարցարան.** — Ե՞րբ կը զեղչուին դերանուն յարաբերեալները. — Ե՞րբ յարաբերականն յարաբերելոյն հոլովով կը դրուի. — Ուրիշ երբ յարաբերականն յարաբերելոյն հոլովով կը դրուի. — Երբեմն յարաբերականն ինչպէս կը դրուի ։

**Հրահանգ 199.** — Վերլուծեցէք հետեւեալ նախադասութիւնները. — Հա՛րց որում ցանկացեալ է անձն քո եւ ես պատմեցից քեզ՝ զոր պարտ է քեզ գիտել. — Որոց ոչ պատմեցաւ վասն նորա՝ տեսցեն եւ որոց ոչ լիցէ լուեալ՝ ի միտ առցեն. — Պահեսցէ զոր ի նմա գրեալ է. — Որ բնակեալն է յերկինս Աստուած՝ յաջողեսցէ զճանապարհս ձեր. — Որ երկմիտն է՝ նման է հողմակոծեալ եւ տատանեալ ալեաց ծովու. — Որ ոք գիտիցէ զբարին եւ ոչ առնիցէ՝ մեղք են նմա. — Ոչինչ յորոց խորհէրն՝ ծածկէր. — Առ յորոց ածէրն պատարագս եւ առաքեաց Եսաւայ եղբօր իւրում. — Զորս միանգամ գտանիցէք՝ կոչեցէք ի հարսանիս. — Ոչինչ՝ զորոց զմտաւն ածէր, առնելոց էին. — Աղօթեսցէ առ Աստուած՝ որում մեղաւն. — Թերեւս երկայնամիտ լիցի առ նա. — Ականջօք մերովք լուաք զոր հարքն մեր պատմեցին մեզ. — Այս առաջին պահք եղաւ յաւուրս Սրբոյն Գրիգորի, զոր եւ Առաջաւորք կոչեմք. — Որում երկինք չէին բաւական առ ի բնակութիւն՝ ի քէն մարմնացաւ. — Աղօթէիր որ քարաձիգն լինէին ի քեզ. — Որոց ոչ գործեցի՝ հատոյց ինձ հատուցմունս. — Իսկ որք գրեցին զկտակն, առ իւր նստոյց. — Որպէս ազոխ ատամանց վնասակար է եւ ծուխ՝ աչաց, նոյնպէս եւ անօրէնութիւնք՝ որոց վարին նովաւ. — Աղբիւր կենաց են

Փառք՝ որոյ անփոփոխ էր. — Երկնային բարի՝ որ որ
հանապազորդ էր, Աղքատաց. — Երկինք որոյ ոչ Թերաւո-
րեն ի նմանէ. — Որոյ համառն՝ չաւոյք Թող համառել. —
Եւ ամենք յորոյ անդին կայքն, անին էին. Չի՛ գործէք.
— Արժանի՝ որոյ գործեցաւքն՝ անհամբ ընտանեացն.

Համեմատ 200. — Աշխարհաբարէ գրաբար. — Պա-
տասխան տալիք մեր խորհուրդներուն. — Դուք ձեր չէ
գիտցածին կ'երկնցուցէք, մենք մեր գիտցածին. —
ԶԱստուած սիրողներուն, ամէն բանի մէջ բարի բանե-
րու համար (ի բարիս) գործակից կ'ըլլայ. — Ամէն ինչ
որ իմ տանս մէջ էր, առաւ. — Կ'ուզէր Հոլոփեռնէս
խաբել զանի այն օրէն (ի վեր) որ առաւ զանի. — Թող
յաջողին (յաջողեցին) քու ամէն գործերդ եւ անձնանդ՝
որ (որոց) արդարութիւն կը գործեն. — Կը պաշտօնէին
անոր (կարգաւորին առ որ) որ ամէն ժամանակի մէջ օգ-
նական եւ պաշտպան կ'ըլլար իրենց. — Անոր համար ե-
րեւեցայ քեզ՝ զքեզ պաշտօնեայ ձեռք աանելու (առնուլ
ի ձեռն) եւ վկայ անոնց՝ որոնցմով տեսար զիս եւ անոնց
որոնցմով պիտի երեւիմ քեզ (որոց տեսեր ... որոց ե-
րեւեցայց). — Այն օրէն (ի վեր) որ լսեցինք, չենք դադ-
րիր ձեզի համար աղօթելէ. — Դուք ձեզմէ գիտէք այն
առաջին օրէն՝ որ եկայ. — Թող ձեր ըսածներէն բան
մը չգայ իմ վրաս. — Անոր համար ինչ որ չպատմուե-
ցաւ՝ թող տեսնեն եւ հասկընան (ի միտ առցեն) ինչ որ
լսուած չէ. — Ես ջուր պիտի տամ անոնց ծարաւին հա-
մար՝ որ անջրդի տեղ կ'երթան. — Քանզի մէկը չիկայ,
որուն յանդիմանութենէն փախնային (խոյս տային). —
Նաեւ խրատմի կ'ըսենք մարդուն համար պատիժ կրել
գործածներուն տեղ (ըստ որոց գործիցէ). — Եւ որոնք
որ կը դնէր Քաղդէացիներէն՝ կ'այրէր ։

# ԳԼՈՒԽ Թ.

---

## ԷԱԿԱՆ ԲԱՅՆ ԻԲՐԵՒ ՉԷԶՈՔ

*Էական բայը չէզոք կ'ըսուի, երբ գտնուիլ, ներկայ ըլլալ, տեղի ունենալ կը նշանակէ եւ այն ատեն ստորոգելի չունենար, զոր օր. Հայր մեր, որ յերկինս ես։*

**Հարցարան.** — Էական բայն երբ չէզոք է։

**Հրահանգ 201.** — Վերլուծեցէք. — *Անդ էին թակոյկք կճեայք վեցք. — Աստուած ամենայն ուրեք է. — Այր ոմն էր յԱւսիդ աշխարհի. — Են աստեղք յերկինս. — Են ոմանք որ ոչ հաւատան. — Ի մէ՞նջ իցես թէ ի նոցանէ. — Ուր եսն եմ, անդ եւ պաշտօնեայն իմ եղիցի. — Եղեւ անդ աւուրս բազումս. — Ո՞ւր է Հաբէլ եղբայր քո. — Ջրհեղեղ եղեւ ի վերայ երկրի. — Էր նա ընդ ծառով. — Ուր առաւել եղեն մեղքն, անդէն առաւելան շնորհք Աստուծոյ. — Աստ է այրն, զոր տեսաք մեք. — Անդ է աղբիւր բարեաց. — Են ոմանք՝ որ ոչ հաւատան. — Հոգի նորա է ի դժոխս. — Են մարդիկ որ տեսցեն զիս եւ խնդասցեն. — Են արկածք յորոց պարտ է խիթալ. — Եւ էր քարայրն ի դարեւանդ բըլրոյն. — Ո՞ւր է ոչխար յողջակէզ. — Է աստ առ իս եւ ոչ ելանէ արտաքս. — Աստ է քոյր իմ, որ ստէպ խնդրէ զիս. — Են ի ծովու անդ կղզեակք ինչ եւ ի բացէ նոցա խութք. — Էր Աննա քահանայապետ ի տաճարին։*

**Հրահանգ 202**. — Վերածեցէք ի գրաբար . — *Այն քաղաքին մէջ մարդ մը կար . — Հայրս պարտէզն է. — Թզենիոյն վրայ պտուղ չիկայ . — Մայրդ ո՞ւր է . — Ծովուն մէջ ձկներ կան . — Հոն կային ջուրց տասներկու աղբիւր . — Կան՝ որ դուրսէն են եւ կան որ ներսէն . — Կար որ կը գգուէր եւ կար որ կը համբուրէր . — Քրիստոսով անոյշ հոտ եմք . — Մենէ՞ ես թէ օտարներէ . — Ամէն բան անով եղաւ . — Ես հոն էի . — Աղջիկս դպրոցն է . — Մայրս գիւղն է . — Շատ օրեր պանդխտութեան մէջ եղաւ . — Հոն շատ ձիթենիներ կային . — Մեր նախածնողք դրախտն էին . — Քու կամքդ թող ըլլայ . — Հոն խողերու երամակ մը կար . — Անոնցմէ մէկը հոս է . — Հոն երկու զանգակ կայ . — Ամենքն ալ հոս են . — Երեքն ալ մէկտեղ էին ։*

## ԷԱԿԱՆ ԲԱՅՆ ՈՒՆԻՄ ԲԱՅԻՆ ՏԵՂ

*Ունիմ բային տեղ շատ անգամ եմ բայը կը գործածուի ունիմին տէրբային սեռականի փոխելով եւ սեռի խնդիրը տէրբայի ընելով, զոր օր. Ես քոյր մը ունիմ. Է իմ քոյր մի ։*

**Հարցարան**.— *Եմ* բայն ինչպէս *ունիմ* բային տեղ կը գործածուի։

**Հրահանգ 203**. — *Եւ երազոցն այլ եւ այլ պատճառք են . — Որոց իցեն աչք մնաց . — Եթէ իցեն ուրուք երկու ծառայք . — Բերան է նոցա եւ ոչ խօսին . — Եթէ իցէ ուրուք որդի խեռ եւ անզգամ, եւ ոչ լսիցէ ձայնի հօր եւ մօր իւրոյ , մեռցի . — Այնր գլխոյ ոչ վարսք են եւ ոչ գիսակք . — Զի՞ պատմեցէք առնն թէ գուցէ ձեր եղբայր . — Որոյ մարմին եւ արիւն եւ ճարպ եւ ոսկերք*

են , հարկ է՝ թէ մսեղէն է եւ կենդանի . — Է հօր իմոյ պարտէզ մի . — Բայց էր նոցա միւս եւս եղբայր կրտսեր անուն Վարդ . — Ոյր իցեն երկու հանդերձք՝ տացէ զմին այնմ՝ ոյր ոչ գուցէ եւ ոյր կայցէ կերակուր՝ նոյնպէս արասցէ . — Եղեւ նորա որդի մի . — Էր Իսահակայ ջրհոր մի . — Են իմ որդիք երկու . — Են իմ եղբարք երկոտասան . — Էին կուռք մի Բաբելացւոց անուն Բէլ . — Ոսկի եւ արծաթ այնչափ է իմ , մինչեւ զամենայն դաշտս եւ զբոլոր երկիրս լնուլ . — Որչափ եւ իցէ քո՝ ըստ նմին բազմութեան արասցես զողորմութիւնս . եթէ սակաւ իցէ քո՝ ըստ սակաւին . — • Դստերք իցեն քո՝ զգո՛յշ կաց եւ մի՛ գգուեր զնոսա եւ համարձակեցուցաներ . — Ղովտայ էր արջառ եւ ոչխար եւ անասուն ։

**Հրահանգ 204.** — Եղբայրս այգի մը ունի . — Նա եօթը մանչ եւ երեք աղջիկ ունեցաւ . — Հայրս երկու տուն ունի . — Դրացիս չնիկ մը ունի . — Շատ ստակ ունէի՞ր . — Լուսինը իրեն առանձին լոյս չունի . — Աչք ունին եւ չեն տեսներ , ականջ ունին եւ չեն լսեր . — Շատ ինչքեր ունեցաւ . — Արծիւը սուր մագիլներ ունի . — Ով որ հարս ունի , նա է փեսայ . — Ես չունիմ . — Ես , դու , նա ունի , մենք , դուք , անոնք ունին . — Եւ հարուստն ունէր խիստ շատ հօտեր եւ անասուններ (անդեայք) . — Քու աղախինդ երկու որդի ունէր . — Ես տուն մը ունիմ . — Նա այգի մը ունեցաւ . — Հօրեղբայրս մեծ տուն մը ունի . — Մայրս երկու աղախին ունէր . — Չորս դուռ ունի մեր եկեղեցին . — Իսրայէլ տասներկու որդի ունեցաւ . — Անոնք ստացուածք ունէին . — Որոնք որ բժշկութեան պէտք ունէին՝ կը բժշկէր . — Նա որդի չունէր . — Եթէ նա եղբայրներ չունենայ (գուցեն) ։

# ԳԼՈՒԽ Ժ.

---

## ԲԱՅԻ ԵՂԱՆԱԿԱՑ ԵՒ ԺԱՄԱՆԱԿԱՑ ՎՐԱՅ

---

### ՍԱՀՄԱՆԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ

*Սահմանական եղանակը ներկայի մէջ կատարուած գործողութիւն մը կը ցուցնէ, զոր օր. Նորա է աշխարհս գոյիւ իւրով. այս աշխարհս ամբողջովին անոր է ։ (Տե՛ս այս մասին էջ 81) ։*

*Նոյն սահմանական եղանակը փոխանակ այժմեան իրողութիւն մը ցուցնելու՝ իրաց բնական ընթացքին կամ սովորութեան մէկ բացատրութիւնը կ'ըլլայ ։ Այդ տեսակ խօսքեր սովորաբար առածներ կամ ճշմարտութիւններ կ'ըլլան, զոր օր. Սէր ոչ նախանձի. Որ սիրէ զխրատ՝ սիրէ զիմաստութիւն ։*

*Անկատարը կը ցուցնէ ոչ բոլորովին կատարուած գործողութիւն մը. իսկ կատարեալը կը ցուցնէ անցեալ ժամանակի մէջ տեղի ունեցած գործողութիւն մը, զոր օր. Որ ինչ պատուական էր ի բնութեանն, այն մեզ տուաւ ։*

**Գիտելիք.** — *Գրագիտական ձեւ մ'է վիպական ոճը քաղցրացնելու համար անցեալին տեղ ներկայ դնել կամ սահմանականին տեղ անկատար, զոր օր. Առնէ զՊոնտոս եւ զԹրակէ, կործանէ եւ զԼակեդեմոնացիս, փախստեայ առնէ եւ զՓոկէացիս ։*

*Երբեմն ալ անկատար գործածել փոխանակ կատարեալին, զոր օր. Նշանս բաշխէր, դրօշս արձակէր:*

*Բայց պէտք է գիտնալ թէ բայից ժամանակներու խառն գործածութիւնն աւելի գեղեցիկ եւ վայելուչ կ'ընէ ոճը: (Տե՛ս այս մասին ՃԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ ԱԳՈՆՑ, էջ 10-1):*

*Յարակատար* եւ *գերակատար* կը դրուին քանի մը բայերու ներկային եւ անկատարին տեղ, այսպէս. *Բընակեալ եմ*, փոխ. բնակեմ. *Յուսացեալ եմ*, յուսամ. *Զարմացեալ էր*, զարմանայր, եւայլն:

Ապառնին երեք տեսակ գործածութիւն ունի. 1. Բուն ապառնւոյ նշանակութեամբ, 2. Իբրեւ հրամայական եւ արգելական՝ հրաման, կամք ցուցընելով, մանաւանդ Ա. եւ Գ. դէմքի, եւ 3. Ստորադասականին տեղ, մանաւանդ զի, *թէ* շաղկապով:

Որոշ կերպով ըղձալիք ցուցընողն է բաղադրեալ ժամանակը. *Գալոց եմ*, *լինելոց էր*, *տալոց իցես*, եւլն.:

Ապառնւոյ երկրորդ գործածութիւնը գլխաւորաբար Ա. եւ Գ. դէմքի հրամայականին եւ արգելականին պակասութիւնը լեցընելու համար է, զոր օր. Մի՛ *տեսից* զմահ որդւոյ իմոյ (չտեսնեմ):

*Ապառնւոյ այս երկրորդ կերպ (հրամայական) գործածութեան տեղ կը գտնուի նաեւ սահմ. ներկայ դրուած, զոր օր. Ասեմք զի իջցէ հուր յերկնից:*

Ստորադասական ներկայի տեղ սահմ. ապառնի՝ բաւական յաճախ կը գործածուի, մանաւանդ՝ *որ*, *եթէ*, *թերեւս*, մինչեւ բառերէն ետեւ՝ եւ աւելի (որպէս) զի շաղկապով, որուն քով սովորական է ապառնի քան ստորադասական, զոր օր. Որ *համբերեսցէ* ի սպառ՝ նա կեցցէ:

Ասոնցմէ զատ՝ շատ անգամ ապառնի կը դրուի աշ-

*խորհրդաբար առնէ. Ներկային տեղ, մանաւանդ պատկա-ւոր վճռական խօսքի մէջ, զոր օր. Որ անարգէ զհայր՝ նախատ լիցի :*

*Իսկ եմ բային ապառնիին տեղ ստորադասական կը գործածուի, զոր օր. Այսօր ընդ իս իցես ի դրախտին :*

**Հարցարան.** — Ի՞նչ կը ցուցնէ սահմանական եղանակը. — Ի՞նչ բացատրութեան տեղ կը գործածուի. — Ի՞նչ կը ցուցնեն անկա-տարն ու կատարեալը. — Ե՞րբ *յարակատար* եւ *գերակատար* կը դրուին. — Ապառնին քանի տեսակ գործածութիւն ունի. — Բաղադրեալն ինչ կը ցուցնէ. — Ապառնւոյն երկրորդ գործածութիւնը ինչի համար է. — Ստորադասական ներկայի տեղ յաճախ ինչ կը գործածուի. — Ապառ-նին նաեւ որ ժամանակին տեղ կը դրուի. — *Եմ* բային ապառնիին տեղ որ եղանակը կը գործածուի.

**Հրահանգ 205.** — Վերլուծեցէք հետեւեալ նախադա-սութիւնները. — *Ոչ կարեն հօտք առանց հովուաց լինել եւ հովիւք առանց բարուոք վերակացուի. — Աշտարակք չորեքկուսիք բոլորակք երեւին ի հեռաստանէ. — Եւ պարծի այսօր սուրբ եկեղեցի, ո՛վ վկայուհի սուրբ Սան-դուխտ. աշակերտեցար առաքելոյն Թադէոսի եւ ի հա-ւատս ճշմարիտս հաստատեցար, ոչ խառնակելով ընդ հեթանոսական պաշտօնսն, արժանի եղեր վերանալ առ հայր. որ զտիկնութեանն քո թողեր զփառս եւ աս-տուածային փառօքն զարդարեցար՝ այսօր պսակե-ցեալ ընդ զուարթունս երկնից, վասն մեր առ Տէր բա-րեխօսեա. — Արուեստագէտքն միշտ հանապազ յիւրա-քանչիւր արուեստից շահին զդարմանս կենաց իւրեանց. — Մատիցէ այր ի խորութիւն սրտի իւրոյ եւ բարձր ե-ղիցի Աստուած. — Արծաթ ընտիր է լեզու արդարոյ. — Պատասխանի ողոք՝ դարձուցանէ զսրտմտութիւն. — Բան խիստ յարուցանէ զբարկութիւն. — Վարձ շնորհաց խրատ՝ որոց կիրեն զնա. — Համերքն խօսէին, կաղք*

գնային, միակողմանիք բժշկէին; կոյրք տեսանէին եւ փառաւոր առնէին զԱստուած Իսրայէլի. — Զայն առեալ՝ տացես նոցա ընդ իմ եւ ընդ քո. — Հարից զհովիւն եւ ցրուեսցին ոչխարք հօտին. — Ամենայն մարմին իբրեւ զխոտ է եւ ամենայն փառք մարդոյ իբրեւ զծաղիկ խոտոյ. — Գրիգորիոս երիւք հնգօք ամօք ի վիրային ճգնեցաւ. — Անձկացեալ եմ տեսանել զերեսս ձեր. — Մի՛ լիցուք սնապարծք. — Լուիցեն զայս իմաստունք եւ յամօթ լիցին. — Նստարուք այդր՝ մինչեւ երթայց կացից յաղօթս. — Օ՛ն առ (հապա՛, աղէ՛) եւ զմշակացն եւս դասս եւ զձեռագիտացն ջոկս քննեսցուք. — Այլ կամիք՝ զի եւ զնոսա թողցուք, եւ առ այլս՝ որ թուին արդարագոյնք քան զնոսա՝ երկեսցուք։

**Հատուած 206.** — **Աշխարհաբարէ գրաբար.** — Ամէն իմաստութիւն տիրոջմէն է, անոր հետ կը մնայ յաւիտեան (կայ եւ մնայ). — Քու բարեկամներդ թող շատ ըլլան, այլ հազարէն մէկը թող քեզ խորհրդակից ըլլայ. — Ով որ ողորմութիւն կ'ընէ, ընկերին փոխ կուտայ. — Հնազանդ միտքը եւ պարկեշտ որկորը մարդու փառք է. — Եթէ փնտռես զանի, պիտի գտնես (գտցի քեզ), եւ եթէ թողուս զանի՝ զքեզ խապառ պիտի թողու (լքցէ). — Մի՛ դարձըներ քու երեսդ ամէն աղքատէ եւ Տէր Աստուած իւր երեսը քենէ չպիտի դարձընէ. — Ողորմութիւնները մահուանէ կը փրկեն եւ թող չեն տար խաւարը մտնելու (մտանել ի խաւարն). — Պիտի մտնէ անոնց տուները (ի տունս որոց) որ իմ անունովս սուտ կ'երդնուն. — Տէրը թող տեսնէ եւ դատէ. — Մի՛ ժողվեր (մի՛ ժողովեսցես) հունձքերէն ինկածը. — Թեթեւ իրեր երկնից բարձրութեան երեսը կ'ելնեն (վերանան) եւ ծանրերը գետինը կ'իջնեն (հակին իջանել).

*— Այլ մենք ծածկենք մեր հաճոյքները մեր սրտից շտեմարաններուն մէջ եւ Աստուծոյ տանք (աւանդեսցուք) եւ հատուցմանց յուսանք (ակն կալցուք) անկէ. — Եւ մէկ խօսքով (եւ միանգամայն իսկ ասացեալ թէ), ինչ որ մեր զգայարաններէն (ի զգայնոցս) կը շօշափուի կամ կը զննուի կամ կ'զգացուի (ազդի), այն մարմնաւոր է, եւ ինչ որ զգայարաններու (զգայնոց) չզգացուիր, անմարմին է. — Հրեայք մինչեւ ցայսօր կը սնդեն թէ մեր հայրերը Յիսուսը խաչ հանեցին. — Տա՞նք թէ չի տանք. — Հարուստները թող այս լսեն եւ ամչնան (յամօթ լիցին). — Հոդ նստեցէք, մինչեւ որ երթամ աղօթեմ (կամ յաղօթս). — Քանզի այնպէս է արբեցութիւնն. որչափ մէկը խմէ, աւելի սաստիկ կը ծարաւցնէ (պասքեցուցանէ)։*

## ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ

*Բացարձակ հրամայականի յատուկ ձեւն է* ե՛րթ, գործե՛ա, տեսէ՛ք*։ Իսկ երկրորդական ձեւը* ջի՛ր, ջի՛ք*, որ ապառնիէն ելած է՝ աւելի աղաչող կամ յորդորող է։*

**Ծանօթ.** — *Հրամայական երկրորդական ձեւն ապառնւոյ վրայէն կը կազմուի. ինչպէս. Արասցես, արասջիր, փախիցես, փախիջիր։*

**Հարցարան.** — Հրամայականի բացարձակ ձեւն որն է.

## ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ

*Ստորադասական բառը կը նշանակէ, ինչպէս յայտնի է, ստորադաս կամ կախում ունեցող։ Ստորադասականն այս անունն առած է այն պատճառաւ որ բայի մը ստո-*

*բաղդատականով ցուցուած գործողութիւնը կախում ունի առաջին բայով մը ցուցուած գործողութենէն ։*

*Ստորադասական կը գործածուի ․*

1․ *Երբ ընդհանուր եւ անորոշ բանի մը վրայ է խօսքը ։ Այս պարագային՝ ներկային կը համապատասխանէ, զոր օր ․ Որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ ։*

2․ *Երբ խօսքը թէական կամ հարցական է, անոր մէջ ալ սահմ․ ներկային կը պատասխանէ, զոր օր ․ Միթէ քաղեսցե՞ն ի փշոց խաղող․ — Եթէ ոք ածիցէ ապտակ յաջ ծնօտ քո ։*

3․ *Երբ խօսքը նմանութիւն կամ ենթադրութիւն է։ Այս պարագային՝ անկատարին կը պատասխանէ, զոր օր․ Նման է ազգս այս մանկտւոյ՝ որ նստիցին ի հրապարակս։*

**Ծանօթ.** — *Որ, ուր, եթէ, յորժամ եւ նման բառերուն բայը վայելուչ է եւ շատ սովորական՝ ստորադասական դնել փոխանակ սահմանական ներկայի, զոր օր․ Որ ընդ ճառագայթս արեգական հայել կամիցի ։*

**Հարցարան.** — Ի՞նչ կը նշանակէ ստորադասական բառը. — Ո՞ր պարագային մէջ կը գործածուի ․

**Հրահանգ 207.** — Վերլուծեցէք. — *Որպէս յորժամ իցէ ոք ուրուք թշնամի, եւ թաքուցեալ զթշնամութիւնն գաղտ կամիցի վնասել եւ չգիտիցէ զհանգամանս վնասակարութեանն, եւ շուրջ եկեալ յածիցի հնարս խնդրել․ ապա գտեալ ժամանակ, յորժամ ոք ի բժշկաց թշնամւոյ նորա պատուէր տայցէ յայս ինչ չհպել եւ յայս նիչ կերակրոց չճաշակել, որով առողջութեանն կարիցէ հասանել, վաղվաղակի ի կեղծիս բարեկամութեան կեղծաւորեալ՝ զբժիշկն պարսաւիցէ եւ զօգտակարսն նմա վնասակարս թելադրեալ կարծեցուցանիցէ*

*առողջութիւնը ձեռք ձգելու համար (առ ի հնարել). — Ո՛վ ամէն լեռներ, ցնծացէ՛ք այսօր Սեպուհ գերագանց լերան մեծապայծառ փառքին վրայ, քանզի հոն (ի Նմա) բնակեցաւ սուրբն Գրիգորիոս:*

## *ԱՆԵՐԵՒՈՅԹ*

*Երբ աներեւոյթ մը ուրիշ բայի տէրբայի կամ խնդիր ըլլայ աշխարհաբարի մէջ, գրաբար զի շաղկապով դիմաւոր բայի կրնայ փոխուիլ. զոր օր. Զի Ներող եւ արգահատող է Արարիչն, այն ամենեցուն իսկ յայտնի է. փոխանակ՝ Արարչին Ներող եւ արգահատող լինելն, եւլն:*

*Նոյնպէս պատճառ կամ նպատակ ցուցնող խօսքին դիմաւոր բայն աներեւութի կը փոխուի. զոր օր. Բերին ջուր լուանալ զոտս Նոցա: Աներեւոյթը շատ անգամ կ'առնու ի, առ, առ ի նախդիրը: (Տե՛ս ի, առ նախդիրը):*

*Դարձեալ ժամանակ ցուցընող խօսքերու դիմաւոր բայն աներեւութի կը փոխուի, զոր օր. Ի ծնանելն Յիսուսի: (Տե՛ս ի Նախդիրն):*

*Դիմաւոր բայ մը եւ անոր աներեւոյթն ի միասին ապաքէն կամ թէպէտեւ շաղկապով կցուած խօսքին զօրութիւն ունին, զոր օր. Ունել ունէին իւղ, այլ ոչ բաւական, այսինքն թէպէտեւ ունէին իւղ, այլ ոչ բաւական:*

**Հարցարան.** — Աներեւոյթ մը երբ *զի* շաղկապով դիմաւոր բային կը փոխուի. — Պատճառ կամ նպատակ ցուցնող խօսքին դիմաւոր բայն ինչի կը փոխուի. — Ուրիշ որ պարագայի մէջ դիմաւոր բայն աներեւութի կը փոխուի. — Դիմաւոր բայ մը եւ անոր աներեւոյթն ի միասին ինչ բանի զօրութիւն ունին:

**Հրահանգ 209.** — Վերլուծեցէք. — *Նոքա վեր ի վերոյ բանիւք խնդացին զմեր ի նոսա հասանել. — Ոչ գոյր*

անդ ջուր ըմպելոյ ժողովրդեանն . — Պահել պահեսցէ զպահպանութիւնս , բայց գործ ինչ մի՛ գործեսցէ . — Ոչ իբրեւ զմարդ է ի զարթնուլ եւ ոչ իբրեւ զորդի մարդոյ ի սպառնալ . — Զի՞նչ խնդրէ ի քէն տէր Աստուած քո , այլ երկնչել ի տեառնէ Աստուծոյ քումմէ եւ գնալ յամենայն ճանապարհս նորա եւ սիրել զնա . — Առի ես զքեզ ի վանաց հօտից , լինել քեզ առաջնորդ ի վերայ ժողովրդեան իմոյ . — Դու ընտրեցեր զտաճարս քո զայս կոչել զանուն սուրբ քո ի վերայ սորա, զի լիցի դա տուն ուխտից խնդրուածոց ժողովրդեան իմոյ . — Ի ցածնուլ մրրկին մնայ աւազ եւ սիկ աղի . — Նոքա որ առինն՝ առնուլ առին վասն այնորիկ որ ետն բերել յանուն զոհիցն պաշտաման· բայց վասն բերելեացն աղաչելոյ՝ անդր ինչ ոչ խառնեցին . — Իսկ Մենեղաւոս առնուլ առ ի ձեռս զիշխանութիւն քահանայութեան . — Արդ աղաչեմ զձեզ՝ յիշել ձեզ զերախտիսն զառհասարակ բարեացն. — Եւ զի չիք ակնառութիւն առ ի յԱստուծոյ , ասէ . Միթէ Հրէի՞ց միայն Աստուած իցէ՝ եւ հեթանոսաց ոչ . — Եւ ի դնել նոցա երիցս անգամ ծունր եւ կալ յաղօթս, եւ յարեաւ ի ծովէ անդ հողմ սաստիկ , եւ սկսաւ ընկենուլ ի կղզի անդր ձուկն սաստիկ յոյժ . — Ի թողուլ նախ զարարիչն մեր եւ զնորուն պատուիրանս՝ գուցէ բարկացեալ տէր Աստուած ձեր , եւ խլիցէ զձեզ արմատաքի . — Բայց ժամանակի սպասէր իւրում անմտութեանն օգնական գտանելոյ . — Ըստ մերձենալ հողմոյ խորշակի՝ ցամաքեսցի տունկն :

**Հրահանգ 210.** — Աշխարհաբարէ գրաբար . — Թէպէտեւ կը ցուցընէ , բայց չգործածեր (ի կիր չարկանէ) . — Անոնց լեզուները սուր են հայհոյելու համար եւ անոնց ոտքերը ստելու համար վարժ (կիրթ) . — Պարզ եւ

որոշ խօսքեր ճշմարտութեան պատգամներն եւ դիւրաւ կ'ընդունուին (դիւրին առ. ի յընդունել). — Խիստ եւ անհնարին դժուարին են իմանալու. — Աստուած այսպիսի անհնարին ցաւեր բժշկելու համար (վասն այնորիկ զի) բոլորովին (ամենեւին) ամէն բաները խոնարհութեամբ մատակարարեց. — Գէշ բան է (չար) անսաստելը եւ բարի՝ անոր հակառակը. — Սատանան տեսնելով Աստուծոյ ձեռքէ ձգելը (թողացուցանել), մօտենալով՝ գործի ձեռք կը զարնէր. — Քրիստոսի ծնանելու ատեն լոյս ծագեցաւ, եւ մոգերը տեսան եւ անոր ետեւէն գացին. — Դատին անիրաւ ըլլալուն համար կինը իւր վրայ կ'առնու յանցանքը. — Երբ արեգակը մարը կը մտնէ՝ մարդ իւր գործերէն կը դադրի. — Պատուիրեց անոր որ մէկուն չըսէ. — Այլ Աստուծոյ մահուան պատճառ չըլլալը թող վկայէ ամենարուեստ իմաստունը. — Անոր օրով մեծ ջրհեղեղին ըլլալը կը պատմեն (վիպագրեն). — Երբոր ջուրերն իջան (ցածնուլ), Նոյ աղաւնին արձակեց. — Երբ գարունը կը հասնի, ամբողջ աշխարհ կը զուարթանայ. — Մենք շատ քարեր ունինք քու ակռաներդ թափելու համար. — Ձիոց բերանը սանձ կը դնենք, որպէս զի անոնք մեզի հնազանդին (անսալ). — Ալ ջրհեղեղ չպիտի ըլլայ ամէն մարդիկը սատակելու համար. — Երբ իր ապրելուն ալ յոյս չունեցաւ (կտրեւ ակն ինչ ոչ կալաւ)։

## ԱՆՑԵԱԼ ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ

Անցեալ ընդունելութիւնը կրնայ ունենալ իբրեւ, յորժամ, եթէ շաղկապներով կապուած դիմաւոր բայի զօրութիւն, զոր օր. Եւ մտեալ ի Կափառնաում, մատեաւ առ նա հարիւրապետ մի։

**Դիտելիք.** — *Շատ անգամ ալ փոխանակ անցեալ դերբայի գըրուած կը գտնենք անորոշ դերբայ, զոր օր. Իսկ եթէ ոք յոչինչ զԱստուծոյ զպատուիրանսն համարիցի, յորժամ մտցէ ընդ բանսարկուին մարտնչիցի՝ վաղվաղակի կործանի։*

*Կրաւորական եւ չէզոք բայերուն անցեալ ընդունելութիւններն թէ՛ իբրեւ ածական եւ թէ գոյականաբար կրնան գործածուիլ, որոնք խօսքին մէջ իրենց բուն խնդիրներն ալ կ'ունենան. զոր օր. Կառաց խորտակելոց, խորտակուած կառքերու. արանց անկելոց, իյնող մարդոց։*

**Դիտելիք.** — *Չէզոք եւ կրաւորական զուտ ածական անցեալներ երբեմն բացառականի տեղ սեռական կ'առնուն. զոր օր. Այսպիսի բանից յիմարաց մտաց կարկատելոց՝ չէր պարտ ամենեւին բնաւ առնել պատասխանի. — Կապեալք խաւարի եւ կաշկանդեալք երկայն գիշերոյ. — Ապա եթէ բռնազօն քան զնա էր հիւղն, զի ետ ի ձեռս զիւր պատրեալսն նմա չարչարել. փոխ. պատրեալսն յիւրմէ։*

**Հարցարան.** — Անցեալ ընդունելութիւնն ինչ տեսակ դիմաւոր բայի զօրութիւն ունի. — Կրաւորական եւ չէզոք բայերուն անցեալ ընդունելութիւններն իբրեւ ինչ կը գործածուին։

**Հրահանգ 211.** — **Վերլուծեցէք.** — *Հարցեալ՝ թէ յո՞ ուրեք արդեօք նաւարկիցէ՝ պատասխանի արարեալ, թէ առ դիսն, աղօթս առնել՝ զի բարիք մարդկան լինիցին. — Վասն ուխտից եղելոց եւ իրաւանցն զրկելոց ջանայր խաղաղութեամբ անցանել. — Եթէ ոք կամիցի զամենայն լեզուաց նովին բանիւք զզօրութիւնն թարգմանել, չկացուցանէ յանդիման զբանիցն ասացելոց զմիտս. — Այս են անուանք որդւոցն Իսրայէլի մտելոցն յԵգիպտոս. — Տէր բարկացաւ ինձ վասն բանիցն ասացելոց ի ձէնջ. — Նշանօքն եղելօք կործանեցան բագինք մեհենիցն. — Հասին առին զամրացեալ քաղաքն կամօքն Աստուծոյ. — Մի՛ ոք իշխեսցէ նախատել զդոսա վասն իրացդ եղելոց. — Ոչ եթէ անձինք ինչ են, այլ ան-*

ուանք զբանդտանաց, եւ բաժաղանք մոլորելոց մտաց ի դիւաց. — Եթէ ոք սրբէ զանձն իւր, եղեւ նա իբրեւ զանօթ սրբեալ. — Իբրեւ աւուրք ինչ անցին ի վերայ իւրաց գործելոց. — Ժողովեցան եպիսկոպոսք վասն անիծեալ աղանդոյն Արիանոսի Աղէքսանդրացւոյ։

**Հրահանգ 212. — Աշխարհաբարէ գրաբար.** — Հաւատացեալ ժողովրդոց տեղ չմնաց. — Եւ հովին յաջողելովը (ըստ հողմոյն յաջողութեան) տասնեւհինգ օրուան մէջ կը հասնէր հրամայուած տեղը. — Առին անկէ ժողվուած գանձերը եւ կը պահէին տրուած հրամանին համեմատ. — Անոր տուին հնազանդութեան խրկուած (յղեալ) պատգամները. — Ցամաքային անասունները իբր թէ իմացականութիւն (իմացումն) ունին եւ դիւրաւ (դիւրագոյնս) գիտեն ընտրել իմանալ եւ արագ կը տեսնեն եւ անցեալ իրերը կը յիշեն. — Աբդամոնոս անուն դպիր մը Սողոմոնի առաջարկած (արկեալ) առասպելները կը լուծէր (լուծանել). — Խրատ կուտար երեսուն տարիէն վերջը չինել ծնած խոճկորներուն Թուոյն համեմատ. — Դուք չէք անհնազանդ որդիներ (որդիք անհնազանդութեան), այլ սիրեցեալ եկեղեցւոյ մանուկներ. — Ո՛վ արարչին արեամբ ներկուած պատմուճան, զոր ճշմարիտ վկայք զգեցան (արկին) անոր օրինակին համեմատ. — Շուները կը կերակրուէին սեղանէն ինկած փշրանքներէն. — Եւ ուրիշները գերեզմանները կը խուզարկեն (կրկտեն) եւ հողի տակ թաղուած մարմինները մերկացնելով արեւու կը ցուցընեն խայտառակութեամբ. — Զայս երբոր ըսաւ՝ ժողովքը արձակեց. — Եւ երբ տանը դուռը զարկաւ, մօտեցաւ աղախին մը մտիկ ընելու. — Եւ երբ Փեստոս հրամայեց, Պաւղոսը բերին։

# Մ Ա Ս Ն Գ.

## ՔԵՐԱԿԱՆԱԿԱՆ ՁԵՒՔ

*Քերականական ձեւք կ'ըսուին խօսքի այնպիսի կերպեր՝ որ քերականական կազմութեան կամ տրամաբանութեան կանոններու ճշգիւ համաձայն չեն. այլ այսու ամենայնիւ յաճախ կը գործածուին թէ՛ արձակ գրուածոց եւ թէ քերթութեանց մէջ։*

*Այս ձեւերը կը ծառայեն շատ անգամ գեղեցիկ, ազդու եւ բացայայտ ընելու խօսքը եւ գրողին ճաշակի ազնուութիւնը կը յայտնեն։*

*Քերականական գլխաւոր ձեւերն են. Շրջումն, զեղչումն, աւելադրութիւն, բակառութիւն եւ փոխադրութիւն։*

**Հարցարան.** — Քերականական ձեւք ինչ կ'ըսուին. — Այս ձեւերն ինչ բանի կը ծառայեն. — Որոնք են.

### 1. ՇՐՋՈՒՄՆ

*Շրջումն է նախադասութեան մէջ բառերու քերականական կարգը փոխել եւ ասութեանց մէջ նախադասութեանց կարգը։ Այս ձեւը գրաբարի մէջ յաճախեալ է։*

*Նախադասութեան մէջ քերականական խստիւ կանոնաւոր կարգը կը պահանջէր նախ ենթական դնել իւր լրացուցիչներով, յետոյ բայն եւ վերջապէս այլ եւ այլ խնդիրներ՝ այն կարգին համեմատ որ համաձայնութեան*

*մէջ իրեն կը տրուի ։ Ամէն անգամ որ այդ կարգը չպահուի, բառերու շրջում կայ, զոր օր. Զպէտս իմ եւ որոց ընդ իսն էին՝ պաշտեցին ձեռքս այս՝. շրջմամբ գրուած է այս խօսքը, պէտք է ըլլայ. Ձեռքս այս պաշտեցին զպէտս իմ եւ որոց ընդ իսն էին ։*

*Ասութեանց մէջ քերականական կարգը կը պահանջէր որ նախ գլխաւոր նախադասութիւնը գրուէր եւ յետոյ այլ եւ այլ ստորադաս նախադասութիւններ, ամէն մէկուն իւր ստորադասութեան կարգով ։ Ամէն անգամ որ այս կարգը չպահուի, նախադասութեանց շրջում կայ. զոր օր. Որոց ի Դամասկոս եւ յԵրուսաղէմ էին, պատմեցի զղջանալ եւ դառնալ յԱստուած կենդանի. այս խօսքը պէտք է այսպէս շարել. Պատմեցի զղջանալ եւ դառնալ յԱստուած կենդանի, որոց ի Դամասկոս եւ յԵրուսաղէմ էին ։*

*Այսպէս շատ անգամ տէրբային եռքը կը դրուի. զոր օր. Եւ էր Մովսէս ամաց երեսուն եւ երկուց. փոխ. Մովսէս էր ամաց երեսուն եւ երկուց ։*

*Մէկ բայ կազմող երկու բառերը շատ անգամ իրարմէ կը բաժնուին՝ խնդիրները մէջտեղ առնելով. զոր օր. Զի մի՛ մթարքն՝ որ զբբօքն շողայցեն, արգել հայելոյ ի յստակութիւն լուսոյն լիցին ։*

*Այսպէս կ'ըսուի նաեւ. Բժշկիչ պէսպէս ցաւոց լիցի. Ցանկալի ամենեցուն լինէին. Գամագիտ այնմ վահանի լինիցի. Նմանող քում տեառն եղեր. Նպաստ ի յաղթութիւնն լինիցի. Զինչ օգուտ նմա յլինչիցն լինիցի. Ամբաստան զվարդապետացն լինիցիմք. Ծովածուփք ալէկոծք ի մէջ ծովուն լինէին. Դժկամակ ընդ հատուցումն լինի. Շնորհակալ առ բարերարին լինիցիս ։*

*Գիտելիք. — Երկու բառով կազմեալ մակբայները միջանկեալ բառերով կը հեռանան մէկմէկէ, զոր օր. Մինչ նա դեռ կամէր։*

*Ոմանք ալ առաջ դրուելու տեղ՝ ետեւ կը դրուին, կամ ուրիշ կերպով բնական տեղէն կը խախտին, զոր օր. Որոնայ ոչ, փոխ. ոչ որոնայ։*

*— Այլ մենք ծածկենք մեր հաճոյքները մեր սրտից շտեմարաններուն մէջ եւ Աստուծոյ տանք (աւանդեսցուք) եւ հատուցմանց յուսանք (ակն կալցուք) անկէ. — Եւ մէկ խօսքով (եւ միանգամայն իսկ ասացեալ թէ), ինչ որ մեր զգայարաններէն (ի զգայնոցս) կը շօշափուի կամ կը զննուի կամ կ՚զգացուի (ազդի), այն մարմնաւոր է, եւ ինչ որ զգայարաններու (զգայնոց) չզգացուիր, անմարմին է. — Հրեայք մինչեւ ցայսօր կը պնդեն թէ մեր հայրերը Յիսուսը խաչ հանեցին. — Տա՞նք թէ չի տանք. — Հարուստները թող այս լսեն եւ ամչնան (յամօթ լիցին). — Հող նստեցէք, մինչեւ որ երթամ աղօթեմ (կամ յաղօթս). — Քանզի այնպէս է արբեցութիւնն. որչափ մէկը խմէ, աւելի սաստիկ կը ծարաւցնէ (պապաքեցուցանէ)։*

## ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ

*Բացարձակ հրամայականի յատուկ ձեւն է* ե՛րթ, գործե՛ա, տեսե՛ք։ *Իսկ երկրորդական ձեւը* չի՛ր, չի՛ք, *որ ապառնիէն ելած է՝ աւելի ապսպրող կամ յորդորող է ։*

**Ծանօթ.** *— Հրամայական երկրորդական ձեւն ապառնւոյ վրայէն կը կազմուի. ինչպէս. Արասցես, արասջիր, փախիցես, փախիջիր ։*

**Հարցարան.** — Հրամայականի բացարձակ ձեւն ո՞րն է ։

## ՍՏՈՐԱԴԱՍԱԿԱՆ ԵՂԱՆԱԿ

Ստորադասական *բառը կը նշանակէ, ինչպէս յայտնի է, ստորադաս կամ կախում ունեցող։ Ստորադասականն այս անունն առած է այն պատճառաւ որ բայի մը ստո-*

*րադասականով ցուցեալ գործողութիւնը կախում ունի առաջին բայով մը ցուցուած գործողութենէն ։*

*Ստորադասական կը գործածուի ·*

1. *Երբ ընդհանուր եւ անորոշ բանի մը վրայ է խօսքը ։ Այս պարագային՝ ներկային կը համապատասխանէ, զոր օր · Որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ ։*

2. *Երբ խօսքը* թէական *կամ* հարցական *է, անոր մէջ ալ* սահմ. ներկային *կը պատասխանէ, զոր օր · Միթէ քաղեցե՞ր ի փշոց խաղող. — Եթէ ոք ածիցէ ապտակ յաջ ծնօտ քո ։*

3. *Երբ խօսքը* նմանութիւն *կամ* ենթադրութիւն *է։ Այս պարագային՝ անկատարին կը պատասխանէ, զոր օր. Նման է ազգս այս մանկտւոյ՝ որ* նստիցին *ի հրապարակս։*

**Ծանօթ.** — *Որ, ուր, երբ, յորժամ եւ նման բառերուն բայը վայելուչ է եւ շատ սովորական՝ ստորադասական դնել փոխանակ սահմանական ներկայի, զոր օր. Որ ընդ ճառագայթս արեգական հայել կամիցի ։*

**Հարցարան.** — Ի՞նչ կը նշանակէ *ստորադասական* բառը. — Ո՞ր պարագային մէջ կը գործածուի ·

**Հրահանգ 207.** — Վերլուծեցէք. — *Որպէս յորժամ լիցէ ոք ուրուք թշնամի, եւ թաքուցեալ զթշնամութիւնն զաղտ կամիցի վնասել եւ չգիտիցէ զհանգամանս վնասակարութեանն, եւ շուրջ եկեալ յածիցի հնարս խնդրել. ապա գտեալ ժամանակ, յորժամ ոք ի բժշկաց թշնամւոյ նորա պատուէր տայցէ յայս ինչ չհալել եւ յայս ինչ կերակրոց չճաշակել, որով առողջութեանն կարիցէ հասանել, փաղփաղակի ի կեղծիս բարեկամութեան կեղծաւորեալ զբժիշկն պարսաւիցէ եւ զօգտակարսն նմա վնասակարս թելադրեալ կարծեցուցանիցէ*

եւ պատուէրս հաւատակ հրամանաց բժշկին տայցէ եւ այնու առնիցէ նմա մխաս. — Բրդեա՛ քաղցելոց զհաց քո եւ զաղքատս անյարկս տա՛ր ի տուն քո. — Միթէ աղբեւր անդստին ի միոյ անկանէ բղխիցէ քաղցր եւ դառն. — Ո՞վ իցէ իմաստուն եւ հանճարեղ ի ձեզ.—Մի՛ յապաղեր զտուրս կարօտելոյն. — Գիտիցե՞ս արդեօք զինչ ընթեռնուցուս. — Կե՛ր իբրեւ զհայր որբոց եւ ե-ղիցիս որդի բարձրելոյն. — Մի՛ ունեք երաներ յառաջ քան զվախճան. — Ուսանիջիր նախ եւ ապա խօսեսջիր. — Գիտասջիք եւ տեսջիք թէ վասն ո՞յր եղեն այսօր մեղքս այսոքիկ. — Զբարիս գործեսջիք եւ չար ձեզ ոչ պատահեսցէ. — Եթէ ոք ածիցէ ապտակ յաջ ծնօտ քո, դարձո՛ նմա եւ զմիւսն. — Զի՞նչ լինչ քան զայն ծաղր կայցէ, յորժամ մարդ արարիչ աստուածոց լինիցի։

**Հրահանգ 208. — Աշխարհաբարէ գրաբար. — Ա-**ռակի պէտք չկայ. քանզի ամենքն ալ գիտեն՝ որ այնպիսի ցաւերով կը մաշին (ծնգիցին). — Ամէն տեղ խօսք ձեր բերնէն չելնէ. — Իմ կրաւունքներս ըրէք եւ իմ հրամաններս պահեցէք. — Զգուշացիր քու անձիդ, գուցէ մոռնաս քու Տէր Աստուածդ. — Ողջ առողջ քու ճամբադ գնա. — Ցիշէ՛ զիս, երբ քեզ բարի ըլլայ. — Եւ չգիտցողներուն սորվեցո՛ւր. — Ո՛րչափ մեծութեան հասնիս, խոնարհ եղիր (ի խոնարհութեան ունել զանձն). — Երբ երկինք երեկոյեան դէմ կարմրին, (օդին) պարզ ըլլալը (զպարզոյ) կը ցուցնեն. — Բժշկէ՛ անոնց բորոտները եւ կենդանացուր անոնց մեռեալներն եւ անոնց կոյրերուն աչքերը (զկոյրս) բա՛ց եւ անոնց մէջ ձրիաբար մեծամեծ բժշկութիւններ ըրէ՛. — Փուշերէն խաղող կը քաղուի՞. — Ճարտար բժիշկը մերթ կը խարէ, մերթ կը կտրէ, մերթ դառն դեղեր կը խմցընէ, հիւանդին ա-

*առողջութիւնը ձեռք ձգելու համար (առ ի հնարել). — Ո՛վ ամէն լեռներ, ցնծացէ՛ք այսօր Սեպուհ գերագանց լեռան մեծապայծառ փառքին վրայ, քանզի հոն (ի նմա) բնակեցաւ սուրբն Գրիգորիոս։*

## ԱՆԵՐԵՒՈՅԹ

*Երբ աներեւոյթ մը ուրիշ բայի տէրբայի կամ խնդիր ըլլայ աշխարհաբարի մէջ, գրաբար զի շաղկապով դիմաւոր բայի կրնայ փոխուիլ. զոր օր. Զի ներող եւ արգահատող է Արարիչն, այն ամենեցուն իսկ յայտնի է. փոխանակ՝ Արարչին ներող եւ արգահատող լինելն, եւլն։*

*Նոյնպէս պատճառ կամ նպատակ ցուցնող խօսքին դիմաւոր բայն աներեւութի կը փոխուի. զոր օր. Բերին ջուր լուանալ զոտս նոցա։ Աներեւոյթը շատ անգամ կ'առնու ի, առ, առ ի նախդիրը։ (Տե՛ս ի, առ նախդիրը)։*

*Դարձեալ ժամանակ ցուցընող խօսքերու դիմաւոր բայն աներեւութի կը փոխուի, զոր օր. Ի ծնանելն Յիսուսի։ (Տե՛ս ի նախդիրն)։*

*Դիմաւոր բայ մը եւ անոր աներեւոյթն ի միասին ապաքէն կամ թերեւս շաղկապով կցուած խօսքին զօրութիւն ունին, զոր օր. Ունել ունէին իւղ, այլ ոչ բաւական, այսինքն թէպէտեւ ունէին իւղ, այլ ոչ բաւական։*

**Համառօտ.** — Աներեւոյթ մը երբ *զի* շաղկապով դիմաւոր բայի կը փոխուի. — *Պատճառ* կամ *նպատակ* ցուցնող խօսքին դիմաւոր բայն ինչի կը փոխուի. — Ուրիշ ո՞ր պարագայի մէջ դիմաւոր բայն աներեւութի կը փոխուի. — Դիմաւոր բայ մը եւ անոր աներեւոյթն ի միասին ինչ բանի զօրութիւն ունին։

**Հրահանգ 209.** — Վերլուծեցէք. — *Նոքա վեր ի վերոյ բանիւք խնդացին զմեր ի նոսա հասանել. — Ոչ գոյր*

*անդ ջուր ըմպելոյ ժողովրդեանն . — Պահել պահեսցէ զպահպանութիւնս , բայց գործ ինչ մի՛ գործեսցէ . — Ոչ երբեւ զմարդ է ի զարթնուլ եւ ոչ երբեւ զորդի մարդոյ ի սպառնալ . — Զի՞նչ խնդրէ ի քէն տէր Աստուած քո , այլ երկնչել ի տեառնէ Աստուծոյ քումմէ եւ գնալ յամենայն ճանապարհս նորա եւ սիրել զնա . — Առի ես զքեզ ի վանաց հօտից , լինել քեզ առաջնորդ ի վերայ ժողովրդեան իմոյ . — Դու ընտրեցեր զտաճարս քո զայս կոչել զանուն սուրբ քո ի վերայ սորա, զի լիցի դա տուն ուխտից խնդրուածոց ժողովրդեան իմոյ . — Ի ցածնուլ մրրկին մնայ աւազ եւ սիկ աղի . — Նոքա որ առինն՝ առնուլ առին վասն այնորիկ որ եւոն բերել յանուն զոհիցն պաշտաման. բայց վասն բերելեացն աղաչելոյ՝ անդր ինչ ոչ խառնեցին . — Իսկ Մենեղաւոս առնուլ առ ի ձեռս զիշխանութիւն քահանայութեան . — Արդ աղաչեմ զձեզ՝ յիշել ձեզ զերախտիսն զառհասարակ բարեացն. — Եւ զի չիք ակնառութիւն առ ի յԱստուծոյ , ասէ . Միթէ Հրէի՞ց միայն Աստուած իցէ՝ եւ հեթանոսաց ոչ . — Եւ ի դնել նոցա երիցս անգամ ծունր եւ կալ յաղօթս, եւ յարեաւ ի ծովու անդ հողմ սաստիկ , եւ սկսաւ ընկենուլ ի կղզի անդր ձուկն սաստիկ յոյժ . — Ի թողուլ նախ զարարիչն մեր եւ զնոյուն պատուիրանս՝ գուցէ բարկացեալ տէր Աստուած ձեր , եւ խլիցէ զձեզ արմատաքի . — Բայց ժամանակի սպասէր խուռում անմտութեանն օգնական գտանելոյ . — Ըստ մերձենալ հողմոյ խորշակի՝ ցամաքեսցի տունկն ։*

**Հրահանգ 210. — Աշխարհաբարէ գրաբար** . — *Թէպէտեւ կը ցուցընէ , բայց չգործածեր (ի կիր չարկանէ) . — Անոնց լեզուները սուր են հայհոյելու համար եւ անոնց ոտքերը ստելու համար վարժ (կիրթ) . — Պարզ եւ*

որոշ խօսքեր ճշմարտութեան պատգամներն եւ դիւրաւ կ'ընդունուին (դիւրին առ ի յընդունել).— Խիստ եւ անհնարին դժուարին են իմանալու.— Աստուած այսպիսի անհնարին ցաւեր բժշկելու համար (վասն այնորիկ զի) բոլորովին (ամենեւիմբ) ամէն բաները խոնարհութեամբ մատակարարեց.— Գէշ բան է (չար) անսաստելը եւ բարի՝ անոր հակառակը.— Սատանան տեսնելով Աստուծոյ ձեռքէ ձգելը (թողացուցանել), մօտենալով՝ գործի ձեռք կը զարնէր.— Քրիստոսի ծնանելու ատեն լոյս ծագեցաւ, եւ մոգերը տեսան եւ անոր ետեւէն գացին.— Դատին անիրաւ ըլլալուն համար կինը իւր վրայ կ'առնու յանցանքը.— Երբ արեգակը մարը կը մտնէ՝ մարդ իւր գործերէն կը դադրի.— Պատուիրեց անոր որ մէկուն չըսէ.— Այլ Աստուծոյ մահուան պատճառ չըլլալը թող վկայէ ամենարուեստ իմաստունը.— Անոր օրով մեծ ջրհեղեղին ըլլալը կը պատմեն (վիպագրեն).— Երբոր ջուրերն իջան (ցածնուլ), Նոյ աղաւնին արձակեց.— Երբ գարունը կը հասնի, ամբողջ աշխարհ կը զուարթանայ.— Մենք շատ քարեր ունինք քու ակռաներդ թափելու համար.— Ձեր բերանը սանձ կը դնենք, որպէս զի անոնք մեզի հնազանդին (անսալ).— Ալ ջրհեղեղ չպիտի ըլլայ ամէն մարդիկը սատակելու համար.— Երբ իր ապրելուն ալ յոյս չունեցաւ (իբրեւ ակն ինչ ոչ կալաւ)։

## ԱՆՑԵԱԼ ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ

Անցեալ ընդունելութիւնը կրնայ ունենալ իբրեւ, յորժամ, երբ շաղկապներով կապուած դիմաւոր բայի զօրութիւն, զոր օր. Եւ մտեալ ի Կափառնաում, մատեաւ առ նա հարիւրապետ մի։

**Դիտելիք.** — *Շատ անգամ ալ փոխանակ անցեալ դերբայի գըրուած կը գտնենք անորոշ դերբայ, զոր օր. Իսկ եթէ ոք յուշինչ զԱստուծոյ զպատուիրանսն համարիցի, յորժամ մերձեն ընդ բանսարկուին մարտնչիցի՝ վաղվաղակի կործանի ։*

*Կրաւորական եւ չէզոք բայերուն անցեալ ընդունելութիւններն թէ՛ իբրեւ ածական եւ թէ գոյականաբար կրնան գործածուիլ, որոնք խօսքին մէջ իրենց բուն խնդիրներն ալ կ՚ունենան . զոր օր. Կառաց խորտակելոց, խորտակուած կառքերու. արանց անկելոց, իյնող մարդոց։*

**Դիտելիք.** — *Չէզոք եւ կրաւորական զուտ ածական անցեալներ երբեմն բացառականի տեղ սեռական կ՚առնուն. զոր օր. Այսպիսի բանից տխմարաց մտաց կարկատելոց՝ չէր պարտ ամենեւին բնաւ առնել պատասխանի. — Կապեալք խաւարի եւ կաշկանդեալք երկայն գիշերոյ. — Ապա եթէ բռնազոյն քան զնա էր հիւղն, զի՞ եւ ի ձեռս զիւր պատրեալն նմա չարչարել. փոխ. պատրեալն յիւրմէ։*

**Հարցարան.** — Անցեալ ընդունելութիւնն ինչ տեսակ դիմաւոր բայի զօրութիւն ունի. — Կրաւորական եւ չէզոք բայերուն անցեալ ընդունելութիւններն իբրեւ ինչ կը գործածուին ։

**Հրահանգ 211.** — Վերլուծեցէք . — *Հարցեալ՝ թէ յո՞ ուրեք արդեօք նաւարկիցէ՝ պատասխանի արարեալ, թէ առ դիսն , աղօթս առնել՝ զի բարիք մարդկան լինիցին . — Վասն ուխտիցն եդելոց եւ իրաւանցն գրկելոց ջանայր խաղաղութեամբ անցանել . — Եթէ ոք կամիցի զամենայն լեզուաց նովին բանիւք զզօրութիւնն թարգմանել, չկացուցանէ յանդիման զբանիցն ասացելոց զմիտս . — Այս են անուանք որդւոցն Իսրայելի մտելոցն յԵգիպտոս . — Տէր բարկացաւ ինձ վասն բանիցն ասացելոց ի ձէնջ . — Նշանօքն եղելօք կործանեցան բագինք մեհենիցն . — Հասին առին զամրացեալ քաղաքն կամօքն Աստուծոյ . — Մի՛ ոք իշխեսցէ նախատել զդուստ վասն իրացդ եղելոց . — Ոչ եթէ անձինք ինչ են , այլ ան-*

*ուանք զբանդատանաց, եւ բաշխաղանք մոլորելոց մտաց ի դիւաց. — Եթէ ոք սրբէ զանձն իւր, եղեւ նա իբրեւ զանօթ սրբեալ. — Իբրեւ աւուրք ինչ անցին ի վերայ իւրաց գործելոց. — Ժողովեցան եպիսկոպոսք վասն անիծեալ աղանդոյն Արիանոսի Աղէքսանդրացւոյ։*

**Հրահանգ 212.** — **Աշխարհաբարէ գրաբար.** — *Հաւատացեալ ժողովրդոց տեղ չմնաց. — Եւ հովին յաջողելովը (ըստ հողմոյն յաջողութեան) տասնեւհինգ օրուան մէջ կը հասնէր հրամայուած տեղը. — Ասոնց անկէ ժողովուած գանձերը եւ կը պահէին տրուած հրամանին համեմատ. — Անոր տուին հնազանդութեան խրկուած (յղեալ) պատգամները. — Ցամաքային անասունները իբր թէ իմացականութիւն (իմացումն) ունին եւ դիւրաւ (դիւրագոյնս) գիտեն ընտրել իմանալ եւ արագ կը տեսնեն եւ անցեալ իրերը կը յիշեն. — Աբդամոնոս անուն դպիր մը Սողոմոնի առաջարկած (արկեալ) առասպելները կը լուծէր (լուծանել). — Խրատ կուտար երեսուն տարիէն վերջը չինել ծնած խոճկորներուն թուոյն համեմատ. — Դուք չէք անհնազանդ որդիներ (որդիք անհնազանդութեան), այլ սիրեցեալ եկեղեցւոյ մանուկներ. — Ո՛վ արարչին արեամբ ներկուած պատմուճան, զոր ճշմարիտ վկայք զգեցան (արկին) անոր օրինակին համեմատ. — Շուները կը կերակրուէին սեղանէն ինկած փշրանքներէն. — Եւ ուրիշները գերեզմանները կը խուզարկեն (կրկտեն) եւ հողի տակ թաղուած մարմինները մերկացնելով արեւու կը ցուցընեն խայտառակութեամբ. — Զայս երբոր ըսաւ՝ ժողովքը արձակեց. — Եւ երբ տանը դուռը զարկաւ, մօտեցաւ աղախին մը մտիկ ընելու. — Եւ երբ Փեստոս հրամայեց, Պաւղոսը բերին։*

# ՄԱՍՆ Գ.

---

## ՔԵՐԱԿԱՆԱԿԱՆ ՁԵՒՔ

*Քերականական ձեւք կ՚ըսուին խօսքի այնպիսի կերպերը՝ որ քերականական կազմութեան կամ տրամաբանութեան կանոններու ճշդիւ համաձայն չեն. այլ այսու ամենայնիւ յաճախ կը գործածուին թէ՛ արձակ գրուածոց եւ թէ քերթութեանց մէջ։*

*Այս ձեւերը կը ծառայեն շատ անգամ գեղեցիկ, ազդու եւ բացայայտ ընելու խօսքը եւ գրողին ճաշակի ազնուութիւնը կը յայտնեն։*

*Քերականական գլխաւոր ձեւերն են. Շրջումն, զեղչումն, աւելադրութիւն, բակառութիւն եւ փոխադրութիւն։*

**Հարցարան.** — Քերականական ձեւք որու կ՚ըսուին. — Այս ձեւերն ինչ բանի կը ծառայեն. — Որոնք են։

### I. ՇՐՋՈՒՄՆ

*Շրջումն է նախադասութեան մէջ բառերու քերականական կարգը փոխել եւ ասութեանց մէջ նախադասութեանց կարգը։ Այս ձեւը գրաբարի մէջ յաճախեալ է։*

*Նախադասութեան մէջ քերականական խստիւ կանոնաւոր կարգը կը պահանջէր նախ ենթական դնել իւր լրացուցիչներով, յետոյ բայն եւ վերջապէս այլ եւ այլ խնդիրներ՝ այն կարգին համեմատ որ համաձայնութեան*

*մէջ իրեն կը տրուի ։ Ամէն անգամ որ այդ կարգը չպահուի, բառերու շրջում կայ, զոր օր. Զպէտս իմ եւ որոց ընդ իսն էին՝ պաշտեցին ձեռքս այս՝. շրջմամբ գրուած է այս խօսքը, պէտք է ըլլայ․ Ձեռքս այս պաշտեցին զպէտս իմ եւ որոց ընդ իսն էին ։*

*Ասութեանց մէջ քերականական կարգը կը պահանջէր որ նախ գլխաւոր նախադասութիւնը դրուէր եւ յետոյ այլ եւ այլ ստորադաս նախադասութիւններ, ամէն մէկուն իւր ստորադասութեան կարգով ։ Ամէն անգամ որ այս կարգը չպահուի, նախադասութեանց շրջում կայ. զոր օր. Որոց ի Դամասկոս եւ յԵրուսաղէմ էին, պատմեցի զղջանալ եւ դառնալ յԱստուած կենդանի․ այս խօսքը պէտք է այսպէս շարել․ Պատմեցի զղջանալ եւ դառնալ յԱստուած կենդանի, որոց ի Դամասկոս եւ յԵրուսաղէմ էին ։*

*Այսպէս շատ անգամ տէրբային եռքը կը դրուի․ զոր օր. Եւ էր Մովսէս ամաց երեսուն եւ երկուց․ փոխ. Մովսէս էր ամաց երեսուն եւ երկուց ։*

*Մէկ բայ կազմող երկու բառերը շատ անգամ իրարմէ կը բաժնուին՝ խնդիրները մէջտեղ առնըլով․ զոր օր. Զի մի՛ մթարքն՝ որ զբբօքն չողայցեն, արգել հայելոյ ի յստակութիւն լուսոյն շիցին ։*

*Այսպէս կ'ըսուի նաեւ. Բժշկիչ պէսպէս ցաւոց լիցի. Ցանկալի ամենեցուն լինէին. Գամագիտ այնմ վահանի լինիցի. Նմանող քում տեառն եղեր. Նպաստ ի յաղթութիւնն լինիցի. Զինչ օգուտ նմա յընչիցն լինիցի. Ամբաստան զվարդապետացն լինիցիմք. Ծովածուփք ալէկոծք ի մէջ ծովուն լինէին. Դժկամակ ընդ հատուցումնն լինի. Շնորհակալ առ բարերարին լինիցիս ։*

**Դիաելիք**. — *Երկու բառով կազմեալ մակբայները միջանկեալ բառերով կը հեռանան մէկմէկէ, զոր օր. Մինչ նա դեռ կամէր ։*

*Ոմանք ալ առաջ դրուելու տեղ՝ ետեւ կը դրուին, կամ ուրիշ կերպով բնական տեղէն կը խախտին, զոր օր. Որոնայ ոչ, փոխ. ոչ որոնայ ։*

Կամ միջանկեալ բառերով կը հեռանան բայէն, զոր օր. Զերկիրս շուրջ ջուր պատէ, այսինքն շուրջ պատէ։

Այլ եւ այլ խնդիր առնող բայերէն երբեմն մօտինը եւ երբեմն հեռուինը կ'առնու խնդիր եւ միւսը զօրութեամբ կ'իմացուի, զոր օր. Զքէն Աստուած հարցն մերոց գոհանամ եւ օրհնեմ. — Առին գնացին զնա։ Առաջին խօսքին մէջ մօտի բայն առած է խնդիր, երկրորդին մէջ հեռուինը։

Շատ անգամ ալ բայի կամ անունի մը խնդիրը միջանկեալ բառերով կը հեռանայ, զոր օր. Տեսանեմ զմարդիկս զի շրջին՝ իբրեւ զծառս. այսինքն՝ զմարդիկս՝ որ շրջին՝ տեսանեմ իբրեւ զծառս։

Յատկացուցիչն յատկացեալէն ու բացայայտիչը բացայայտեալէն շատ անգամ կը հեռանան, զոր օր. (յատկացուցիչն հեռացած), Զհրէական բարուցն բերէք զօրինակն յանձինս ձեր. — (բացայայտիչն հեռացած). Ամենեցունց ճարտարապետն ուսոյց ինձ իմաստութիւն։

Ածականներն ալ իրենց գոյականներէն կը բաժնուին, զոր օր. Որ ոչն կամիցի ոք գործել։

Անուան մը նախդիրը շատ անգամ իրմէ առաջ դրըւած խնդրին կամ մակբային վրայ կը դրուի, ինչ հոլովով որ ըլլայ այն խնդիրը, զոր օր. Զհուրբ կիզեալն եւ զհողմով հոսեալն եւ զժանեօք գազանաց ծախեալն անպակաս յարուցանես։

Հայցական գոյականին եւ յատկացեալին նախդիրներն յետադաս ածականին եւ յատկացուցչին վրայ կը դրուին, զոր օր. (յետադաս ածական) Ճանապարհ զարքունին գնասցուք. — (յետադաս յատկացուցիչ) Հանդերձ զմեր զգեցցուք։

**Հարցարան.** — Ի՞նչ է *շրջումն*. — Քերականական կարգն ինչպէս կը պահանջէր շարել. — Նախադասութիւնք ինչպէս պէտք է շարուին. — Ո՞ւր կը դրուի տէրբային. — Մէկ բայ կազմող բայերն ինչ կ'ըլլան. — Այլ եւ այլ խնդիր առնող բայերէն որն ինչ խնդիր կ'առնու. — Բայի մը կամ անուան մը խնդիրը ինչպէս կը դրուի շատ անգամ. — Յատկացուցիչն ու բացայայտիչն ինչպէս կը դրուին. — Ի՞նչպէս կը դրուին ածականները. — Անուանի մը նախդիրն ուր կը դրուի. — Հայցական յատկացեալին ու հայցական գոյականին նախդիրներն ուր կը դրուին.

**Հրահանգ 218.** — Աշակերտն հետեւեալ նախադասութիւններն իրենց քերականական կարգին վերածէ. — *Ապականեն զբարս քաղցունս բանք չարք. — Հատուցանիցէ մեզ հատուցումն զամենայն չարեացն զոր անցուցաք ընդ նմա. — Առնուցուք ձեզ պտուղս զգեղեցիկ ծառոցն. — Նա շինեաց զդուռն տանն տեառն զվերին. Տացէ անձրեւ երկրին ձերում ի ժամանակի իւրում զկանուխ եւ զանագան. — Որոց առհասարակ որք ի գնդին էին բազումք իւրաքանչիւր՝ յետս դարձեալ ի վերայ իւրաքանչիւր թիկանց, առանց իրիք կասկածոյ՝ սքանչելապէս կապեալ լինէին. — Խնդրէին ապաշխարութեան զդեղն. — Զմիտս կամեցաւ հանել զամբոխին. — Ծանիցես զբանիցն՝ որոց աշակերտեցար զճշմարտութիւն. — Եւ զօրս սիրէի՝ յարեան ի վերայ իմ. — Եւ խօսեցաւ Եղիսէ ընդ կնոջն զորոյ կեցոյց զորդին. — Զամենայն շինուած քաղաքին հրձիգ արարին զփայտակերտն. — Մատուսցես զոհ զառաջնոց արմտեաց քոց. — Մինչ նա դեռ կամէր արութիւն ինչ գործել. — Որ ընդ ճառագայթս արեգական հայել կամիցի. — Յորժամ զպատիւ արարչին ոք նոցա մատուցանիցէ. — Որ բասիլիսկոսն կոչի ազգ ինչ օձից՝ հայելով միայն սատակէ զմարդ կամ զանասուն. ուստի յորժամ ի ջրհորս գտանիցի՝ ճրագ*

առեալ իջանեն ի ներքս ըմբռնել, զի հայեցեալ ընդ ճրագս ոչ մեղանչիցէ մարդոյն՝ օձն. — Նոքա ի մարդկան ատեանս կան եւ ջատագով զրկելոցն լինին. — Գուշակ ճշմարտութեանն յաւիտենականին՝ որ գալոց էր՝ լինէին։

**Հրահանգ 214.** — (Նոյն). — Ամբաստան զվարդապետացն լինիցիմք. — Շնորհակալ առ բարերարն լինիցիս. — Իբրեւ ճրագ մի ի մեծի տան ի մէջ ձեղուան եւ յատակի լուցեալ՝ առ ի զխաւարն եւ զստուերն զերկուց մեծացն անօթոց ի բաց ի միջոյ փարատելոյ. — Շինեաց զդուռն տանն տեառն զվերին. — Յերկրէ հեռաստանէ եկին առ իս ի Բաբելոնէ. — Մատուցին ողջակէզս եւ զփրկութեանցն առաջի Աստուծոյ. — Եւ լուաւ Գոթողիա զձայն ժողովրդեանն զընթանալոյն, զգոհանալոյն եւ զօրհնելոյն զարքայ. — Մատուցին զնոխազսն զվասն մեղացն առաջի արքային եւ ժողովրդեանն. — Եւ զամենայն կահ եւ սպաս տաճարին զոսկեղէն եւ զարծաթեղէն ետ Կիւրոս ցԶորաբաբէլ. — Ընդ երկու զզօրսն բաժանեցին. — Առեալ գայր զհրաման իշխանութեան զարքունի. — Նմա էր յանձն հանել հարկ զաշխարհին. — Հրամայեաց զկառաւին հարկանել զանօրէն մահապարտին. — Բայց զի վասն՝ քո մեծ վաստակք են առ իս, զոր ինչ խնդրէիրն, ե՛րթ՝ տուեալ լիցի քեզ. — Յակոբ արածէր զխաշինսն Լաբանու զմնացեալսն. — Գնդեցաւ զկնի նորա ճանապարհ զեւթն աւուր. — Թող եկեսցէ մի ոք ընդ իս յերիցանց իմոց. — Ոչ կարաց լսել եւ ժոյժ ունել զիւրոյ տեառնն զանարգանս։

**Հրահանգ 215.** — (Նոյն). — Եւ անդ էր ոչ զօրէնս շաբաթուց տեսանել եւ ոչ զտօնս տարեկանաց զհայրենիս պահել. — Իբրեւ տօն հասանէր սպանդարամետա-

կան պաշտամանն. — Նա գեղեցիկ խորհուրդս հաստատուն յանձին եդեալ, զարժանի հասակին, արագ արագ առնէր զպատասխանին. — Զհռովմայեցւոցն խստանայր զհարկն յերուսաղեմացւոց լնուլ. — Մի՛ այդպէս խիստ եւ խժաբար կատարեր զկամս քո. — Դու՝ որ գործէին զամբարտաւանութիւն զՍոդոմացիսն՝ չարեօք իւրեանց հանդերձ խայտառակեցեր. — Վասն այնորիկ չատեց յաչաց ելանէին. — Զի՞նչ ընդհատ ի մանկտւոյ իցեմք որ ընդ խաղ տունս չինիցեն, մեք որ գեղեցիկ ապարանս չինիցեմք. — Իմ զլի աղ եւ հաց կերեալ է յաշխարհին ձերում, գութ եւ սէր ունիմ ընդ աշխարհս. — Եւ որ ի համազգեացն լծեալ են՝ երբեմն սայթաքին, երբեմն օձտեն, եւ ի տագնապի զկառավարն եւ զանձինս կացուցանեն եւ երբեմն խորտակումն իսկ կառացն գործեն. — Բայց իրաւամբք այն է՝ յորժամ արժանի ըստ որոց գործեալսն ոք ինչ առնուցու. — Ցամաք ուրեք ի ծովէ անտի ոչ երեւի. — Որոց առաւել քան զերկաթ հաստատուն ընտրէին ոգիքն. — Ապա թէ ոչ առնուցու յանձն հաւանել Հրեայն. — Զի անծանօթ եւս լինէր առյապայ մարդկան՝ Աստուծոյ բարերարութիւնն. — Բազում անգամ քան զարս գտանին առաքինի՝ կանայք. — Եւ անկաւ իսկ ոչ յազգահամարն կոյսն. — Ցուցանէ զիւր իրաւունսն առ Հրեայսն Աստուած:

## 2. ՁԵՂՁՈՒՄՆ

Զեղչումը ձեւ մ'է, որով կը յապաւուին ասութեան մը մէջ մէկ կամ շատ մը բառեր. զոր օր. Հունձք բազումք են եւ մշակք սակաւ. ի Նմանէ եւ Նովաւ եւ ի Նոյն ամենայն. ո՞ւր իմաստուն, ո՞ւր դպիր, ո՞ւր քըննիչ աշխարհիս այսորիկ:

*Զեղչումն երեք տեսակ է. Տէրբայինի, բայի եւ խնդիրներու զեղչում։*

*Տէրբայինները կրնան զեղչուիլ շատ անգամ.*

1. *Երբ անորոշ կամ միջակ անուններէն ըլլան, զոր օր. Եւ ոչ կարասցէ ի նոցանէ, որ ասիցէ ի քէն. փոխ. ոչ ոք ի նոցանէ։*

2. *Երբ անորոշ եւ անցեալ դերբայներու, նոյնպէս յարակատարի, գերակատարի եւ ստորադասական անցելոյն վերաբերին. զոր օր. Զի՞րդ գգիրս գիտէ սա, զի ուսեալ բնաւ չիք. այսինքն սորա չիք ուսեալ։*

*Բայերը կը զեղչուին.*

1. *Անցեալ դերբային էական բայը շատ տեղ հետը չըլլուիր, մանաւանդ ցամ բային անցեալին հետ. զոր օր. Տուեալ քեզ, փոխ. տուեալ լիցի քեզ։*

2. *Էական բայը կը զեղչուի մանաւանդ մինչչեւ, չեւ բառերէն ետքը. զոր օր. Մինչչեւ եկեալ առ միմեանս։*

3. *Էական բայը կը զեղչուի, երբ յարաբերական դերանուամբ միջանկեալ նախադասութիւն է, զոր օր. Եւ ահ նորա սպառեալ էր զամենայն բնակիչս՝ որ շուրջ զնովաւ։*

4. *Էական բայը շատ անգամ բնաւ չըլլուիր, երբ խօսքը ծանուցում, մաղթանք, առակ, տիտղոս, վերնագիր է. զոր օր. Բարեկամ հաւատարիմ՝ աշտարակ ամուր։*

5. *Խօսքի մը առաջին անդամին մէջ դրուած բայն, յաջորդին մէջ առանձին կամ իր խնդիրներով զանց կ՚առնուի. զոր օր. Կշտամբեսցէ զքեզ քո բերան եւ ոչ ես, այսինքն ես ոչ կշտամբեցից։*

*Խնդիրներու զեղչումն է.*

1. *Առաջել, յղել բայերու սեռի խնդիրը ըսելեայն*

*կ՚իմացուի . զոր օր. Առաքեաց կոչեաց զնախարարս այլազգեացն ։*

2. *Նախդիր ունեցող երկու յատկացեալներէն երկրորդը չդրուիր եւ անոր նախդիրը միայն կը դրուի երկրորդ յատկացուցչին վրայ . զոր օր. Լուաւ զձայն երգոցն եւ զպարուց, այսինքն եւ զձայն պարուց ։*

3. *Երբեմն նախադասութեան մէջ զեղչեալ յատկացեալ մը կ՚իմացուի, որ* վերաբերութիւն *կը ցուցնէ . զոր օր. Անկինն հոգայ զտեառնն, այսինքն զիրս տեառն։*

4. *Շատ անգամ յատկացեալը չդրուիր ու իր նախդիրը յատկացուցչին վրայ կը դրուի . զոր օր. Մեծ է տեսաւորութիւն մտաց քան զմարմնոյ ։*

5. *Երբ միեւնոյն բառը կրկնուի նոյն հոլովով՝ առաջինը միայն նախդիր կ՚առնու . իսկ եթէ մին բացառական եւ միւսն ի ով անորոշ հայցական հոլով ըլլայ, ետքը դրուողը միայն նախդիր կ՚առնու, զոր օր. Տուն ի տանէ եւ տեղի ի տեղւոջէ . — Պատմեսցի ազգաց մինչեւ յազգս եւ որդւոց մինչեւ յորդիս ։*

*Այսպէս եւս . Դրանէ ի դուռն . քաղաքէ ի քաղաք . կենաց ի կեանս . չարեաց ի չարիս . սրտէ ի սիրտ . տարւոջէ ի տարի . ժամէ ի ժամ . օրէ յօր . կամ քաղաք ի քաղաքէ . խորան ի խորանէ . շաբաթ ի շաբաթէ . օր յօրէ . եւայլն ։*

*Բացի տէրբայէն, բայէ եւ խնդրէ կը զեղչուին նաեւ դերբայ, ցուցական եւ ստացական ածական, նախադրութիւն եւ շաղկապ ։*

*Անորոշ եւ անցեալ դերբայք՝ մանաւանդ էական բայինը՝ երբեմն զօրութեամբ կ՚իմացուին ։ Այսպէս կ՚ըսուի . Սիրտ ի բերան շրջել, փոխ. Սիրտ ունելով ի բերան։*

*Կը զեղչուին շատ անգամ* այս, այդ, այն, *իմ ,*

քո, մեր, ձեր, իւր ածականները, զոր օր. Ամբարձէք զաչս եւ տեսէք, փոխ. Զաչս ձեր :

Նախադրութեան մը՝ որ քանի մը խնդիր ունի, առաջին խնդրոյն քով դրուելէն ետքը, կրնայ միւսներուն քով զեղչուիլ. բայց նախդիրն, եթէ ունի, բոլոր խնդիրներուն վրայ կը դրուի, զոր օր. Ոչ չոգար զհետ երիտասարդաց, զաղքատաց կամ զմեծամեծաց, փոխ. ըսելու, զհետ աղքատաց, զհետ մեծամեծաց :

Բայց որ միեւնոյն նախդիրով երկու բառեր զանուին եւ մին միւսին խնդիրն ըլլայ, խնդիրն իւր նախդիրովն յառաջ կը դրուի եւ զանց կ'առնուի միւսին (խնդրառուին) նախդիրը, զոր օր. Եւ ի վաղիւ անտի ի ճանապարհ անկանել նոցա եւ մօտ ի քաղաքն լինել, փոխ. ըսելու, Ցանկանել եւ լինել :

**Հարցարան.** — Ինչ է զեղչումն. — Քանի տեսակ է զեղչումն. — Ո՞րք ստորոգիները կը զեղչուին. — Ո՞րք բայերը կը զեղչուին. — Ո՞րք խնդիրները կը զեղչուին. — Բացի բայէ, ստորոգիէ եւ խնդիրէ ուրիշ որոնք կը զեղչուին.

**Հրահանգ 216.** — Աշակերտը զեղչեալ բառերը գտնէ. — *Ըստ Հիպոկրատեայ՝ կեանք սուղ եւ արուեստ երկայն. — Ասպրեցո՛ զանձն իմ եւ զորդեկին իմոյ. — Զգեցցուք զզրահսն հաւատոյ եւ զսիրոյ. — Բազում են որդիք ակնդիլին քան զարամբւոյն. — Մարմին ցանկայ հակառակ հոգւոյ եւ հոգի հակառակ մարմնոյ. — Տայր ոք ինձ թեւս որպէս աղաւնւոյ, զի թռչէի վերանայի, հեռացեալ դադարէի յանապատին. — Սրեցեն զլեզուս իւրեանց որպէս զօձին. — Ընդարձակեա՛ զտեղի խորանաց քոց եւ զսրահից քոց. — Մեք կաւ եւ դու ստեղծիչ մեր եւ գործք ձեռաց քոց ամենեքին մեք. — Բուրեսցէ հոտ նորա իբրեւ զկնդրկի. — Նա հանգեաւ յիւ-*

րոց գործոց, որպէս Աստուած յիւրայոցն. — Ոտք նորա իբրեւ զարջու եւ բերան նորա որպէս զառիւծու. — Մի՛ լինիր ամբարտաւան, յորժամ ի ցանկալի փառաւորութիւնս իցես, եւ մի՛ գձուձ՝ յորժամ ի թշուառութիւն հասանիցես. — Յիշատակ նորա օրհնութեամբ եւ աղօթք նորա ի վերայ մեր ամենեցուն. — Փախիցէ զօրն որ ընդ նմա. — Ողբս առեալ փետէի զվարսս գլխոյ իմոյ եւ զմօրուաց իմոց. — Շիջուցանեն զփառս տան քոյ եւ զսեղանոյ սրբոյ քոյ. — Ողջոյն ետ նոցա եւ նոքա նմա. — Ես եմ Հռափայէլ յեւթանց անտի ի սրբոց հրեշտակաց. — Օրհնեա՛լ որ պահեաց անարատ զսուրբ տեղի իւր. — Ժողովեցան ջուրքն որ ի ներքոյ երկնից. — Յորժամ եղէ այր, զտղայութեանն ի բաց խափանեցի։

**Հրահանգ 217.** — (Նոյն). — Եթէ գոյ մարմին շնչաւոր, գոյ եւ հոգեւոր. — Դառնութիւն սրտի՝ դինի անչափ, ցնծութիւն եւ ուրախութիւն սրտի՝ գինի սակաւ. — Որպէս տերեւ կանաչ պայծառութիւն է ծառոց, նոյնպէս աղքատասիրութիւն մարդոյ. — Ասա՛ ինձ զթիւ ծնելոցն եւ զմեռելոցն. — Յափշտակես զայլոց. — Ջհեթանոսացն յիրաւի պարտ է ի խոյզ եւ ի խնդիր արկանել. — Անդ ձկունք անկեալք ի գործի՝ կենաց ի մահ երթան. — Յիշեցից զուխտ իմ որ ընդ իս եւ ընդ ձեզ. — Մեկնեա՛ց յինէն, եթէ դու յահեակ՝ ես յաջ, եթէ դու յաջ՝ ես յահեակ. — Ձեռք նորա յամենեսին եւ ձեռք ամենեցուն ի նա. — Ահա հուր եւ ահա փայտ, ո՞ւր է ոչխար յողջակէզ. — Յընտիր շիրմաց մերոց թաղեա՛ զմեռեալս քո. — Յոսկերաց իմոց եւ ի մարմնոց իմոց ես դու. — Տո՛ւր ինձ ի մանրագորաց որդւոյ քոյ. — Թողից առ քեզ ի ժողովրդենէ աստի որ ընդ իս են. — Եղեւ ահ Աստուծոյ ի վերայ քաղաքացն որ շուրջ զնո-

վառ. — Մինչդեռ տանէին զնա, առաքեաց առ աներ-բայրն եւ ասէ. — Եւ ոչ եղէ ի նոցանէն՝ որ ապրեցէ ի քէն. — Նստաւ առաջի նորա անդրանիկն ըստ երիցու-թեան իւրում, եւ կրտսերն՝ ըստ կրտսերութեան իւրում. — Գօտիք ձեր ընդ մէջս եւ կօշիկք ձեր յոտս եւ ցուպ ձեր ի ձեռին. — Զվեց որ արար Տէր Աստուած զերկինս եւ զերկիր եւ զծով եւ զամենայն որ ի նոսա. — Զպ-տուղ կալոյ քո եւ զհնձանի մի՛ հապաղեսցես. — Օ՛ծ զխորանն եւ զամենայն ինչ որ ի նմա. — Մատուսցես զտասանորդս ցորենոյ քոյ եւ զգինւոյ քոյ եւ զիւղոյ քոյ եւ զանդրանիկս արջառոյ քոյ եւ զոչխարի քոյ. — Եւ առաքեցին բնակիչքն Գաբաւոնի առ Յեսու ի Գաղ-գաղա. — Կոտորեցին զամենայն շնչաւոր որ ի նմա. — Զգեաց զծայր գաւազանին՝ որ ի ձեռին իւրում. — Կո-տորեսցես զանտառն՝ որ զնովաւ. — Ժողովուրդ քո՝ ժո-ղովուրդ իմ եւ Աստուած քո՝ Աստուած իմ. — Ոչ լաւ համարեցաւ զանցաւորս՝ այլ զմերբինն. — Մի՛ ի պատիւ առցեն զանկերս նորա իբրեւ զայլոցն. — Առաքեաց նա յերկիրն Յունաց եւ խնդրեաց էած անուն կին. — Ընդ սակաւ աւուրս եկլին բերին զայն ինչ, զորմէ յղեացն. — Կերպարանի սատանայ կա՛մ ի վիշապի կերպարանս կամ ի նհանգի իմն. — Յորժամ երկիր չէր, եւ ոչ տունկք ինչ որ ի նմանէ, զբարսմունս ո՞ւստի գտանէր (Զրուան) ունել ի ձեռին. — Եթէ կամիս, նախ զմշակու-թեանն քննեսցուք. — Աղէ՛ ասա՛, մեծանո՞լ կամիցիս եւ զայլո՞ց յափշտակել. — Առաքեաց Փարաւոն եւ կոչ-եաց զՅովսէփ. — Յղեաց կոչեաց առ ինքն զայգորդն. — Ծանրացոյց զսիրտ իւր եւ զծառայից իւրոց. — Ա-ռաքեա՛ եւ ա՛ծ զնա. — Եղիցին յափշտակութիւն եւ յա-ւար նոցա. — Առաքեցին եւ կոչեցին զնա. — Մատնի-ցես՝ շտեմարան ի շտեմարանէ թաքչել. — Փախեաւ ե-

*մուտ ի տուն իւր սենեակ ի սենեկէ . — Ո՞չ առաքեցի առ քեզ կոչել զքեզ . — Եւ զքէ՛ն եւս յղեալ է նենգութեամբ , զի սպանցէ զքեզ . — Առաքեաց արքայն յերկիրն Յունաց եւ խնդրեաց էած անտի կին ի կայսերական տոհմէն . — Յղեսցեն հաւանեցուսցեն զերանելին Բասիլիոս ։*

## 3. ԱՒԵԼԱԴՐՈՒԹԻՒՆ

*Աւելադրութիւնն է քերականական ձեւ մը՝ որ կը կայանայ գործածել ասութեան իմաստին համար անկարեւոր բառեր՝ որ աւելի ազդուութիւն կամ բացայայտութիւն կուտան . զոր օր. Զորոյ՝ ես զգլուխն հատի զՅովհաննու , սա է , նա յարեաւ ի մեռելոց ։*

**Ծանօթ.** — *«Ընդհանրապէս արեւելեան լեզուաց եւ առանձինն հայերէն լեզուի բնական եւ ընտանի զարդն է Աւելադրութիւնն, որ մանաւանդ հին գրաբարի բուն ընտիր ժամանակներն աւելի յաճախեալ էր. եւ այլեւայլ աւելադրական կերպերովն ու ձեւերովն առանձին կերպարանք ու զարդարանք կ'առնուր հին լեզուն։ — Միջին, ստորին եւ նոր դարերու լեզուներն ալ ունին իրենց յատուկն ու սովորականը, բայց ոչ այնչափ յաճախ »։* (Հ. ԱՐՍԷՆ Վ. ԱՅՏԸՆԵԱՆ, *Քննական Քեր.* 259) ։

*Աւելադրութեամբ կը գործածուին .*

1. *Դերանուն .*
2. *Դոյական .*
3. *Միջակ ածական .*
4. *Դերբայն .*
5. *Նախադրութիւնն եւ նախդիրն .*
6. *Մակբայն եւ շաղկապն ։*

*Ստացական , էական եւ երբեմն ցուցական դերանուն մը խօսքին երկրորդ մասին մէջ կ'աւելցուի՝ այժ եւ*

*բացայայտութիւն տալու համար. զոր օր. Ի մահճինդ յոր ելեր՝ ի դմին մեռցիս. Լուսնի չիք իւր լոյս առանձինն. Ապա եթէ ինչ յարարածոց՝ որ գեղեցիկ է, այն ի բարւոյ արարչէ կարծիցի ոմանց։*

*Որ դերանուանէն ետքը էական դերանուն մ՚ալ կ՚աւելցուի աւելի բացայայտութեան համար. զոր օր. Զիա՞րդ որ ինքն գրաստ է, զայլ գրաստ վարիցէ։*

*Գոյականաց աւելադրութիւն են.*

*Ա. Երկու հոմանիշ եւ երբեմն նմանաձայն գոյականները քովէ քով կը գործածուին, զոր օր. Բնակիչքն Բեթխուղայ ելանէին անկանէին ի վերայ Ասուրայ, աւար հարկանել, ժողովել* զառ զապուռ *(աւար) բանակացն, զկապուտ* կողոպուտ *զանկելոցն։*

*Այսպէս կ՚ըսուին. Կաց մնաց, խոկք եւ խակք, աղտ եւ կեղտ, նենգ եւ մանգ, դողումն եւ սոսկումն, ահ եւ երկիւղ։*

*Բ. Երկու հոմանիշ գոյականներ քովէ քով կը գործածուին, երկրորդը սովորաբար սեռական հոլով. զոր օր. Ցիրաւի կրէ պատիժ* պատուհասի *այնպիսին. Ոչինչ իմացան զպատրանս* խաբէութեանն*։*

*Այսպէս կ՚ըսուին. Ներել թողութեան, չահ օգտի, մարտ պատերազմի, արութիւն քաջութեան, սաստկութիւն բռնութեան, բօթ գուժի։*

**Դիտելիք.** — Խիստ գործածական է այս ձեւով երկու նոյնանշան բայ գործածել. զոր օր. կշտամբեալ յանդիմանել, անուանեալ կոչել, յարգեալ գովել, հաճեալ հաւանել, պանծացեալ պարծել, յայտ արարեալ ցուցանել, մարտ եդեալ կռուել, միտ եդեալ նայել, ուշ եդեալ հայել, զարտասուս հարեալ լալ։

*Գ. Բարդեալ գոյականի մը մէկ մասը (ոչ բայանունը, այլ խնդիրը) կրնայ նոյն գոյականին հետ առան-*

ծին գործածուիլ աւելադրութեամբ, ինչպէս . Նոյ էր ամաց վեցհարիւրոց եւ ջրհեղեղ ջուրց եղեւ ի վերայ երկրի։

Այսպէս կ'ըսուին. Ազատ որդիք ազատութեան, գործ դրօշագործութեան, ամենագէտ ամենայնի, արուեստագէտ արուեստի, կանխագէտ հանդերձելոց, աստուածաքարոզք աստուածպաշտութեան, վայրք միջավայրաց, գինեըբուք գինւոյ, սերմանահան սերմանեաց։

Դ. Գոյականի մը բացառականը կրնայ աւելադրութեամբ կրկնուիլ իւր քովը, որ օր. Ցերրորդ աւուր յորժամ անձրեւեն։

Իմն, ինչ ստէպ զարդու կամ ազդուութեան համար կրնան գործածուիլ ամէն բանի քով, մանաւանդ մի՛ մակբային հետ. իսկ ոչ ի հետ զատ կամ կից դրուելով սաստկութիւն մը կուտան, բնաւ, երբեք ըսելու տեղիճան, որ օր. Մի՛ ինչ զլուիցէք զնա։

Երբ անորոշ դերբայն ուղղական կամ հայցական հոլովով դրուի իր իսկ բային քով՝ հաստատութիւն մը կը ցուցնէ. իսկ անցեալ դերբայն կամ անորոշ դերբային գործիականն իրեն բային քով հաստատութիւն մը, սաստկութիւն մը, կամ բանին հետզհետէ աճելը ցոյց կուտայ, որ օր. Եթէ կապելով կապեսցեն զիս եօթն կարովք նորովք, տկարացայց եւ եղէց իբրեւ զմի ի մարդկանէ։

Նախադրութեան եւ նախդրի աւելադրութիւն են.

Ա. Յատկացեալին, բացայայտեալին ու գոյականին նախդիրը շատ անգամ կը կրկնուի եւսեւ դրուած յատկացուցչին, յատկացեալին, բացայայտչին, ածականին կամ գոյականին վրայ, որ օր. (Յատկացուցչին վրայ) Մի՛ խոտորիցես զիրաւունս զեկին եւ զորբոյ եւ զայրւոյ. — (Յատկացեալին վրայ) Կապեցէք զդորա զոտս եւ ըզ-

*ձեռս. — (Բացայայտչին վրայ) Կոչեաց զԵսաւ զորդի իւր երէց. — (Անձականին վրայ) Կոչեա՛ զՍիմոն զոմն. — (Գոյականին վրայ) Ա՛ռ նա զաճիւնախառն զկրակն :*

*Մակբայներէն ոմանք աւելորդութեամբ կը գործածուին. ինչպէս. Ոչ, միանգամ, զամ մի մակբայներն. զոր օր. Չնախանձի եւ ոչ ընդ ումեք երբեք :*

*Զի, թէ, եթէ, սակայն, բայց եթէ շաղկապները խօսքին մէջ երբեմն պարզ աւելադրութիւն են, զոր օր. Էր ժամանակ յորժամ զի հիւղն չէր :*

*Այսպէս կ'ըսուին. Ոչ միայն զի Աստուած չէ, այլ եւ կենդանի չէ. Ոչ միայն զի ոչ անարգեցաւ նա, այլ առաւել եւս հաւատարիմ եղեւ. Չէ ինչ ի ծածուկ որ թէ ոչ յայտնեսցի. Խորհէին ընդ միմեանս, թէ զի հացս ոչ ունիմք. Ոչ ապրեցուսցեն զուստերս եւ զդստերս, բայց եթէ ինքեանք ապրեսցին. Թէ ասացից ձեզ՝ սակայն ոչ հաւատայք :*

**Հարցարան.** — Ի՞նչ է *աւելադրութիւն.* — Որո՞նք աւելադրութեամբ կը գործածուին. — Ո՞ր դերանունները խօսքին մէջ կ'աւելցուին. — Որո՞նք են գոյականաց աւելադրութիւնները. — *Իմն, ինչ* ածականները ինչ բանի համար կը գործածուին. — Ինչո՞ւ է անորոշ դերբային գործածութիւնը. — Ի՞նչ կը ցուցնէ անորոշ եւ անցեալ դերբային գործիականը. — Որո՞նք են նախադրութեան եւ նախդրի աւելադրութիւնները. — Ո՞ր մակբայներն աւելադրութեամբ կը գործածուին. — Ո՞ր շաղկապներն աւելադրութեամբ կը գործածուին :

**Հրահանգ 218.** — (Ցուցրցէք աւելադրութիւնները). — *Որում առաջնորդեաց նմա Աստուած. — Դարձուցէ ի ձէնջ զբարկութիւն սրտմտութեան իւրոյ. — Խոնարհեալ կորանայր ի վերայ ծնգաց իւրոց. — Առեալ նա տայր աղջկանն զամենայն ինչս զտանն. — Առի ես զամենայն ապաւն զայն զոսկւոյ եւ զարծաթոյ. — Դարձուցանելով*

դարձուսցէ զիս Տէր յԵրուսաղէմ. — Եղանելով եղանէր եւ լայր. — Աստուածն քո զոր դուն պաշտես յաճախ, նա փրկեսցէ զքեզ. — Ի յանցանսն իւր յոր անկաւ եւ ի մեղս իւր զոր մեղաւ՝ ի նոսին մեռցի. — Ընկալայց զձեզ յաշխարհաց ուր ցրուեալ իցէք ի նոսա. — Էր անդ այր մի որոյ ձեռն իւր գօսացեալ էր. — Որոյ եւ բնակութիւնն իւր իսկ ի գերեզմանս էր. — Լուաւ կին մի զնմանէ, որոյ դուստր իւր նեղեալ էր յայսոյ պղծոյ. — Զայն Մովսէս՝ զոր ուրացան, զնա Աստուած իշխան եւ փրկիչ առաքեաց. — Որոց ծածկեցան մեղք իւրեանց. — Վէմն՝ զոր անարգեցին շինողքն, նա եղեւ գլուխ անկեան. — Որոց բերանք իւրեանց խօսեցան զնանրութիւն. — Որոյ գլուխ իւր հասանէր մինչեւ յերկինս. — Զերկիրդ յորում դուդ ննջես, քեզ տաց զդա եւ զաւակի քում. — Ցանկանալով ցանկացեալ ես երթալ ի տուն հօր քոյ. — Ի տունս տունս մտանէր. — Դպրոցս ըստ գաւառաց գաւառաց կարգէր. — Մեծ է պատիժ պատուհասիդ քան զներել Թողութեան իմոյ. — Հայելով հայեցայ ի տառապանս աղախնոյ քոյ. — Պատմելով պատմեաց ինձ եթէ գտան էշքն. — Երդմնեցուցանելով երդմնեցոյց հայր քո զժողովուրդս. — Ճաշակելով ճաշակեցի ծայրիւ գաւազանին՝ որ ի ձեռին իմում, սակաւ մի մեղր. — Գիտելով գիտէ հայր քո զի գտի շնորհս աչաց քոց. — Առնելով արասցես եւ զօրանալով զօրասցիս. — Երթալով երթայր Դաւիթ եւ մեծանայր։

**Հրահանգ 219.** — (Նոյն). — Եւ ժողովեսցեն զամենայն կերակուրս զեւթն ամացն բարեաց եկելոց. — Տեղիդ յորում կաս դու ի դմա՝ երկիր սուրբ է. — Լսելով լուիցես ձայնի տեառն Աստուծոյ քում եւ զհաճոյս առաջի նորա արասցես եւ ունկնդիր լիցիս պատուիրանաց նորա.

—Զարհուրեցից զամենայն ազգս յորս մտանիցես ի նոսա. — Եւ զզուարակն զվասն մեղաց՝ արասցես յաւուրն սըրբութեան. — Դադարեա՛ ի բարկութենէ սրտմտութեան քոյ. — Զամենայն ճարպ զարջառոյ եւ զոչխարի եւ եւ զայծեաց մի՛ ուտիցէք. — Միթէ յուլանալով յուլացա՞յ ինձ երբէք առնել քեզ. — Պահելով պահեսցես ըղպատուիրանս Տեառն Աստուծոյ քոյ. — Պարգեւելով պարգեւեսցես նմա եւ տալով տացես նմա փոխ՝ որչափ եւ պիտոյ իցէ. — Գրեսցես ի վերայ քարանցն զամենայն պատգամս զօրինացս այսոցիկ. — Խաղաղութիւն եւ շինութիւն, մարդաշատութիւն եւ առողջութիւն, պտղաբերութիւն եւ ստացուածաշատութիւն, յամս յաւուրս սոցա աճել բազմացաւ. — Իբրեւ օր մի յաւուրց տարեկան, դիմեաց նա գալ մտանել յեկեղեցին. — Անդէն ի ձեռն առնոյր զկշտամբութիւն յանդիմանութեանն. — Խափանէր եւ զանօրէնութիւնս եւ զխօսս եւ զգործս զայսպիսեացն միանգամայն. — Կարգեաց նոցա (աղքատացն) անդէն դարմանս, այսպէս զի ըստ իւրեանց անկողինս մահճացն մի՛ ուրեք աշխատ լիցին ելանել. — Ապա եղեւ դէպ օր մի յաւուրց. — Կարի ստիպեալ բըռնադատեաց զնա. — Որպէս զեղբայր կամ զորդի այնպէս պատուեաց զնա. — Յետ այսորիկ հիւանդացաւ նա զախտ հիւանդութեան մահու. — Զմուրհակս գիւղից եւ զագարակաց գրեալ եւ կնքեալ դնէին ի վերայ ոտինն Յովհաննու փոխանակ ընդ մեղաց իւրեանց. — Յիրաւի այնուհետեւ թշնամանին եւ տանջին եւ մահու պատիժ փոխանակ ընդ վատութեանն կրեն. — Մարդիկ՝ որ հանապազ ի մեղս կայցեն եւ խղճիւ չարեացն միշտ յահ եւ յերկիւղ կայցեն, հանապազ մահուց մահս մեռանին. — Լուաւ Գոդողիա զձայն ժողովրդեանն զընթանալոյն, զգոհանալոյն եւ զօրհնելոյն զարքայ. — Շնորհեալ պար-

զենեաց նա ժողովրդեանն գառինս եւ ուլս՝ երեսուն հազար. — Փայտքն լուցեալ վառէին. — Իբրեւ ընթերցաւ Բասիլիոս զթուղթն, խնդայր եւ ուրախ լինէր. — Սարսացեալք դողային վասն ցրտութեան ձմերայնոյն. — Զդէմս երեսացն ծածկէր. — Փոխանակ զի լսցեր զականջս քո եւ կափուցեր զլսելիս. — Տաց զքեզ ի ձեռս արանցն յորոց դու երկնչիս յերեսաց նոցա. — Տաց քեզ զանձն քո յամենայն տեղւոջ ուր եւ երթայցես անդր. — Շուրջ եղեն զինեւ չարք՝ որոց ոչ էր նոցա թիւ. — Ծարաւեաց առ քեզ հոգի իմ, որպէս երկիր անապատ եւ անջուր, ուր ոչ գոյ ի նմա ճանապարհ։

## 4. ԲԱԿԱՌՈՒԹԻՒՆ

Բակառութիւնը ձեւ մ'է, որով բառերն ոչ թէ քերականութեան կանոնաց համեմատ կը համաձայնին, այլ իմաստին համեմատ, զոր օր. Ամենայն այր պարսաւոր կալան զելս նոցա. ո՞վ են ժողովուրդն այն՝ որ նըստին ի լեռնակողմանս։

Բակառութեամբ է որ դէմքի եւ թուոյ վերաբերեալ քերականական կանոնք չեն պահուիր, զոր օր. Զրոյ բնութիւն կրկին որակման. կրկին բառին տուած իմաստին պատճառաւ բայն յոգնակի դրուած է։

Էական բայն յոգնակի կը դրուի՝ երբ ստորոգելին յոգնակի է, զոր օր. Մտաց բաջաղանք են աղանդն եւ ոչ ճշմարտութիւն։

Հաւաքական անուններն երբ տէրբայի ըլլան, շատ անգամ յոգնակի կը դրուին, նոյնպէս անոնց ածականներն եւ դերանուններն ալ յոգնակի կ'ըլլան, զոր օր. Ամենայն Իսրայէլ անցին զօրինօք քովք. իբրեւ զոչխար որոց ոչ իցէ հովիւ։

**Ծանօթ.** — *Անձնական բառն շատութիւն կամ ամբողջութիւն ցուցընելուն՝ իր բայն յոգնակի կ'ըլլայ :*

*Իւրաքանչիւր բառն եզակի ձայնիւ երբեմն յոգնակի ուղղական գործածուելով՝ բայն ալ յոգնակի կը դրուի, զոր օր. Ասեն իւրաքանչիւր ցընկեր իւր :*

*Եզակի թուական անուններուն վերաբերեալ ածական կամ բայ յոգնակի կը դրուին, զոր օր. Տասն այր բորոտ որք կային ի հեռաստանէ. երկոտասան այր sqksf.*

**Հարցարան.** — Ի՞նչ է *բաղաձայութիւնը*. — Ի՞նչ կ'ըլլայ բաղաձայութեամբ. — Ե՞րբ ստորոգելին յոգնակի կը դրուի. — Հաւաքական անուններն երբ sէրբայի ըլլան, ինչպէս կը դրուին. — *Իւրաքանչիւրն* ինչպէս կը դրուի. — Եզակի թուական անուններուն վերաբերեալ ածական կամ բայ ինչպէս կը դրուին.

**Հրահանգ 220.** — Ցուցըցէք բաղաձայութեամբ գործածուած բառեր. — *Ամենայն Իսրայէլ անցին զօրինօք քովք. — Տուն Իսրայելի ոչ հաւանին լսել քեզ. — Ամենայն փայտ ի դրախտին Աստուծոյ ոչ նմանեցին նմա գեղեցկութեամբ. — Բազում ժողովուրդ ի Գալիլեացւոց երթային զհետ նորա. — Ամենայն ատեանն կապեցին զՅիսուս եւ տարան մատնեցին Պիղատոսի. — Գնացին իւրաքանչիւր ոք ի տեղի իւր. — Նստէին իւրաքանչիւր ընդ այգւով իւրեանց եւ ընդ թզենեաւ իւրեանց. — Այր իւրաքանչիւր եղանէին եւ լային. — Սփռեցան ի քաղաքէն յայնմանէ այր իւրաքանչիւր զճանապարհ իւր. — Ժողովուրդն արկանէին խունկս ի վերայ բարձանց. — Դարձցին իւրաքանչիւր ի տուն իւր խաղաղութեամբ. — Ամենայն աշխարհ՝ թագաւորի զօրութեան եւ հրամանի լսեն. — Եւթն հասկ ելանէին ի միում մինջի խորշակահարք. — Էին անդ երկոտասան աղբիւր ջուրց եւ եւթանասուն ծառ արմաւենեաց. — Իւրաքանչիւր ըստ բաւա-*

*կանի իւրում ժողովեցին. — Կոչեսցեն զնա ծերակոյտ քաղաքին իւրոյ եւ խօսեսցին ընդ նմա. — Զիա՞րդ կայցեմ զլուխ ազգի, զորս եթող Տէրն ի ձեռանէ. — Բարձին զմարմին նորա բազմութիւն մարդկան. — Իւրեանց աշխարհն սիրեն զայրդ զայդ. — Ոչ ոք ի նոցանէն այսմիկ յանձն առնուլ հաւանեցան. — Ամենայն երկիր սկսան ի նա հայել. — Ամենայն մարդ պատուէին զՍուրբն Բասիլիոս. — Ամենայն ոք երթիցեն դիցեն աշխար կոծոյ եւ լացցեն զԳնէլ. — Ամենայն մարդ զդեւսն ի նմա աչօք բացօք տեսանէին. — Խորհուրդ մահկանացուաց զանդիտօղք են. — Դատեցան իւրաքանչիւր ըստ գործոց իւրեանց. — Մուտ աշխարհիս այսորիկ խիստ են եւ դժուարին եւ լի տառապանօք. — Ժողովեցին միանգամայն բազմութիւն այնչափ յամենայն բնակչաց երկրի. — Վտակ ջուրց իջին յաչաց իմոց, զի ոչ պահեցին զօրէնս քո. — Թերեւս լուիցեն տունն Յուդայ զամենայն չարիս իմ. — Ամենայն հասակ քրձազգածք եղիցին. — Անկան իւրաքանչիւր առ ընկերի իւրում. — Ասացին ի սիրտս իւրեանց ազգ նոցա ի միասին. — Բերան անզգամաց պատմեն զչարիս. — Կակղասցին խստութիւն սրտից նոցա. — Հոտ խնկոց բուրեն ի նմանէ ։*

**Հրահանգ 221.** — (*Նոյն*). — *Մոռացօնք եղեն նմա զալուստ որդւոյն Աստուծոյ. — Ոչ եւս տեսանեմ զբանաւոր քո հօտ ի վայրի դալարուոջ եւ առ ջուրս հանգստեան տածեալս, եւ ոչ ի փարախ հաւաքեալ զգուշանալով ի գայլոց, այլ ցրուեալս. — Ընթացաւ ամենայն ժողովուրդն զարմացեալք. — Ժողովեցաւ ամենայն Իսրայէլ իբրեւ զայր մի՝ եկեալք ի քաղաքաց. — Ամենայնի՝ որոյ իցեն թեւք եւ թեփ, պիղծ իցէ ձեզ այն. — Բարկութիւն հօր՝ որդի անմիտ, եւ ցաւք են*

*Անցեալ ընդունելութիւնը փոխանակ իր ձեւով մնալու՝ իր սեռական ներբային հոլովով կը դրուի . զոր օր. Այսոցիկ այսպէս եղելոց . փոխ. այսոցիկ այսպէս եղեալ ։*

*Հայերենի յատուկ եղած ոճ մ՚է որ մէկու մը խօսքը կամ դէպքը պատմելով մէջ բերուած ատեն փոխանակ Գ. դէմք դրուելու առաջին դէմք կը դրուի , զոր օր. Իբրեւ գիտաց թէ ոչ կարեմ ժոյժ ունել նմա , դարձաւ անդրէն , փոխանակ՝ թէ ոչ կարէ , եւայլն ։*

*Գոյականին ածականն երբեմն սեռական կը դրուի յատկացուցչի պէս , զոր օր. Զոհեաց զոհս խաղաղականաց , փոխ. զոհս խաղաղականս ։*

*Յատկացուցիչն իր յատկացեալին հոլովով դրուած կը գտնուի նոյնպէս , զոր օր. Բազմութեամբ յանցանօք ։*

**Հարցարան.** — Ի՞նչ բանի մէջ կը կայանայ *փոխադրութիւնը*. — Ածական եւ գոյական ինչպէս գործածուած կան. — Անորոշ եւ անցեալ դերբային քով ինչ հոլով ներբայի կը դրուի երբեմն.— Անցեալ ընդունելութիւնն ինչ հոլովով կը դրուի երբեմն. — Ե՞րբ Գ. դէմքի տեղ Ա դէմք կը գործածուի. — Գոյականին ածականն երբեմն ինչ հոլովով կը դրուի. — Յատկացուցիչն ինչ հոլովով.

**Հրահանգ 222.** — Ցուցրէք փոխադրութեամբ գործածուած բառեր . — *Եւ արբ նա գինի սաստիկ յոյժ , որչափ ոչ էր արբեալ նորա այնչափ յաւուրս իւրում , յորէ ծննդենէ իւրմէ . — Հրեշտակս արձակեաց խօսել ընդ նոսա ի խաղաղութիւն բանիւք նենգութեամբ . — Զայլս գնովք փրկանօք ազատէր . — Զայնիւ հառաչմամբ պաղատէին առ քեզ . — Նշանաւ ամենայաղթ խաչիւդ քով , Քրիստո՛ս , պահպանեա՛ զմեզ . — Եւ յամբոխէն բազմութենէ յառաջ կան զԱղեքսանդրոս . — Հողմով սաստկութեամբ քով պատառեցան ջուրք . — Իսկ տիկինն Փառանձեմ իբրեւ ետես՝ եթէ միայն մնացի . —*

Որպէս ետես թէ մեռանիմ, կոչեաց նա զծառայս իւր. — Ցայս արարեալ եթէ չեմ ես արժանի պաշտաման. — Հանէք զամենս ի ծագաց երկրէ. — Ած զմտաւ թէ մեռանիմ. կոչեաց զամենայն բարեկամս իւր. — Ի ծագաց երկրէ կարգացի առ քեզ, մինչ ի վաստակել սրտի իմոյ. — Կարգեաց չորս չորս հողս երդոց յամենայն ազարակ անկիս. — Սկսաւ քաղցր եւ աղերս բանիւ խօսել ընդ ամենեսեան. — Մինչեւ երկիրն չարժէր յամբոխ աղաղակէ անտի. — Սպառէր եւ մաշէր զխաւար խորհուրդս նոցա. — Առանց կարեաց եւ առանց մասանց է աստուածականն. — Ինքն է ամենայն բնութեանց արարիչ եւ ոչ էութեան էականաց խառնիչ. — Իրաւ իսկ թուի ինձ խորհել զայս վասն ձեր ամենեցուն, կցորդս ինձ շնորհաց զձեզ ամենեսին լինել. — Նոյնպէս եւ զսարկաւագունս՝ պարկեշտս պարտ է լինել. — Վասն այնորիկ յանձն իւր տարաբերէր, թէ յո՞ թափեսցէ զդառնութիւն թիւնից. — Որպէս գիտաց՝ եթէ չկարեմ քակել զհաստատութիւն միաբանելոցն, յայնժամ քակեաց յինքենէ զծերն լի դառնութեամբ. — Հաստատեա՛ զսիրտ քո պատառով միով հացիւ. — Ցնորք անժպիտք խոժոռադիմացն երեւէին. — Լուսաւորեցան Յրոմն կենդանութեան բղխեցելոյն յԵրուսաղեմէ եւ խաղացելոյն ի կեանս յաւիտենից. — Իմաստութիւն ոչ բնակէ ի մարմնի վարեցելոյ մեղօք. — Թագաւորեաց ամսօրեայ մի աւուրց. — Արդելականք կուսանաց ի պարիսպս ընթանային. — Զարհուրեցին զնորահաւատս մարդկան. — Քանի՛ անթիւ բիւրուց կախարդաց են յերկրի. — Զեւ լինէր արեգական ճառագայթիցն յաշխարհ սփռեալ։

---

## ԿԷՏԱԴՐՈՒԹԻՒՆ

Կէտադրութիւնն է նախադասութեան մը եւ կամ գրաւոր ասութեան մը մէջ մուծանել նշաններ՝ բաժանումներ ընելու համար, որպէս զի իմաստներ չշփոթուին եւ հանգիստ առնելու տեղերը ցուցուին։

Կէտադրութեան նշաններն են. բութ (՝), ստորակէտ (,), միջակէտ (.), վերջակէտ (։), ապաթարց (’), մակակէտ (՛), չակերտ («  »), փակագիծ (  )։

Ասոնցմէ զատ կան հետեւեալներն՝ որոնք եւրոպացիներէն առնուած են. միութեան գիծ —, անջատման գիծ — —, կախման կէտ . . . կրկին փակագիծ [  ]։

Բութը կը դրուի. Ա. Բառի մը վերջը՝ շունչ առնելու եւ յաջորդէն զատելու համար, երբ զեղչում մտած ըլլայ կամ բառ մը զօրութեամբ իմացուի. զոր օր. Սկիզբն իմաստութեան՝ երկիւղ տեառն։

Բ. Դերբայական նախադասութենէ մը եւ կամ նախադրութեամբ խնդրէ վերջը բութ կը դրուի, զոր օր. Այսպէս չորեքին բնութիւնքն, ուստի աշխարհս կազմեալ եւ կայ, առանձինն՝ ապականիչք են միմեանց, եւ խառնեալ ընդ ընկերին՝ օգտակարք եւ շահաւորք։

Գ. Տէրբայի մը եւ ստորոգելի մը՝ որ իւր լրացուցիչներով երկայն խօսքի մը մասը կազմած է՝ շունչ առնելու համար՝ միւս մասերէն բութով կը զատուի. զոր օր. Բերան նորա իմաստութիւն եւ հանճար է, եւ սիրտ՝ գրոց տեղեկութիւն եւ ճշմարիտ կրօնից զգուշութիւն. Ձեռք եւ ոտք նորա՝ զգործոց բարութեանց զհանդէս ցուցանեն, շունչ՝ աստուածպաշտութիւն։

Դ. Երբ միջանկեալ նախադասութիւն մը որոշիչ է, յաջորդ մասէն՝ որ գլխաւոր նախադասութեան կը վերաբերի, բութով կը զատուի, զոր օր. Այն աշակերտն՝ որ ծոյլ է՝ չվարձատրուիր ։

Իսկ երբ միջանկեալ նախադասութիւնը մեկնիչ է, բութ կը դրուի գլխաւոր նախադասութեան այն բառէն վերջը՝ որ միջանկեալ նախադասութենէն առաջ դրուած են եւ ստորակէտ կ'աւելցուի միջանկեալ նախադասութենէն վերջ, զոր օր. Պատանի նանրասէր՝ որ կանացաբար զարդարի, անարժան է փառաց ։

Ե. Խօսքին սկիզբը դրուած ենթակայ մը, ստորոգելի մը կամ ուրիշ պաշտօն վարող բառ մը անմիջապէս յաջորդ մասերէն զատելու համար, որպէս զի միոյն լրացուցիչը միւսին չտրուի շփոթութեամբ, բութ կը դրուի, զոր օր. Մահ՝ մարդոյ հանգիստ է. Ալիք՝ իմաստութիւն մարդոյ են ։

Ստորակէտ կը դրուի.

Ա. Երկու կամ աւելի՝ կարճ նախադասութեանց մէջ՝ որ իրար կ'ամբողջացնեն, զոր օր. Եհաս գարուն, ցանկք պարտիզաց ծաղկեցան սաղարթագեղ ։

Բ. Կարճ առընթերադիր նախադասութիւնները ստորակէտով կը զատուին, զոր օր. Եկայ, տեսայ, յաղթեցի ։

Գ. Այն լրացուցիչներն՝ որ իբրեւ միջանկեալ նախադասութեան տեղ առնուած են, ստորակէտներու մէջ կ'առնուին, զոր օր. Մարդն, կենդանեաց թագաւորն ։

Դ. Կոչականներ, նոյնպէս եւ միջարկութիւններ երբեմն ստորակէտով կը զատուին, զոր օր. Որդեա՛կ, լո՛ւր խրատու հօր քո. վա՜հ, որ քակէիր զտաճարդ ։

*Ասոնց կարգէն են բացայայտիչներն, թէեւ ըստ ոմանց՝ ստորակէտի գործածութիւնն ասոնց համար աւելորդ է։*

*Միջակէտն, որ կէտ ալ կ՚ըսուի, ամբողջ խօսքի մը գլխաւոր նախադասութիւններն իրարմէ կը զատէ, զոր օր. Քանզի ծխոյ իսկ նման են ամենայն իրք մարդկօրէնք. վասն որոյ եւ ոմն ուրեմն ասէր. Պակասեցին իբրեւ զծուխ աւուրք իմ։*

*Վերջակէտը կը դրուի բոլորովին լրացած խօսքին առջեւ։*

*Ապաթարց կը դրուի կրճատուած ձայնաւոր գրին տեղ, զոր օր. Երկինք ւ՚երկիր պատմեն զգործս քո։*

*Մակակէտ ի նախդրին ետեւ կը դրուէր երբեմն։*

*Չակերտը կոչման կամ վկայութեան նշան է, եւ յառաջ բերուած խօսքին սկիզբն ու վերջը կը դրուի, զոր օր. Անոր ամէն գործերն են «Չէրն չէին վասն չէին յաշտ առնէր»։*

*Փակագիծը միջանկեալ խօսքեր գրութեան մը բուն իմաստէն զատելու կը ծառայէ. այսպէս. Իր ագահութիւնը յայտնի է (որովհետեւ իր կեանքը չարունակ զրկողութեան մատնեց)։*

*Առոգանութեան նշաններն են. Շեշտ ('), երկար (՛), սղորակ կամ պարոյկ (°). շեշտը զարնելու նշան է, երկարը՝ ձայնն երկնցնելու, եւ սղորակը կամ պարոյկը՝ հարցնելու։*

*Իսկ տողադարձը տողերուն ծայրը կը դրուի, երբ բառին կէսն յաջորդ տողին անցընենք։*

**Հարցարան.** — Ի՞նչ է *կէտադրութիւնը*. — Որո՞նք են կէտադրութեան նշանները. — Ե՞րբ կը դրուի *բութ*. — Ե՞րբ կը դրուի *ստորակէտ*. — Ի՞նչու կը դրուին *միջակէտ, վերջակէտ, ապաթարց, չակերտ, փակագիծ*. — Որո՞նք են առոգանութեան նշանները։

**Հրահանգ 228.— ԽՈՆԱՐՀՈՒԹԻՒՆ Ս. ԿՈՅՍԻՆ. (Աշակերտն նետեւեալ հատուածին մէջ յարմար տեղեր գործածէ կետադրութեան նշանները).** — *Յամսեանն վեցերորդի առաքեցաւ Գաբրիէլ հրեշտակ յԱստուծոյ ի քաղաք մի Գալիլեացւոց որում անուն էր Նազարէթ առ կոյս խօսեցեալ առն որում անուն էր Յովսէփ ի տանէ Դաւթի եւ անուն կուսին Մարիամ Եւ եկեալ առ նա ասէ Ուրախ լեր բերկրեալդ Տէր ընդ քեզ Եւ նա ընդ բանսն խռովեցաւ եւ խորհէր ընդ միտս թէ որպիսի ինչ իցէ ողջոյնս այս Ասէ ցնա հրեշտակն Մի երկնչիր Մարիամ զի գտեր շնորհս յԱստուծոյ եւ ահա յղասջիր եւ ծնցիս որդի եւ կոչեսցես զանուն նորա Յիսուս Նա եղիցի մեծ եւ որդի բարձրելոյ կոչեսցի եւ տացէ նմա տէր Աստուած զաթոռն Դաւթի հօր նորա եւ թագաւորեսցէ ի վերայ տանն Յակոբայ յաւիտեանս եւ թագաւորութեան նորա վախճան մի լիցի Եւ ասէ Մարիամ ցհրեշտակն Զիարդ լինիցի ինձ այդ քանզի զայր ոչ գիտեմ Պատասխանի ետ հրեշտակն եւ ասէ ցնա Հոգի սուրբ եկեսցէ ի քեզ եւ զօրութիւն բարձրելոյ հովանի լիցի ի վերայ քո քանզի որ ծնանելոցն է ի քէն սուրբ է եւ որդի Աստուծոյ կոչեսցի Եւ ասէ Մարիամ Ահաւասիկ կամ աղախին Տեառն եղիցի ինձ ըստ բանի քում Եւ գնաց ի նմանէ հրեշտակն.*

## ԱՐՄԱՏ, ԱԾԱՆՑ ԵՒ ԲԱՐԴ ԲԱՌԵՐ

*Ինչպէս ծառի մը արմատն յառաջ կը բերէ շատ մը ճիւղեր, այսպէս կարգ մը բառեր ուրիշ շատ բառերու ծնունդ կուտան։*

***Սկզբնական բառ մը՝ ուրկէ ուրիշ բառեր յառաջ կուգան կամ թէ այն բառն՝ որ ուրիշ բառի կամ մասնկի հետ միացած չէ, կ'ըսուի արմատ կամ պարզ բառ։***

*Արմատական պարզ բառերը նախատիպ կ'ըսուին, այսինքն այնպիսի բառեր, որոնք իրենց սկզբնական ձեւը պահած են. Ձիւն նախատիպ բառ է։ Այսպէս մեծ բառէն յառաջ կուգան մեծութիւն, մեծանալ, մեծամիտ, մեծամեծ, եւլն. որոնց ամենուն արմատն է մեծ։*

**Հարցարան.** — *Արմատ* որն կ'ըսուի։

**Հրահանգ 225.** — Աշակերտն հետեւեալ արմատ բառերէն կազմուած բառեր յօրինէ. — *Արդար . լոյս . Հայր. վանք . գիշեր . ծառ . տերեւ . քար . հող . անտառ . դաշտ . մարդ . ձայն . հոտ . քաղաք . նաւ . ձի . խոտ . դաս . անձրեւ . հաց . պանդոխ . վտանգ . հիւանդ . կանոն . զօր . բանդ . զգեստ . ծով . բանջար . դատ . ձեւ. եղբայր . գործ . աղքատ . բախտ ։*

**Հրահանգ 226.** — Հետեւեալ բառերէն արմատ բառեր հանեցէք . — *Երկնաձեւ . օդաչու . բարեբաստիկ . հանքագործ . գետնադամբան . վճռաջինջ . կրօնագէտ . ճգնաւոր . ընչաւէտ . մատենադարան . հողմակոծ . յարկածածուկ . ոսկեձեղուն . սանդղամատն . ծովածուփ . հիւրամերժ . գուպարայաղթ . լերանցամէջ . վարսագեղ . խորադիմոյ . աւետաբեր . խնամել ։*

## ԱԾԱՆՑ

Ածանց կամ ածանցումն կը կոչուի բառ մը ուրիշ բառէ յառաջ գալն եւ յառաջ եկածն՝ ածանցեալ ։

Ածանց կ'ըլլայ պարզ բառի վրայ մասնիկ մը կամ գիր մը աւելցընելով սկիզբը կամ վերջն եւ կամ երկու կողմն ալ․ զոր օր․ Անառիկ, խոտեղէն, ապերախտ ։

Ածանց կ'ըլլայ գլխաւորաբար մասնիկներու միջոցաւ ։

Մասնիկն ինքնին աննշանակ ձայն մ'է որ բառի մը վրայ աւելնալով անոր զատ նշանակութիւն կուտայ․ զոր օր․ Գեղ, տգեղ, գեղեցիկ․ մեղ, անմեղ, մեղաւոր ։

Երբեմն կը պատահի որ նախատիպ բառի վրայ հետզհետէ երկու ածանցական մասնիկ կ'աւելնայ. այս տեսակ բառերը կրկնածանց կ'ըսուին. զոր օր. Թագաւորական՝ կրկնածանց է։

## ԱԾԱՆՑԱԿԱՆ ՄԱՍՆԻԿՆԵՐ

Բառից սկիզբը դրուող սովորական մասնիկներն են․ ան, տ, չ, ապ, դժ կամ տժ, որոնք հակառակ նշանակութիւն մը կը յայտնեն․ զոր օր․ Անլոյս, ապէնիազ, դժպատեհ, տգէտ, չքահանայ (*) ։

**Հարցարան.** — Ածանց որն կ'ըսուի. — Ի՞նչպէս կ'ըլլայ ածանցն. — Ի՞նչ է մասնիկն. — Որո՞նք են բառից սկիզբը դրուող մասնիկները ։

**Դիտելիք.** — *Բառերու սկիզբ կը դրուին նաեւ հետեւեալ մասնիկներն, որոնք յունարէն լեզուի նմանութեամբ ստեղծուած եւ հայերէնի յարմարցուած են. ինչպէս. Առ, արտ, բաց, գեր, դեր, ենթ, հակ, համ, մակ, յար, ներ, շաղ, ստոր, վեր, տար, տրամ, փաղ, զոր օր. Առդրել, արտասանել, բաղդատել, բացակայ, գերադասել, դերանուն, ներդաշնակ, շաղկապել, եւայլն։*

---

(*) Ուրիշ քերականներ այսպիսի նախադիր մասնիկները բաղադրեալ կ'անուանեն։

**Հրահանգ 227.** — (Որոշեցէք հետեւեալ խօսքերուն մէջ ան մասնիկով ածանցեալ բառեր). — *Հրեշտակք անկցորդք են եւ անընդունակ ամենայն ախտի. — Մովսէս արար տապանակ յանփուտ փայտից. — Մի՛ հեղցի արիւն անպարտ յերկրի քում. — Վկայ անիրաւ վկայէ զանիրաւութիւն. — Երկիր էր աներեւոյթ եւ անպատրաստ. — Մի՛ կորուսանիցէ մեղաւորն զանմեղն. — Ի ծարաւ տօթոյ յանջրդի պաշտպանեաց զնա. — Որդի անհնազանդ ի կորուստ եղիցի. — Էիք յանապատի անդ զաւուրս բազումս. — Մի՛ ուտիցես զամենայն անսուրբ. — Սաւուղ անգիտացաւ անգիտութիւն յաւուրն յայնմիկ. — Չէր եկեալ այնպիսի փայտ անտաշ յերկիրն ։*

**Հրահանգ 228.** — Հետեւեալ բառերուն հակառակները գրէք. — *Կեղծաւոր. կիրթ. հանդարտ. հնազանդ. յարմար. պտղատու. մահացու. երկչոտ. թերի. ծանօթ. բծաւոր. արատաւոր. բաւական. ալէկոծ. ախորժ. աղօտ. ապաւէն. արդար. արի. բերրի. բնական. գիտակ. գոյ. դանդաղ. զգաստ. զգոյշ. զոյգ. ընդել. ընդհատ. ընդունակ. ժուժկալ. լսելի. խառն. խարդախ. կարօտ. հաղորդ. հանգէտ. հաւասար. մարթ. մոլար. յաջող. չխոժ. պղտոր. տրտում. փակ. փորձ ։*

**Հրահանգ 229.** — Ի՞նչպէս պէտք է որակել. — *Ով որ երախտիք չճանչնար. — Ով որ ուշ չունի. — Այն ժողովուրդները՝ որ հարկէ ազատ են. — Այն ձին՝ որ սանձ (երասան) չունի. — Այն մարդիկ՝ որ յայտնի տոհմէ չեն ։*

**Հրահանգ 230.** — (Որոշեցէք հետեւեալ խօսքերուն մէջ *ապ*, *չ*, *տ*, *տժ* եւ *դժ* մասնիկով ածանցեալ բառեր). — *Տկարք զգեցան զօրութիւն. — Եթէ կապեսցեն զիս*

եօթն ջրովք չվտտելովք . — Մարդկարար ինչ բարբառ ընդ բերանն չհանիցէ , այլ ահագինս ինչ եւ չարաճայն եւ չախորժելի . — Ընդէ՞ր դժկամակ եղեր վասն բանիս այսորիկ . — Առին գրաստուք զամենայն տկարս . — Տգեղ ինչ իրս վասն վարդապետութեանն Քրիստոսի ոչ խորհէր նա . — Ցառաջ կոչէր զտգէտս ի գիտնոց եւ զանարիս ի քաջ արանց . — Կոյր զրկի ի ճառագայթից արեգական եւ ագիտութիւն ի կատարեալ կենաց . — Բազում անգամ դժգոհ զնախախնամութենէն լինէին . — Արեգակնս այս անկենդան՝ զտհաս պտուղս հասուցանէ . — Ցաւք հասանիցեն եւ զգոյն տժգունիցեն եւ զգեղն եղծանիցեն . — Տժգին վաճառականութեան կըրպակաց նման է . — Ցաճախ դժգոհ է մարդ . — Ի միտ ա՛ռ դարձեալ զնորա դժգոհութիւն . — Ապաշնորհք էին Հրեայք . — Առ երախտաւորն ապերախտ գտանիմք . — Ապաշէն լեալ՝ մատնեցայց . — Ի չաջողութենէ ուրուք անուանի թշուառութիւն . — Ամենայն կառք ի համազգեաց երիվարաց լծին , բայց միայն յայսց կառաց՝ որ ի չհամազգեացն լծեալ են . — Զիա՞րդ չէականքն եւ չմշտնջենաւորք ընդ էականին եւ ընդ մշտնջենաւորին երկրպագութիւն առնուցուն ։

## ՀՈԼՈՎՄՈՒՆՔ ԱԾԱՆՑՄԱՆՑ

Ածանցմունք կ՚ըլլան . Ուղղականով , ինչպէս . ծըմեռնային , մայրենի ։ Սեռականով , ինչպէս . գեղջուկ , թաղմանական , մորայի ։ Տրականով , ինձնի , քեզնի ։ Հայցականով , կենսական , մեղսաքաւիչ ։ Գործիականով , արամբի , գլխովին ։

**Հարցարան**. — Ածանցմունք ինչ հոլովներով կ՚ըլլան ։

## ԳԼԽԱՒՈՐ ԱԾԱՆՑԱԿԱՆ ՄԱՍՆԻԿՆԵՐ

Ական, ային մասնիկները վերաբերութիւն կը ցուցնեն. այս ածանցները սեռական հոլովի զօրութիւն ունին, զոր օր. Դաշտ, դաշտական, դաշտի ըսել է. երկինք, երկնային, երկնից կը նշանակէ։

**Հարցարան.** — Ի՞նչ կը ցուցնեն ական, ային մասնիկները։

**Հրահանգ 231.** — (Հետեւեալ խօսքերուն մէջ ական, ային մասնիկներով ածանցեալները սեռականի փոխեցէ՛ք). — Քաղաքային իրաց հմուտ լինիցի. — Եթէ աստուածային օրինացն հաւատային, անդստին յօրինացն առնէաք պատասխանի. — Ժամանակ ամառնային էր. — Ջրային զեռնոց եւ լուղակաց զբնութենէ այսպէս ածեմք զմտաւ, թէ ոչ լիով ունին զկենդանութիւն ըստ համեմատի ցամաքային անասնոց. — Են թռչունք՝ որ առ մեզ կամին առնել զբնակութիւն, եւ են՝ որ լեռնասէրք անապատական բարոյս ունին. — Գարնանայինն քան զաշնանային գերազանցէ ժամանակ. — Թռեաւ իբրեւ զտեսիլ գիշերական. — Զլեռնային եւ զդաշտային վայրս սերմանեաց եւ տնկեաց. — Քաղցրացուցանէր ոմանց զկարգս երաժշտական. — Ոչ է մարդկայնոյ բնութեան բարին գոլ, այլ Աստուծոյ միայն. — Եւ կայ ներքնագիրս այս մեհենային գրովք. — Եգիպտացիքն զլուսնական հաշուին ծագմունս։

**Հրահանգ 232.** — (Հետեւեալ բառերն ական, ային մասնիկներով ածանցեալներ շինեցէ՛ք). — Լեառն. դաշտ. ծով. հողմ. օդ. գեղջուկ. անտառ. ագարակ. աղերս. այր. անապատ. դատ. անդունդ. արուեստ. աւետարան. արեգակն. բոց. գազան. եթեր. երազ. երկինք.

*իշխան . լուսին . խաւար . խունկ . կանոն . կոյս . հոգի . հրեշտակ . ձի . ձմեռն . ճառ . ճգնաւոր . մայր . մանուկ . ջուր . տոհմ . քաղաք :*

---

*Արան , անոց , ոց մասնիկները տեղ կը ցուցնեն, զոր օր. Խորհուրդ, խորհրդարան , տեղի խորհրդոյ . Ժողով , ժողովարան , տեղի ժողովոյ . հիւանդ , հիւանդանոց , տեղի դարմանելոյ զհիւանդս :*

**Հարցարան.** — Ի՞նչ կը ցուցնեն *արան, անոց, ոց* մասնիկները .

**Հրահանգ 233.** — (Աշակերտն հետեւեալ գոյականներէն ածանցեալներ կազմէ *արան , անոց , ոց* մասնիկներով եւ յաջորդ հրահանգի խօսքերուն մէջ ըստ պատշաճի տեղւոյն դնէ). — *Ճաշ . մեղու . ծեր . կոյս . զոհ . ճրագ . դէտ . մարդ . գանձ . անկեալ . ամուր . վարժ . հիւանդ . միայնութիւն . սուրբ . մարտիկ . խորհուրդ . ժողով . աղօթք . բնակութիւն . ծաղիկ . գիրք . ձուլելն . արուեստահալելն . աղքատ . ուրուկ . դարման :*

**Հրահանգ 234.** — *Հրամայեաց ըստ գաւառաց գաւառաց շինել տեղիս աղխատաց . — Եւ նոցուն կարգեցին տեղիս դարմանելոյ ուրուկս , տեղի դարմանոյ եւ առճիկս . — Բաջացան ի մրցմունս տեղւոյն մարզանաց . — Աշակերտն եմուտ ի — . — Պտղոմէոս՝ որ կոչեցաւ եղբայրասէր , տեղի գրոց կազմեալ՝ ժողովէր զամենայն գիրս . — Եւ էր շինեալ նորա — աղքատաց եւ հիւանդաց . — Գանձ եւ կարասի բաղում ի տեղիս զանձուց պահէր . — Եւ առ. Դաւիթ զՍիոն եւ զտեղի ամրութեան նորա . — Եկեսցեն — առ. քահանայն . — Լիցուք տաճար եւ բնակութիւն աստուածային շնորհացդ . — Ցա-*

մենայն տեղիս — շինեցին, ոչ վասն զոհից, այլ միայն աղօթս մատուցանել. — Եմուտ ի տեղի խորհրդոյն. — Վանդակապատ տեղիս մարտկաց կազմեցին. — Շինեաց զամենայն բլուրն եւ զտեղիս դիտելոյ. — Ետուն ածել ի տեղի կուսանացն. — Ցարեաւ նա ի ճաշոյ անտի եւ եմուտ ի տեղի ծաղկանցն. — Արասցես նմա տեղիս ճրագուց եւթն. — Եմուտ զօրն ի տեղի մեղուացն. — Առաջինիք զտին եւ ընտրին իբրեւ զոսկի սուրբ եկեալ ի — աց. — Եկեղեցի տեղի հիւանդաց է ամենայն մեղաւորաց. — Տեղի ձուլելոյ ձեզ պատրաստեցից զԵրուսաղէմ. — Մտանէր ի ներքս ի տեղի ճաշելոյն. — Ցամենայն տեղիս անապատս տեղիս մենանալոյ շինէին. — Որ զսրբութիւն սիրեցին, ի տեղի սրբութեան Աստուծոյ հանգիցեն. — Այս արուեստք քան զամենայն արուեստ լաւագոյն է. սորա — յերկինս շինեալ է։

---

Եղէն մասնիկն ի՛նչ նիւթ ըլլալը կը ցուցնէ, զոր օր. Փայտ, փայտեղէն, քուրձ, քրձեղէն, կը նշանակեն փայտէ, քուրձէ։

**Հարցարան.** — Ի՞նչ կը ցուցնէ եղէն։

**Հրահանգ 235.** — Հետեւեալները գրաբարի վերածեցէք. — Երբեք Դուրդէ չհագաւ, այլ միայն կտաւէ. — Հաւը թող ուտէ խեցիէ անօթի մէջ. — Ամէն փայտէ անօթ թող ջրով լուացուի (լուացի). — Իմ ձեռքս տուր երկաթէ կամ փայտէ ամանը. — Փափաքեցան անոր ինչպէս գարիէ նկանակի. — Նա հոն կանգնեց քարէ արձան. — Պիտի փնտռեն ոսկիէ եւ արծաթէ անօթներ։ — Հողէ սեղան շինեցէք (արասջիք) ինձ եւ անոր վրայ

*ձեր ողջակէզներն ըրէք (արարջիք). — Բեհեզէ պատմուճաններ չինեցին (արարին). — Երանին ծածկէչ մազէ փեղկեր չինեց. — Կաւէ ամանը կը փշրուի. — Տէր Աստուած Ադամին եւ անոր կնոջը մաշկէ հանդերձներ չինեց. — Աշխարհ նիւթէ է եւ այս նիւթերը զատ զատ են. — Զամիշէ կտապներ (տճկ. [illegible]) կը սիրէին. — Քարէ լեռներ փոշիի պէս թափուեցան. — Բուրձէ վրաններու մէջ բնակած էին. — Ատիկա ներսէն կաւէ է եւ դուրսէն պղնձէ։*

---

*Եայ մասնիկն ի՛նչ նիւթէ ըլլալը կամ ո՛րչափ ժամանակուան ըլլալը կը ցուցնէ, զոր օր. Աղիւս, աղիւսեայ, կը նշանակէ աղիւսէ. չորեքօրեայ, կը նշանակէ չորս օրուան։*

**Դիտելիք.** — *Եայ մասնիկն երբեմն ալ ուրիշ նշանակութիւն կուտայ, զոր օր. Սրտեայ, բազմաչեայ, անձնեայ, աշտարակեայ, որկորեայ, սեւամաղձեայ, տասնաղեայ, տասնկանգնեայ, պաշտօնեայ։*

*Դարձեալ եայ մասնիկն ի՛նչ ազգէ ըլլալը կը ցուցնէ, զոր օր. Ցետ վճարելոյ ճակատուն՝ որ ընդ ասորեստանեայս, խաղաց նոյն զօրութեամբ զկողմամբք Ասորեստանի. Ցառաջ քան զտիրելն Նինոսի Ասորեստանեայն եւ Նինուէի՝ ժողովէ զբազմութիւն արանց։*

**Հարցարան.** — Ի՞նչ կը ցուցնէ *եայ* մասնիկը։

**Հրահանգ 236.** — (Աշակերտն հետեւեալ գոյականներէն ածանցեալներ շինէ եւ յաջորդ հրահանգին մէջ բուն պատասխանի տեղւոյն դնէ). — *Ծաղիկ. քուրձ. եղեւին. բեհեզ. պրտու. այծ. կտաւ. եղէգն. փայտ. փղոսկր. ոսպն. մագաղաթ. մետաքս. քառասնօր. երկլուսին. առօրին. ասր. հինօր. աղիւս. կիճ. չուան։*

**Հրահանգ 287.** — *Եւ արար խարազան —. Ասցէ զխայտն —. Արար նմա պատմուճան —. Զգեցոյց նմա պատմուճան —. Ա՛ռ մայր նորա տապանակ —. Արե- գակն եղեւ սեաւ իբրեւ զկապերտ —. Արասցես նոցա ձորձս —. Յուսացեա՞լ լիցես ի ցուպն —. — պահանգս կապէլին ի մէջ որմոյն. Արար արքայ աթոռ — մեծ. Յակոբ ետ Եսաւայ հաց եւ թան —. Արասցես նոցա ձորձս —. Երկին իբրեւ զ— գիրս գալարէր. — հով- ուաց եւ անդէորդաց — զգեցոյց պատմուճանս. Դա- ղարէ առ գետոյն — աւուրս. Երբեմն իբրեւ մատաղոր- եայ եւ երբեմն իբրեւ զ— երեւէր. Յ— տունս բնակ- եալ եմք. — Անդ էին թակոյկք — վեց։*

---

*Աւոր կամ ուոր մասնիկն ունեցող, վրան կրող կը նշանակէ. զոր օր. Սգաւոր, սուգ ունեցող։*

**Հարցարան.** — Ի՞նչ նշանակէ *աւոր* կամ *ուոր* մասնիկը։

**Հրահանգ 288.** — (Աշակերտն հետեւեալ գոյականնե- րէն ածանցեալներ շինէ եւ յաջորդ հրահանգին մէջ ըստ պատշաճի տեղւոյն դնէ). — *Արուեստ. լոյս. աղեղն. պճեղն. պար. վարս. պարս. երախտիք. յանցանք. աւետիք. հաւատք. մաքս. մեղք. գոգ. զօրութիւն. դաշն. անցք. վաստակ. գէս. երաշխիք. արգոյ։*

**Հրահանգ 289.** — *Ամենայն — զխուր արուեստն ինքն գիտէ եւ օգտեալ է յարուեստէն. Տգեղագոյնքն իբրեւ զ— երեւէին սքանչելիք. — Եղիցին — ի հաստա- տութեան երկնից։ Էր Աստուած ընդ մանկանն եւ աճեաց եւ եղեւ* աղեղն ունող. *Արասցես վտաւակս — համակ կապուտակ. Առին զամենայն պարօղսն եւ մուծին ի*

սրահս . Հանգեաւ ի ներքոյ — ծառոց . Եւ — ձգէին քարինս . Արքն — էին մեզ յոյժ . Զրախնդիր եւ — եմ յոյժ . Օծի նոքօք զորմս տաճարին ի ձեռն — . Եւ էր նորա դուստր մի — . Ընդ —ս եւ ընդ —ս ուտէ եւ ըմպէ . Երանի՛ — զի նոքա մխիթարեսցին . Թողին լքին զառագաստս — . Փութայր հասանել ի սահմանս բնակութեան , ի սիրտ եւ ի մարմին վստահացեալ արանց — . Որ ոխս ունի ընդ եղբօրն , դաշն ունող է սատանայի . Որդի — է եւ ի — ազգէ . Զկարեմք յաղթել ոչ միայն — , այլ եւ չնչենոցն . Այր եթէ գէսս ունող է , անարգանք են նմա . Բայց կին եթէ — է , փառք են նմա . Զշնորհ — ի մի՛ մոռանար , զի ետ զանձն իւր վասն քո :

---

Եղ մասնիկն ունեցող կը նշանակէ , զոր օր. Զօրեղ , զօրութիւն ունեցող :

**Հարցարան.** — Ի՞նչ կը նշանակէ եղ .

**Հրահանգ 240.** — (Աշակերտն հետեւեալ գոյականներէն ածանցեալներ շինէ եւ ըստ պատշաճի տեղւոյն՝ յաջորդ հրահանգին մէջ դնէ) . — Կարշն . մարմին . ասուի-թիկն . զօրութիւն . ահ . ուշ . հիւթ . ոյժ . հանճար . շուք . աչք . հզօր :

**Հրահանգ 241.**— Առի ի ձէնջ արս իմաստունս եւ — . Ընտրեաց նա զերկիր պարարտ եւ — . — եւ երեւելի քան զամենեսեան երեւէր . Այր եղեւ առաւել արտեայ եւ — . Ժողովեաց մանկունս ընտրեալս — . Երեւեցան երկու արք երիտասարդք — ի զարդ գեղեցիկ զարդարեալք . Մխիթարեցան ի բանից անտի Յու- [illegible] — եւ ի գեղեցիկ . Զայն — տեսիլ տեսեալ զար-

*Հուրեցան բնակիչքն . Կին մի երեւեցաւ — , բարձրահասակ եւ կարմրայտ . Որպէս նայն թաւ եւ — է . Արջ եւ առիւծ եւ վագր — եւ կարճապարանոցք են . Ուժեղագոյնս գործէ եւ — . Ցանդեայ ընթացաւ , փախուկ եւ — ածեալ որթ՝ ցծառայն տայր ։*

---

*Որդ մասնիկն* արհեստ *կամ* գործ *կը ցուցնէ . զոր օր. Որսորդ , որս ընող ։*

**Հարցարան.** — *Որդ* ինչ կը նշանակէ ։

**Հրահանգ 242.** — (Աշակերտն հետեւեալ գոյականներէն ածանցեալներ շինէ եւ յաջորդ հրահանգին մէջ ըստ պատշաճի տեղւոյն դնէ) . — *Խաղալ (կաշի , մորթ) . որս . ցանց . սայլ . այգի . նաւ . լողալն . հակառակ ։*

**Հրահանգ 243.** — *Առաքեաց — հմուտս նաւարկութեան . Եթէ անկանիցի՞ թռչուն առանց — . Կոչեաց առ ինքն զայգեգործ . — ընդ ոտս անկեալ՝ հեղձուցանէր . — տեսեալ զոսկերս մարդկան՝ թաղեցին ի նոյն հորս . Սա եկեալ էր առ Սիմոնի ումեմն — . — եւ ուռկանաւորքն սուզ առցեն . Ո՞վ է — բարւոյն , եթէ ոչ սատանայ ։*

---

*Ացի կամ ցի՝* ո՞ր երկրէն *կամ* հայրենիքէն *ըլլալը կը ցուցնէ , զոր օր. Ասիացի — Ասիոյ բնակիչ ։*

**Գիտելիք .** — *Իսկ* եան *մասնիկը* սերունդ *կամ* վերաբերութիւն *կը նշանակէ . զոր օր. Աբրահամեան , Աբրահամու սերունդէն , Մակաբեան , Մակաբէի սերունդէն , Քրիստոսեան , Քրիստոսի վերաբերող ։*

**Հարցարան.** — *Ացի* կամ *ցի* ի՞նչ կը ցուցնէ ։

**Հրահանգ 244.**— Ուրիշ ի՞նչպէս կ'ըսեն, ով որ կը բնակի․ — *Պօլիս. Եւրոպա. Քաղդէա. Ասորեստան. դաշտ. գիւղ. քաղաք. գաւառ. Գաղատիա. Սուրիա. Բերիա. Ատանա. Խրիմ. Վիեննա. Աւստրիա. Տաճկաստան. Գերմանիա. Գաղիա ։*

---

*Ացու կամ ցու՝ ապագայ պաշտօն կամ վիճակ եւ կամ յարմարութիւն կը ցուցնէ, զոր օր. Քահանայացու, քահանայութեան պատրաստուած մարդ ։*

**Հարցարան.** — Ի՞նչ կը ցուցնէ *ացու* կամ *ցու* մասնիկն ։

**Հրահանգ 245.** — Ի՞նչ կ'ըսուի ով որ յարմար է ըլլալ. — *Փեսայ. հարսն. եպիսկոպոս. առաքեալ. մարտ. մահ. ապականում. պիտանի. կենդանի. զինս ։*

---

*Ենի մասնիկն՝ եթէ պտուղ ցուցնող բառի վերջը դրուի, ընդհանրապէս անոր ծառը կը նշանակէ. իսկ եթէ կենդանեաց անուններու վրայ դրուի՝ անոնց մորթն կամ միսը կը նշանակէ, զոր օր. Թզենի, թուզի ծառ. գայլենի, գայլի մորթ կամ միս ։*

*Ծառերու անուններն երբեմն միայն ի ով կ'ածանցուին, զոր օր. Տանձ, տանձի ։*

**Գիտելիք.** — *Պէտք է գիտնալ նաեւ թէ ենի, անի, ի մասնիկներն ուրիշ բառերու վերջն ալ կցուելով՝ անոնց այլ եւ այլ նշանակութիւններ կուտան, զոր օր. Երկաթի, արծաթի, մատանի, այրի, կորովի ։*

**Հարցարան.** — Ի՞նչ կը նշանակէ *ենի*. — Ծառերու անուններն երբեմն ինչո՞վ կ'ածանցուին ։

**Հրահանգ 246.** — **(Աշակերտն նշուեալ բառերէն ածանցեալներ շինէ եւ յաջորդ հրահանգին մէջ ըստ պատշաճի տեղւոյն դնէ).** — *Բեւեկն . արմաւ . նուռ . ոչխար . ուղ . վարդ . սարդ . տանձ . ձէթ . թուզ . խոզ . դեղձ . սերկեւիլ . գառն . աղուէս . ընկոյզ . խնձոր . կաղին . արծաթ . սամոյր . կնգուղ . գայլ :*

**Հրահանգ 247.** — *Թողցես զնոսա մերձ ի* ծառ տանձի. *Ոչ տնկեցէք դուք զայգիս եւ* ծառս թզոյ. *Կանգնեաց զնա ի ներքոյ* բեւեկն ծառոյ. *Ինքն բնակեալ էր ընդ (գործի.)* արմաւ ծառոյ. *Պատեցաւ գլուխ նորա ընդ (գործի.)* կաղին ծառոյ. *Դաւիթ եղանէր ընդ զառիվերն* — . — *ծաղկէ գուշակ գարնան: Մի՛ լինիր փոյթ իբրեւ զ* —՝ *որ յառաջն ծաղկէ.* Մորթ ոչխարի *է՞ր ես զգեցեալ եւ ոչ ոսկի.* Մորթս ուղի *ագոյց ի բազուկս նորա եւ ի վերայ մերկոյ պարանոցի նորա. Ծաղկեցէք որպէս* զծառ վարդի *բուսեալ ի գնացս ջուրց. Ածեալ գա՛յլ ի բերան տախտակին ուտել* միս խոզի. Մորթս աղուեսու *զանձամբ արկեալ նստէին. Որ գան առ ձեզ ի հանդերձս* գառանց *եւ ի ներքոյ են գայլք յափշտակողք. Յառաջագոյն բոյս արձակէ* ծառ ընկուզի *եւ յետոյ ծաղկէ.* Ծառք խնձորոց *էին ոսկեգոյնք, որ զխանձուածս պտղոյն ունէին. Յանդիմանել սկսաւ* ծառ դեղձի զծառ սերկեւլի. *Եւ կան հաստատեալ աւազանքն* արծաթ *մինչեւ ցայսօր ժամանակի.* Մորթս սամուրի եւ կնգմոյ *ագանէր. Հաստատեաց մեզ Աստուած այգի, ուստի լինի գինի ուրախարար սրտից մերոց, արար եւ — գի լցի ի նմանէ խուղ:*

*Ակ, եակ, իկ կամ ուկ՝ նուազութիւն, փոքրկութիւն եւ կամ փաղաքշանք կը ցուցնեն, զոր օր. Փոքր — փոքրիկ. Հայր — հայրիկ։*

*Առաջինը պզտիկ, երկրորդը փաղաքշանք կը ցուցընեն։*

**Հարցարան.** — Ի՞նչ կը ցուցնեն *ակ, եակ, իկ* կամ *ուկ*։

**Հրահանգ 248.** — (Աշակերտն հետեւեալ բառերէն ածանցեալներ շինէ եւ յաջորդ հրահանգին մէջ ըստ պատշաճի տեղւոյն դնէ). — *Սկունդ. տուն. բոյն. ոչխար. պարտէզ. արկղ. խուց. բլուր. քաղցր. մանր. նաւ. նաւակ. պատանի. կարմիր. եղէգն. ձորձ. հաց. ջուր. անասուն. փոքր. մայր։*

**Հրահանգ 249.** — *Պատանիս չիցէ ընդ մեզ. Տատանեալ հոգիս ի յայսմ աշխարհի՝ մարմնոյս շինուածով իբր ի նաւի. Անկեալ դնի լուծեալ իբրեւ զ — ինչ յալեաց ծփանաց. Ցո՞յր ձեռն թողեր զաակաւ ոչխարս յանապատի անդ. Առեալ զմեզ յիւր պարտէզ մուծանէր. Որպէս — առ հսկայիւ. Առաջի մեծամեծաց խուց յանդիմանեաց զիս իբրեւ սկունդ մի. Երթայր ընդ նմա ի տուն իւր. Կրկնոց փոքր առնէր նմա մայրն իւր. Անձրեւ քաղցր ատտ ցօղեաց, ձայն աւետեաց որոտաց. Ջիւրեանց անասունն առնուին ի նոցանէ. Առաքեցեր ինձ — ոսկւով. Գտեալ բլուր մի՝ ի նմա երթեալ բնակէր. Ծիծառն յորժամ զտառապանաց — կամիցի շինել. Երկն ի ծովուն ունէր զկարմիր եղէգն. Ընդ եղեգան փող՝ ծուխ ելանէր. Ի փոքր ինչ խցի դադարեցուցանեն զանձինս. Ընդէ՞ր ոչ ուտես, հա՛յր. Թրխատոս եւ ոչ զկարեւոր ձորձն ունէր. Լաւ համարի լոկ զհացն եւ զջուրն։*

*Ուս, յաճախութիւն կամ առատութիւն կը ցուցնէ, զոր օր. Ճախճախուտ, խիտ թաց՝ ջրոտ։*

**Հարցարան.** — Ուս ինչ կը ցուցնէ։

**Հրահանգ 250.** — (Աշակերտն հետեւեալ գոյականներէն ածանցեալներ շինէ եւ յաջորդ հրահանգին գծերուն մէջ ըստ պատշաճի տեղւոյն դնէ). — *Լպիրծ. եղէգն. աւազակ. փախ. վէմ. մացառ. յորձանք. աղջամուղջ. խաւար. խոնաւ. սառնամանիք. թաւ. քար. տիղմ. շամբ. ծանծաղ։*

**Հրահանգ 251.** — *Մտեալ յանտառ (յորում է եղէգն առատ՝) գտին անդ զեղբայրն. Հորդեցէք զհոգւոց ձեռոց զառատ մացառօք ճանապարհ. Ջյորձանայոյզ ձորմն լցուցեր. Մտեալ ի —՝ թաքեաւ անդ. Եւ աստուստ դարձեալ ընդ անապատն եւ ընդ (գահավէժ) վայրս. Արշաւէր ընդ խորտաբորտս եւ ընդ (յորում է վէմ առատ) տեղիս. Յորժամ երկիր — լինի, ոչ կարէ ըմպել ջուր յստակ եւ սրբահամ. Եւ ոչ յորժամ ընդ — տեղիս դիմեալ զընկերն ոք տեսանիցէ, եւ ասիցէ թէ եղեռն գտանէ, նա ինչ լիցէ պատճառք վնասուն. — Վկայ՝ որ ի վերոյ մեր է երկինս աղջամուղջ եւ սիրելի երկիրս. Անկաք ի խիստ — թուփս դժնըկաց. Որք ընդ — ճանապարհդ գնան, գայթակղին. Ի խաւար վայրի կայ. Այն՝ որ ցամաքայինքն են, լինին յետոյ —։ Ծառագայթք արեգական ցուցանեն զքարինս ի մէջ ջուրցն ի — տեղիս. Զմտաւ ածէր զընութիւն աշխարհի, զի պարզ եւ — էր. Որ զխիստ եւ զֆարաշից երկիր վարեն։*

---

Ոտ մասնիկն ունակութիւն կամ ախտ կը ցուցնէ, զոր օր. Բորոտ, կասկածոտ:

Գիտելիք. — Իսկ ատ մասնիկն կը նշանակէ զրկում կամ կտրատութիւն, զոր օր. Գունատ, ականջատ, ծայրատ:

Հարցարան. — Ի՞նչ կը ցուցնէ ոտ մասնիկը:

Հրահանգ 252. — (Աշակերտն հետեւեալ գոյականներէն ոտ մասնիկով ածանցեալներ շինէ եւ յաջորդ հրահանգին մէջ ըստ պատշաճի տեղւոյն դնէ). — Քոս. նախանձ. վեհերիլ. ծիծաղել. կակազ. ծակ. դողդոջ. ցաւ. որքիւն. հիւանդ. երկնչել. մեռանել. մամուռ. քար. եռանդն. պատկառել. յաչաղել. մոռանալ:

Հրահանգ 253. — Եղեւ ձեռն նորա — իբրեւ զձիւն. Ձի եւ ես այր եմ ծերացեալ եւ — . Զայնոսիկ՝ որոց է մամուռ կամ քոս կամ որքիւն՝ մի՛ մատուցանիցեն Տեառն. Ժողովէր զամենայն ախտաժէտս եւ զամենայն — . Ոչ իբրեւ զարդարակորով, այլ իբրեւ զնենգաւոր եւ զկասկածաւոր առեալ մեկուսի զմարդն զեղծուցանէր. Զօրացարուք ձեռք լքեալք եւ ծունկք — . — է հասակ երիտասարդութեան. Ոռքովամ էր մանուկ եւ — սրտիւ. Փոր մորոսի իբրեւ զաման — եւ զամենայն գիտութիւն ոչ կալցի. Երանի՛ տայ սգաւորաց եւ եղուկս կոչէ (զայնոսիկ՝ որք ծիծաղին). Մովսէս — էր. Խառնեաց զանձեան ընդ — ս. Մի՛ բնաւ — լիցուք ի սաղմոսս եւ յօրհնութիւնս. Որ յաչաղէ՝ ոչ միայն զընկերն, այլ եւ զանձն իւր կորուսանէ. Աչք նախանձաւորին տրտմութիւն ծնանին. Ի — ս շառագունութիւն է. Ի ժողովս ժողովրդոց մի՛ — լինիցիս:

---

*Ուն մասնիկն օղի զօրութիւն ունի. զոր օր. Շարժուն, շարժող։ Իսկ աւէտ՝ առատութիւն նշանակող մասնիկ մ'է. զոր օր. Մրգաւէտ։*

**Հարցարան.** — *Ուն* մասնիկն ինչի զօրութիւն ունի. — *Աւէտ* ինչ կը նշանակէ։

**Հրահանգ 254.** — Գրաբարի վերածեցէք. — *Յոյները մենէ սորվելով մածունը՝ եւ նոյն անուամբ կը կոչեն զանի. — Աստուծոյ պարգեւ (տուրք)՝ համեստ (ցածուն) կինը. — Անոր լաթերը շատ փայլուն սպիտակ եղան. — Ինքն առաւ իմաստուն ընտիր մարդեր այն ծերակոյտ ժողովրդէն. — Տրուած օրէնքներն հաստատ կը պահէին. — Դուն կակուղ եւ զարդարուած անկողիններու մէջ կը քնանաս եւ անիկա ցուրտէն կը մեռնի. — Ե՞րբ տեսար դուն կրակը քալող կամ խօսող կամ գիտցող. — Ի՞նչու համար կենդանիներէն ոմանք սողացող եւ ուրիշներն ուղղորդ (են)։*

**Հրահանգ 255.** — Գրաբարի վերածեցէք. — *Բնակեցուց զանոնք արգաւանդ եւ հացն առատ տեղեր. — Կ'ուզէր զբօսնուլ հովիտներու եւ ծաղիկը շատ դաշտերու մէջ. — Նայէ՛ դարձեալ միւսին՝ որ ասոր նման է, ընչաշատ, խաշնը շատ, նշանաւոր հարուստը. — Կային պտղաբեր, միրգը շատ ծառեր. — Կը բաշխէ փրկութիւնը շատ կենդանարար մարմինը. — Անո՛նք ամենէն աւելի հարուստ են՝ որոնք հաստատութեան ցանկութիւնն արհամարհեցին (առ ոտն կոխել)։*

---

## ԲԱՐԴ

*Բարդ կը կոչուի երկու կամ աւելի բառից բաղադրութիւնը, զոր օր. Ունայնասէր, ունայն եւ սէր արմատներէն կազմուած ։*

*Բարդ բառից կազմութեան մէջ կը մտնեն գոյական, ածական, դերանուն, նախդիր, բայարմատ եւ մակբայ ։*

*Բարդ բառերն առհասարակ իրարու հետ կը կապուին ա գրով եւ երբեմն ե կամ է դրերով եւ երբեմն ալ առանց յօդի ։*

*Աով կը կապուին երկու բառեր, եթէ առաջինը բաղաձայնով վերջանայ եւ երկրորդը բաղաձայնով սկսի, զոր օր. Բանագէտ, սովամահ, մարդաչատ ։*

*Իսկ հոլովական փոփոխում կրող բառերը կը բարդուին այսպէս, Ատեան՝ դպիր, ատենադպիր. դեւ՝ հար, դիւահար. գիր՝ գէտ, գրագէտ. գիր՝ գիր, գրագիր ։*

**Հարցարան.**— *Բարդ* որն կ'ըսուի. — Անուանց բարդութեան մէջ ինչ բառեր կը գործածուին. — Բարդութեան մէջ որ գրերը կը գործածուին.— Որնք աով կը կապուին. — Հոլովական փոփոխում կրող բառերն ինչպէս կը բարդուին։

**Հրահանգ 256.** — **Հետեւեալներէն բարդ բառեր կազմեցէք.** — *Ունայն-միտ. դիւան-պետ. լայն-փոր. յառաջ-դէմ. մեծ-մարմին. բարի-գործ. ոսկի-սանձ. գերի-վար. այգի-գործ. որթ-տունկ. ծով-եզր. մեծ-միտ. վրէժ-խնդիր. նոր-ծիլ. վատ-նշան. խիստ-պարանոց. արժան-փառ. նոր-սքանչ. կաթն-կեր. ձեւն-տու. ողջ-անդամ. արեւ-կէզ. գլուխ-վճար. բարի-միտ. ախորժ-համ. ակն-աղբիւր. աղաւնի-տուն. աճիւն-խառն. ամաւր-պարիսպ. այգի-կութ. այծ-երամակ. առատ—*

*չնորհ. առոյգ-անձն. արձան-գիր. բարի-բախտ. բարձր-թռիչ. երկան-քար. երկիր-գործ. զարդ-սէր։*

**Հրահանգ 257.** — (Տեղագիր բառերը բարդ բառի վերածեցէք). — *Ամենեքին գովեն* զսիրողն ընտանեաց. — *Որ ի բնէ էր* կորովի յարդարութեան *եւ* խորհեր զիրաւն. — *Երկիր քո* լարիւ բաժանեալ *բաժանեսցի.* — *Արծուին մեծ՝* լի մազօք. — *Ի* կրօղ *խաչի գունդն խառնէր.* — *Մի՛ լինիր* դատարկ ի բանս *եւ* սիրող ծաղու. — *Ամենեցուն պարտ է* սիրողս ծնողաց *լինել.* — *Ե՛րթ ի բուրաստան ուրեք եւ ի* ծովակս իբր լիճ. — *Ամաչեսցեն* գործօք զկտաւս. — *Միթէ զօրն ամենայն վարէ՞* որ հերկս հարկանէ. — Աստեղօք օտարաց *եւ* մերձօք հիւրից *էին Եգիպտացիք.* — *Թէ յարիցէ ի վերայ իմ* մարտ ճակատու. — *Զայս իբրեւ ետես* բարձօղն զմանուկ՝ *կալեալ կարմիր ի ձեռինն.* — *Ոչինչ առաւել է մարդ քան զխոտ եւ քան զծաղիկս՝* որ վաղ թարշամին։

---

*Երբեմն միեւնոյն բառն ինքնին կը բարդուի առանց ա յօդակապի. զոր օր. Պէսպէս, բեկբեկ, ծործոր։*

*Ինքն ինքեամբ բարդուող բառեր ալ կան ա յօդակապով, զոր օր. Զարաչար, մեծամեծ, գունդագունդ։*

*Այսպիսիք երբեմն իրենց երկրորդ բառին մէջ գիր կը փոխեն, կամ նոյն բառին սկիզբը մի կը փոխուի եւ կամ եթէ ձայնաւոր է, մ գիրը կ'աւելնայ, ինչպէս. Աղխամաղխ (հակ հակ), աղջամուղջ (մթութիւն), խաժամուժ, բարձրաբերձ, ժանտաժուտ։*

**Հարցարան.** — Բառ մը երբեմն ինչպէս կը բարդուի. — Ինքնին բարդուող բառեր ի՞նչ կ'առնուն. — Այսպիսիներ երբեմն գրի ինչ փոփոխութիւն կ'ունենան։

**Հրահանգ 258.** — Տեղագիր բառերն իրենք իրենց բարդեցէք. — Ա. *Գնայր եւ վազէր. — Ամենեւին պատճառ եւ յանցանս եւ բաղայս ոչ գտանէին զնմանէ. — Ջհակառակութիւն ցածուցանէ լուռն.* — Բ. ա յօդակապով բարդեցէք. — *Զարդարեալ էր գոյն գոյն նարօտիւք եւ պատուական հանդերձիւք. — Վերանան ջուրքն ի բարձունս վերինս դէզ դէզ կուտակեալ. — Մօրուքն այն ինչ դեռ դեռ ծաղկեալք. — Տեսի զշեղջ շեղջ անկելոցն առ միմեանս. — Գէշ գէշ պատառեցան:*

---

## *ՄԱՍՆԱՒՈՐ ԿԱՆՈՆՔ*

*Եթէ ի, ա՛ իրարու հանդիպին, տեղ տեղ եւ ի կը փոխուին, զոր օր. Բարի՛ արար, բարեբար. գինի՛ արբու, գինեբբու:*

*Եթէ առաջին բառը բաղաձայնով վերջանայ եւ երկրորդը ձայնաւորով սկսի, առանց յօդակապի իրարու կրնան կցուիլ, զոր օր. Բանտարգել, մարդատեաց, ծովեզր, կենցաղօգուտ:*

*Ա յօդակապին տեղ քիչ անգամ կը գործածուին ե, է, ի, ո. ինչպէս. Հնգեստասան, օթեվան, յորդեգնաց, ընդոծին:*

**Դիտելիք.** — *Երբ առաջին բառը ձայնաւորով վերջանայ, թէ իր բնիկ գիրն ըլլայ այն եւ թէ հոլովական փոփոխմամբ ընդունած, ա յօդակապը կ'առնու. Զոր օր. Ճակից, դիւազարդ, մնոտիապաշտ, ազնուացութ.*

*Բարդութիւնք բացի ուղղականէ՝ սեռական եւ հայցական հոլովներով ալ կը կազմուին, զոր օր.*

Ուղ. *Հայրանենգ, ձիւնափայլ, մասնանիշ:*
Սեռ. *Հօրաքոյր, կանանցաբարոյ, ցաներէց, չարեացապարտ:*
Հայց. *Բանսարկու, կենսատու, օրէնսդիր:*

*Բարդութիւնք կ'ըլլան նաեւ դերանուններով, նախադիրներով, մակբայներով, բայերու արմատներով, դերբայներով եւ բայածականներով, զոր օր. Դիւրիմաց, օձահար, իւղեփեաց, շիջեղափառ, դժուարաբուժելի, ինքնաբոյս, քոյինաշունչ, ընդարձակ, առքերեւ, դեռաբոյս, հանապազասուտ։*

*Բարդման մէջ բայանունը բայի զօրութիւն ունի եւ միւս գոյականը՝ սեռի կամ բնութեան խնդրոյ, զոր օր. Որդեսէր, կազմուած է որդի եւ սիրօղ բառերէն։*

*Նախադաս գոյական անունը շատ անգամ իբրեւ յատկացուցիչ կ'առնուի երկրորդին, զոր օր. Աստուածորդի, որդի Աստուծոյ. գանձատուն, տուն գանձուց։*

*Գոյական ածականի հետ, ածական ածականի հետ եւ ածական գոյականի հետ բարդուած բառերը գրեթէ առհասարակ ածական են. միայն երբեմն ածականէ եւ գոյականէ բարդուած բառեր գոյական նշանակութիւն կ'ունենան։*

*Գոյական գոյականի հետ բարդուած ատեն՝ եթէ երկրորդը բայի կամ դերբայի միտք ունենայ՝ բառն ածական կ'ըլլայ, զոր օր. Արծաթասէր։*

*Երբ փոխանակ երկու բառէ ըլլալու՝ երեք կամ չորս բառերով ըլլայ բարդութիւնն՝ այն ատեն կը կոչուի յարաբարդ, զոր օր. Ամա-նոր-աբեր, միա-բան-ասէր։*

**Հարցարան.** — *Ի, ա* ինչի կը փոխուին. — Բարդութիւնք երբ առանց յօդակապի կ'ըլլան. — *Ա* յօդակապին տեղ ինչ գրեր կը գործածուին. — Բարդութիւնք ինչ հոլովներով կը կազմուին. — Ուրիշ ինչ բառերով բարդութիւններ կ'ըլլան. — Բարդման մէջ բայանունն ինչ բանի զօրութիւն ունի. — Նախադաս գոյականն ինչ կ'ըլլայ շատ անգամ. — Ո՞ր ժամանակ բարդութիւններն ածական են առհասարակ եւ երբեմն ալ գոյական. — Ե՞րբ գոյական գոյականի հետ բարդուած ատեն ածական կ'ըլլայ բարդեալն. — *Յարաբարդ* որու կ'ըսուի։

**Հրահանգ 259.** — **(Աշակերտն հետեւեալ զոյգ դրուած գոյականներէն բարդութիւններ կազմէ եւ յաջորդ հրահանգին գծերուն մէջ ըստ պատշաճի տեղւոյն դնէ).** — *Ջուր—աղաց. Նուրբ—ձայն. յերկար—բան. խոր—գէտ. բարկութիւն—սիրտ. երաժիշտ—պետ. նաւ—վար. ոխ—պահ. ոսկի—գործ. որդի—սէր. որմ—փակ. պակաս—միտ. պանդոկ—պետ. սով—մահ. քաղաք—որմ. օր—հաս. բարի—կամ. խոստովանութիւն—հայր. կարճ—միտ. Թմբիր—դեղ։*

**Հրահանգ 260.** — *Գնայր—առ — խոստովանել զմեղս. Խօսէր Տէր ընդ Մովսիսի դէմ յանդիման. որպէս ոք՝ զի խօսիցի ընդ — իւրում. Կապեցին զնա յանիւ — ի եւ ջուրն արգելաւ. Ոմանք ի բաղաձայնից ստուարաձայնք են եւ ոմանք —. Պարտ է համառօտել եւ ոչ — իմաստաւորել. Այր երկայնամիտ բազմապատիկ է խորհրդովք, իսկ — յոյժ անմիտ է. Կերակրեա՛ զանձն իմ —. Ասէ —. Կամիմ զառագաստ վերացուցանել. Ուղտն չարայուշ է եւ —. Պարապէր — զտեղիսն. Լաւ է — երկիւղած՝ քան որ լին է մտօք. Առեալ զակն՝ եւ յԵրուսաղէմ եւ եցոյց զնա —. Որպէս հարք գթածք առնեն եւ մարք —. Զքաղաքս — պարսպեն. Պանդոկն եկեղեցի Աստուծոյ. — Առաքեալք եւ նոցին նմանօղք վարդապետք եկեղեցւոյ. Ահագին — մահու հասուցանէին. Եղերուք — իբրեւ զօձս եւ միամիտք իբրեւ զաղաւնիս. Արբուցանէին — եւ անկանէր այրն ի մտաց. Բազում անգամ է տեսանել զգազանս վայրենիս՝ հանդարտացեալս. Երաժշտականն գործի ի — անտի ունի զհնչելն եւ զնուագելն։*

# ՎԱՐԺՈՒԹԻՒՆՔ

# ԱՇԽԱՐՀԱԲԱՐԷ ԳՐԱԲԱՐ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԵԱՆՑ

## (ԱՌԱԿՔ ԼԷՍԻՆԿԻ)

---

### 1. ՇԻԿԱՄՈՒԿՆ ԵՒ ՄՐՋԻՒՆՔ

«Հէք մրջիւններ, կ'ըսէր շիկամուկ մը. ձեր յոգնութեանց փոխարէնն է ամբողջ ամառն աշխատելով այնչափ քիչ բան քաղելը. Եթէ տեսնէիք իմ պաշարներս։»

— Մտիկ ըրէ, պատասխանեց մրջիւն մը, եթէ անոնք քու պէտքերէդ աւելի մեծ են, շատ իրաւացի է որ մարդ կը հալածէ քեզ գետնին տակ, կը պարպէ քու շտեմարաններդ և քու յափշտակող ագահութեանդ համար քու կեանքդ տուժել կուտայ։ »

*Ցոգնութիւնմ*, վասեակ.
*Մտիկ ըրէ*, ունկն դիր.
*Կը պարպէ*, թափուր գործէ։

---

### 2. ԱՌԻՒԾ ԵՒ ՆԱՊԱՍՏԱԿ

Առիւծ մը իր ընտանութեամբ կը պատուէր նապաստակ մը՝ որ բարքով զուարթ էր։ — «Ճշմարիտ է արդեօք», օր մը հարցուց անոր նապաստակը, «Թէ չնչին աքաղաղ մը խօսելուն պէս բոլոր առիւծները ի փախուստ կը փութաք։»

— Այո, այո, պատասխանեց առիւծը. և դիտելի է առհասարակ եթէ մեծամեծ անասուններս այսպիսի դոյզն թերութիւն մը ունինք։ Այսպէս օրինակի համար, պիտի լսես փղին համար ըսուիլը թէ խոզի մը խանչիւնը կը շարժէ անոր դողն ու սարսափը։»

— Իրաւ, կ'ըսէ նապաստակն անոր խօսքն ընդմիջելով։ Այո, հիմա կը հասկընամ թէ ինչու համար մենք նապաստակներս այնքան սոսկալի վախ կը կրենք շուներէն։ »

*Դիտելի է առձեռնաբար, պարտ է դիտել յընդհանուրն.*

*Ըսուիլը*, համբաւ.

*Հասկընամ*, իմանամ.

*Թէ ինչո՞ւ համար մենք նապաստակներս այնչափ սոսկալի վախ կը կրենք շուներէն*, երբ վասն էր մեր նապաստակացս սոսկում մեծ է ի շանց։

---

### 3. ԱՐԱՄԱԶԴ ԵՒ ՁԻ

«Ո՛ հայրդ կենդանեաց և մարդկան, կ'ըսէր ձին մօտենալով Արամազդայ գահուն, կ'ըսեն թէ ես գեղեցկագոյն արարածներէն մէկն եմ, որոնցմով աշխարհը զարդարեցիր և իմ անձնասիրութիւնս կը ստիպէ զիս անոր հաւատալու։ Եւ սակայն չկա՞ն իմ վրաս ինչ ինչ ուղղելի բաներ։»

— Եւ ի՞նչ արդեօք կը մտածես թէ կարելի է քու վրադ ուղղելու բան մը. խօսէ, կ'ընդունիմ խրատը», ըսաւ բարի աստուածն և ժպտեցաւ։

— Թերեւս, շարունակեց ձին, աւելի արագընթաց պիտի ըլլայի, երէ իմ սրունքներս աւելի բարձր և նուրբ ըլլային, թերեւս չպիտի տգեղնայի կարապի երկայն պարանոցով, աւելի լայն կուրծք մը իմ զօրութիւնս պիտի աւելցնէր. և որովհետեւ վերջապէս զիս սահմանած ես վրաս կրել մարդը, քու սիրելիդ, կարելի էր որ բնութիւնը տար ինձ այն թամբը զոր հեծեալը բարեսիրութենէն իմ թիկանցս վրայ կը դնէ։»

«Լաւ, կրկնեց Արամազդ. համբերէ վայրիկ մի։» Արամազդ խոժոռ դիմօք արարչութեան բառն արտասանեց։ Այն ատեն կեանքը բղխեցաւ փոշիին մէջ. կազմակերպեալ նիւթը բաղադրուեցաւ և իսկոյն աստուածին գահուն առջեւ կանգնեցաւ ժանտատեսիլ ուղտը։

Տեսաւ ձին և քստմնելով դողաց սոսկումով և սարսափով։ «Ահա աւելի բարձր և աւելի նուրբ սրունքներ, կ'ըսէ Արամազդ, ահա կարապի երկայն վիզ մը, աւելի լայն կուրծք մը, բնութենէն տրուած թամբ մը։ Կ'ուզե՞ս, ո՛վ ձի, որ զքեզ այդպէս փոխեմ։»

Ձին տակաւին կը դողար։

— Օ՜ն անդր, շարունակեց Արամազդ, խրատդ այս անգամ առանց պատժոյ թող անցնի։ Բայց որպէս զի յիշես դուն երբեմն երբեմն զղջմամբ քու յանդգնութիւնդ, շարունակէ մնալ դու, ո՛վ նոր արարած. (Արամազդ այս խօսքերուն հետ ուղտին վրայ կը ձգէր պահպանող նայուածք մը) և թող ձին զքեզ երբեք չտեսնէ առանց դողալու։»

*Շարունակեց*, յաւել ասել, յառաջ մատոյց զբանս.
*Տգեղնալ*, անգեղանալ.
*Որովհետեւ վերջապէս*, հուսկ զի.
*Համբերէ՛*, համբեր.
*Կ՚սիպէ*, հարկէ.
*Արտասանել*, ձայնել.
*Սոսկումով եւ սարսափով*, ի սոսկումն եւ ի սարսափումն եկեալ.
*Շարունակէ՛ մնալ*, կաց մնա դու.
*Այս խօսքերուն հետ*, զոյգ ընդ բանիւս.
*Կազմակերպեալ նիւթը քաղադրուեցաւ*, կազմեցաւ նիւթ յօրինուածոյ։

---

## 4. ԳԱՅԼ ԵՒ ՀՈՎԻՒ

Ժանտ համաճարակ հիւանդութիւն մը հովուին բոլոր հօտը կոտորեց։ Գայլն իմացաւ այս և եկաւ իր ցաւակցական յարգանքը մատուցանելու։ «Հովի՛ւ, կ'ըսէ, իրաւ է որ դժնդակ աղէտք մը հարուածեց քեզ. կորսնցուցիր քու բոլոր հօտդ, հօտ սիրեցեալ և անուշակ և պարարտ։ Կը ցաւիմ քու վնասուդ համար և պիտի թափեմ ատոր վրայ արեան արցունքներ։»

— Շնորհակալ եմ, կրկնեց հովիւը, կը տեսնեմ որ կարեկից սիրտ մը ունիս։»

— Շատ կարեկից արդարեւ, աւելցուց հովուին շունը. ամէն անգամ որ ինքն ալ կը տառապի իր մերձաւորին աղէտքէն։»

*Գայլն իմացաւ*, ազդ եղեւ գայլուն.
*Հարուածեց քեզ*, հարկանիլ քեզ.
*Կը ցաւիմ քու վնասուդ*, ցաւ է ինձ ընդ վնասդ։

---

## 5. ԵՐԻՎԱՐ ԵՒ ՑՈՒԼ

Ամեհի նժոյգի մը վրայ հեծած կ'անցնէր խրոխտ և արագ մանուկ մը լի յանդգնութեամբ։

— Ի՛նչ ամօթ, աղաղակեց երիվարին՝ վայրենի ցուլ մը, ես չպիտի թողուի որ տղայ մը զիս վարէր։»

— Ինծ ինծ, կրկնեց երիվարն, ինչ պատիւ է մանուկ մը գետինը ձգել։»

*Հեծած*, աստանակեալ.
*Ի՛նչ ամօթ*, ո՛վ ամօթոյս։

---

## 6. ՄԼՐԻԹ ԵՒ ՍՈԽԱԿ

«Կ'ապահովցրնեմ քեզ, կ'ըսէր մլրիթը սոխակին, թէ շատեր կան որ կ'սքանչանան երգս լսելով։» — «Ատոնց անունններն ըսէ ինծ, կ'ըսէ սոխակը։» — «Ծիր հնձօղներ, կրկնեց մլրիթը, շատ ախորժելով մտիկ կ'ընեն ինծ և անտարակոյս չպիտի ուրանաս թէ ատոնք մարդոց ազգին մէջ օգտակարագոյն անձեր են։»

— Չեմ ուրանար զայդ, կ'ըսէ սոխակը. բայց ատով իրաւունք չունիս հպարտանալ անոնց կարծիքին վրայ։ Այդ բարի մարդիկը փափուկ ճաշակ մը չունին՝ որոնք միայն իրենց անձերն աշխատութեան տուած են։ Ուրեմն մի պարծիր քու երգիդ վրայ, մինչեւ այն օրն երբ անփոյթ հովիւն՝ որ ինքն ալ ախորժելի նուագներ կը զարնէ սրինգով, քեզ մտիկ ընէ քաղցր սքանչացմամբ։»

*Կ'ապահովցընեմ քեզ*, հաւատարիմ լիցին քեզ բանք իմ.
*Իրաւունք չունիս*, ոչ են քեզ իրաւունք.
*Նուագներ կը զարնէ*, ածէ նուագս։

---

## 7. ՓԻՒՆԻԿ

Շատ մը դարեր անցնելէ վերջ հաճոյ եղաւ փիւնիկ թռչնոյն նորէն երեւալ։ Երեւցաւ և ամէն անասուններ և թռչուններ ժողվուեցան

անոր շուրջ։ Զարմանալով և սքանչանալով, իրենց յափշտակութենէն դրուատեաց խօսքեր ըրին։ Բայց ընդհուպ անոնցմէ հեզերն և բարե-համբոյրները կարեկցութեամբ իրենց աչքերն անկէ դարձուցին և հառաչելով կ'ըսէին. «Եղո՜ւկ քեզ, փիւնիկ, անգութ բախտն ուզեց որ չունենայ ոչ սիրեցեալ, ոչ բարեկամ, վասնզի միայնակ է իր տեսակին մէջ։»

*Շատ մը դարեր անցնելէ ետք*, դարուց բազմաց ի վերայ անցեալ.
*Հառաչել*, յոգւոց հանել.
*Իր տեսակին մէջ*, յազգի իւրում։

---

## 8. ՍԱԳ

Սագի մը փետուրները կ'ամչցընէին նոր ձիւնը։ Խրոխտալով բը-նութեան այս ակնախտիղ պարգեւին վրայ, կարապ ըլլալու արժանի համարեցաւ ինքզինքը. մոռնալով անձին պայմանն, իր ընկերներէն կը հեռանար և կը լողար լճակին շուրջ առանձին և մեծավայելուչ։ Երբեմն իր պարանոցը կ'երկնցնէր և կ'ուզէր իր փոքրկութեան թռնի դարման ընել՝ որ ինքզինքը կը մատնէր, և երբեմն կը ջանար կարա-կնաձեւ կորացման շուք տալ իրեն, որով կարապը կ'առնու ապողո-նեան թռչնոյ արժանի տեսիլ. այլ զո՛ւր ջանք. խիստ քիրտ էր և իր բո-լոր ջանքերով չյաջողեցաւ ուրիշ բան ըլլալ, եթէ ոչ ծաղրելի սագ, առանց կարապ մը ըլլալու։

*Ամչցընէին*, յամօթ առնէին.
*Կը հեռանար*, ի բաց գնայր.
*Կը լողար*, ի լիճ անկանէր.
*Առանց կարապ մը ըլլալու*, ոչինչ զնմանութիւն փորոյ բերեալ։

---

## 9. ԿԱՂՆԻ ԵՒ ԽՈԶ

Ցաղբ կաղնիի տակ շատակեր խոզ մը կը պարարտանար ծա-ռէն ինկած պտուղներով։ Տակաւին չկլլած կաղին մը, ուրիշ մը աչ-քերով կը լափէր։

«Ապաշնորհ անասուն, աղաղակեց վերջապէս կաղնին. դուն իմ պտուղներովս կը կերակրուիս, այլ աչքդ վեր չես բարձրացներ երախտագիտութեամբ։» Վայրկեան մը խոզը կանգ առաւ և խանչելով պատասխանեց. «Չպիտի թերանայի իմ նայուածքներովս յայտնել իմ երախտագիտութիւնս, եթէ միանգամ գիտնայի թէ ինձ համար կը թողուս պտղոցդ թօթափիլը։»

*Վայրկեան մը*, առ. վայր մի.
*Չպիտի թերանայի*, ոչ աrղեof էr ինձ թէrանալ.
*Երախտագիտութիւն*, շնorհակալութիւն։

---

## 10. ՃՆՃՂՈՒԿՆԵՐԸ

Հինցած եկեղեցի մը՝ որուն մէջ անթիւ ճնճղկանց բոյներ կային, նորոգուեցաւ։ Անոր վերստին պայծառութեան տեսքին վրայ՝ ճնճղուկները դառնալով կը փնտռէին իրենց նախկին բնակութիւններն, այլ զանոնք պատերով գոցուած գտան։ «Ի՞նչ բանի պիտանացու է այդ մեծ շէնքը, աղաղակեցին. ճն, թողունք այդ անպէտ քարակոյտը։»

*Քարակոյտ*, կաrկառ fառանց։

---

## 11. ԱՌԻՒԾ ԵՒ ՎԱԳՐ

Առիւծն և նապաստակն երկուքն ալ բաց աչքերով կը քնանային։ Առաջինն՝ որ որսոց շատ նախճիրներ գործած էր, յոգնելով կը քնանար օր մը ահաւոր այրին սեմին վրայ։ Եկաւ վագրն անցնելու և ծաղրելով այն թեթեւ քունը կ'աղաղակէր. «Աներկիւղ առիւծը կը քնանայ բաց աչքով, բնութեամբ իբրեւ նապաստակ։»

— Իբրեւ նապաստա՛կ», մռնչեց առիւծը ցատկելով և իսկոյն ծաղրածուին պարանոցէն կը բռնէր։ Թաւալեցաւ վագրն իր արեան մէջ և յաղթօղն հանդարտելով վերստին քնացաւ։

*Բնութեամբ*, բուս բնութեան.
*Մռնչեց*, կօշեաց.
*Կը բռնէր*, վակձոյժ կալեալ էr.
*Պարանոցէն*, զփողից։

---

## 12. ԷՇ ԵՒ ԳԱՅԼ

Սովալլուկ գայլ մը իշուն պատահեցաւ. «Գթա՛ ինձ, կ'ըսէ էշը դողալով. եղուկ և տառապեալ կենդանի մ'եմ ես. նայէ քիչ մը, ինչպիսի փուշ մխուած է ոտքիս մէջ։»

«Արդարեւ կը գթամ քեզ, պատասխանեց գայլը, և պէտք է որ խղճովս փրկեմ քեզ ցաւերէդ։» Այս խօսքերն ըսելուն պէս և ահա էշը կտոր կտոր եղաւ։

*Մխուած է*, մխեալ ունի.
*Խղճովս*, ըստ խղճի մտացս.
*Կտոր կտոր եղաւ*, յօշ յօշ պատառեցաւ։

---

## 13. ՀԵՐԱԿԼԷՍ

Երբ Հերակլէս վեր երկինք առնուեցաւ, նախ և առաջ աստուածներէն Հերայի մատոյց իր մեծարանքը։ Զարմացաւ բոլոր երկինք և Հերա։ «Քու թշնամւոյդ իսկ առաւելագոյն մեծարանք կ'ընես։»—Այո՛, նոյն իսկ իրեն, պատասխանեց Հերակլէս, վասն զի անոր հալածանաց միջոցաւ ես շահատակութիւններ ըրի, որոնցմով երկնից արժանի եղայ։»

Ողիմպոսի հաճոյ եղաւ նոր աստուածին պատասխանն և ա՛լ դադրեցաւ Հերա զանի ատելէ։

*Նախ եւ առաջ*, զառաջինն.
*Զարմացաւ*, զարմանք կալաւ.
*Ալ դադրեցաւ*, ոչ եւս յաւել։

---

## 14. ՍԻՐԱՄԱՐԳՔ ԵՒ ՃԱՅ

Ամբարտաւան ճայը զարդարեց իր անձը փետուրներով, սիրամարգաց շքեղ կողոպուտով. և երբ իր անձն ըստ բաւականին գեղեցկացած համարեց, աւելի համարձակ կերպով խառնուեցաւ Հերայի պայծառագեղ թռչնոց թուոյն մէջ. ճանչցուեցաւ և ահա սիրամարգներ դիմելով անոր վրայ՝ կտուցներու սուր հարուածներով մեր-

կացուցին անկէ կեղծ պաճուճանքը։ «Դադրեցէք, գոչեց վերջապէս, ինչ որ ձերն էր, առէք աւասիկ ամէնը։» Այլ սիրամարգները տեսնելով ճային թեւոց մի քանի փայլուն փետուրները, պատասխանեցին. «Լռէ, ո՛վ ողորմելի անմիտ, կարելի չէ որ առոնք ալ քուկդ ըլլան։» Եւ կտուցներու հարուածներ չէին դադրեր։

*Կողոպուտ*, կապուտ.
*Աւելի համարձակ կերպով*, համարձակագոյնս.
*Փայլուն*, փողփողեալ.
*Լռէ՛*, կարկեաց։

---

## 15. ԱԳՌԱՒ ԵՒ ԱՂՈՒԷՍ

Ագռաւ մը իր մագիլներով առած կը տանէր թունաւոր մսոյ պատառ մը, զոր բարկացած պարտիզպան մը իր դրացւոյն կատուներուն համար ձգած էր։

Դեռ նոր պատրաստուեցաւ նա ճաշակել զայն հինաւուրց կաղնիի վրայ, աղուէսը մեղմով մօտեցաւ և աղաղակեց անոր. «Կ'ողջունեմ քեզ, թռչո՛ւնդ Արամազդայ։» — «Զիս ո՛վ կը կարծես,» հարցուց ագռաւը։ — «Քեզ ո՛վ կը կարծեմ, աւելցուց աղուէսը, «Դուն չես արագաթռիչ արծիւն, որ ամէն օր կ'իջնէ Արամազդին աջ կողմէն այս կաղնիին վրայ իմ թշուառութիւնս թեթեւցնելու համար։ Ինչո՞ւ ծածկեմ. չեմ տեսներ քու յաղթական մագիլներուդ մէջ ընծայն՝ զոր աստուածդ զորովելով իմ աղէտներուս վրայ, չղաղրիր ինձ յղել քու ձեռքովդ։» Ագռաւը զարմացած՝ հրապուրուեցաւ արծիւ մը կարծուելուն և ինքնիրեն ըսաւ. «Թողունք աղուէսն իր պատրանքին մէջ։» Ցիմարական վեհանձնութեամբ թողուց որ որսն իյնայ և հպարտութեամբ սլացաւ։ Աղուէսն ուրախանալով առաւ միսն և չարաշուք ուրախութեամբ մը ճաշակեց զայն։ Բայց այդ ուրախութիւնն իսկոյն վշտաց փոխուեցաւ. շուտով զգաց թունին ազդեցութիւնը և պայթեցաւ։

Իցի՜ւ ձեր գովեստներով թոյն չընդունէիք, անձարգ շողոքորթներ։

---

## 16. ԱԳԱՀՆ

«Եղո՛ւկ ինձ, կը գոչէր ողբալով ագահն իր դրացւոյն։ Այս գիշեր պարտիզիս մէջ թաղած գանձս գողցան և անոր տեղ անիծեալ քար մը դրին։»

— Բայց դու, ըսաւ դրացին, չէիր գործածեր քու գանձդ. այնպէս կարծէ թէ այդ քարը քու գանձդ է և անով դուն երբեք աղքատագոյն չես։»

— Թող ըլլամ անով երբեք աղքատ, աւելցուց ագահը. չէ՞ որ ուրիշ մը կը շահի անկէ. և ուրիշ մը շահի՛, ո՛վ կատաղութեանս։»

*Չէիր գործածեր*, չունէիր ինչ ի կիր առնուլ.

*Չէ՞ որ ուրիշ մը կը շահի*. ինչ ապաւէն այլոյ ուրուք այնչափ շահ իցէ։

---

## 17. ՄԱՔԻ

Արամազդայ հարսանեաց հանդէսին բոլոր կենդանիք ընծաներ կը բերէին։ Տեսաւ Հերա թէ մաքին չէր գար։

— Ի՞նչ եղաւ մաքւոյն, հարցուց դիցուհին, ինչո՞ւ կ'ուշանայ նազիկ մաքին բարեկամութեան ընծայն բերել տալ։»

Այն ատեն խօսել սկսաւ շունը և կ'ըսէ. «Մի՛ բարկանար, դիցուհի՛, այսօր իսկ տեսայ ես մաքին. մեծ տրտմութեան մէջ էր և մեծ ձայնով կը կողկողէր։» — «Ինչո՞ւ համար այդպէս կ'ողբար մաքին,» կրկնեց դիցուհին խանդաղատելով։

— Եղուկ եմ ես, կ'ըսէ, չունիմ ոչ բուրդ և ոչ կաթ, ինչ տամ Արամազդայ։ Ե՞ս միայն պէտք է որ անոր առջեւ ելնեմ առանց ընծայի մը. աւելի լաւ կը համարիմ երթալ աղաչել հովիւն՝ որ զիս զոհ ընէ։»

Իսկոյն դէպ ի ամպերը կ'ելնէր Արամազդին՝ ախորժ բուրում մը հովուին աղօթքին հետ. զոհին ծուխն էր այն։ Եւ այն առաջին անգամն էր որ Հերա կ'արտասուէր, եթէ արտասուք կրնան բրջել անմահ աչք մը։

*Բերել տալ*, բերեալ մատուցանել.

*Ինչո՞ւ համար այդպէս կ'ողբար մաքին*, հուսի լիցէ ողբալ զայդ օրինակ մաքւոյն.

*Որ զիս զոհ ընէ*, զենցէ զիս ի պատարագ։

---

## 18. ՄԱՔԻ ԵՒ ԾԻԾԱՌՆ

Ծիծառը թռչելով մաքիին վրայ իջաւ բունին համար քիչ մը բուրդ առնելու։ Մաքին անհամբեր աստին անդին կը գառնուէր. «Ինչո՞ւ, կ'ըսէ անոր ծիծառը, միայն ինծ համար այդքան ժլատ ես. կը թողուս որ հովիւը զքեզ մերկացնէ բուրդէդ և քիչ մը ծուէն ինծ կը զլանաս. Ի՞նչ է ատոր պատճառը։» Պատասխանեց մաքին. «Վասն զի դուն չես գիտեր իմ բուրդս հովուին պէս ճարտարութեամբ առնել։»

---

## 19. ՈՍԿԻՆ ՍՈՂՈՄՈՆԻ

Օրուան ծանրութիւնը և տաքութիւնը կը կրէր պարկեշտ ծեր մը, իր ձեռքով գործելով իր արտը և իր ձեռքով սերմանելով սուրբ սերմն արդիւնաբեր հողոյն ծակոտկէն ծոցին մէջ։ Ցանկարծ երեւցաւ անոր աչքին աստուածային տեսիլ մը լորւոյ լայնատարած հովանւոյն տակ. դողաց ծերունին։ «Ես եմ Սողոմոն, կ'ըսէ տեսիլը, խրախուսանաց ձայնով. Ի՞նչ կ'ընես հոս, ո՜վ ծեր։» — «Եթէ դուն ես Սողոմոն, պատասխանեց ծերունին։ Ի՞նչպէս կարելի է որ այդ բանն ինծ հարցընես. իմ երիտասարդութեանս ատեն զիս մրջիւնին խրկեցիր. անոր գործին ականատես եղայ և անկէ սորվեցայ աշխատասէր ըլլալ և դիզել. ինչ որ այն ատեն սորվեցայ, այսօր տակաւին նոյնն ի գործ կը դնեմ։»

— Դուն քու դասդ կիսով չափ միայն սորված ես, կրկնեց տեսիլը. նորէն գնա՛ մրջիւնին և սորվէ՛ անկէ հանգչիլ տարիներուդ ձմրան մէջ և ժողո՛վածդ վայելել։»

---

## 20. ՄԱՐԴ ԵՒ ՇՈՒՆ

Մարդ մը խածատեցաւ շունէ մը. և նա բարկանալով սպաննեց կենդանին։ Վէրքը վտանգաւոր երեւցաւ և բժշկին խորհուրդ հարցնելու պէտք եղաւ։ «Ուրիշ դեղ չեմ գիտեր հոս, կ'ըսէ շաղակրատը, բայց եթէ պատառ մը հաց թրջել վէրքին մէջ և զայն կերցնել շան։ Եթէ այս դարմանն ապարդիւն մնայ, այն ատեն....։» Հոս բժիշկն ուսերը թօթուեց։ «Զարաբաստի՜կ զայրուցք, աղաղակեց մարդն. ատիկա չկրնար ըլլալ, վասնզի շունը սպաննեցի։»

ՎԵՐՋ

